МАТЕНАДАРАН
ИНСТИТУТ ДРЕВНИХ РУКОПИСЕЙ ИМЕНИ МЕСРОПА МАШТОЦА
ПРИ СОВЕТЕ МИНИСТРОВ АРМЯНСКОЙ ССР

# ПАМЯТНЫЕ ЗАПИСИ АРМЯНСКИХ РУКОПИСЕЙ

## XIII ВЕК

Составил А. С. МАТЕВОСЯН

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1984

ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ ԱՌԸՆԹԵՐ
Մ. ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

## ԺԳ ԴԱՐ

Կազմեց Ա. Ս. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1984

ԳՄԴ 63. 3 (2Հ)
Հ 249

Տպագրվում է Մաշտոցի անվան
Մատենադարանի գիտական խորհրդի որոշմամբ

Պատասխանատու խմբագիր՝ ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

Լ. Ս. ԽԱՉԻԿՅԱՆ

Գիրքը հրատարակության են երաշխավորել գրախոսներ՝ պատմական գիտությունների դոկտոր Ա. Շ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆԸ և բանասիրական գիտությունների թեկնածու Պ. Մ. ՄՈՒՐԱԴՅԱՆԸ

Հ 249 *Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, ԺԳ դար /Մատենադարան, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր Մ. Մաշտոցի անվ. հին ձեռագրերի ին-տ; Կազմ. Ա. Ս. Մաթևոսյան; Պատ. խմբ. Լ. Ս. Խաչիկյան.—Եր. ՀՍՍՀ ԳԱ հրատ. 1984. 977 էջ.—(Նյութեր հայ ժող. պատմության; Գիրք 20).*

*Ժողովածուն ընդգրկում է 1201—1300 թվականներին գրված ձեռագրական հիշատակարանները։ 1201—1250 թթ. հիշատակարանների մի մասը հրատարակվել է 1951 թ. Գ. Հովսեփյանի «Յիշատակարանք ձեռագրաց» ժողովածուի մեջ։ 1251—1300 թթ. հիշատակարանների գերակշռող մասը տպագրվում է առաջին անգամ և շրջանառության մեջ է դնում պատմագրական հսկայական նյութ։ Մասնավորապես հարուստ և բազմակողմանի են Կիլիկիայի հայկական պետության սահմաններում գրված ձեռագրերի հիշատակարանները։*

*Հասցեագրվում է պատմաբաններին։*

0505040000 ԳՄԴ 63. 3 (2Հ)
Հ———————110—85
703 (02)—84

Հայրենական պատերազմում զոհված
ՄԱԹԵՎՈՍ, ՎԱՐԴԳԵՍ, ԳՈՒՐԳԵՆ
եղբայրներիս անմոռաց հիշատակին

## ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒՆԵՐԸ

*Հայերեն ձեռագրերի հիշատակարաններում քաղաքական անցուդարձերն արտացոլող մասերը, որպես հավաստի սկզբնաղբյուրներ, վաղուց են օգտագործվել պատմագրական երկերում և պատմագիտական ուսումնասիրություններում, ինչպես նաև ԺԷ դարի պատմիչ Առաքել Դավրիժեցու Պատմություն Հայոց և ԺԸ դարի պատմաբան Միքայել Չամչյանի Հայոց պատմության եռահատորյակի մեջ։ Հիշատակարանների առատ օգտագործմամբ Գ. Զարբհանալյանը ստեղծեց հայ մատենագրության պատմությանը նվիրված իր աշխատությունները, Ղ. Ալիշանը՝ հայագիտական ու հայրենագիտական համադրությունները, Գ. Հովսեփյանը՝ Պռոշյան իշխանական տան ու հոգևոր կենտրոնների պատմությունը, Հ. Ոսկյանը՝ Հայոց վանքերի պատմությունը։ Լ. Խաչիկյանը ԺԾ դարի ձեռագրերի հիշատակարանների հիման վրա գրեց այդ դարի «Հայ պատմագրության ամենաամուլ» շրջաններից մեկի պատմությունը։*

*Արդեն իր իրավունքները հաստատած հայ ձեռագրագիտությունը, որի ուսումնասիրության առարկան ձեռագիրն է որպես պատմական որոշակի հուշարձան, չի կարող զարգանալ առանց հիշատակարանների ըստ ամենայնի օգտագործման։*

*Հայերեն ձեռագրերի հիշատակարաններում վիթխարի նյութ է ամբարված հայ գրչության արվեստի, հայ գրչության դպրոցների, կենտրոնների, գրի, գրանյութի, գրչության գործիքների, գրության եղանակավորումների մասին, ձեռագրի գրության մասնակիցների, նրանց զբաղմունքի, արհեստի, կենցաղի մասին[1]։ Հսկայական նյութ կա ոչ միայն պատմաբանի, բանասերի, աղբյուրագետի, մատենագետի ու ձեռագրագետի համար, այլև աշխարհագրագետի, հնագրագետի, ազգագրագետի, ճարտարապետի, լեզվաբանի, բանագետի, բարբառագետի և այլ բնագավառների մասնագետների և մանավանդ գրողների համար։*

*«Փոքրիկ հիշատակարանները իրենց բազմատեսակ մանր տեղեկություններով խճանկարի գույնզգույն քարեր են, որոնցից արվեստագետը ի մի բերելով և օգտագործելով հարկավոր յուր նպատակի համար, կազմում է գունազարդ, կենդանի և գեղարվեստական պատկեր»[2],— գրում է Գ. Հովսեփյանը։*

---

[1] *Այդ նյութերի հիման վրա ուսումնասիրություն ենք պատրաստել՝ նվիրված հայ գրչության արվեստին։*

[2] Գ. Հովսեփյան, *Յիշատակարանք ձեռագրաց, հ. Ա (Ե դարից մինչև 1250 թ.), Անթիլիաս, 1951, էջ ԺԴ։*

Հայերեն ձեռագրերի հիշատակարանների հասարակական-քաղաքական-մշակութային կյանքի տարբեր ոլորտներ ընդգրկող բնույթն ստիպում էր, որ դրանց օգտագործման ավելի գործնական և առավել նպատակահարմար եղանակներ գտնվեն։ Եվ այն գտնվեց։ Դրանք ժողովածուներն էին, որոնցում ժամանակագրական կարգով հավաքվելու էին ձեռագրերի հիշատակարանները։ Այդ ժողովածուներում ձեռագրական առանձին հիշատակարանները, որոնք գրվել են տարբեր մարդկանց կողմից, տարբեր վայրերում, մերթ հպանցիկ, մերթ հիմնավոր արձագանքելով կյանքի այս կամ այն երևույթին, հավաքվում, դասավորվում են ըստ որոշակի ժամանակահատվածի տարիների։ Աղոտ արձագանքներն ու միակողմանի ակնարկները համադրվելով՝ լրացնում, ամբողջացնում են միմյանց, թանձրացնում են փաստերը և նրանց դարձնում վավերական և վստահելի։

Հայերեն ձեռագրերի ժողովածուների մեջ առանձին տարիներով հավաքված հիշատակարաններն ըստ գրչության վայրերի իրենց արտացոլումն են գտնում տեղանունների ցանկում, իսկ ըստ ձեռագրերը գրողների, ստացողների և այլ մասնակիցների՝ հավաքվում, դասդասվում են անձնանունների ցանկում։ Ուսումնասիրողը ձեռքի տակ է ունենում ձեռագրի հիշատակարանը՝ գրչության հանգամանքներով՝ որոշակի ժամանակի և տարածության մեջ։ Ձեռագրերի հիշատակարանների ժողովածուներն այսպիսով դառնում են ժամանակագրական որոշ սահմաններում պատմագրական հսկայական նյութ ամփոփող մատենագրական նոր, ամբողջական միավորներ, որոնց նշանակությունը անգնահատելի է հայ ժողովրդի և հարևան ժողովուրդների, ինչպես նաև այն երկրների պատմության համար, որտեղ գրվել են այդ հիշատակարանները։

Այդ է պատճառը, որ ոչ միայն հրապարակ են գալիս հիշատակարանների ժողովածուներ, այլև դրանք թարգմանվում են այլ լեզուներով։

Հայերեն ձեռագրերի հիշատակարանների առաջին ժողովածուները կազմել է Ղևոնդ Փիրղալեմյանը՝ «Նշխարք պատմութեան Հայոց»[3] վերտառությամբ, որի երկու հատորները ընդգրկում են ավելի քան հազար հիշատակարան։ Դրանցից մի փոքր և համառոտված մաս միայն լույս է տեսել «Նօտարք Հայոց»[4] վերնագրով։ Ղ. Փիրղալեմյանի ժողովածուները այժմ սկզբնաղբյուրի նշանակություն ունեն, քանի որ նրանց պարունակության մի մասի միակ աղբյուրը մնացել են այդ ձեռագրերը։

Տասնամյակներ հետո լույս տեսավ Գարեգին կաթողիկոսի «Յիշատակարանք ձեռագրաց» ժողովածուն, որը պարունակում է Ե դարից մինչև 1250 թվականների հիշատակարանները[5]։ Հիշատակարանների սույն ժողովածուն, ինչպես գրում է հեղինակը, «նախապես ծրագրված չի եղել հրատարակության համար, այլ այդ միտքը առաջ է եկել և ձևավորվել հետզհետե, բոլորովին տարբեր շարժառիթներով։ Մեր պատմական մատենագրական և մանրանկարչական ուսումնասիրությունների ժամանակ, ստիպողաբար հետամուտ ենք եղել

3 Մատենադարան, ձեռ. №№ 6332, 4515։ Հեղինակը սույն ժողովածուներից է կազմել Մատենադարանի №6273 ձեռագիրը։ Նրա գրչին է պատկանում նաև № 9027 ձեռագիրը, նույնպես հիշատակարանների և արձանագրությունների ժողովածու, քաղված նախորդներից։

4 Նօտարք Հայոց, հաւաքեալ եւ ի լոյս ածեալ ձեռամբ Ղեւոնդ վարդապետի Փիրղալեմեանց Տոսպեցւոյ, Կ. Պօլիս (թվականը չի նշված, հավանաբար 1870-ական թվականներն են)։

5 Գ. Հովսեփյան, Յիշատակարանք ձեռագրաց, հ. Ա։

աղբյուրներ որոնել, նրանց մեջ գտնելով, որ հիշատակարանները կարևոր տեղ պիտի բռնեն... ստիպված էինք ձեռագրերի մեջ անձամբ որոնել մեր նյութերը... հետզհետե հարստացավ մեր ժողովածուն, դառնալով հայ անցյալի և մշակույթի պատմության համար թանկագին գանձարան։ ...կամենալով ուրիշներին ևս մատչելի դարձնել՝ դասավորեցինք ժամանակագրական կարգով և ճոխացրինք ծանոթագրություններով և ցուցումներով»[6]։

«Բայց սա լոկ հիշատակարանների ժողովածու չէ սովորական մտքով, դասավորված նույնիսկ ժամանակագրական կարգով,— գրում է նա,— այլև բանասիրական ընդարձակ աշխատանք. ջանք է գործադրված պատմական-գրական լրացուցիչ տեղեկություններով և ծանոթագրություններով, թվականների և դեպքերի ճշտումով և համեմատություններով այլ աղբյուրների հետ, հիշատակարանների մեջ հիշված գրիչների, ստացողների, հովանավորողների կամ այլ անձերի և դեպքերի մասին ցուցումներով, ավելի պարզել և ընդարձակել նրանց արժեքը և դյուրացնել օգտագործողի աշխատանքը»[7]։ Հեղինակը այնուհետև ներկայացնում է այն սկզբունքները, որոնցով առաջնորդվել է ժողովածուն կազմելիս։

Գարեգին Հովսեփյանի սույն գործը իր նախնական ծավալով, ավարտված էր 1934 թ. և պարունակում էր 248 միավոր։ 1956 թվականից վերստին ձեռնամուխ է լինում հիշատակարանները հարստացնելու և հրատարակության պատրաստելու գործին և իր գիտական աշխատակցի համագործակցությամբ ժողովածուի ծավալը համարյա կրկնապատկում է, միավորների թիվը հասցնելով 472-ի։ 1951 թ. լույս աշխարհ եկավ «Յիշատակարանքի» առաջին հատորը 48 նմանահանություններով և հեղինակի ու գիտական աշխատակցի «Յառաջաբան»-ով (էջ ժգ—իթ)։ Նախատեսվում էր հրատարակել ևս երեք հատոր, որը, սակայն, չիրականացավ հեղինակի մահվան պատճառով։

Այնուամենայնիվ այս մի հատորն էլ բավական էր, որպեսզի նախ պարզ դառնային հայերեն ձեռագրերի հիշատակարանները հրատարակելու հեղինակի սկզբունքները, պատմաբանասիրական, ձեռագրագիտական, աղբյուրագիտական ու մատենագիտական այն վիթխարի աշխատանքն ու գիտելիքները, որ ներդրել ու ամբարել է ժողովածուի մեջ բազմավաստակ գիտնականը։

Մինչև սույն «Յիշատակարանքի» լույս աշխարհ գալը, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պատմության ինստիտուտը, որպես «Նյութեր հայ ժողովրդի պատմության» մատենաշարի երկրորդ գիրք, 1950 թ. հրատարակում է Լ. Խաչիկյանի կազմած «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանները» և սկիզբ դնում «Միջնադարյան հայերեն ձեռագրերի հիշատակարանների հավաքման ու գիտական սկզբունքներով հրատարակությանը, որը նպաստելու է հայ ժողովրդի պատմության մի շարք բնագավառների ուսումնասիրությունը խորացնելու գործին»[8]։ «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանները» ժողովածուն պարունակում է 845 հիշատակարան-միավոր։ «Առաջաբան»-ում շարադրված են նաև ժողովածուի կազմման սկզբունքները։ Նույն սկզբունքներով Լ. Խաչիկյանը կազմեց նաև ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանների ժողովածուն և հրատարակեց երեք ստվար մասերով,

---

6 Անդ, Յառաջաբան, էջ ԺԳ—ԺԴ։

7 Անդ, էջ ԺԷ։

8 Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Երևան, 1950, էջ V։

որոնք բոլորը միասին պարունակում են 2133 նյութ-միավոր[9]։ Այս ժողովածուի մեջ ավելի մշակվեցին և հղկվեցին Լ. Խաչիկյանի որդեգրած սկզբունքները։

Գ. Հովսեփյանի և Լ. Խաչիկյանի հայերեն ձեռագրերի հիշատակարանների ժողովածուների նպատակների նույնությունից բացի կան հավաքման ու հրատարակման, ներկայացման ու ծանոթագրության լուրջ տարբերություններ, որոնք պետք է բացատրել նախ ժամանակի հայագիտության առաջադրած պահանջների մակարդակով և կազմողների նպատակադրությամբ ու նախասիրությամբ։

Գ. Հովսեփյանը, ինչպես տեսանք, ձեռագրերի հիշատակարանները հավաքել է ոչ թե ժողովածուի մեջ հրատարակելու համար, այլ որպես սեփական ուսումնասիրությունների նյութ։ Սակայն հետագայում, երբ մտածում է այդ արժեքավոր հավաքածուն հրատարակելով դարձնել նաև ուրիշների սեփականություն, որոշում է ոչ միայն այն լրացնել տարբեր հավաքածուներում, տպագիր գրականության և պարբերական մամուլում եղած նյութերով, այլև տալ «նոր, մինչև այժմ բանասիրությանը մատչելի չեղած նյութեր»։ Այստեղ, ահա խախտվում է հայերեն ձեռագրերի հիշատակարանների ժողովածուների բնույթը, ձեռագրերի հիշատակարանների կողքին մենք տեսնում ենք տպագիր ու անտիպ վկայաբանություններ, ժամանակագրություններ, պատմագրական երկերից հատվածներ, գավազանագրքեր, կոնդակներ և այլն։ Երբեմն մի քանի տող տեղեկությունը ծանոթագրվում է իրենից մի քանի-տասնյակ անգամ ավելի ծավալուն ծանոթագրությամբ, որոշ վարքեր առաջ են բերվում մեկից ավելի բնագրերի համեմատությամբ, որոշ ժամանակագրություններ անցնում են «Յիշատակարանքի» Ա հատորի ընդգրկման սահմանները։

Հեղինակի մտահոգությունը հասկանալի էր. բանասիրությանը տալ ոչ միայն ձեռագրերի հիշատակարաններ, այլ նաև մինչև այդ մատչելի չեղած նյութեր, որոնք թաքնված են ձեռագրերի ծալքերում և տպագիր գրականության ու պարբերական մամուլի էջերում։ Եվ այն, ինչ մտածել էր երեսնական թվականներին, իրականացրեց հիսնական թվականների սկզբներին։

Լ. Խաչիկյանի «Հիշատակարանների ժողովածուներում», ինչպես նախորդի մոտ, հիշատակարանները տեղադասվում են ժամանակագրական կարգով, ըստ տարիների, եթե ամիսներն ու օրերն հայտնի են տարիների մեջ՝ ըստ ամիսների և օրերի։

Ժամանակի նշումից հետո, որը դրվում է էջի սկզբում և վերաբերում է այդ էջում տեղավորված բոլոր միավորներին, հերթական համարի տակ նշվում է ձեռագրի վերնագիրը, որից քաղված է հիշատակարանը (և կից հիշատակագրությունները, որոնք իրար հաջորդում են այբբենական համակարգով)։ Վերնագրի տակ ձեռագրի հասցեն է. որտե՞ղ է գտնվում կամ որտեղից է քաղված հիշատակարանը։ Եթե հավաքածուներից կամ ձեռագրացուցակներից է, սկզբում դրվում է հավաքածուի գտնվելու վայրը և նրա մոտ այդ հավաքածուի մեջ ձեռագրի համարը (Վենետիկ, 10), ապա համառոտ այն Ցուցակը, որում տպագրված և որից քաղված է միավորը (Վենետիկ 10, Բ. Սարգիսյան,

---

9 «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Մասն առաջին (1401—1450 թթ.), կազմեց Լ. Խաչիկյան, Երևան, 1955 (1—744 հիշատակարան), Մասն երկրորդ (1451—1480 թթ.), Երևան, 1953 (1—575 հիշատակարան), Մասն երրորդ (1481—1500 թթ.), ԺԵ դարի անթվական հիշատակարաններ, Երևան, 1967 (1—814 հիշատակարան)։



7

*Ցուցակ Բ, էջ 150), իսկ երբ այլ հրատարակությունից է՝ հեղինակը և երկը՝ հիշատակարանը գտնվելու էջով։*

*Շատ կարևոր հանգամանք է հիշատակարաններն իրենց հեղինակներով և գրվելու վայրով հրատարակելու սկզբունքը։ Ձեռագիրը, որի մեջ նաև հիշատակարան է, պատկանում է որևէ գրչի (կամ գրիչների), ընդ որում այստեղ գրիչը երկու տիպի գործողություն է կատարել, ձեռագիրը գրել է արտագրելով, իսկ հիշատակարանը՝ գրել է հեղինակելով։*

*Այժմ, երբ հիշատակարանը անջատում ենք իր մայր ձեռագրից և մուծում հիշատակարանների ժողովածուի մեջ, այն պետք է հրատարակվի իր հորինողի, իր հեղինակի անունով՝ լինի այն գրիչը, ստացողը, ծաղկողը կամ մի այլ անձնավորություն։ Հիշատակարանը հեղինակով հրատարակելը որքան բնական, նույնքան էլ արդարացի է։ Ուստի որևէ հիշատակարան օգտագործելիս պետք է նշվի նրա հեղինակը և ապա՝ աղբյուրը. ինչպես Հովհաննես պատմիչի գործն է վկայակոչվում և հղվում նրա Պատմությունը, այնպես էլ Հովհաննես գրչի փաստը վկայակոչելիս պետք է հղել նրա հիշատակարանը (ժողովածուի մեջ)[10]։*

*Նույն իրավունքով տեղանունը հետևում է հեղինակի անվանը, տեղադրվելով նրանից ներքև, որպես հիշատակարանը ստեղծելու վայր։ Այս պարագայում հիշատակարանների ժողովածուն թերթելիս և միայն տեղանունները աչքի անցկացնելով, արդեն մտքով տեղափոխվում ես հայ մշակութային այն կենտրոնները, որտեղ ստեղծվել են հայերեն ձեռագրերը, գրվել այդ հիշատակարանները և, որպես այդ տեղերից շատերի գոյության միակ մասունք և վկայություն, հասել են մեզ։ Գ. Հովսեփյանի մոտ սույն սկզբունքները այդպիսի հետևողականությամբ և բծախնդրությամբ չեն կիրառվում։ Հաճախ բացակայում է այն ձեռագրի վերնագիրը, որից քաղված է հիշատակարանը և հիշվում է միայն հավաքածուն և համարը։ Հեղինակը և տեղը չեն հիշատակվում առանձին, այլ հիշվում են ձեռագրի մասին ընդհանուր տեղեկությունների հետ միասին, եթե բերվում են այդ տեղեկությունները[11]։*

*Հաջորդ գործողությունը հիշատակարանի բնագիրը ներկայացնելն է։ Ժողովածու կազմողի հիմնական խնդիրը հիշատակարանը ճիշտ, անսխալ, ձեռագրին հարազատ ներկայացնելն է, որքան հնարավոր է քիչ միջամտությամբ, որովհետև գործ ունենք ոչ միայն դարեր առաջ գրված, այլև մտածված խոսքի հետ, այսինքն դարավոր մտածողության գրավոր արտահայտության հետ, ընդ*

---

*10 Իհարկե, այդպես են վարվում օրինակելի ուսումնասիրողները։ Բայց կան նաև հոդվածագիրներ, որոնք փոխանակ գրելու «Ներսես գրիչը Եկեղեաց գավառում հիշում է Բըթնո լեռը», հղելով «ԺԴ դարի հիշատակարանների» 276-րդ էջը, քանի որ այստեղից են վերցրել տվյալները, անտեսելով գրչի հեղինակությունը, երկարաբանում են. «Օքսֆորդի համալսարանի գրադարանի հայերեն ձեռագրերից մեկում, որը կրում է 6 համարը, և նկարագրված է Տիրայր վարդապետի անտիպ ցուցակում (տե՛ս Մատենադարան, արխիվ, թղթ. 120, էջ 891—896) Եկեղեաց գավառում հիշվում է Բըթնո լեռը»։*

*11 Ժողովածուի մեջ վաստակաշատ գիտնականը հիշատակարանը մուծել է այնպես, ինչպես ունեցել է ձեռքի տակ։ Լրացնելու հնարավորություն չի ունեցել ձեռագրի կամ ցուցակի բացակայության պատճառով։ Իսկ որոշ հիշատակարաններ ծանրաբեռնված են այլևայլ տեղեկություններով։ Ականատես լինելով հայ ձեռագրական հսկայական կորուստներին, Գ. Հովսեփյանը աշխատել է որքան հնարավոր է ձեռագրերի մասին շատ տեղեկություններ գրանցել հիշատակարաններին կից։*

որում դարերի տարբերությանը պետք է ավելացնել նաև տեղերի, նահանգների, աշխարհների տարբերությունը և սրանց գումարել գրիչների գրագիտության աստիճանը։

Լ. Խաչիկյանը ԺԴ դարերի հիշատակարաններում հրաժարվել է «Փառք»-երից, բայց հաջորդ հատորներում բերել է կարևոր համարվածները և փոքրածավալները։ Բնագրում ընդգծված են հատուկ անունները։ Ժամանակը նշանակելու համար հիմք է ընդունել Հայոց տոմարը (թվականը կոր փակագծերով գրել է արաբական թվանշաններով։ Նույնպես է վարվել բոլոր թվերի և թվանշանների հետ)։ Ծանոթագրությունները կատարված են տողատակում և ունեն բնագրական-աղբյուրագիտական բնույթ։ Ինչպես Գ. Հովսեփյանի ժողովածուն, սրանք ևս օժտված են տեղանունների, անձնանունների և առարկայական ցանկերով, որոնք, հատկապես երկրորդը ավելի շուտ բառարան է, քան ցանկ, որտեղ ամբողջականանում է տվյալ անձը՝ ժողովածուի մեջ զբաղեցրած իր գործունեությամբ։

Համարյա նույն սկզբունքներով, ԺԷ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանների հրապարակման աշխատանքներին ձեռնամուխ եղան Ա. Հովհաննիսյանը և Վ. Հակոբյանը։ Նյութի առատության պատճառով յուրաքանչյուր հատորում տեղավորված են քսան տարվա հիշատակարաններ։ Հրապարակի վրա են արդեն Ա և Բ հատորները[12]։

ԺԳ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարանների ներկա ժողովածուն պատրաստելիս, որպես հիմք ընդունել ենք Լ. Խաչիկյանի մշակած սկզբունքները՝ մասնակի շեղումներով։ Հրապարակի վրա եղած և հայագիտական ուսումնասիրություններում լայնորեն օգտագործվող հիշատակարանների ժողովածուները մեզ ազատում են առանձին մանրամասներ ծանոթագրելու պարտականություններից։ Ժամանակը հիմնականում հաշվում ենք հայկական տոմարով։ Բացառություն են այն հիշատակարանները, որոնցում այլ տոմարների կողքին բացակայում է հայկականը։ Ժողովածուի մեջ հիշատակարանների զարգացման ընթացքն ավելի լիակատար ներկայացնելու համար անհրաժեշտ ենք համարել բերել «Փառքերը», որոնք շատ ընդարձակ չեն, ինչպես հետագա դարերում, այլ հաճախ մի քանի տող են զբաղեցնում, իսկ ընդարձակները քիչ են և օգտակար։ «Փառքերի» համադրությամբ երբեմն հնարավոր է լինում բացահայտել հիշատակարանների, ուրեմն նաև ձեռագրերի ազգակցությունը։ Նրանց մեջ պատահում են պատկերավոր մտածողություն, առակավոր խոսք, գեղեցիկ համեմատություններ, պարականոն մեկնություններ, հազվադեպ օգտագործվող բառեր և այլն։

Ձեռագրի հասցեի տակ, եթե քաղված հիշատակարանը գրչության ժամանակակից չէ, դնում ենք ձեռագրի գրչության թվականը, որպեսզի պարզ լինի, որ բերվող հիշատակարանը պատկանել է գաղափար օրինակին կամ էլ գովել է հետագայում։

Ժողովածուներից քաղված հիշատակարանները, եթե նրանք վերաբերվում են ոչ թե ամբողջ ձեռագրին, այլ միայն նյութերից մեկին, որպես հիշատակարանի խորագիր նշում ենք այդ նյութի վերնագիրը։

---

12 «Հայերեն ձեռագրերի ԺԷ դարի հիշատակարաններ», հ. Ա (1601—1620), կազմեցին Վ. Հակոբյան և Ա. Հովհաննիսյան, Երևան, 1974 և հ. Բ (1621—1640), Երևան, 1978։

*Լուսանցքներում գրված հիշատակագրությունները բերելիս, որպեսզի ամեն անգամ չծանոթագրվի թե՝ «գրված է լուսանցքում», էջանիշի կողքին աստղանիշ ենք դնում։*

*Որոշ անուններ և բառեր մեծատառ ենք գրում՝ ելնելով Մաշտոցի անվան Մատենադարանի Մայր ցուցակի ընդունած սկզբունքներից։ Անթվական հիշատակարանները դնում ենք համապատասխան դարերի վերջում, հիմք ընդունելով Ցուցակների թվագրումը։ Ծանոթագրում ենք այն դեպքում, երբ տեղաշարժում ենք կամ տեղադրում որոշակի թվականի տակ։*

*Հիշատակարանների տպագրված կամ որևէ բանասերի կողմից օգտագործված լինելու մասին տեղեկություն չենք տալիս, քանի որ հրատարակում ենք բուն ձեռագրից, մանրաժապավենից կամ լուսանկարից և կամ էլ Ձեռագրացուցակից, որոնք տվյալ հիշատակարանի համար սկզբնաղբյուր են*[13]*։*

*Մեր խոսքն ավարտելուց առաջ խորին շնորհակալություն ենք հայտնում ակադեմիկոս Լևոն Խաչիկյանին և ԳԱ թղթակից անդամ Սեն Արևշատյանին, որոնք Երուսաղեմ գտնվելու ժամանակ Սրբոց Հակոբյանց մատենադարանից ընդօրինակած երկու տասնյակից ավելի անտիպ հիշատակարաններ հանձնեցին մեզ՝ սույն հատորում հրատարակելու, բանասեր Համլիկ Սիմոնյանին, որ Լենինգրադի հավաքածուներում պահվող հայերեն ձեռագրերից սիրով մեզ համար քաղեց անհրաժեշտ հիշատակարանները և Ձեռագրատան երկարամյա գործընկեր Օնիկ Եգանյանին՝ որոշ հիշատակարաններ տրամադրելու համար։ Հարգանքով հիշում ենք ամերիկահայ հանգուցյալ բանասեր Հարություն Քյուրտյանին, որը տարիներ առաջ, սիրահոժար կերպով մեզ ուղարկեց իր հավաքածուի հիշատակարանները։*

*Երախտագիտության խորին հարգանք հիշատակարանների հայտնի և անհայտ հեղինակների հիշատակին, որոնք մեզ թողել են անհատնում հարստություն, իրենց պահելով հիշվելու կարոտը միայն։*

*Ավարտենք նրանց սիրած խնդրանքներից մեկով. «Ով եղբարք, ընդօրինակեցաւ յազնիւ և ստոյգ աւրինակաց։ Եթէ սխալանք ինչ իցէ, յիմում անհմտութենէ է, անմեղադիր լերուք»։*

**Ա. Ս. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ**

---

*[13] Այլապես ստիպված պետք է լինենք հարյուրավոր անգամ հրատարակել Մ. Տեր-Մովսիսյանի, Ղ. Փիրղալեմյանի, Հ. Թարղամյանի, Ե. Լալայանի, Հ. Ոսկյանի, Գ. Զարբհանալյանի, Ղ. Ալիշանի, Հ. Աճառյանի և շատ այլոց այլևայլ աշխատությունները, որոնք հիշատակարանները օգտագործելու մակարդակին հասած բանասերին վաղուց ծանոթ պետք է լինեն։*

## 1

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 10359*

Գրիչ՝ Ստեփաննոս
Վայր՝ Աւագ վանք

ա

305բ *Փառք փառաւորեալ միաբուն զաւրութեանն, եռակի անձնաւորու-*
*թեանն, աններհակ կամակցութեանն, համակամ սիրելութեանն, Հաւր եւ*
*Որդւոյ եւ Սուրբ Հոգւոյն այժմ, եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամին։*
*Ի վեցհարիւերորդի յիսներորդի թուաքերութեանս Հայոց նոր տումա-*
*րիս (1201), ի գաւառիս* Դարանաղեաց, *առ ստորոտով լերինս* Սեպուհի, *ի*
*հրեշտակակրաւն անապատիս կոչեցելոյ* Աւագ վանք, *յորս բնակեն արք*
*ամենայքարիք ճգնասէրք եւ անուանիք, ի հովանեաւ նախագահ եւ մեծա-*
*փառ սրբոյ Աստուածածնի եւ Կարապետի եւ սրբոյ Առաքելոյ, յառաջնոր-*
*դութեան սրբասնեալ և մաքրափայլ երկուց հարազատից՝ տեառն* Սարգսի
*եւ* Ամբակումա, *զորս տէր Յիսուս պահեսցէ արտաքոյ ամենայն փորձու-*
*թեանց, ամէն։*
*Արդ, ի հինգերորդ ամի թագաւորութեան Հա[յ]ոց* Ղեւոնի *յաղթող եւ*
306ա *բարեպաշտի‖եւ ի հայրապետութեան տեառն* Գրիգորիսի *որ եւ յայսմ ամի*
*երկուս բաժանի եւ նստի* Անանէէ *ի* Կեսարիա: *Եւ արդ, ի յայսմ ժամա-*
*նակի գրեցաւ ամենագովելի եւ հռչակելի գերակատար եւ գերապանծ,*
*լուսայիղձ եւ աստուածապատումն սուրբ Աւետարանս չորեքճառագայ-*
*թեան ճշմարիտ աստուածախաւսութիւն, վսեմական աստուածաբանու-*
*թիւն, անգիտագործ եւ անհամեմատ ծայրածաւալ եւ ծայրագոյն վիպա-*
*սանութեամբ, ի կայէ կատարոյն բարձրանուն յամենազաւր եւ յամեն-*
*իմաստ տուչութենէ Հոգւոյն Սրբոյ առ լցեալ ի հայրաշարժ աղբիւրէն ար-*
*բեալ զբղխումն շընորհաց չորիցն աւետարանչաց քառ[ա]բղխիցն, սրբոց*
*աստուածակիր արանցն ընտրելոց շարադասեալ բայցափայլ արտաճա-*
*ռութեամբ, բարձրաբառբառ աւետարանութեամբ, յաղագս բանին Աստու-*
*ծոյ միածնին Հաւր մարմնաւոր ծննդեանն եւ մկրտութեան եւ ամենայն*
*տնաւրինական տնտեսութեան, զոր յերկրի կատարեաց Աստուած բանն*
306բ *յաղ[ագս]‖* փրկութեան ազգի մարդկան ընդ չորեքծագեան աշխարհս*

---

** Սույն էջի տառերը խիստ մաշված են։*

տպաւորեալ յամենայն հաւատացելոց անձինս ճշմարիտ երկրպագուաց
Սրբոյ Երրորդութեանն եւ յաղագս աստուածազաւր սքանչելեացն, զոր
յերկրի հրաշագործեալ բանն Աստուծոյ իւրով միացեալ եւ անորիշ աս-
տուածախառն մարմնովն զկուրաց տեսանել, կաղաց գնալ, բորոտաց սըր-
բիլ, անդամալուծից հաստատիլ, մեռելոց յառնել, դիւաց հալածել, ի վե-
րայ ծովու զգնալն, եւ որ այլեւս աստուածային զաւրութեանն գործք յաշ-
խարհ ամենայն յայտնապէս քարոզելով, եւ հալածելով զխաւար կռա-
պաշտութեանն, զԵրբորդութեանն ծաւալեցին զլոյս յոգիս մարգկան, աղ-
բիւր եդեմական չորիւք վտակեան յորդախաղացն գնացիւք ոռոգելով
զընաւ բնակիչս չորեքծագեան տիեզերաց զբոլոր բնութիւնս մարդկային
սեռի, նմանել աստուածաբարբառ աւետա[րա]նչանցն չորեքկերպեան
307ա կենդանեացն ի բարձունս մարդոյ եւ առիւծու, եզին եւ արծուոյ։ Այսու
ամենայնիւ հոգեւոր փարթամութեամբ եւ աստուածային ճոխութեամբ լի
եւ պատարուն գոյ աստուածապատում սուրբ Աւետարանս եւ այլեւս բազ-
մաւք, որ մեզ է անգիտելի, որով զուարճանան անզրաւ ուրախութեամբ
երկնաւինքն եւ երկրաւորքս, փառաւորելով զհամագոյ Երրորդութիւնն այժմ
եւ յաւիտեանս, ամէն։

Արդ, այսմ աստուածապատում եւ քրիստոսաւանդ տառիս ցանկացող
եղեա ես, տառապեալ յոքունց եւ անարժանս յորդիս եկեղեցւոյ **Ստեփա-
նոսս** մեծաւ փափաքանաւք եւ սրտաջան յաւժարութեամբ, բազում աշխա-
տութեամբ եւ յոգնատարժան երկաւք, քաջահաւատ յուսով եւ քրիստո-
սասէր բաղձանաւք ետու գրել զսուրբ Աւետարանս զայս ի փրկութիւն
կենաց իմոց եւ ի լուսաւորութիւն հոգւոյ իմոյ, գանձ յաւիտենական եւ
անկապուտ ճոխութիւն, ի յիշատակ ինձ, եւ ծնողաց իմոց՝ հաւրն **Կոս-
տանդի** եւ մաւր իմոյ բարեպաշտի, եւ քուերց, եղբարց իմոց **Վարգին եւ
307բ Մխիթարա, եւ||Թորոսի**, որ ի Քրիստոս փոխեցաւ, եւ ամենայն ազգակա-
նաց՝ կենդանեաց եւ մեռելոց, եւ ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ եւ
յուրախութիւն մանկանց նազելի մաւր մերոյ Նոր Սիովնի։ Եւ գրեցաւ
ձեռամբ **Ստեփանոսի** մեղապարտ եւ փցուն գրչի յ(ը)նտիր եւ ի ստոյգ
աւրինակէ ամենայն արհեստիւք լի եւ պատարուն, որ էր **Կաւզմաի** հռե-
տորի։

Արդ, աղաչեմ զսրբազան եւ զաստուածամերձ դասս քահանայիցդ
եւ զամենայն ընթերցասէր մանկունս եկեղեցւոյ, որք ընթեռնուք եւ լու-
սաւորիք յայսմ հրաշապայծառ եւ հոգեւոր կտակարանացս՝ զյառաջ յի-
շատակեալս զստացողն **Ստեփանոս**, եւ զամենայն ազգայինս իւր՝ զկեն-
դանիս եւ զմեռեալսն, յիշեսջիք առաջի զենլոյն Քրիստոսի, որոյ ողոր-
մեսցի Քրիստոս Աստուած եւ տացէ մասն յարքայութեան իւրում, ամէն։

Յիշեսջ[իք] եւ զբարի առաջնորդ սրբոյ ուխտիս զտէր **Սարգիս** ու
308ա զնորին հարազատ եղբայրն **զԱմպակում**, որք սգաս||տութեամբ եւ ար-
դարութեամբ առաջնորդեն եւ քաղցրութեամբ գթան ի վերայ ատարաց եւ
աղքատաց, որոց տացէ Քրիստոս Աստուած բարի փոխարէն աստ եւ ի
հանդերձեալսն, ամէն, զի յոյժ գթացեալ ի մեզ եւ հանգուցին ի վշտաց,
նաեւ որք համաւրէն միաբանեալ են սրբոյ ուխտիս ճգնաւորք եւ միան-
ձունք, ծերք եւ երիտասարդք՝ հանդերձ դասու քահանայից։ Եւ որք յայսմ

տեղւոյս ննջեցեալք իցեն, ամենեցուն ողորմեսցի Քրիստոս Աստուած, եւ զընտրեալ քահանայն Վարդան յիշեսջիք ի Տէր, զի բազում իրաւք ազգնական եղեւ մեզ, ընդ նմին զծերունի պատուական զԱւետիս քահանայ։ Յիշեսջիք զշնորհազարդեալ քահանայն զՍտեփանոս եւ զխաչանէսն առ Քրիստոս փոխոցեալ, եւ զվերջինս ամենեցուն զգրոյս գծողս Ստեփանոս, որ ցաւագին անձամբ աշխատ եղէ, եւ Տէր Յիսուս Քրիստոս առհասարակ յիշողացդ եւ յիշեցելոյս ողորմեսցի իւրում գալստեանն, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն։

Բ

145ա Տէր Աստուած ողորմեայ աշխատողի գրոյս և ծնողաց իւրոց, ամէն։

Գ

Զստացող սուրբ կտակիս զՍտեփանոս յիշեցէք ի Տէր և զծնողս նորա,
237բ [Յ]որում ողորմեսցի Քրիստոս Աստուած, եւ աշխատողիս եւ յիշողացդ, ամէն։

Դ

304բ. Կաշիս կա[ր]ծր է։

Ե

305ա Ո՜վ պատուականք, աղաչեմ զամենեսեան, ասասջիք Տէր Աստուած ողորմեա գծողին եւ ծնողաց իւրոց, ամէն։

Զ

Ծաղկող՝ Յովհաննես

3բ ԶՅովանէս երէցս յիշեցէք որ սակաւ մի աշխատեցայ*։

## 2

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 3274

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Աւագ վանք

ա

426ա Փառք փրկողին, զմեզ ազատողին, և յիշատակ գրչիս առաջի անմահին, յանմահ յաւիտեանին։

Աւրհնութիւն՝ որ կարդայ, գովութիւն՝ որ լսէ, փառք Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

* Գրված է երկու հանդիպակաց էջերում նկարված չորս (զույգ-զույգ), ավետարանիչներից Մաթևոսի և Մարկոսի նկարների տակ, ստորին լուսանցքում, նկարները կատարված են գրչության բավականին հետո։

*Յամի վեց հարիւրերորդի յիսներորդի թուականութեանս Հայոց*
*(1201), ի գաւառիս* Դարանաղեաց *ի լեառն* Սրբոյ Լուսաւորչին *մերոյ՝*
427 *մեծն* Գրիգորի,‖*մերձ ի յայրս* Սրբուհուն Մանէ, *ի ստորեւ ի խոնարհ*
*առաջի հանգստարանաց նոցին, յանապատիս, որ կոչի* Սրբոյն Գրիգո-
րի, *որ ինքն Սուրբ* Լուսաւորչին *մեր* Գրիգորիոս *կառուցեալ ձեռամբ իւ-*
*րով ի յանապատիս յայս մատուռ մի յանուն Սուրբ Կարապետին, ընդ*
*հովանեաւ այս Սուրբ Կարապետիս, գրեցաւ ամենագով և հռչակելի, գե-*
*րակատար և գերապանծ, գերապաճոյճ և յոքնատենչ, լուսայեղց և աս-*
*տուածապատում սուրբ Աւետարանս, չորեքճառագայթեան, ճշմարիտ*
*աստուածախաւսութիւն, վսեմական աստուածաբանութիւն, անգիւտա-*
*գործ և անհամեմատ, ծայրածաւալ և ծայրագոյն վիպասանութեամբ, ի*
*կայէ կատարոյ բարձրագունէ, յամենայզաւր և յամենիմաստ տուչութենէ*
*Հոգւոյն Սրբոյ աւլցեալ ի հայրաշարժ աղբիւրէն, ի հրածորանն հոսմանէ*
*արբեալ զբղխումն շնորհաց չորիցն աւետարանչաց քառաբղխիցն, սրբոց*
*աստուածակիր արանցն ընտրելոց շարադասեալ բացափայլ արտաճա-*
*ռութեամբ, բարձրաբարբառ աւետարանութեամբ, յաղագս բանին Աս-*
428 *տուծոյ միածնին Հաւր մարմնաւոր ծննդեանն և մկր‖տութեանն և ամե-*
*նայն տնաւրինական տնտեսութեանն, զոր ի յերկրի կատարեաց Աս-*
*տուածն բան յաղագս փրկութեան ազգի մարդկան ընդ չորեքծ́ագեան*
*տիեզերս տպաւորեալ յամենայն հաւատացելոց անձինս ճշմարիտ երկըր-*
*պագուաց Սրբոյ Երրորդութեանն, որպէս որդին Որոտման Յոհաննէս*
*յանստուերի լուսոյն ընկալաւ զծագումն շնորհաց և թեւաք Հոգւոյն հա-*
*սեալ յանիմանալիսն և բարձրաբարբառ որոտաց ի վերուստ, ասելով.*
*Ի սկզբանէ էր բանն, և բանն էր առ Աստուած, և Աստուած էր բանն։*
*Ամենայն ինչ նովաւ եղեւ։ Յուցանելով բոլորից զՈրդի համագոյ, փառա-*
*կից և արարչակից Հաւր, յառաջ քան. զամենայն յաւիտեանս։*

*Եւ յաղագս աստուածազաւր սքանչելեացն, զոր յերկրի հրաշագոր-*
*ծեալ բանն Աստուած՝ իւրով միացեալ և անորիշ աստուածախառն մարմ-*
*նովն, զկուրաց տեսանել, կաղաց գնալ, բորոտից սրբիլ, անդամալուծից*
*հաստատիլ, մեռելոց յառնել, դիւաց հալածել, ի վերայ ծովու զգնալն,*
*և որ այլ եւս աստուածային զաւրութեանն գործք յաշխարհ ամենայն*
429 *յայտնապէս քարոզելով, հալածելով զխաւար‖կռապաշտութեանն, զԵր-*
*րորդութեանն ծաւալեցին զլոյս յոգիս մարդկան, որով պայծառացեալ*
*բերկրի միշտ կաթուղիկէ եկեղեցի և մանկունքն Նոր Սիովնի, ցնծացեալ*
*հրճուին ի փառս և ի գովութիւն փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի։*

*Որ է հրաշապատում տառ աստուածային մատենիս այս սկիզբն հա-*
*ւատոյ, հիմն և խարիսխ անդրդուելի և սիւն հաստատութեան և ճշմարիտ*
*ճանապարհ փրկութեան, և առաջնորդ կենացն յաւիտենից, աշտանակ*
*պատուական, եւթնարփի լուսով Երրորդութեանն պայծառացեալ։ Դրախտ*
*աստուածատունկ, լուսերանգ, անոյշահոտ ծաղկաւք և անթառամ կանա-*
*չութեամբ վարսաւորեալ անմահական և քաղցրաճաշակ պտղովք պարա-*
*րելով զանձինս աստուածասիրաց։ Աղբիւր եդեմական, չորեքվտակեան,*
*յորդախաղացն գնացիւք ոռոգելով զընաւ բնակիչս չորեքծագեան եղե-*
*բաց տիեզերաց, զբոլոր բնութիւնս մարդկային սեռի։*

*Նմանեալ աստուածաբարբառ աւետարանչացս ե չորեքկերպեան*
480 *կենդանեացն ի բարձունս մարդոյ և‖առեւծու, եզին և արծուոյ։ Որ նշա-*
*նակէ մարդն զՄատթէոս, վասն զի նա ի մարմնաւորութենէն Տեառն*
*մերոյ արար սկիզբն, Գիրք Ծննդեան ասելով, և Յիսուսի Քրիստոսի*
*ծնունդն էր այսպէս։ Եւ առեւծն զՄարկոս, վասն զի նա առեւծաբար պատ-*
*մէ զելսն Յիսուսի ի* Յորդանանէ: *Իսկ եզինն դէմք զՂուկաս, վասն զի*
*նա որպէս զեզն վաստակասէր էր, և գործաւնեա եղեալ ի հոգ, և որ մշա-*
*կութիւնն զամենայն խորհուրդն կարգաւ պատմէ։ Եւ դարձեալ որպէս*
*զեզն պատարագի զենումն, ասէ, ածեալ զմիածինն; Իսկ արծուին զՅով-*
*հաննէս նշանակէ, վասն զի նա բարձրաթռիչ եղեալ ի վերուստ բարբա-*
*ռեցաւ ի հայրական ծննդենին։*
*Այսուամենայնիւ հոգեւոր փարթամութեամբ և աստուածային ճո-*
*խութեամբ լի և պատարուն գոյ աստուածապատում սուրբ Աւետարանս. և*
*այղ եւս բազմաւք, որ մեզ է անգիտելի, որով զուարճանան անզրաւ ուրա-*
*խութեամբ երկայինք և երկրաւորքս, փառաւորելով զհամագոյ Երրորդու-*
*թիւն այժմ և յաւիտեանս յաւիտ[ենից, ամէն]։*
481 *Արդ այսմ աստուածապատում և քրիստոսաւ‖անդ կտակիս ցանկա-*
*ցաւղ եղէ ես, տառապեալ և անարժան որդիս եկեղեցւոյ* Յովանէս *և*
*մեծաւ փափագանաւք և սրտաշան յաւժարութեամբ, բազում աշխատու-*
*թեամբ և յոքնատանջ երկաւք, քաջահաւատ յուսով և քրիստոսասէր բաղ-*
*ձանաւք գրեցի զսուրբ Աւետարանս ի փրկութիւն կենաց ինձ և ծնաւղաց*
*իմոց և եղբարց, և ի լուսաւորութիւն հոգւոց մերոց՝ գանձ յաւիտենական*
*և անկապուտ ճոխութիւն, ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ և յուրախու-*
*թիւն ուխտի մանկանց նազելի մաւր մերոյ Նոր Սիովնի։*
*Եւ գրեցաւ սա ***** և ի ստոյգ յաւրին[ակէ] և ամենայն ար-*
*հեստիւ լի և պատարուն՝ բան և տնհատ, հրաման և ստորատ, միջնա-*
*կտուր և վերնակէտ։ Եւ արդ աղաչեմ զաստուածային դասս քահանայու-*
*թեանցդ, որք ընթեռնույք և լուսաւորիք և փարթամանայք անթափելի*
*ճոխութեամբ յայսմ հրաշապայծառ և յաստուածային մատենէ, յիշես-*
*ջիք ի գերամաքուր և յերկնաթռիչ աղաւթս ձեր առաջի զենլոյն Քրիստո-*
*սի զամենամեղս* զՅովանէս *գրիչ և զծնաւղսն իմ և զեղբարսն։ Յիշեսջիք*
482 *ի Քրիստոս զգիտնական և զարդիւնական վարդապետս‖*զԿոստանդ, *որ*
*եղեւ մեզ վանատու և հանգուցիչ և պատճառ այսմ իրագործութեանս, զոր*
*արժանի արասցէ Քրիստոս ընդ երջանիկ սուրբ վարդապետացն վերա-*
*դասիլ ի խորանսն լուսոյ. ընդ նմին և զեղբայր իւր* Աստուածատուր
*յիշեսջիք ի Քրիստոս։ Յիշեսջիք և* զՅովաննէս *քահանայ, սպասաւոր*
*սուրբ և գերահռչակ Սուրբ Կարապետիս, և զհայր իւր, և զեղբայրսն ի*
*սուրբ աղաւթս ձեր։ Յիշեսջիք և* զԹաւսեղն *և* զՄարախտոս *մ[իա]յնակեացն*
*յարժանաւոր աղաւթս ձեր։ Ընդ նմին յիշեսջիք և* զՄխիթար *քահանայ և*
*զտէր* Սիմէոն: *Յիշեսջիք և զտառապեալ գրիչս* զՅովաննէս, *որ բազում*
*աշխատութեամբ և տառապանաւք գրեցի զսուրբ Աւետարանս զայս։ Այլ*
*և յիշեսջիք զյառաջասացեալ վարդապետն մեր* զ[Կոստանդ], *և զպարոն*
*հայրն իւր* Սարգիս, *և զմայրն, որ զաւրինակն շնորհեաց մեզ՝ անխնայ*
*և բազում յաւժարութեամբ։*

Քրիստոս Աստուած, այն որ հատուցանողն բարեաց, հատուցանէ միոյն հարիւրապատիկ և զերկնային ողորմութիւնն, և ընդ սուրբս դասեսցէ զնմա հոգին։

Յիշեսջիք և զՆերսէս բազմամեղս, որ ըստ իմում կարի աշխատեցայ ի գրելս, նաեւ զծնաւղսն իմ, և զեղբա[յ]րն իմ։ Եւ ինքն Քրիստոս զյիշողքդ հանդերձ յիշեցեալս արժանի արասցէ և իւրում արքայութեանն ընդ սուրբս իւր, և նմա փառք, իշխանութիւն և պատիւ այժմ, և միշտ, և յաւիտեանն յաւիտենից, ամէն։

Բ

118ա Քրիստոս Աստուած, զքո սուրբ զԱւետարանս առ քեզ միջնորդ եւ բարեխաւս ունիմ, ողորմեա Ղազար վարդապետի ի քեզ յուսացելոյ, եւ ինձ անպիտան ծառայիս քում Յովանէսի, եւ ծնաւղաւց իմոց եւ զարմից եւ ամենայն հաւատացելոցս ի քեզ, կենդանեաց եւ մեռելոց, ամէն։ Եւ քեզ ընդ Հաւր եւ ընդ Հոգւոյ եւ Սրբոյ փառք յաւիտեանս, ամէն։

Յայսմ վայրի աղաչեմ յիշեսջիք զԽաչաղբայր, որ բազում սէր եցոյց առ մեզ։

Գ

Տէր իմ եւ Աստուած Յիսուս Քրիստոս, զքո աստուածային գթութիւն առ քեզ բարեխաւս ունիմք եւ ճշմարիտ մարդեղութիւն քո, եւ զկիրս անհասանելի եւ սոսկալի չարչարանաց քոց, եւ զաստուածախաւս եւ զկենեղուտ աւետագիր կտակս քո։ Վասն այսր ամենայնի ողորմեա մեղապարտիս Յովանէսի սուտանուն գրչի, եւ Ղազարու ծերացելոյ սուրբ վարդապետի աւրինակիս զարդարչի՝ ի քեզ յուսացելոցս, եւ եղբարց մերոց, եւ ծնաւղաց եւ զարմից մերոց, եւ ամենայն հաւատացելոց։

Դ

Եւ որք կարդայք և ընդաւրինակէք անմոռաց յիշեսջիք, և զձեզ ողորմեսցի Քրիստոս, ամէն։

Ե

145ա Յայսմ վայրի եկն ծերունին միայնակեցն Մարտիրոս և եբեր մեզ տաք բաղարջ ի պատճառս սիրոյ, հատուսցէ նմա Տէր։

Զ

325ա Քրիստոս Աստուած իմ, զաւրութիւն իմ և աւ<ր>գնութիւն, ապրեցուցիչ իմ և փրկիչ, յոյս իմ և ապաւէն, զքեզ աղաչեմ և ի քէն հայցեմ, և զքո ինքեան զաստուածախաւս և զաւետաքարոզ կտակս առ քո հեզութիւնդ միջնորդ և բարեխաւս ունիմ, ողորմեա եղկելի և բազմամեղ անձին իմոյ գրչի և ազատեա զիս ի յանցանաց մեղաց իմոց և զաշխատութիւն իմ համարեա ի փրկութիւն ոգւոյ անպիտանիս։

*Յիշեա Տէր գթած և զսուրբ վարդապետն զՂազար՝ հանդերձ հարազատաւն Ասատւածատրիւ, հեզոց և խոնարհաց և Աստուծոյ հաճոյից և մարդասիրաց, ագնեա և փրկեա ի փորձութենէ, ամէն։*

*Ընդ նմին և Յովանիսի հաւր ողորմեա, Տէր, և քեզ փառք յաւիտեանս, ամէն։*

Է

426ա Յովանիսի *մեղապարտ գրչի ողորմեսցի Քրիստոս Աստուած, եւ ծնաւղաց իւրոց, եւ եղբաւր, եւ համաւրէն ամենայն հաւատացելոց՝ կենդանեաց եւ մեռելոց, ամէն։*

Ը

*Պատկերագրիչ՝* Սարգիս

118ա *Եւ զիս՝ զանարժան և զնուաստ և զվերջացեալ մեղաւք սարկաւրկս և պատկերագրիչս* զՍարգիս, *ո՛վ սուրբ կրոնաւորք և ընթերցող սուրբ Աւետարանիս, յիշեսցուք ի ձեր սուրբ աղաւթքտ և դուք յիշել լիցիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ, ամէն, և զոր///**

3

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երուսաղեմ 3349*

*Գրիչ՝* Ղազար
*Վայր՝* Ս. Գրիգորի վանք

ա

610 *Փառք փրկողին, զմեզ ազատողին, և յիշատակ գրչիս, առաջի անմահին, յանմահ յաւիտենին։*

*Աւրհնութիւն, որ կարդա, գովութիւն, որ լսէ, փառք Սուրբ Երրորդութեանն, յաւիտեանս յաւիտենից։*

*Յամի վեցհարիւրերորդի յիսներորդի թուականութեանս Հայոց (1201), [ի թագաւորութեան մերոյ ազինս բարեպաշտ արքային* Լեւոնի, *ի նահանգին* Կիլիկիոյ*]**, ի գաւառիս* Դարանաղեաց, *ի լեառն* Սրբոյ Լուսավորչին *մերոյ մեծին* Գրիգորի, *մերձ ի յայրս* Սրբուհւոյն Մանէի, *ի ստորեւ և խոնարհ առաջի հանգստարանաց նոցին, յանապատիս, որ կոչի* Սրբոյն Գրիգորի, *ընդ հովանեաւ նորին, գրեցաւ ամենագով և հըռ-*
615 *չակելի, գերակատար և գերապանծ, գերապաճոյճ և յոքնատենչ, լուսայեղծ և աստուածապատում սուրբ Աւետարանս...*** փառաւորելով զհամագոյ Երրորդութիւնն այժմ և յաւիտեանս։*

*Արդ, այսմ աստուածապատում և քրիստոսաւանդ կտակիս ցանկացող եղէ ես՝ տառապեալ և անարժան որդիս եկեղեցւոյ* Ղազար, *և մե-*

---

* *Մի բառ չի կարդացվում։*

** *Փակագծերի մեջ բերված հատվածը գրված է ստորին լուսանցքում, այլ գրչությամբ։*

*** *Բաց ենք թողնում մի հատված, որը նույնությամբ առկա է նախորդ հիշատակարանում։*

ծաւ փափաքանաւք և սրտաչան յաւժարութեամբ, բազում աշխատու-
թեամբ և յոքնատանջ երկաւք, քաջահաւատ յուսով և քրիստոսասէր բաղ-
ձանաւք գրեցի զսուրբ Աւետարանս զայս, ի փրկութիւն կենաց ինձ և
եղբաւր իմոյ Աստուածատրոյ և ի լուսաւորութիւն հոգւոց մերոց՝ գանձ
յաւիտենական և անկապուտ ճոխութիւն, յիշատակ մեզ և ծնաւղաց մե-
րոց և ամենայն զարմից, ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ և յուրախու-
թիւն ուխտի մանկանց նազելի զարմից Նոր Սիոնի։
616 Եւ գրեցաւ սա յընտիր և յստ‖ոյգ աւրինակէ, ամենայն արհեստիւ
լի և պատարուն, բան և տնհատ, հրաման և ստորատ, միջնակտուր և
վերնակէտ։ Եւ գրեցաւ սա փոքրագոյն հասակաւ, վասն գիւրաբարձիկ
լինելոյ ի շրջանապտոյտ և ի խռովասէր ժամանակիս և դառն դիպող
աւուրցս բերմանց։
Եւ արդ աղաչեմ զաստուածային դասս քահանայութեանցդ, որք ըն-
թեռնոյք և լուսաւորիք և փարթամանայք անթափելի ճոխութեամբ յայսմ
հրաշապայծառ և յաստուածային մատենէ, յիշեսջիք ի գերամաքուր և
յերկնաթռիչ աղաւթս ձեր՝ առաջի զենլոյն Քրիստոսի զամենամեղս Ղա-
զար գրիչ և զեղբայր իմ զԱստուածատուր քահանայ, որ միշտ սպասա-
ւորէ մերում տկարութեանս, և զծնաւզսն մեր։ Յիշեսջիք ի Քրիստոս
զգիտնական և զարդիւնական վարդապետ մեր զԿոստանդ, որ եղեւ մեզ
617 վանատու և հանգուցիչ և պատճառ այսմ իր‖ագործութեանս, զոր ար-
ժանի արասցէ Քրիստոս ընդ երջանիկ սուրբ վարդապետացն վերադա-
սել ի խորանս լուսոյ։ Յիշեսջիք և զտէր Յակոբս, և զհայր Արիստակէս
և զՍտեփանոս միայնակեաց, և զԹորոս՝ նորին սպասաւոր, զհայր Աս-
տուածատուր և զՊապանուն, որոց ողորմեսցի Քրիստոս Աստուած։ Յի-
շեսջիք և զվարդապետսն մեր՝ զԱռաքեալն, զԽաչատուր, զԿարապետն,
զՅովհաննէս ծեր, զՎարդան, զՅուսիկն, և զհայրն իմ զՍարգիս, և զմայ-
րըն՝ Քրիստոսասէր, նաեւ զամենեսեան, որք հոգւով միաբանեալ են ընդ
մեզ՝ զկենդանիս և զմեռեալս։
Այղ, որ Տէրդ ես ամենայնի, դու ողորմութեամբ յիշողքս յիշեցե-
լովքն արժանաւորեա քոյին սուրբ արքայութեանդ, և քեզ փառք ընդ
Հաւր և ընդ Հոգւոյդ Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Այղ և որք
ընդաւրինակէք, աղաչեմ յիշեսջիք միով Տէր ողորմեայիւ և զիմս անուն
ի ձեր յիշատակի։

Բ

617* Գրեց[աւ սուրբ Աւետ]արանս յանապատիս ի Տրի///նիս, ի դուռն-
Սուրբ Աստուածածնի, ի ՈՆԱ (1202) թուականիս։

Գ

179 Քրիստոս Աստուած, զքո սուրբ Աւետաբանս առ քեզ միջնորդ և բա-
րեխաւս ունիմ, ողորմեա ինձ՝ անպիտան ծառայիս քում Ղազարու՝ ի քեզ
յուսացելոյ, և եղբաւր մերոյ Աստուածատրոյ, և ծնաւղաց մերոց, և զար-
միցս, և ամենայն հաւատացելոցս ի քեզ՝ կենդանեաց և մեռելոց, ամէն, և
քեզ ընդ Հաւր և ընդ Հոգւոյդ Սրբոյ փառք յաւիտեանս, ամէն։

Դ

289 Տէր իմ և Աստուած Յիսուս Քրիստոս, զքո աստուածային գթութիւնդ առ քեզ բարեխաւս ունիմք և զճշմարիտ մարդեղութիւն քո և զկիրս անհասանելի և սո[ս]կալի չարչարանաց քոց, և զաստուածախաւս և զկենեղուտ աւետագիր կտակ քո։ Վասն այսր ամենայնի ողորմեա մեղապարտիս Ղազարու գրչի՝ ի քեզ յուսացելոյ, և եղբաւր իմոյ Աստուածատրոյ, և ծնաւղաց և զարմից մերոց, և ամենայն հաւատացելոց։ Եւ որ կարգ[ա]ք և ընդաւրինակէք՝ անմոռաց յիշեսջիք։

Ե

475 Քրիստոս Աստուած իմ, զաւրութիւն իմ և աւգնութիւն, ապրեցուցիչ իմ և փրկիչ, յոյս իմ և ապաւէն, զքեզ աղաչեմ և ի քէն հայցեմ և զքո ինքեան զաստուածախաւս և զաւետաքարոզ կտակդ առ քո հեզութիւն միջնորդ և բարեխաւս ունիմ։ Ողորմեա եղկելի և բազմամեղ անձին իմոյ գրչի և ազատեա զիս ի յանցանաց մեղաց իմոց, և զաշխատութիւն իմ համարեա ի փրկութիւն ոգոյ անպիտանիս։ Յիշեա, Տէր գթած, և զեղբայր իմ զԱստուածատուր, աւգնեա և փրկեա ի փորձութենէ, նաեւ ամենից ողորմեա, Տէր, և քեզ փառք յաւիտեանս։

Զ

609 Ղազարու մեղապարտ գրչի ողորմեսցի Քրիստոս Աստուած, և Աստուածատրու, հաւատացելոց՝ կենդանեաց և մեռելոց։

Սուրբ Աստուած Տէր Յիսուս Քրիստոս, վասն սուրբ եւ աստուածախաւս կտակի քո ողորմեա Ղազարու գրչի և ջնջեա զպարտիս մեղաց նորա, ամէն։

4

ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 1525

Գրիչ՝ Յովաննէս

ա

5 Զմեղսամակար[դ]ս եւ զաղկաղկս զՅովաննէս յիշեայ ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր։

բ

18ա Զստացողս եւ զգրողս զՅովաննէս յիշեա։

գ

Գրիչ՝ Գէորգ

97բ Յիշեսջիք ի սրբամատոյց յաղաւթս ձեր զՅովաննէս քահանայ զառաջի գիծն, որ սկսաւ կատարել և ոչ ժամանեաց, այլ փոխեցաւ ըստ աստուածային կամացն*։

* Հովհաննեսը գրել է Ա—Թ պրակները (տասական թերթից՝ 90 թերթ), որից պահպանվել է 48 թերթ։ Ձեռագիրն սկզբից թերի է։ Ժ պրակից (49 էջ), շարունակել է հայրը՝ Գէորգը։

Ես՝ Գէորգ, հայր Յովանիսի, յանձն առեալ խաւար աշաւք, թերեւս կարացից կատարել զյիշատակս Յովանիսի՝ ինձ ծնողիս, եւ Յովանիսի և Մխիթարշին մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ։

Դ

110բ Աղաչեմ զընթերցողսդ զԳէորգ մեղապարտ յիշեսջիք ի յաղաւթս ձեր։

Ե

142ա Աղաչեմ յասմ վայրի զՅովանէս ղառաջիգիծն, եւ զԳէորգ եւ զՄխիթարիշն, որ ձեռնատու եղեւ գրոցս, յիշեսջիք յաղաւթս ձեր, աղաչեմ։ Քրիստոս Աստուած սուրբ Սարգսի բարեխաւսութեամբ ողորմեայ մեղուցեալ ծառայիս՝ սուտանուն քահանայի։

Զ

192ա Յիշեսջիք ի Քրիստոս զսուտանուն քահանայ զԳէորգ, եւ զառաջինգիծն զՅովանէս, որ տարաշխարհ էլաւ ի յայս կենացս, եւ զծնողս մեր Խաչատուր քահանայ, եւ զամենայն զեղբարս մեր, որք ի Քրիստոս փոխեցան։ Եւ զՄխիթարիշ, որ ակտակար եղեւ աւարտելոյ յառաջագիր գրոցս եղբաւր իւրոյ, եւ զծնողս սոցա յիշեսջիք։

Եւ խոշորութեան գրոցս անմեղադիր լերուք։ Լուր վասն յիշատակութեան չկորուսի առ հասարակ։ Յիշեսջիք զմեղապարտ Գէորգ:

Է

220բ Ի թուիս ՈՆ (1201), ի ժամանակս բարեպաշտ ամիրսպասալար Զաքարիայի, ի հրոտից ամսեան, բովանդակ ԻԲ (22) աւր թաթաւ եկն եւ գետ յարոյց եղեւ։

Ը

276բ ԶԳէորգ գրիչ՝ զմեղուցեալ ծառա յիշեսջիք ի Քրիստոս, աղաչեմ զամենեսին, խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք։

Թ

303ա ԶԳէորգ մեղուցեալ գրիչ յիշեա, զի եմ յողորմելեացն եւ ոչ ի նախանձելեացն։

Ժ

319բ ԶԳէորգ գրիչ յիշեցէք։ Այլ աղաչեմ զընթերցողսդ ի յայս վայրի Ամբիծք ասել, զի պարտաւոր եմ*։

88բ-ի ստորին լուսանցքից սկսվում է «Պատմութիւն Մարիայի վաճառականի և սքանչելեացն Աստուծոյ, զոր եցոյց ի յաւգուտ ամենայն խոստովան[ողաց]» և շարունակվում է մինչև 121բ-ի լուսանցքը։ Ստորին լուսանցքը կտրելու հետևանքով, անհետացել է գրիչի անունը։

* Գրված է «Սուրբ Յարութեան» ճառից առաջ։

ժա

445ա ԶԳէորգ մեղապարտ ղգծողս, եւ ղորդի իմ զՄխիթարիչ անուն, որ զնիւթս ետ անտրտունջ ի յիւր հալալ վաստակաց ի յիշատակ իւրն եւ ղիս՝ զստացանուն գրողս յիշեսջիք ի սրբամատոյց յաղաւթս։ Եւ աղաչեմ զամենեսեան մի մեղադրէք, ղի ոչ էի տեղեկ բայից եւ բառից, այլ բնաւ չունէի, վասն այնր յաւժարեցայ ի ժամ ծերութեանս, ղի զառաջի զգիծն Յովանէնէս սկսեալ, եւ տարաժամ փոխեցաւ յաշխարհէ։ Այս Յովանէս եւ Մխիթարիչս եղբարք էին։ Յիշեսջիք եւ զգրողս, որ հայրս եմ։

ժգ

452բ Սուրբ Աստուածածին Մարիամ
լեր բարեխաւս մեղոցելոյս
Առ որդիդ քո եւ Աստուած մեր,
զի ողորմեսցի ողորմելոյս։

5

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 3793 (1053 թ.)

Գրիչ՝ Բանէրգէս

310ա Կազմեցաւ Աւետարանս այս ի թուականիս ՌՄ (1201),
Ձեռամբ Յակովբոսի,
Հրամանաւ Վարդայ քահանայի,
Եւ որդւոցն իւր հարազատի՝
Կոստանդեա և Ջաւ[ր]ավարի*
Եւ տիրուհեացն գովելի,
Նշի եւ Որմէն ինքն կոչի,
Շաֆարի եւ Խնձորի,
Եւ Մարեմի մաւրն ամենի։
Յիսուս Քրիստոս ողորմեսցի,
Յաւուրն աներեկի,
Ի դատաստանն յայն սոսկալի,
Ուր Որդի փառաւք գա հայրենի,
Իբր դատաւոր բազմեալ Նըստի,
Ի դատաստանն յայն սոսկալի.
Երկոտասանքն հաւն բազմին,
Եւ զհատուցման տան ըստ արժանին։

---

* Երկու բառ ջնջված է և այլ թանաքով նրանից վերև տողամիջում գրված է «Եւս և Հ///այի. և դըստեր նորայ Մանանայի ողորմեա»։ Ձեռագիրը հետո անցնում է այս Մանանային, ինչպես երևում է հետագա հիշատակարանից (էջ 310բ)։

Եւ արդ յորժամ փողով անդ ժողովին,
Եւ արդարքն զեկայքն առնուն բաժի[ն],
Համ, ուր արդարքն պսակին։
Վարդեր քահանայ հան[դերձ որ]ւդովք,
Հարազատաւք բարի բուսովք՝
Հանդերձ///
Սուրբ Գրիգորի սպասաւորաւք
Առց[ե]ն բաժին///*
Ընդ Մով[սիսի] եւ Ահարոնի,
Ընդ Պետրոսի և Պաւղոսի,
Ի Քրիստոս Յիսուս ի Տէր մ[եր] աւրհնեալ, յաւիտեանս, ամէն։
Միխայլի ոսկե[րիչի,
Աւ]ետարանս զայս շնորհողի,
Ջատավարի քահան[այի,
Դստ]երն իւր անդրանկի՝
Որմենի՝ Հայf** ինքն կոչի,
Եւ [զնոցայ]ն ամենայնի,
Յիսուս Քրիստոս ողորմեսցի։
Եւ որ յիշեա յիշեալ լիցի[ի
Յաւ]ուր մեծի յապագայի,
ՋԲանճերգէս անպիտան[ի,
Որ] զայս գիծ գրեցի,
Յիշելոյս արժանասցի,
Եւ յայսմ Քրիստոս [Թագաւ]որի
Եւ նմա փառք յամենայնի; ամէն։

6

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԻՄԱՍՏՈՒԹԵԱՆ ՍՈՂՈՄՈՆԻ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

Երուսաղեմ 559 (1809 թ.), Ն. Պողարյան, Ցուցակ Բ, էջ 587

Գրեցաւ իմաստատիպ, հանճարունակ, աստուածախաւս մատենիս այս սրբոյ առն Աստուծոյ Սողոմոնի թարգմանութեանս, արարեալ քրիստոսակիր եւ հոգիընկալ անձին Ներսէսի սրբոյ և մաքրամիտ եպիսկոպոսի նշանաւորն Տարսոնի, ընդ բազմաշխատ բանից երկնային գանձուց կանխաւ ի վերջոյ եւ զայս, աննախանձ իմացող մտաց արդարև սխրացուցիչ, ի թուիս Հայոց ի ՈԾ (1201)։

Եւ զիարդ ոչ՝ որ ի մեղաց սառուցեալ գարուս լուսատու ոգւոց բանի առատ ի Հոգւոյն Սրբոյ բղխմամբ յեկեղեցիս Քրիստոսի պայծառ եւ արթուն սրտին յայտնեցաւ։ Որ ի տխուր եւ յանլոյս ոգւոց աւուրսս ի մարմնի

* Մի բառ չի կարդացվում։
** Որմենը հավանաբար Արմենը անունն է։

արութեան վաստակօք անազդ շահ Հոգւոյն ճարպով յաստուածուստ փայլեալ ծագեցաւ։ Սա եւ նորին անսխալ.առաքինութիւն բանիւ ընդ գրոյ տիրապէս ահա ոչ պարագրի, բայց թէ յինքնածագ անընթաց արեւուն յայտնութեան աշխարհի սպասողացն ստուգիւ սփռեալ ցուցանի, ընդ այլ բազմազան գաղտնի բարեաց մարդկան, զոր ունի անեղծ գծով Աստուած առ ինքեան։

Այս սուրբ քննեաց զՕրգարանս Դաւթի պարզ եւ մեկին բանիւ, խորին եւ ախորժ դիմօք, հաւանական եւ տռփելի անձին ունողի երկեղ եւ իմաստս։ Սա մեկնեաց եւ զխորին խորհուրդ սրբոյ եւ սսրսափելի խորհըրդոյ Պատարագի մեղսաքաւիչ ապրեցուցչին մերոյ ամոքիչ եւ թռուցիչ բայիւ սրտի, որ յերկինս նայի։ Զոմանս յայլոց լեզուի արաւրոց (") եւ զկէսս ինքեամբ արարուածոյ եւ ձեռնին երկոց ի լոյս էած եւ յանդիման կացոյց զանյայտ խօսուն մարգարիտս իմաստից, եւ եթող Սիօնի նորոյ մանկանց ի հրճուանս ճաշակոց կենաց սեղանաւորեալ։

## 7

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Վենետիկ 22, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 167—168

Գրիչ՝ Բասիլ
Վայր՝ Հռոմկլա

ա

182բ Յամի Ո որդի յիսներորդի, թուաբերութեան Հայկազան տումարիս (1201), գրեցաւ աստուածախաւս և հոգելից Իմաստութիւն առակախաւս երգ մեծի իմաստնոյ և արքայի Սողոմոնի, ձեռամբ իմով Բասլի սարկաւագի՝ նորակերտ և դեռաբոյս, ոչ համարեալ ի գրչութեան, ի խնդրոյ և հրամանաւ քրիստոսասէր և ամենիմաստ, ամենագով և ամենաւրհնեալ և ամենաբարի և բարեպաշտ իշխանի և իշխողի մերոյ և///պարծանաց պարոնի Միխայլի՝ եղբաւր կաթողիկոսի Հայոց, որոյ յիշատակն նոցա եղիցի աւրհնութեամբ, ի վայելումն և ի վարժումն իւր, և յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց, զոր պահեսցէ զսա Տէր Աստուած խաղաղութեամբ և բազում ժամանակաւ։

Գրեցաւ սա յաթոռս սուրբ՝ ի Կլայս Հռովմեական, ընդ հովանեաւ սրբոյ տաճարիս Սրբոյն Գրիգորի, և առաջի աստուածընգալ և համագումար սրբոցս, ի ստոյգ և յընդիր և ի լաւ աւրինակէ, աստուածապատիւ և քրիստոսալոյս, գերահռչակ վարդապետի և հայրապետի տեառն Ներսիսի՝ հաւրեղբաւր պարոնիս, դրեալ աստուածային և սուրբ մատամբ իւրով, և ի հայրապետութեան և յաթոռակալութեան աստուածապատիւ և տիեզերալոյս և գերահռչակ վարդապետին Գրիգորիսի եղբայր <եղբաւր> սմին, զոր պահեսցէ Քրիստոս Յիսուս ամրածածուկ աջով իւրով զհայրապետս և զվերակացուս մեր, և զհարազատ եղբայրս իւր զպարոն Միխայլն և զպարոն Վասիլն, և տացէ սոցա Տէր Աստուած կըր-

կին կենդանութիւն բաղում ամաւք և ժամանակաւք, և զծնողս սոցունց ըստ մարմնոյ, և զեղբարս սոցա՝ զտարաժամ գնացեալսն առ Քրիստոս՝ դասակից և պսակակից արասցէ Որդին Աստուծոյ ամենայն սրբոց և սիրողաց իւրոց։

Արդ՝ աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք և լուսաւորիք ի սմանէ կամ աւրինակէք, յիշեսջիք… և զանարժան գծողս զԹասիլ և զծնողս իմ, և խոշորութեան և սխալանաց անմեղ///

բ

84 Տէր Յիսուս Հաւր Միածին,
Տուր վայ[ել]ել զսա ստացողին,
Պարոն Միխայլի մեծի իշխանին,
Եղբաւր Հայոց հայրապետին։
Եւ տուր նմա զհանճար վերին,
Ջանճառ իմաստ հոգևորին,
Վայելել զայժմու իշխանութիւն
Եւ զյաւիտեանցտ մեծութիւն։

գ

126ա Տէր Յիսուս վայելել տացէ զերգս Սողոմոնի
Բարեպաշտ պարոնին Միխայլի՝
Եղբաւր տեառն Գրիգորիսի,
Հայոց մեծաց հայրապետի,
Ազգաւ են մեծ և Պաճլաւունի,
Եւ որդի մեծ սևաստաւսին Ջաւրավարի:

դ

206բ Սեբաստաւսն Հեթում յիշեսջիք ի Քրիստոս։

8

ՃԱՌՔ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

Երուսաղեմ 972 (1714 թ.), Ն. Պողարյան, Ցուցակ Գ, էջ 549

Վայր՝ Սիս

ա

1ա Սկիզբն գրոցս, որ կոչի Անդրիանդեա՝ ասացեալ սրբոյն Յոճաննու Ոսկեբերանի, եւ տրամադրեալ գլուխս Լ Ա(31)ն, որում պարունակին ճառք եւ պատմութիւնք եւ ներբողեանք ոգեշահք, օգտակարք եւ պիտանացուք։ Թարգմանեցեալ յունականէն ի հայս յաւուրս հայրապետութեան տեառն

Գրիգորիսի կաթողիկոսի եւ քրիստոսապսակ արքային Հայոց Լեւոնի, ըստ խնդրոյ երանելոյն Ներսէսի Լամբրոնեցւոյ, յամի Տեառն ՌՃՂԸ (1198) եւ Հայոց ՈՃԽԷ (1198), գաղափարեցեալ ՈՃԾ (1201) թվին Հայոց, ի Սիս:

Բ

244բ Զտէր Ներսէս յիշեսջիք ի Քրիստոս, որ ի սոյն ամի հանգեցաւ ի Քրիստոս*։

* Գաղափար օրինակից է, վերաբերում է 1198 թվականին։





9

## ՄՇՈ ՏԱՒՆԱԿԱՆ ՃԱՌԸՆՏԻՐ

*Երևան 7729*

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ [Աւագ վանք]*

ա

3ա *Ո՜վ սուրբ անաւրինութիւն Աստուծոյ, ողորմեա ստացողի սուրբ կտակիս պատրոն* Աստուածատրին, *եւ ծնաւղաց իւրոց, եւ հարազատ եղբարցն պատուական քահանային* Աւետեաց *եւ այղ եղբարցն, եւ ամենայն աշխարհի, եւ ետնեալ գծողի, եւ քեզ փառք, որ տաս զշաւրութիւնն, որ եւ կատարեսցի***։*

բ

6բ Վարդան *յիշեսցի ի Տէր****։*

գ

27բ *Քրիստոս Աստուած ողորմեա* Բարսեղին, *որ զաւրինակս պատրաստեաց, ամէն։*

դ

55բ *Ջստացողք եւ զաշխատողք յիշեցէք ի Քրիստոս, եւ Աստուած զձեզ յիշեսցէ։*

ե

65բ *Ջստացող լուսափայլ կտակիս զպատրոն* Աստուածատուր *եւ* զԱւետիս, *եւ զգծագիրս* Վարդան, *եւ զամենայն հաւատացեալս յիշեցէք ի Քրիստոս, աղաչեմ։*

զ

73բ *Ջստացող սուրբ կտակիս զպատրոն* Աստուածատուր, *և զծեր* Յակոբ *վարդապէտ յիշեցէք ի Տէր։*

*Ջգծագիրս* Վարդան *յիշեցէք, եւ Աստուած զձեզ յիշէ ամէն*****։*

---

* *Ձեռագրի մասին տե՛ս Ա. Մաթևոսյան, Ե՞րբ և որտե՞ղ է գրվել Մշո Տոնական Ճառընտիրը (Բանբեր Մատենադարանի, № 9, Երևան, 1969, էջ 137—162)։*

** *Գրված է զարդագրի մեջ։*

*** *Գրված է Սողոմոն Մաքենոցաց վարդապետի հիշատակարանից հետո։*

**** *Առաջին նախադասությունը գրված է գլխագրի վերևում, երկրորդը՝ նրանից հետո վերնագրի վերջում։*

## Է

105ա Կատարեցաւ կարգ ընթերցման գիշերային պաշտաման. մեծի ծննդեան եւ յայտնութեան մերոյ Յիսուս Քրիստոսի, ճառք ԿԴ (64), յորս Հայցեմ յետնեալ գծագիրս յիշել յաղաւթս, զի ողորմեսցի Քրիստոս բարեխաւսութեամբ մաւր քո ինձ և ծնաւղաց իմոց եւ եղբարց իմոց։
Աստուած յաւիտենական, միածին Որդի և բան Հաւր, որ խոնարհեցաք ի հայրական ծոցոյ եւ յարգանդի կուսին, իննամսեա ժամանակ բովանդակեալ պարունակեցաք եւ միացուցեալ ի մի բնութիւն, զապականացուս եւ զմեռեալս ընդ անմահ և ընդ անապական աստուածային քոյս բնութեանդ, եւ ծնար անապական եւ անաղտ յանարատէն Մարիամայ սրբոյ կուսէն վասն ամենայն յանցուցեալ պարտաւորաց, աղաչեմք զքեզ Որդի միածին Աստուած եւ ծագումն անճառելի էութեան Հաւր, քոին սուրբ ծննդեամբդ եւ անապական սուրբ մաւր քո բարեխաւսութեամբ, եւ Սուրբ Կարապետին քո և Մկրտչին Յովաննու, եւ ամենայն սրբոյ գնդիցն որք եղեն խորհրդակից խորհրդածութեան անճառելի քոին ծննդեան, յիշեա զմեծ պատրոնն զԱստուածատուր՝ զծառային քո, եւ զբարի ծնաւղսն նորա՝ զծառայսն քո՝ զաստուածասէր պատրոն Վասուան եւ զպատուեալ բարեպաշտուհին Հռիփսիմեա, եւ զպատուական որդիս իւրեանց զստա-
105բ ցող կտակիս զամենաւրհնեալն Աստուածատուր, եւ զշնորհաւզարդ քահանայն Ամեեաց, եւ պատուականին Յովաննիսի, եւ այղ եղբարցն, որ մեծաւ յուսով զսա ի քեզ ստացաւ, եւ ողորմեա եւ ազատեա ի կապանաց մեղաց, ամէն։
Եւ զիս յիշեա, Քրիստոս Աստուած, զմեղաւոր գրողս Վարդան, եւ զծնաւղսն մեր բարի, եւ զեղբարսն զԲարսեղն եւ զայղսն, եւ զսպասաւոր քահանայս Գէորգ, որպէս զի արժանի լիցուք փառաւորել զՀայր եւ զՈրդիդ եւ զՍուրբ Հոգին յաւիտեանս, ամէն*։

## Ը

130բ Զստացող սուրբ կտակիս զպատուական պատրոնն զԱստուածատուր եւ զբարի ծնաւղս նորա յիշեցէք ի Քրիստոս Յիսուս, ամէն։ Եւ գծագիրս Վարդան եւ զծնաւղսն իմ, եւ Աստուած զձեզ յիշեսցէ, ամէն։
ԶՔրիստոսատուր Հայր, որ յայսմ ամի վախճանեցաւ, յիշեցէք ի Տէր։

## Թ

157բ Աստուած ողորմի նմա, որ զՃառս երեր, ամէն**։

## ԺԱ

213բ Զստացող սուրբ կտակիս եւ փափագող յիշատակիս զամենաւրհնեալ պատրոն Աստուածատուրն եւ զբարի ծնաւղսն իւր յիշեցէք ի Քրիստոս

* Այս հիշատակարանի մի մասը 1870 թ. վերստին արտագրել է Մամբրե վարդապետը 93բ էջում։

** Գրված է Եփրեմ Ասորու «Ի գալուստ աստուածորդոյն քառասնաւրեա ի տաճարն» ճառի վերջում։

Յիսուս աղաչեմ, եւ զանպիտան գծագիրս Վարդան, և զամենայն աշխարհս հաւատացեալ, և Աստուած զձեզ յիշէ, ամէն։

ժգ

ԶԱռիւծ սպասաւոր նորա և մուտքախի և զծնաւղս իւր աւրհնութեամբ յիշեցեք ի Տէր Յիսուս։

ժդ

338ա Զստացող հանրալոյս կտակիս՝ զաստուածասէր եւ զմեծապատիւ պատրոն Աստուածատուրն, եւ զհարազատ եղբարս նորա՝ զաստուածարեալ քահանայն զԱւետիսն, որ բազում հոգաբարձութեամբ նպաստ եղեւ ի տառս յայս, եւ զՅովանէս, եւ զՎարդան, զԿոստանդն, եւ զԴաւիթ, եւ զծնողս նոցա զՎասուսն եւ զՀռիփսիմէ յիշեսջիք ի Քրիստոս, և զմեղապարտ գրիչ մի մոռանայք, եւ Քրիստոս զձեզ յիշէ։

ժե

351ա Զաստուածընտիր պատրոն Աստուածատուրն, եւ զեղբայր իւր զսրբասնունդ քահանայ զԱւետիսն, եւ ծնաւղսն նոցա յիշեցէք ի Քրիստոս, եւ զհայր Յովաննէս, եւ զանպիտան գրող սորա, եւ զծնողսն նոցա յիշեցէք։

ժզ

358ա Զառաշնորդք սուրբ ուխտիս՝ զՅովճաննէս պատուական ծեր, և զՍարգիս, և զԱստուածատուր, որ ի գիրս աւժանդակեաց, յիշեցէք ի Քրիստոս։ Աստուած և փրկիչ Յիսուս Քրիստոս, քո սուրբ և նշանագործ տնաւրէնութեամբ ի ձեռն չարչարաւրեա սիրելւոյն կենդանութեան և առաջիկա փրկաւէտ գալստեամբս ողորմեա քո աստուածախնամ գթութեամբդ՝ զպատրոն Աստուածատրոյ և սիրով փափագողի՝ ստացողի, և աստուածասէր եղբաւր՝ պատուեալ քահանայի, որ առիթ և յաւժարեցուցիչ ի ստանալ գծագրութեամբ զսուրբ կտակս աւրհնութեան եղեւ՝ Աւետիս կոչեցեալ, արժանաւորիլ աւետաւոր լուսոյն, և աստուածասէր ծնաւղացն՝ պատուեալ ծերոյն Վասուսին և պատուական մաւրն, և հաւատարիմ եղբարցն՝ Յովաննիսի, Վարդին, Կոստանդէ, Դաւթի, և բարեպաշտ քուերց և քրիստոսասէր ընտանեաց և բարեկամ սիրելեաց՝ Գալկոյն, Խայտեռոյն, և Առիւծին, Աստուածատուրո, ալեւոր Առիւծին, և Վարդ[ա]նա, և տուր վարձս բարեաց ամենեցուն ի հասարակաց ատենին, ամէն։

Եւս առաւել յետնեալ գծագրիս ողորմեա, Քրիստոս Աստուած, և արժանաւորեա զմեզ տեսանել զքեզ, և գթա ի հոգիս ծնաւղաց իմոց և եղբարց և ամենայն հաւատացելոց՝ կենդանեաց և մեռելոց, զի արժանաւորեալ տացուք փառս ամենասուրբ Երրորդութեանդ յաւիտեանս, ամէն։ Ողորմեա, Քրիստոս Աստուած, և դասեցոյ ընդ սուրբս քո, որ յայսմ ամի են վախճանեալ, և յիշեա, տէր, զԿորկոտակ և զԴաւիթ քահանայ։

ժէ

388բ *Քրիստոս Աստուած, քո անճառ խոնարհութեամբդ մաքրեա ի մեղաց զմեծապատիւ պատրոն* Աստուածատուրն, *եւ զ*Աւետիս *քահանայ՝ զեղբայր իւր, և զծնողսն նոցա։ Եւ արժանի արա Հաղորդութեան աշակերտացն քոց ի Վերինն Երուսաղէմ, ամէն։ Եւ ողորմեա բազմամեղ գրողի սորա և ծնողաց եւ եղբարց նորա, եւ որք այսաւր տանախմբելով յիշէն, յիշեալ լիցին։*

ժը

406 *Քրիստոս Աստուած, քո սուրբ չարչարանացդ բարեխաւսութեամբ ողորմեա մեծապատիվ պատրոնի* Աստուածատրոյ՝ *ստացաւղի մեծափառ կտակիս, եւ ծնաւղաց իւրոց, եւ եղբարց, եւ շնչեա զյանցանս նոցա, ամէն։ Եւ զմեղապարտ գրիչ, եւ զծնողս նորա, եւ զեղբարս, եւ զամենայն հաւատացեալս յիշեա Քրիստոս յարքայութեան քում, եւ ողորմեա։*

ժթ

415բ *Զստացող հանրալոյս եւ մեծափառ կտակիս՝ զաստուածասէր եւ զպատուական պատրոնն զ*Աստուածատուրն, *եւ զծնողսն իւր զ*Վասուն *եւ զ*Հռիփսիմէ, *եւ զեղբարսն իւր զ*Աւետիս *քահանայ, եւ զ*Վարդան, *եւ զ*Յովաննէս, *զ*Կոստանդն *եւ զ*Դաւիթ *յիշեցէք ի Քրիստոս, որոց տացէ Քրիստոս ողորմութիւն գտանել յաւուրն յետնում։ Եւ զիս զմեղապարտ գրիչ, եւ զծնաւղսն իմ, եւ զեղբարսն յիշեցէք ի Քրիստոս, որպէսզի ողորմեսցի մեզ Քրիստոս, ամէն։*

ի

446ա *Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ Սրբոյն Մամասայ ողորմեա պատրոն* Աստուածատուրին, *եւ ծնողաց, եւ եղբարց, եւ քերց իւրոց։ Ողորմեա եւ հաւր* Յովհաննիսի, *եւ* Սարգսի *ե[ւ] գրագիր* Վարդանայ, Գրիգոր[ի]սի, Մարգարէին. *եւ* Ռատակէս *միայնակեցին, եւ որ զգիրս գրեաց, եւ ծնողաց նոցա, եւ եղբարց, եւ սուրբ յարութեամբդ նորոգեա զհոգիս նոցա ի կեանս։*

իա

461բ *Զստացող և զաշխատողք յիշեցէք ի Քրիստոս Յիսուս, եւ զհաւ[ատ]արիմ ծնաւղսն եւ զեղբարս նորա, եւ զամենայն հաւատացեալս։ Եւ զյետնեալ գծագիրս, եւ զծնաւղսն մեր, եւ զեղբարսն, եւ Աստուած զձեզ յիշէ։*

*Զ*Թաւրոս *եղբայր, որ բարիք սպասաւորէ, յիշեա Քրիստոս Աստուած։*

իբ

464ա *Քրիստոս Աստուած, ողորմեա* Գամոյնկա *հաւատարիմ առաջնորդի, որ յայսմ ամի վախճանեցաւ։*

## իգ

484ա Տէր Յիսուս Քրիստոս, քո սուրբ եւ անարատ ծնաւղի բարեխաւսու-թեամբ ողորմեա աստուածասէր պատրոնի Աստուածատրոյ՝ ստացաւղի սուրբ կտակիս, եւ ծնաւղաց իւրոց, եւ եղբարց, եւ գծագրիս Վարդանայ, եւ եղբարց իմոց, եւ ծնաւղաց, ամէն։

## իդ

498բ Ջստացող սուրբ կտակիս՝ զպատրոն սիրեցեալ Աստուածատուր, եւ ծնաւղսն իւր, եւ զեղբարսն յիշեցէք ի Քրիստոս Յիսուս, եւ զգծագիրս Վարդան, եւ զամենայն աշխարհս։

## իե

530բ Ջստացող եւ զաշխատողս յիշեցէք ի Տէր աղաչեմ։
Ի խաչին կարգն է, ուշիմբ արա։

## իզ

534ա Քառակուսի Սուրբ Նշանիս եւ արեամբ ներկեալ զենարանիս, բա-րեխաւսութեամբ Քրիստոս Աստուած յորժամ գաս Հայրենի փառաւք եւ լուսաւոր, զահնազէն աստուածային նշանակս առաջի քո, ողորմեա ստա-ցողի սուրբ կտակիս՝ պատրոն Աստուածատրոյ, եւ բարի ծնաւղաց իւ-րոց, եւ հաւատարիմ եղբարց, եւ աստուածահաճոյ սպա[սա]ւորաց ի յելս եւ ի մուտս, եւ ծագեա յամենեսեան երկիւղ մահու, եւ զխորհուրդ գալստեան քո, եւ ինձ ողորմեա գձուծ գրչի, եւ ծնաւղաց իմոց եւ զեղ-բարց, եւ քեզ փառք յաւիտեան, ամէն։

## իէ

555բ Բարեխաւսութեամբ սուրբ առաքելոյս, Քրիստոս Աստուած ողոր-մեա ստացողի սուրբ կտակիս պատրոն Աստուածատրոյ, եւ ծնաւղաց իւրոց, եւ եղբարց, եւ յետնեալ գծողիս, եւ որ զաւրինակս ետ, ամէն։

## իը

375ա Քրիստոս աստուած, բարեխաւսութեամբ Սրբոյ Նախավկայիս քո Ստեփաննոսի եւ ընկերաց իւրոց՝ նահատակելոց ընդ նմա, ողորմեա ստացողի սուրբ կտակիս պատրոն Աստուածատրոյ, եւ ծնաւղաց իւրոց, եւ եղբարց, ամէն։

## իթ

Ծաղկող՝ Ստեփանոս

452ա Սանփաննոս*

* Գրված է գլխագարդի մեջ հյուսածո տառերով և հյուսվածքի մեջ՝ ոսկե խորքի վրա։ Որով-հետև հայտնի են ձեռագրի գրիչը (Վարդան) և ստացողը (Աստուածատուր), Ստեփանոսը մեծ հավանականությամբ եղել է ձեռագրերի բարձրարվեստ մանրանկարների և զարդագրերի հեղի-նակը։

ԼԸ

3ա Աստուած վայելել տացէ պատրոն Աստուածատուր եւ Հաւատարիմ ազգի աստուածասէր անձանց, եւ ինձ ողորմեսցի եւ ստացողին, ամէն։
Տէր Աստուած Յիսուս Քրիստոս, ածնեա Աստուածատուր բարի պատրոնի, եւ ողորմեա նկարողի եւ Աւե[տեաց]։

ԻԷ

288բ Վարդան եւ ծնաւղք իւր յիշեսցի, եւ պատրոն Աստուածատուր եւ Աւետիս եւ Վասուան՝ ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր։

10

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երուսաղեմ 326, Ն. Պողարյան, Ցուցակ Բ, էջ 198—199

Գրիչ՝ Սամուէլ
Վայր՝ Ընկուզեկ

ա

43բ Ո՜վ եղբարք, աղաչեցէք վասն իմ զՏէր, զի մի ընդ այծիսն կացուսցէ զիս, այլ ընդ աւդիսն, եւ ընդ իմաստուն սուրբ կուսանսն։

բ

72ա Տէր Յիսուս Քրիստոս, ողորմեա եղբաւր իմում Յոհաննէսի՝ փոխեցելոյն առ քեզ, եւ Հան նմա մասն յարքայութեան քո։

գ

122ա Աստանաւր յիշեսջիք զՍամուէլ գծող, եւ զՅոհաննէս զեղբայրն իմ զփոխեալն առ Քրիստոս։

դ

154ա Ո՜վ Սրբուհի Տիրամայր, անկեալ առաջի քո ես Սամուէլ մեղաւք մեռեալս աղաչեմ զքեզ բարեխաւսեա վասն եղկելոյս, զի թողցէ ինձ զմեղս իմ։

ե

169ա ՈԽԸ (1199) թու[ին] յԸնկուզեկ գրեցաւ։

զ

Վայր՝ Դաւթա վանք

169բ Պողոսորոս երեք ամովք յետոյ գրեցի, ի վանքս Դաւթա ՌԾԱ (1202) թու[ին]։

է

202ա Աղաչեմ յիշել զՍամուէլ գրիչ։

Ը

209բ Աղաչեմ յիշեսջիք զհայրն իմ զԽաչէվարդն, որ ի ծերութեան փոխեցաւ ի Քրիստոս։

## 11

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 10434 (1069 թ.)

Ստացող՝ Տիրացու

ա

288ա Աւետարանս այս փրկական
Որ զԱստուծոյն պատմէ մեզ բան,
Տիրացուիս է սեփական,
Եւ յիշատակ ինձ յետ մահուան։
Ցիշելոյ վարկիք արժան,
Որք ընթեռնուք զայս անխափան։
Միթէ չածէ ի դատաստան,
Զիս ընդ գործոցս իմ թիւրութեան։
Այլ համարի լուր բաւական,
Միայն զհաւատս աներկեւան,
Զոր լինիմ միշտ խոստովան
Զմիութիւնն երրորդական*։

Բ

Հեղինակ՝ Տիրացու
Գրիչ՝ Կոզմա

288բ Ո՜վ աստուածայի[ն] Աւետարան եւ փառաւոր,
Լուսաւորիչ կենաց կտակ եւ երկնաւոր,
Կամիս լինել զիս մաքրութեամբ քեզ սպասաւոր,
Միշտ կատարեալ ամենայնիւ եւ հոգեւոր։
Այղ տառապեալս Տիրացու՝ յոյժ յանցաւոր,
Վերջին եւ տրուպ ամենեցունց՝ որ գիտնաւոր,
Անուն առանց արդեանց, միայն կեղծաւոր,
289ա Եւ անբարէվարժ կացեալ կրանա‖ւոր։
Թափուր եւ անվարձ վաստակաւոր,
Եւ միշտ ընդունայն ի բարի բեռանց ուղեւոր
Որ զայլս յորդորեմ լինելն լուսաւոր,

* Գրված է վարժ կանոնավոր բոլորգրով, բացառությամբ վերջին երկու տողի, որ ուրիշ գրչից է։ Տիրացուին նույնացնում ենք Ստեփանոս Տիրացու գիտնականի հետ, որը Վասպուրականի Սուրբ Խաչ վանքի առաջնորդ էր և մահացավ 1202 թ.։ Հիշատակարանը, որպես վերջին հնարավոր ժամկետ, դնում ենք այդ թվականի տակ։

Եւ ինձ զխաւարն առթեմ* կամաւոր՝
Աւտարաց լինիմ քարոզ անխոտոր,
Եւ իմումս անձին թշնամի
Եւ յարակ յայտնեալ նենկաւոր,
Յաւժարեալ սիրով մեղաւոր,
Եւ առ Աստուած յուսով դարձեալ դաշնաւոր։

Գ

290ա Ընդ բազումս անցեր փոփոխմամբ փրկագործ եւ անփոփելիդ աստուածախաւս, հասեր եւ առ իմս անարժանութիւն՝ եւ ես տամ զքեզ եկեղեցւոյ քում սրբոյ, արժանաւոր եւ իմաստուն վերծանողաց, յիշել զիս քով միջնորդութեամբ եւ բարի բարեխաւսութեամբ առ զքեզ բարբառեալ Տէր, արժանի առնել ողորմութեան իւրոյ։
Յիշեսջիք ի Քրիստոս զԿոզմաս:

* Դրված է «առեմ», «թ»-ն հետագայում ավելացված է վերևում և նշանով ցույց է տրված նրա տեղը։ Հաջորդ թերթը պակասում է։ Կոզման, հավանաբար, հիշատակարանի գրիչն է, որ գրել է Տիրացուի պատվերով ի տարբերություն Նախորդի, որ բոլորագրով էր գրված Տիրացուի ձեռքով։

## 12

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղեմ 3273, «Սիոն» 1933 թ., էջ 415*

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Ալնոցի վանք

*Շնորհօք Սուրբ Հոգւոյն սուրբ աւետարանիչքն Մաթէոս, Մարկոս, Ղուկաս, Յովհաննէս լծակցեալ արարով խաչին, խլեցին զփուշ մեղաց և տնկեցին զխորհուրդ տնաւրէնութեան Որդւոյն Աստուծոյ. յառաջ՝ զիջումըն բանին Աստուծոյ առ սուրբ կոյսն և զիննամսեայ ժամանակաւ զծընունդն, եւ զկաթնասուն լինելն որպէս մարդ, եւ զայլ զանբաւելի զբանն, և ապա զերեսնամեայ զմկրտութիւնն, և զնշանսն զոր առնէր մի ըստ միոջէ՝ զկուրաց տեսանելն, զխլից լսելն, և զհամրոց խաւսելն և լսելն, և զկաղաց գնալն, և ղդիւահարաց բժշկելն... և զհամբարձումն առ Հայր, և ղիջումն Հոգւոյն Սրբոյ ի դասս առաքելոցն յաւուր պենդեկոստէին և զայլ նշանսն եւ զսքանչելիսն, զոր ոչ կարեմք ի թիւ արկանել։*

*Արդ, ես ծառայս Աստուծոյ* Յովհաննէս *սկսայ զսուրբ Աւետարանս և կատարեցի ի ՈԾԲ (1203) թուականիս, ի կաթողիկոսութեան տէր* Անանիայի, *և յառաջնորդութեան տէր* Մխիթարայ՝ *երկրիս* Խաղտեաց, *ի փոքր մենաստանիս որ կոչի* Ալնոցի վանք, *ի գուռն Սուրբ Յովհաննիսի՝ ձեռնադրողին Փրկչին մերոյ։ Յայսմ ամի սով եղեւ ի վերայ երկրի։ Ոմն գնեալ զհացն և սովամահ լեալ եւ ոմն ծախեալ եւ յղրացեալ իբրեւ կարաւտ ոսկւոյ եւ արծաթոյ, ի նոյն յայսմ ամի կատարեցաւ բան/// եկեալ սուլտանն արևմտից և տիրեալ* Թէոդոպաղսեայ, *եւ մարտ եղեալ ընդ Վրացւոցն, յաղթել ի նմանէ, թողեալ զձիս և զջորիս եւ զգանձս բազումս, եւ ինքն փախստական գնացել յիւր գաւառն։ Ո՜վ սուրբ եղբարք, աղաւթս արարէք, որ ոչ ածէ Աստուած այնպիսի աւր ի վերայ երկրի, զոր տեսաք աչաւք մերովք։*

*Այղ ես՝* Յովհաննէս *քահանայ, ստացայ զսուրբ կտակս զայս զաւակ ի Սիովն և ընտանի ի Վերին Երուսաղէմ, յիշատակ ինձ և ծնողաց իմոց, և եղբաւրն իմոյ* Ներսիսի *ընտրեալ քահանայի և կրօնաւորի, և հանգանն իմոյ* Գուրգանն *և* Վարդեթփին· *եւ զստացող սուրբ կտակիս, և զծնողսն իւր, և զեղբարսն իւր զամենայն սիրելիս, զոր եւ ինքն կամի, եւ զքեռին իմ* զԱստուածատուր, *որ սնուցիչ իմ էր և վարդապետ, և որ զմեզ յիշեն առաջի ահեղ ատենին Քրիստոսի, յորժամ բանք սպառին և գործք սնոտիք թագաւորեն։ Ո՜վ սուրբ եղբարք աղաչեմ զձեզ, յորժամ*

ընթեռնոյք զսուրբ Աւետարանս կամ ընդաւրինակէք, ի մաքրափայլ յաղաւթս ձեր յիշեսջիք զմեզ և յիշողացդ, և յիշեցելոցդ ողորմեսցի Քրիստոս, ամէն։

13

ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 93, Բ. Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 419—420

Գրիչ՝ Առաքել
Վայր՝ Եղիվանք

Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց Ի ՈԾԲ (1203), ի գաւառիս Կամխա՝ մերձ ի գեաւղս Սիմա, ի յանապատս որ կոչի Եղիվանք, ընդ հովանեաւ Սուրբ Կարապետիս եւ Սրբոյ Աստուածածնիս, ի վայելումն Մովսէսի եւ Յովհաննիսի, որ ստացան զսա ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ, եւ յիշատակ կենդանեաց եւ մեռելոց։ Արդ՝ որք կարդայք կամ աւկտիք ի սմանէ եւ լուսաւորիք, ի սուրբ յաղաւթս ձեր յիշեսջիք զսրբամաքուր հայրապետս մեր՝ զտէր Բարսեղ, եւ զհայր Թորոս, եւ զԿարապետն՝ զհոգևոր եղբայր մեր, եւ զսրբասէր քահանայն զԿար[ապ]ետն՝ որ զաւրինակս ետ, եւ զծնողս իւր։ Յիշեա՛ Քրիստոս Աստուած զԴաւիթ, եւ զՂուկասն, եւ զՅովհաննէս, եւ զԱւետիքն, եւ զՂեւոնդն, եւ զայլ եղբարքս, որ յանապատիս կան՝ զմեծ եւ զփոքր։

Եւ Առաքելի՝ անպիտան եւ անարժան գրչի, եւ ծնողաց իմոց, եւ եղբարց, եւ քեռն իմ վախճ[ան]ելոյ, եւ եղբաւրն։ Ողորմ[ե]ա՛ Քրիստոս Աստուած Ստեփանոս երիցու եւ ծնողաց իւրոց բարեպաշտից։ Տէր Աստուած, ողորմեա Յոհան երիցու, եւ Թորոսի, եւ Առաքելին: Յիշեա եւ զՊաւղոս՝ զհոգևոր եղբայր մեր․ եւ զԳրիգորէսն եւ զԽաչատուր; Յիշեա Տէր եւ աւրհնեա զԽաչատուր, որ զաւրինակս է գրել, եւ զԳորգ, եւ զԿոստանդին, եւ զՆերսէս երէց, եւ զԴաւիթ, եւ զծնունդս նոցա, եւ զորս միանգամ գրեցաք յառաջմէ մինչ ի վերջինս, զի տացէ նոցա Աստուած զթողութիւն եւ զմեծ զողորմութիւն, եւ մասն եւ բաժին ընդ ամենայն սուրբս, եւ յաւուր գալստեան իւրում փառաւք պսակեսցէ, ամէն։

Արդ դուք եղբարք յիշեցէք զմեզ յաղաւթս, եւ դուք յիշեալ եղիջիք ի մարդասիրէն Քրիստոսէ, ամէն։ Եւ ինձ տառապե[ա]լ գծողիս ողորմեա Քրիստոս, ամէն։

14

ԱՒԵՏԱՐԱՆ

Պալյան, Ցուցակ Կեսարիայի, էջ 28—29

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Դրազարկ

292ա Փառք... Գրեցաւ սուրբ Աւետարանս, որ է հրամանք եւ աւրէնք փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ եւ Տեառն մերոյ, ի թուա-

կանութեանս Հայոց ի ՈԾԲ (1203), ի գերահռչակ անապատիս, որ կոչի Դրազարկ, ընդ հովանեաւ Սրբուհւոյ Աստուածածնիս, ձեռամբ անարժան եւ մեղաւոր քահանայիս եւ անպիտան կրաւնաւորիս Վարդանայ, որ ստացա զսա յիշատակ ինձ, եւ ծնաւղաց իմոց, եւ քուեր որդւոց իմոց Բասլի, եւ շնորհեցի սուրբ ուխտին որ կոչի Անդրէասանց, ի սուրբ եւ ի մայր եկեղեցին Սիովն, յիշատակ ինձ եւ վերագոյն գրելոցն։ Եւ զի ձրի պարգեւեցի զսա այնմ սրբոյ եկեղեցւոյ, մի ոք յանդգնեսցի հանել զսա անտի, թէ առաջնորդ իցէ եւ թէ եղբայր, եւ թէ զինչ եւ իցէ մարդ, եւ որ յանդգնի եւ հանէ զսա ի յայնմ եկեղեցւոյ, որ է Սիովն մայր, հանցէ եւ զժառանգութիւն նորա Աստուած ի Վերին Սիովնէ, որ ժողովարանն է ամենայն հաւատացելոց սրբոց։

Բայց թէ երկիւղ լինիցի յափշտակողաց զի զգուշացուցանիցեն, զի մի երթիցէ դերի, եւ ապա ընդ խաղաղանալն՝ փութով յեկեղեցին դարձուսցեն, եւ կամ վասն ուխտին կարեաց կամ առաջնորդին ի պէտս իրիք տարցի, եւ դարձեալ արագ ի տեղի իւր բերցեն։ Ապա աւտարխաց առ որս երկիւղ կայցէ կորստեան, մի՛ տացի։ Բայց եթէ աւրինակ ոք խնդրեսցէ, մի՛ արգելուք, զի յընտիր եւ յանհաս աւրինակէ է գրած։

Բայց աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք կամ գաղափար առնոյք զսա, յիշեսջիք զտառապեալ ստացողս, եւ գրողս Վարդան, եւ զառաջասացեալ ծնաւղսն իմ, եւ զԲասիլն, եւ զսիրելի եղբայր իմ զԱրեւիկ, եւ զձեզ ղյիշողսդ եւ զմեզ Տէր յիշեսցէ, եւ յեղբարց վանիցդ, որ ոք խնամ տարցի սմա, որ ոչ ելանէ յեկեղեցւոյդ՝ աւրհնեալ եղիցի յԱստուծոյ եւ ի մէնջ, եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք։

## 15

## ԱՒԵՏԱՐԱՆ

Հ. Քյուրտյան, Հավաքածու 99

Գրիչ՝ Յոհաննէս

...Ի փոքու մատենիս եղէ ջանացող գծել մեղապարտ գրիչս Յոհաննէս, հրամանաւ աստուածասէր կրաւնաւորաց քահանայից՝ երկուց եղբարց, որում առհասարակ Կաւզմայ յորջորջի... յորում փափաքեալ աստուածազարդ եւ ուղղափառ քահանա կրաւնաւորքն, ստացան զսա անգեղ գծիւ ի քարտիզի յեղեալ, վասն ախմարութեան գրողիս, նուաստ եւ մեղապարտ եւ անարժանիս Յոհաննէս...

Գրեցաւ լուսազարդ Աւետարանս ի թուականին որ յաւիտենից ՑՉԺԱ (6711)* ձեռամբ մեղապարտ Յոհաննու:

---

* «ՑՉԺԱ արարչութեան «Հռոմեական» թուականն է՝ հաւասար Քրիստոսի 1203-ին» (Օբ. Հ. Քյուրտյանի)։

## 16

### *ԹՈՒՂԹ ՎԱՍՆ ՏՕՆԻ ԾՆՆԴԵԱՆ*

*Կյուլեսերյան, Ցուցակ Ղալաթիո, էջ 663—664*

Թուղթ սրբազան արհեպիսկոպոսին Նիկիոյ, իմաստնոյն Յոհաննու, առ երանելի կաթողիկոսն Հայոց Զաքարիա, վասն տօնի Ծննդեան եւ Յայտնութեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ:

*Ի թուականիս ՈԾԲ (1203) թարգմանեցաւ սա ի յունականէն ի մերս, ի ձեռն նուաստ սպասաւորաց բանի* Գրիգորի *եւ* Բարսղի, *ի քաղաքէն կոչեցեալ* Սիս, *սատարութեամբ* Նիկիֆոռայ *եւ* Միխայէլի *քահանայից, որոց Տէր Յիսուս ողորմեսցի։*

## 17

### *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԻԳՆԱՏԻՈՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ*

*Երուսաղեմ 334, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 211—212,*
*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 698—700*

*Գրիչ՝* Գրիգոր դպիր
*Վայր՝* Հռոմկլա

ա

535 *Յամի վեցհարիւրերորդի յիսներորդի երրորդի թուաբերութեանս Հայոց (1204), ի կաթողիկոսութեանն տեառն* Յոհաննիսի *և ի թագաւորութեանն քրիստոսապսակ և բարեյաղթ թագաւորին Հայոց* Լեւոնի՝ *որդո* Ստեփանէի, *ի չար և ի դառն ժամանակի, յորում յամենայն տեղիս ամենայն ուրեք ազգք քրիստոնէից այրեցեալք եղեն որպէս փուշք յագարակի՝ յայլասեռիցս բազմադիմի նեղութեանց և ի զղուանաց, քան զի յոյժ զաւրացեալ եղեն կատաղի և անաւրէն ազգ ազախնազաւակ որդոցն Հագարու, և բռնակալեալ նուաճեցին զամենայն աշխարհս յինքեանս գրաւեալ, մնացեալ միայն ի միջի սոցա բարեպաշտ թագաւորն Հայոց* Լեւոն *իբրև ճաճանչ լուսո ի մէջ արումբրամած խաւարի։ Որ ըստ բարեխնամ կամացն Աստուծոյ պսակեալ եղև յերկուց թագաւորացն Յունաց և Հռոմայեցւոց՝ եղեալ տէր նահանգին* Կիլիկեցւոց *և այլ բազում գաւառաց, և յարեւելս պէս տանն Վրաց թագուհին, որո* Թամար *անուն։ Սա բազում արութիւնս արարեալ և զբազում գաւառս քանդեալ աւարեաց և զայլազգիսն ծախեաց ի սուր սուսերի և զմնացեալսն ընդ հարկատրութեամբ արարեալ հնազանդեցոյց ի ներքո ձեռին իւրո։ Եւ էին ի դրան նորա իշխանք երկու հայասեռք՝ եղբարք միմեանց. երիցագունին անուն՝* Զաքարե Շահենշահ, *այր սուրբ և առաքինի և ամենեւին զարդարեալ երկեղիւն Աստուծոյ, մինչ գրեթէ գերագոյն լեալ քան զբազում ճգնաւորս, որ ի քարանձաւս։ Եւ կրսերոյն* Իւանէ *անուն։ Սոքա երկոքեան բարեբաստիկք լեալ ի թագուհոյն յայնմանէ և յոյժ սիրեցեալք յաչս նորա, մինչ զի նոսա կացուցեալ պետ ի վերա ամենայն զաւրաց և թագաւորութեան իւրո, որոց քաջամարտիկք և յաղթողք երեւեալ ի վերա թշնամեաց խաչին՝ զովի անուն նոցա յամենայն տեղիս։ Իսկ եթէ Տեառն զաւրութեանց ոչ էր տուեալ մեզ զաւակք մխիթարութեան զբարեյաղթ թագաւորս և զքրիստոսասէր իշխանս զայսոսիկ, իբրև զՍոդոմ էաք եղեալ և Գոմորս նմանեաք ըստ մարգարէին ձայնի։ Իսկ անաւրէն ազգն Հագարու, որպէս նախասացաք, նեղեն զազգս քրիստոնէից անիրաւ հարկապահանջութեամբ մինչեւ անյոյս լինէաք ի փրկութենէ։*

Յայսմ ամպրոպամած և ի վրդովուտ ժամանակի՝ ի սոյն ամի, յորում կարգեցաք զԹուականս, ի կամաց ողորմութեան բարերարին Աստուծոյ՝ շարժեալ եղեն զաւրք արիական ազգին Հռոմայեցիոց և եկեալ հասին ի Բիւզանդիոն, որ կոչի Կոստանդինուպոլիս: Իսկ Թագաւորն Կոստանդինուպոլսի ոչ կամեցեալ միաբանել ընդ նոսա սիրով ըստ աւրինի քրիստոնէից, այլ ներհակաբար զինէր ընդդէմ նոցա և մարտուցեալ պատերազմէր ընդ նոսա և ջանայր խափանիչ լինել փրկութեանն ճանապարհին. ապա արիական զաւրացն ի Թիկունս հասեալ աներեւոյթ զաւրութիւնն Աստուծոյ և պատերազմէր ընդ զաւրսն Յունաց, որպէս առ Իսրայելիւ ընդ Եգիպտացիսն։ Վասն որո և Հռոմայեցիքն յաղթահարեալ զնոսա մաշեցին զանձինս նոցա ի սուր սուսերի։ Այսոցիկ ապա այսպէս եղելոց՝ Թագաւորն Յունաց պակուցեալ յերկեղէ Հռոմայեցիոցն, փախստական եղեւ ի գիշերի, և նոցա առեալ զանմատոյց ամուրս քաղաքին և լցան անպատմելի գանձիւ ոսկով և արծաթով և քարամբք պատուականաւք և մետաքսեիւք ոսկեթելաւք, որ ոչ գոյր Թիւ, զոր մինչեւ ցայսաւր ժամանակի ոչ ոք ետես այնպիսի բազում գանձ առեալ ումեք յաւարի։ Եւ եղեալ Թագաւոր քաղաքին զկոմս ոմն՝ յազգէն իւրեանց, որոյ Պաղտոյն անուն, և բարձաւ Թագաւորութիւն յազգէն Յունաց։ Իսկ նորընծա Թագաւորն հրովարտակ աւետաբեր առաքէր առ մերս ազգի Թագաւոր Լեւոն, տեղեակ առնելով զնա եղելոցն։

Եւ մեր այսոցիկ տեղեկացեալ յառաջին տրտմութեանցն սակաւիկ մի սԹափեալ ուրախացաք և ըստ նախագուշակ մարգարէութեան սրբոյն Ներսէսի ակնկալեալ սպասեմք փրկութեան սուրբ և աստուածակոխ քաղաքին Երուսաղէմի, նաեւ ամենայն աշխարհիս։ Այլ զլինելոցն Տէր հոգասցէ։

Յայսմ ամի այր ոմն ի Մելիտենոյ Հայոց՝ Զաւրավար անուն, արհեստիւ ոսկեգործ, յոյժ ազնուական ի ճարտարաց և յ[ը]նտրելոց, այր իմաստուն և հանճարեղ բնութեամբ, բարեբարո և հեզ և ամենայն առաքինութեամբ զարդարեալ, գիտելով և դպրութիւն ընԹերցողութեան, սորա հանդիպեալ յաստուածապահ դղեակս Հռոմկլա՝ առնելով զգործ իւրո արուեստին։ և տեսեալ զքաղցրաբան Մեկնութիւնս սրբո Աւետարանին Ղուկասու առաքելս և աւետարանչի, զոր արարեալ է սրբո եպիսկոպոսին Իգնատիոսն համանմանոյն աստուածազգեցին Իգնատիոսի. ի խնդրո տեառն Գրիգորիսի Հայոց կաԹողիկոսի՝ եղբաւր տեառն Ներսէսի կաԹողիկոսի, և ճաշակեալ ի սմանէ վերծանութեամբ, վասն որո և քաղցր լեալ ի քիմս սորա բան սրբո վարդապետութեանս քան զխորիսխ մեղու՝ ըստ Դաւթա, և խնդրեալ ի մերմէ նուաստութենէս մակագրել զսա իւր և ըստ փափագման ըղձից սրտի իւրո ստացեալ զսա իբրեւ զգանձ պատուական, ի վայելումն անձին իւրո յաստիս և յիշատ[ակ] հոգոյ իւրո յապառնիսն։ Իսկ ես տրուպս և կրսերս համանմանեաց իմոց՝ Գրիգորիս դպիր, յաձին կալեալ զբարիոք խնդիրս բարեխորհուրդ առնէս, լցի զբաղձանս սրտի սորա և յանգ ելեալ աւարտեցի զսա յամսեանս նոյեմբերի ի ԺԳ (13), յանարիկ և յանմատոյց դղեակս Հռոմկլա՝ յաԹոռս հայրապետական, ընդ հովանեաւ աստուածաբնակ սուրբ տաճարիս, որ

յանուն Սուրբ Լուսաւորչին մերո Գրիգորի, ուզնականութեամբ սատուածընգալ սուրբ նշանացս և առաքելական նշխարացս։ Արդ աղաչեմ...

Բ

322 Յիսուս Քրիստոս որդի և բան Հաւր, որ քոին անբաւ մարդասիրութեամբտ խոնարհեցար ի բարձանց՝ այցելու լինել տիրական պատկերիտ, եւ գտեալ մաքրեցէր յաղտս ապականութեան, յիշեա ողորմութեամբ քո զստացող մատենիս զՁաւրավար պատուական ոսկեգործ, ընդ նմին ընգալ եւ զգրիչս անարժան, ըստ անառակին դարձի։

Գ

287 Ո՜հ դառն վիշտ եւ անըմբելի տրտմութիւնս, որ հեղձուցանէ զոգիս։

Դ

393 Ո՜հ վիշտս ի սուտ եղբարցս, յորս ուղղութիւն ոչ գո։

Ե

407 Ո՜հ միաշաբաթ կիւրակէի, որ կարի դառնագոյն հասէր ի վերա իմ, եւ սայրասուր սուսերու հատէր զհաստատութիւն սրտի իմոյ, ո՜հ դառն եւ մահաշունչ լուրս, որ եհաս ի լսելիս իմ։

ՌԾԴ 1205

## 18

## ՄՇՈ ՏՕՆԱԿԱՆ-ՃԱՌԸՆՏԻՐ

*Երևան 7629 (1200—1202 թ.)*

Կազմող՝ [Ներսէս]*
Վայր՝ Մշո Առաքելոց վանք

ա

601ա *Փառք ամենազաւր, ամէնիմաստ, ամէնառատ Հաւր բարերարի, որ անեղական ծնելութեամբ զՈրդի ծնեալ յառաջ քան զամենայն ի կերպարանս Հաւր, եւ Հոգւոյ համագո, աղբիւրաբար բղխմամբ, որ նոյն ինքն ընդ Հաւր եւ ընդ Որդւոյ փառակից եւ զուգահաւասար, բացայայտական երէքանձնական եւ մի իսկութեամբ հաւասարեալ, միահարթ եւ միազաւբ, միափառ եւ միաստուած Երրորդութիւն կատարեալ՝ անձամբ երիւք,*
601բ *մի բնութիւն, որ ըստ արփիական շնորհին յառաջ||ացոյց գիտութեամբ բարերարեալ զպարգեւս սքանչելապէս և հոգէպատումն գիտութեամբ զմիտս բանականս եւ զձեւս իմաստականս պարգեւատրեալ առ ազգս մարդկան՝ յառաջացոյց պատմութեամբ եւ նախախնամական խրատու հասեալ առ նոյն արմատս ծննդեան։*

*Արդ, պատուիրանաւ անդեալ ի ձեռն հարց ցորդիս ըստ այնմ, զոր ասաց գիտողն, թէ Յարիցեն եւ պատմեսցեն զայս որդւոց իւրեանց եւ անդստին յետ այսոցիկ սկսեալ եւ կատարեալ զաստուածագիծ տառիցն պատգամս, որում ի սմանէ առեալ բաժին շնորհաց յիւրաքանչիւր բարբառս արշաւել ի լեզուս բազմախաւսս եւ ձգել զսերմն չափաւոր յերկիր*

---

* *Հիշատակարանի գրիչը իր անունը չի հայտնում, բայց վերջին նախադասությունից երևում է, որ նա նաև կազմողն է. «Զկազմողս զեղկելի եւ զեղբայրիկն իմ* զՍտեփանոսն *յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր», իսկ* Ստեփանոսը*, որը անշուշտ մասնակցություն է ունեցել ձեռագրի ձեռքբերման և կազմելու աշխատանքներին, իր եղբայրն է։*

*Եթե նույնիսկ ընդունենք, որ «կազմող» բառը վերաբերում է Հիշատակարանը «կազմելուն», այսինքն հորինելուն, շարադրելուն, էությունը չի փոխվի։ Կազմողը նաև գրիչն է և մինչ այդ մասնակցել է Ճառընտրի «ազատագրմանը»։ «Յայնժամ* Սարգիս *վարդապետն Ե փիլիսոփայիւք...* Յովհիկ *եւ* Ոստագէս, Ավետիս *եւ* Ստեփանոս *եւ* Ներսէս*՝ յարուցեալ ուղեկից առնուլ զսուրբ առաքեալն Քրիստոսի և մեծաւ ցանգութեամբ հասին ուր գանձս աստուածային... եւ զաւրութեամբ Քրիստոսի* առաք *զըղձալիս մեր եւ* դարձաք *ըստ իմաստուն վաճառականի, որ եգիտ մի պատուական մարգարիտ։ Նոյն եւ* մեք *առեալ զըսա՝* դարձաք *յերկնագումար յեղբայրանոցս մեր, որ յորջորջի* Ղազարու վանք, *եւ* եդաք *զըսա առ դրանս Սուրբ Առաքելոյս»։ Գրիչն ու կազմողը վերը հիշված հինգ միաբաններից մեկն է։ Նա իր անունը սկզբում չէր գրի, գրել է վերջում, իսկ նախավերջում՝ եղբոր՝* Ստեփանոսի *անունն է։ Ուրեմն գրիչն ու կազմողը* Ներսեսն *է։*

արդիւնարար մտաց, այսինքն ղտասնեկին պատգամսն Հրագոյն վտա-
կաւք մատռուակեալ ի սրբեցելոցն անաւթ, ոչ քարեղէն եւ ղտասնեկին
բանս առեալ յեղեղեալ յաղագս տասնեկին մտաւորութեանս, եւ յայսմ
սերմանէ տառք բազմացեալ մարգարէախաւս հիմամբք սկսեալ եւ հո-
գէտաւիղ նուագաւք սակս ղերկիր վայելչացեալ ծաղկապաճոյճ դունիւք՝
ղեղեալ եւ լցեալ զհովիտ լեռնականս, աստուածային վայելչութեամբն
լցեալ յիւրոցն հիւսեալ, բարձրացեալ եւ լայնացեալ սաղարթ, նորա-
փթիթ հրաթերթեան եւ բոցանշան յարաճաճեալ և միջնալցիկ, երկայնա-
հաս, լայնատարած բազկաւք առ բարձունս արձակեալ, լցեալ եւ խթա-
ցեալ, աճեցեալ ծայր, տակաւին եւ ի նմանէ արմատս անդստին ծաղ-
կաւք բոլորապճնող յարփից էից դիմանալի տեսութիւնս, շառաւեղեալ
եւ տալ ղանշաւշափելի պտղոյն տեսութիւնս, որ ոչ շաւշափի ձեռամբ,
այղ լեզուաւ, տակաւին և ոչ էրեւի աչաց, այղ մտաց։
Արդ ի սմանէ ստացեալ բազկաց բազմաց զաննիւթեղէնն եւ զանկեր-
պարանն իւրաքանչիւր ոք յիւրում բուրաստանի տարեալ անգեաց զպա-
տուաստաշէն ծաղիկս, սփռեալ այնր հաւասար լայնագոյն շուջանին՝
գաղափարեալ ի ծովական մթէրից նորա, արձակեալ վտակք գետախա-
ղաց՝ գետահոսեալ յանձնաւոր գաւառս, լցեալ և արկեալ վտակս յան-
դաստանս բաղումս, որով առոգանեն աստուածային ցողովն զանդս հո-
գեւորս և պարարեն զդալարացեալ պարտէզս աննիւթականս։
Արդ, սմին բազումք հետեւեցին հեծեալ յիւրաքանչիւր երիւարս և
հետեւեալ զկնի հետոցն այնոցիկ՝ զթակոյկ ստոմանեացն լցեալ յայնմ
ծաւալուտ աղբիւրէն ըստ իւրաքանչիւր կարի, եւ լցեալ բեռամբք զա-
նաւթս մտաւորականս, որ իմաստասիրեցին զբաժակն անապական, եւ
ոմանք թեւակոխեալ լեռնական հովտացն, որ առ բարձուն էր հասեալ,
եւ առեալ զծիրանատեսիլն եւ զկանաչագեղ գոյնս՝ ջան ի մտի եղեալ
սպիտակափայլ դեղնագունեան զծաղկաձեւեալ բուսուցեալ մեզ զբանս եւ
այլս յանդնդային պտուտիցն խորասոյզ եղեալ սողեալ եւ ստեալ ի
բազմութիւն ականց առ ի նմանէ ընչեղեալ զհրածին մարգարիտն, որ
յաղագս հրոյ և ջրոյ գոյանա, որ նման երեւեցան մարգարէք և առա-
քեալք և վարդապետս հոգէմատեանս, յիւրաքանչիւր ժամս և ի ժամա-
նակս և արս երեւելիս և իմաստասիրականս, որոյ հետամուտ եղեալ և
յայսմանէ եղելոց ոմանք տեղեկացեալք ի ծիրանատեսիլ ծաղիկն որպէս
երամք մեղուաց հաւաքեալ զառաջանիւթեան մանրագորն յառուամէջս
602ա սպիտակաթերթեան գումարտիցն և զ||ուչոցական ճանապարհս լցեալ
քաղցրութեամբ մեղու երկնային աւդովն պարզ և յըստակ երեւեալ որ-
պէս զշիփոր բաժակի, որոյ առաջին զայս սկսեալ ըստ այսմ կանոնի։
Այր ոմն իմաստուն, որոյ անուն Սողովմովն, ոչինչ հարուստ ամաւք
նախագոյն եղեալ աշխարհէ Արեւելից՝ դաշնաւոր անուանեալ Յովհան
Գեղագունեաց վանաց վանական Մակենոտենից ուխտական, սրբազար-
դից արանց առաջնորդի, թէ ո՞րպէս տեղեկացեալ այսպիսի մեծ քննու-
թեանց եւ յորպիսի՞ հիմանց հաստատեալ զայսպիսի շինուած աստուա-
ծեղէն զհաստատեալ կանոն տամից ժողովոց եւ զվսեմական արտա-
դրութիւնս հոգէպատումն ճառից պատմութեանց եւ զժողովոց արդարոց

զզինուորական զովութիւնս, սակայն եւ ի նմանէ առեալ զթելադրելի աւրինակս ուխտաւորաց երջանկաց, յաւրինեցին ընդ միտ ածելով, ոչինչ նուազ ի նորացոցն դրելոց։

Վասն զի սա արմատ եղեալ ի հայրական աթոռոյն, որ նախ քան զդրախտն իմանի, տունդ երկնադռնակ, վասն զի ծովացեալ բանն Աստուծոյ և գերապանծեալ գիտութիւն նորա յորդահոս ելից զվայրս զայս, զոր վերագոյն երկնի նման։

Սա է ծովն տիեզերական, զոր ասաց Նախագոյն մարգարէիցն Մովսէս, թէ Հոգի Աստուծոյ շրջէր ի վերայ ջրոյ, որում հովանացեալ Հոգի Աստուծոյ՝ գայր և երթայր ի վերայ ծովուս այսորիկ՝ ծնանելով ի սմա զկայտառունս վայելչատեսակս։

Սա է լեառն բարձու աստուածական ցաւղով պարարեալ, որով խրախանան ի սմանէ եւ ի ճարպոյ սորա հաւտք եւ հաւտապետք անդաստան հովուաց լերինն գեղեցկութեան ի բազմաց լսելիս եւ ի քիմս, եւ բարձրացեալ տեսութեամբ գետս աշխարհաքարոզս ղբանն հնչեցեալ ըստ այնմ, զոր Եսայեաս ձայնեաց, թէ՝ Ել ի վերայ լերինն բարձու։

Սա առակաւոր բանն Աստուծոյ, որ յԱւետարանս, թէ Հանէ ի գանձէ իւրմէ զնորն և զհինն, վասն զի սա շարագրեալ աւրինաւոր մասամբք, հնախաւսեան վկայութեամբք զարմազան նորոգ պատմութեանս։

Սա էից անձանց Երրորդութեանն հրամանակատար և թարգման ի լեզուս լեզուս զպատգամս մեծին Աստուծոյ։

Սա զարդ եկեղեցւոյ աղբիւրաբար բխեալ երկահոսեան վտակաւք, զոր մարգարէն ասէ, թէ Ելցէ աղբիւր ի տանէ Տեառն եւ արբուսցէ զձորն վիճակաց, քան զի սովաւ կենդանեաց ցնծութիւն, տեսողաց բերկրումն եւ ընթերցողաց արբումն մատուցութիւն, ոչ փոխատրաբար, այղ փոխարկաբար, ի բերանոյ ի լսելիս, տակաւին եւս մեռելոց աննուաղելի յիշատակ, միջնորդական սահման և կամուրջ առ Աստուած երթալոյ։

Արդ, զկա առցէ բանս, թէ զիա՞րդ եւ ուս՞տի զայս աստուածային գանձս ստացաւ։ Այր մի պատու[աւ]որ՝ ռայիս Բայբերդոյ, անուն յորջորջի Աստուածատուր, յոյժ աղքատասէր, մանաւանդ թէ և աստուածասէր, որ եւ սա իսկ ցանկացող եղեալ այսմ սուրբ մատենիս եւ պատուական մարգարտիս. ապա այնուհետև շաղկապեցաւ ի սէր այսմ սուրբ բուրաստանիս եւ ապա հոգ տանելով, թէ ո՞վ արդիւք կարող իցէ հասուցանել զիս ի փափագ բաղձանացս. զի Մովսէսն այն աստուածային պատգամաւքն արժանացաւ հպիլ առ Աստուած։ Եւ ապա խնդիր
արարեալ յոգնախմաստ գրչի և գտեալ քահա[նա]յ մի ի գաւառէն Կար-
602բ նայ, որումն Վարդան կոչեցեալ, հմուտ եւ||վարժ ամենայն արհեստի
գրչութեան, եւ նա յանձին կալեալ եւ աւգնականութեամբն Աստուծոյ
սկիզբն արարեալ եւ ապա զկնի երից ամաց եհաս յաւարտ բանիս։

Եւ ի կատարման գրոցս՝ սուլտանն Սեբաստիոյ ժողով արարեալ անհուն բազմութեամբ՝ նմանեալ անրարշտին Յուլիանեայ, փքացեալ լեռնացեալ եհաս ի Թէոդուպաղիս, և անդի կամէցեալ անցանել յաշխարհս Հայոց և Վրաց։ Եւ ամենևին մոռացաւ ղԱստուած և յուսացաւ ի նանրութիւն իւր, կամէր յաւարի առնուլ զաշխարհս ամենայն։

*Իսկ ւգնականութեամբն Աստուծոյ եկին Հասին զաւրքն Վրաց և մեծն Զաճարիէ հանդերձ Իւանէի հարազատաւն իւր եւ այլ աստուածասէր իշխանաւք եւ նախարարաւք եւ յոգնախումբ խառնիճաղանչ բազմութեամբ հասին ի վերայ անաւրէն զաւրացն Տաճկաց եւ յանխնա կոտորեցին զնոսա, ղոմանս ձերբակալ արարին, եւ ոմանք ի փախուստ դարձան, բայց սուլտանն անվրէպ մնաց, սակայն զսւարոյն զթիւ ո՞ կարէ գիտել՝ զոսկւոյն և արծաթոյ եւ զմետաքսի, զերամակս ուղտուց, ձիոց եւ ջորւոց։*

*Եւ յայսմ ամի ի սադրելոյ չարին ըմբռնեցաւ այրս* Աստուածատուր *ի ձեռն ամիրային իւրոյ* Ալադին *կոչեցեալ։ Որ եւ ի ձեռն այնմ գազանի* Աստուածատուրն *այն ընկալաւ զվախճան, և յափշտակեցին զստացուածս նորա, եւ ոչ մնաց եւ ոչ մի ինչ, բայց այս գիրքս։ Ապա դատաւր քաղաքին ձեռն յառաջ տարեալ զուր պատճառանաւք բանս ի վերայ եդեալ, թէ հինգ հարիւր պատատ մնաց ինձ առ* Աստուածատուրն*: Եւ իբրեւ այս այսպէս եղեւ, ապա այնուհետև չու արարեալ դատաւորն, եկն բնակեցաւ ի հռչակաւոր քաղաքն* Խլաթ. *եւ Բ ամ կայր ի պահեստի և ոչ ոք գիտաց, և ապա կամեցաւ վաճառել, եւ ոչ ոք կարէր գամագիտ լինել, զի բազմագին կամէր վաճառել։*

*Ապա հարազատ եղբարք անձինք Գ քահանայք գեղջն* Դանջան *կոչեցեալ, որ է առ դուրս քաղաքին, եւ են անուանք նոցա միումն* Ստեփանոս, *իսկ միւսոյն* Վարդապետ *և երրորդին* Յովաննէս, *որ եւ նոքա ազդ արարին մեզ, զի էին միաբանք Սուրբ Առաքելոցս, նամակ արձակելով, թէ գանձ պատուական կայ ի քաղաքիս։ Եւ մեր լուեալ զայս՝ եռափափագ սիրով շաղկապեցաք ի սէր սըմին։ Ապա հոգելից եպիսկոպոսապետս մեր՝ տէր* Եսայի, *զմովսիսականն ստացեալ սէր, ելեալ Դ քահանայիւք՝ փոյթ ընդ փոյթ գնաց ի* Խլաթ՝ *յաղագս խնդրոյս այսորիկ, եւ ոչ կարաց հասանել ի փափ[աք] բաղձանացն, քանզի ժամանակն ձմեռային [էր]։ Եւ այլ եւս սպաս[ա]որք սուրբ ուխտին, որ կոչի* Արծկէոյ *վանք, և նոքա եւս քան զեւս վառեցան բորբոքեցան ի սէր սուրբ կտակիս։ Իսկ Բռծորն այն, զոր յառաջագոյն կանխեցաք ասացաք, իբրեւ ետես զջերմեռանդ սէր մեր, եւս առաւել զարծկեցի սուրբ քահանայիցն, ապա զգինն եւս առաւել աճեցոյց։ Եւ իբրև այս այսպես եղեւ, յայնժամ սուրբ եպիսկոպոսս մեր թոյլ տուեալ վայր մի և եկն ի վանքս, ապա նոյնպես և արծկեցի քահանայքն դարձեալ գնացին, և մի ամ այլ մնաց գիրքս առ Բռծորն այն։ Ապա ի գալ միւս ամին խնդիր արարեալ, թէ գիրքս* Ղազարու *վանիցն է, զի առաջի գնող այն մեծ եպիսկոպոսն է։ Ապա յառաջ ասացեալքն՝ Գ (3) հարազատքն, որ ի* Դանջան, *դարձեալ գրով ազդ արարին մեզ։*

*Սակայն թէպէտ և սէր սմին ստիպէր զմեզ, բայց գնոյն անկարող*
*603ա էաք։ Ապա քահանայ ոմն՝ անուն նորա* Յովա‖ննէս, *ի* Միջնաղբերաց *էր*
*և միաբանեցաւ Սուրբ Առաքելոցս, եւ իբրեւ լուաւ զերկչոտ բարս մեր, ապա յառաջ կացեալ քաջալերեաց զմեզ և հաստատեաց ասելով, թէ ես ւգնական եմ որչափ իմ կարն է, ապա ըստ բանից նորա ոյժ առաք ի զաւրութենէն Աստուծոյ։*

Յայնժամ Սարգիս վարդապետն Ե (5) փիլիսոփայիւք, որոց անուանքն գրեալ են ի դպրութիւն կենաց, Յուսիկ, եւ Ոստագէս, Աւետիս, եւ Ստեփանոս, եւ Ներսէս՝ յարուցեալ ուղեկից առնուլ զսուրբ առաքեալսն Քրիստոսի և մեծաւ ցանդութեամբ հասին, ուր զանձս աստուածային, եւ յոյժ աշխատեցան, զի ժամանակն ձմեռային էր և ատն՝ դառնաշունչ եւ ձիւն բազում։ Եւ իբրեւ մերձեցան ի մեծահռչակն Խլաթ, եւ մտին կացին ի մէջ մեծահարկի տանուտէրացն և աստուածահարկի քահանայիցն Խլաթա և Դանճանույ, եւ նոքա մեծաւ ուրախութեամբ յանձին կալան եւ ազնական եղեն բանիւք եւ արդեամբք, որոց անուանքն դրեալ են ի դպրութիւն կենաց։ Եւ ղաւրութեամբն Քրիստոսի առաք զ[ը]ղձալիս մեր եւ դարձաք ըստ իմաստուն վաճառականին, որ եգիտ մի պատուական մարգարիտ։

Նոյն և մեք առեալ զըսա՝ դարձաք յերկնագումար յեղրայրանոցս մեր, որ յորջորջի Ղազարու վանս, և եդաք զըսա առ դրանս Սուրբ Առաքելոցս։ Եւ ոչ եւս կարէաք գնել, զի Ե հազար դրամ խնդրէր Բոծորն այն, որ է տաճիկ, և դարձեալ մեծաւ [տառապանաւք] հազիւ կարացաք գնել ի Դ հազար դրամ, եւ փառք, փառ[ք] Թագաւորին։

Արդ, նախ առաջին զամենագովելի եպիսկոպոսս մեր տէր Եսայի, եւ որ իւրն գեղեցիկ բարի արգասիւք երեւել համակք գովելիք, որոց անուանք Յակովբ եւ Ստեփանոս եպիսկոպոսք՝ շնորհիւն Աստուծոյ և արդարապէս ուղիղք։ Յիշեսջիք զտէր Եսայի ի սուրբ աղաւթս եւ ընդ նմին զիւրսն։ Եւ որ յիւր հալալ արդեա[ն]ցն ընծատուր եղեւ մեծանունն տէր Բարսիղ, շնորհելով ընծա ի սուրբ պատուիրանս Ժ(10) դահեկան, յիշեսցի ի Տէր։

Եւ զի Թէպէտ և այս անուն կամացն ջատագով եղեն մեզ, սակայն հայր մեր Աբրահամ առաւել քան զառաւելս հնարէր փոյթ. և դաստիարակ նորին տէր Բարսղի, հեզն և անարատն և պարկեշտն Խաչատուր փիլիսոփայն, որ ըստ կարի և նա ետ Ծ (50) դրամ, յիշեսցի։ Եւ Յովաննէս Միջնաւղբերցի, որ աղբիւրացոյց առատապէս զընծայ ի սուրբ պատուիրանս Աստուծոյ, յիշեսցի։ Եւ որ սորայ քաջալերիչք և յորդորիչք են աստուածունակ անձինք՝ Սրապիոն եւ Խաչատուր, յիշեսցին, որ ոչ զըսա միայն յորդորեցին, այլ և զբազումս շնորհատու լինել ի գինս գրոյս։ Եւ որ ի մեր սուրբ ուխտէս յաւժարամիտք եղեն ի գիրս տալ պարգեւս, և նոքա յիշեսցին յողորմութիւնն Աստուծոյ և ի մաքուր աղաւթս քրիստոսասիրացդ, են անուանք՝ Ստեփանոս, որ յորջորջի Ծոնի, եւ միւս Աւետիս Յրաւնցի. սոքա ետուն ի սուրբ պատուիրանս Աստուծոյ դրամ Ն հարիւր (400), յիշեսցին։ Եւ որ այղ ըստ կարի, Պաւղոս, դրամ Ճ (100), յիշեսցի։ Ներսէս՝ դրամ Ճ (100), յիշել։ Եւ Վարդան եւ իւր եղբայրն Ստեփանոս ետուն և նոքա ընծա ի սուրբ պատուիրանն Ե (5) դահեկան յիշեսցին եւ նոքա։ Հայրապետն և իւր եղբայրն Դալարն շատ աշխատեցան ի քաղաքաւանն Մուշ, եւ էր զոր անձամբ լիապէս շնորհեցին ընծա եւ գինն, յիշ[եսցին]։ Տիրատուր էրեց ընծայատրեց ի սուրբ պատուիրանս Աստուծոյ դրամ Ճ (100), յիշեսցի։ Եւ որ փակակալն էր Կիւրակոս՝ ի վեր քան զիւր կարն եցոյց զպնդութիւն։ Արդ են եւ այլք բազումք, որ մեծ յուսով ազնական եղեն եւ զի յոլով են եւ անկար է դրոշմել զանունս նոցա։ Միայն դիտողին Աստուծոյ Թողցուք, որ յառաջ քան զմեր ազնականելն գրեաց զանունս նոցա ի գիրն կենաց։

Գիւղն անուանի Մոկկունք իւր քահանայիւքն ջերմն սիրով փափագողք եղեն, և ետուն լի սիրով ընծայ ի գինս։ Կին ոմն ետ դրամ Ճ (100) ի նոյն գեղջէ. յիշեսցի։ Եւ այլ որ յաւանիս Մշո աստուածասէր քահանայքն և տանուտէրքն ազնական եղեն, յիշեսցին։ Եւ որ ի մեծ քաղաքին Խլաթ պարոնայքն ազնեցին առաւել Խոցադեղն եւ Աստուածատուր եւ Վարդիկ, Քրիստոս Աստուած յիշէ զնոսա յարքայութեան իւրում։ Եւ որ ի Դանչնայ Գ հարազատ եղբարքն եւ իւրեանց հաւրեղբայրն Խաչիկ կրաւնաւոր եւ աղաւթասէր. սայ շատ բաղձաց մինչեւ եհաս սուրբ պատուիրանս. յիշեսցին և սոքա ամենեքեան։

Յովհաննէս փիլիսոփա, որ անհաս խոնարհութեամբ սպասաւորեաց մեզ, եւ սա յիշեսցի եւ գրեսցի ի գիր կենաց։ Աքանաս, որ աշխատեցաւ ի գնալ ի Խլաթ, յիշեսցի ի Քրիստոս։ Պատուական տանուտէրն Ծամիկ անուն դրամ Լ (30) ընծա ի գինն՝ յիշ[եսցի]։ Կին ոմն, Ուզիկ անուն, դրամ Լ (30) ի սուրբ պատուիրանս ընծա՝ յիշեսցի։ Խապազ ոմն Արտավաս անուն, դրամ Լ (30) ետ ընծա յաստուածային պատուիրանս, յիշեսցի և նա։

Շնորհիւն Աստուծոյ Հաւր եւ Աստուծոյ Որդւոյ եւ Աստուծոյ Սուրբ Հոգւոյն՝ ի թուաբերութեան արարչութեանն, որ լինի յիսկզբան լինելութեանն մինչեւ ցայժմ ամք վեցհազարերորդ վեցհարիւրերորդ երեսներորդ, և ի ծննդենէ բանին Աստուծոյ լինի ամք հազար երկերիւր և չորս, եւ ըստ Հայկազեան տոմարի, որ լինի վեցհարիւրերորդ յիսներորդ և չորրորդ (1205), սկսա կազմել զբազմերանեան շտեմարանս աստուածային գանձուց՝ ի նահանգիս, որ կոչի Ղազարու վանս, ընդ հովանեաւ Սուրբ Առաքելոցս, ի մէջ աստուածատեւ աստուածախաւս սրբեցելոց և մաքրազարդից արանց։

Որք վայելէք և զմայլիք ի սմանէ, զորս շարադասեցաք ընդ գրով, յիշեսջիք ի Քրիստոս, եւ զորս ոչ կարացաք գրով յիշատակել՝ առ հ[ա]սարակ զմիեղէն եղբայրութիւնս, որք այժմ բնակեալ են առաջի դրան Սուրբ Առաքելոցս, առ հասարակ ողորմեսցի մարդասէրն Աստուած, որ ողորմածն է յամենայնի, եւ գրեսցի ի գիրս կենացն յաւիտենից։ Արդ ի գնացելումն ամին շինեցաւ ժամատունն. իսկ յայսմ ամի, որ գիրքս կազմեցաւ, կռաւնեցաւ գումբեթն Աստուածածնի, եւ տէր Աստուած ողորմեսցի աշխատողացն, որք անդ և աստ աշխատեցան։

Վասիլ հիւրատեսն յիշեսցի ի Քրիստոս։

Արդ Յովաննէս Միջնաղբերցի ետ ի գին գրոցս Ռ (1000) և հարիւր դրամ, իսկ ի կատարման յայտնութեան ութաւրէիցն ի տնաւրինեցաւ աւուր գրեցաք երկրորդ պատարագ Յովաննիսի՝ հրամանաւ տէր Եսայեա եւ փիլիսոփայիցս եւ համաւրէն ուխտիս եւ գերապայծառ առաջնորդիս մերո Աբրահամա եւ սուրբ բեմբականաց՝ Բ պատարագ անխաբան ամ յամէ կատարել, իսկ որ անփոյթ առնէ, տացէ համարս յաւուրն դատաստանի։ Յրաւնցի Անանեացն, մին մատուցանի պատարագ յաւուրն տաւնի սուրբ առաքելոցն Յոհանու և Յակոբա։

Ջկազմողս զեղկելիս և զեղբայրիկն իմ զըՍաեփաննոսն յիշեսջիք ի սուրբ յաղաւթսդ ձեր։

Բ

12ա ԶՅովաննէս Միջնաղբերացի, որ լի հաւատով եւ հոգւով ձեռնտու եղեւ յաղագս սուրբ գրոյս եւ ժտելով ըստ կարի իւրում, արդ յիշեսջիք զՅովաննէս ի մաքրափայլ յաղօթս ձեր։

Գ

17բ ԶՅովաննէս Միջնաղբերցի, որ մեծաւ յուսով մասնակից եղեւ սուրբ և բարեճաշակ բուրաստանիս եւ փոխանակ երկրաւորիս՝ ստացաւ զան-ճառելին։ Արդ զՅովաննէս քահանայ յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր և զիս՝ ընդ նմին։

19

## ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

Երևան 10509 (1618 թ.)

Հեղինակ՝ Ներսես՝ Բերոոյի
Ներսիսի Լամբրոնացւոյ
Վայր՝ Սկեւռա

Յիշատակարան մատենիս դրութեան

421բ Յամի վեց հարիւր[եր]որդի յիսներորդի չորրորդի թուականութեանս Հայոց (1205), ես նուաստ եւ անարժան ծառայ Աստուծոյ Ներսէս փա-փաքեալ աստուածայնոյ տառիս նորագոյն մեզ պարգեւեցելոյ ի Հոգւոյն Սրբոյ, ի յետին և յանքարի ժամանակիս, յորում ըստ նախագուշակ բա-նին Տէառն՝ կարասւեա Նեռինն, այսինքն յանաւրինացն բազմանալոյ՝ սիրոյն ցամաքութիւն երեւեալ, և ետու գծագրել զսա առ ի մխիթարու-թիւն վշտադնեալ և թշուառական ոգւոյ իմոյ ոչ ի ղբաւսանս կատար-ման գործոյ սորայս խրատու, այլ առ ի գիտել ճշմարտութեամբ թէ հեռի եմք ի պատուիրանացն Աստուծոյ, աւտար իմն շաւիղ ունելով, և անծանաւթ թէ յումմէ առաջնորդեալք յայսոսիկ ածեալք եղեաք, բայց թէ ի ստութեանց հաւրէն։ Եւ այսուիկ ծանուցեալ լինիմք, զի լուսոյ մերձ եղելոյ ոչ ուրուք ծածկին գործք, թէ չարք եւ թէ բարիք, վասն որոյ զճրագս զայս հանդէպ եդեալ գործոց մերոց՝ ծանիցուք զմեզ, մի խա-ւարեալք ի խաւարի բնակեսցուք։

Յաւ է ինձ յաղագս դիտաւորութեանս, այլ առաւել եւս ի հեշտու-թեանցն պակասել, մանաւանդ թէ հարկիցէ զլեզու սանձահարել, քանզի նախապատիւն է այս ի մեղս եւ առ մեզ արհամարհ, դիւրագթելի ունե-լով զինքն եւ ծանր զպատուհասն, զի թէ որ ոչ յինքեան միայն և կամ յաւտարացն աւգուտ խաւսեցեալ դատարկ բանն է պարտաւոր առնէ հրոյ,
422ա ապա որ առ ի զբազումսն բամբասել ոչ ունի պարապել‖և այն զար-դարս եւս, զի՞նչ ունիցի կրել, զի զբազումս տեսի և տեսանեմ հակա-ռակս ախտացեալ ինքեանց փրկութեանն, որպէս շուն առ քաղցի ասի զմարմինս բազկաց իւրոց ուտել, զի վնասակարացն ինքեանց ծարաւ

են միշտ, դի դի՞նչ ունիցի ոք կոչել զայնպիսին, որ զինքեան առողջա-
րարն բժիշկ ռամբասէ, զախտացելոյն խստութեամբ հատումն առժա-
մայն դգացեալ, և առաջիկայ առողջութեանն յուսով ոչ մխիթարի։ Բայց
թէ եւս խուղեսցես, խորագոյն եւս չար գտցես։ Բժիշկ որ առանց վիրա-
վորելոյ բժշկէ, մանավանդ քան թէ պահանջէ, ինքն տաց վարձ բժշկե-
լոցն, ոչ ստար ինչ վարձ, այլ զիւրն անձն, ուսեալ յաստղէն. Հովիւ քաջ
զանձն իւր դնէ ի վերայ հաւուց։ Ինքնեանք հաւատացելոցն ոչ երկբա-
յութեան յուսով առաջի եդեալ զապաքինումն վիրացն, այլ վաղվաղակի
տայ քան թէ առնու։

Բայց և կամի վարձս զգիտ կորուսելոցն, իսկ զայսքաննեաց բա-
րեաց ունաւղս և ղաննախանձ բաշխաւղս, որ միշտ ձայնէ անզգամաց և
պակասամտաց, Եկայք կերայք ի հացէ իմմէ, և արբէք ի գինւոյս ձրի,
թէ արծաթ ոչ ունիցիք զոր խառնեցի ձեզ, թողէք ղանըզգամութիւն՝ դի
կեցջիք, խնդրեցէք զիմաստութիւն՝ զի ապրեսջիք։ Ո՞ զայնպիսին ար-
համարհէ, ո՞ զնովաւ զանց արասցէ։ Բայց եթե այն, որ ոչ կարաւտի
կենաց, որոց կուրացեալ իցէ աչքն, եւ ոչ կամիցին իմանալ սրտիւ, և
ականջաւք լսել, եւ աչաւք տեսանել, և դառնալ և բարեացն յաւիտենից
պատահել։ Այնպիսիք են երկիր կորդացեալ, անդաստան անկոխ, կրաւղք
422բ իժից և քարբից, անջուր անա‖պատ, և որ ինչ նոյնպիսիք կոչել պատ-
շաճ է։

Որք ծանուցանալ ոչ կամեցան լուսոյ, խաւարին ունելով ընթացս,
զի մի յայտնեսցին, որք զսիրոյն Աստուծոյ լուծ յուսոց ի բաց սասանե-
ցուցին, սարտուցեալք իբր ի չարէ, և զի այս այսպէս է։ Որք քրիստո-
նեանքն էին՝ ի հալածանս յայնպիսեացն մատնէին, ընդ միոյ տրտմու-
թեամբ լինելն ոչինչ խափան առնէր այսմիկ իբր պաշտաւնակցաց,
այլ ընթացից կենացն և ճանապարհին անմիաբանութիւն, որպէս թէ
ումեմն զնեղն և զանկոխն ընտրել բազմաց, և այլ զընդարձակագոյնն և
զմշտակոխն բազումս զարթուցանէր վրեժխնդիր, որ ընդարձակագունին
էր գլխաւոր և հանդիսադիր, միւսոյ կողմանն ընտրողաց։ Այնպիսեացն
արդարև այս գործ՝ չար երկրի չար և պտուղ, ղորոմն ընդունակաց՝ ցա-
նողին զնոյն, կամաց բոյս, զի զիա՞րդ մարթէր ի փշոց խաղող, կամ ի
տատասկէ թուզ ընծիւղել։ Իմ են վերքս, ոչ այլոց և խարանքս; Որպէս
զի մի շզադէտ և զաւտարս դատաւղ դստէցայց, քան զի ի Քրիստոս Յի-
սուս ոչ ծառայ և ազատ, թլփաթութիւն և անթլփաթութիւն, և որքան մի
ըստ միոջէ, զի ամենեքեան մի եմք ի Քրիստոս՝ ըստ շնորհի որդեգրու-
թեանն, միոյ արգանդի երկունք, վասն այնորիկ և զիմոցն ինձ եդեալ
և զիմն իմոցն, դարձ յայսցանէ կամէի, և կամեցեալ եղէց։ Զի զորօրինակ
թէ ոք ինքեանք վէրս տալով զաչս իւր փորիցէ այսպիսի իմն ախտացաք։
Մի արդեօք եղբարք ազդիցէ՞ ինչ հատեալ անդամոյն, յորմէ հետէ խլե-
ցաւ, ոչ ապաքէն մնալո՞ցն է վէր, զի որ ի տեսանելեաց ղրկի, այլոց
423ա կարօտանայ առաջնորդի‖և կամ հարկաւոր է բնակել յանկիւնս տանց՝
զրկեալ ի բնաւից վայելչութեանց, և կամ թե ի յանդգնել ուրեք, քար
ընդ ոտն եղեալ վիրաւորեալ։ Նա և եւս չար, եթէ ըստ առակին Տեառն,
ի համանմանւոյն առաջնորդեալ լինի, զնոյն ունի կրել, զոր առաջի եդ։

*Վասն այնորիկ գնալի է, մինչ գեռ լուսովդ ոք իցէ, զի մի խաւար փոխա-
նակեսցէ։*

*Այսպէս և զայսքանեաց լուսաւորագոյն ջահից լուցանաւզս որպէս
որ տեսանիդ, յանգամս Քրիստոսի և եկեղեցւոյ նորա մեք մեզէն խաւա-
րեցուցաք, ոչ որպէս թէ զնա, ի բաց տար զայգոսիկ, այլ զմերս աչք առ
ի նա հայելոյ, քան զի լոյս եկն յաշխարհ և սիրեաց մարդիկ զխաւար
առաւել, և տպա յայտնի է թէ զինչ կրէ ի լուսոյ փախուցեալն։ Քանզի
թէ յորոց միջի գրաւիմքս անգիտանամք, ոչ ինչ այլ, բայց զստամոք-
սացաւացն ախտանամք, որոց թէև զառաւել փափկագոյն կերակուրն
ընծիռես, այնպէս է որպէս զանարգն, և կամ կոյր ի ծնէ, թէև յոյժ իմաս-
տասիրեսցի ի տեսողաց, ոչ ինչ գիտէ զվայելչութեանց աշխարհի, քան-
զի զոր ոչն ետես, զիար՞դ ոք գիտասցէ։ Ոչ ինչ ընդհատ յայսպիսիեացս
ախտացաք, և կամ ես վեհագոյն, զի որպէս որ ոչն է ծնեալ՝ ոչ ինչ
գիտէ ղծնելոցն, կամ որպէս մեռեալ ցանգիտութիւն եկեալ ամենայնի,
այսպիսի իմն ատարացաք, թովչի ճարտարի հանդէպ խցաք զականջս,
ոչ կամեցեալ առնուլ դեղ ի դեղատուէ իմաստնոյ։ Վա՜յ ինձ, զի անձամբ
զանձն իմ ձաղեմ։*

*Իսկ արդ զինչ ասասցեն և կամ արասցեն քեզ հակառակորդքն, բայց
423բ թէ անցեալ տեսցեն ի վայր հոսեալ և խարխալեալ զերբեմն‖անմատչե-
լին ինքեանց աշտարակ։ Շլեսցեն և շարժեսցեն զգլուխս առաջնոյն մեր
հաստ եղեալքն դեղոյ, ծաղր և այպն կատականաց եղեաք թշնամեացն,
ի պատճառս մեծաբանութեան և պարծանաց նոցա և յամօթ և ի նա-
խատինս բարեկամացն, քանզի զբարի ծնունդս խորհրդոց մերոց առեալ
զքարի հարին, աղուեսք նենգաժետք, աւար հարին զգեղեցկացեալ այգի
Տեառն, կողոպտեցին զզարդ մեր, զանձանց մեռելութիւն կենդանիս
արարին զմեզ աշխարհի՝ և մեռեալս ի Քրիստոս։*

*Առ ո՞ ձգեցից զմեղադրութիւնս, կամ զո՞րս ասացից ի վշտացս.*

*Ինձ այսպէս թուի, թէ առ որ ի սկզբանն զիս պատրեաց, և առ պատ-
րեալսն ի նմանէ, և զհոգւոյս լացից զմահ, առ մին՝ թէ զիա՞րդ նախան-
ձեցաւ կրկինս, ի վերայ առաջնոյն, ոչ ինչ գտեալ առ ի մէնջ զատ, նա
զի և կարեաք իսկ ոչ։ Եւ առ միւսն՝ թէ զիարդ զբարեկամուն խրատու
զանց արարեալ զԱստուծոյ և թշնամոյն հաւատաց։ Արդ, յորմէ և ար-
դեամբք առ զփորձ, երանի թէ ոչ եւս էր հաւանեալ և կամ հաւանէր
նմա։ Բայց ահա և ցարդ եւս, որպէս յայնժամ զԱստուծոյն, այսպէս և
այժմ զառ ի յԱստուծոյ պատգամաւորացն արհամարհեալ, նմին հաւա-
տամք թշնամւոյ, որոյ խրատովն վարեալ երբեմն, ի բազմաց զրկեցաք
բարեաց, և ոչ իմանամք, այլ ըստ ամբաստանութեանն Էսայայ, որ
զԻսրայելէ վարելով քան զանբանս անբանագոյն և քան զմեռեալ մե-
ռելագոյն գտաք։ Քանզի Ծնեաւ, ասէ, եզն զստացիչ իւր, և էշ զդարմա-
նիչ, և մեք՝ ոչ երբեք զբարերարն մեր, վասն այնորիկ յոտից մինչև
ցգլուխ չիք առողջութիւն, այլ ամենևին վէրք խխայթելեալք, զոր ոչ
424 է այլոյ ուրուք բժշ‖կել, բայց եթէ այնմ, որ զանձն ունայնացոյց զպատ-
կեր ծառայի առնլով, որ ի կերպարանին Աստուծոյ Հաւր էր, և թափեաց
զինքն մինչ ի ծառայի կերպանաս, որ վասն մեր հնազանդ եղև Հաւր,*

իշխանաբար առանց բռնադատութեանն մահու չափ և մահու խաչի, որով երկինք հաստատեցան, որ ասացն և եղեն, հրամայեաց և հաստատեցան, որ կրէ զամենայն զօրութեամբ իւրով, որ սահմանադրեաց զամենայն եղեալ չափ և սահման ըստ Յոբայ, և կառավարէ մինչ ի կատարած։ Նմա է զայս քան ի բաց բառնալ առ ի մէնջ զբեռն, որ խրախոյսն ևտ հաւատացելոց ասելով. Եկայք առ իս ամենայն աշխատեալք և ծանրաբեռինք և ես հանգուցից զձեզ։

Բայց և մեք մի յապաղեսցուք մաղթել նմա բառնալ յաշաց մերոց զպատրուակն, յառել անստուերաբար առ ճշմարտութիւն և մի յաւիտեան ի խաւարի դեգերել, այլ երկրորդել առ մեզ փրկութեանն առիթ, կրկին մահացելոց, և կամ թէ ասել մոլորելոցս ի վերայ առաջնոյն, քան զի կամելն նորա՝ գործ է կատարեալ, իմանալ մեզ և քաղել պտուղս քաղցրահամս յառաջիկայ մեզ բարեացս, և քաղցր լինել ի կոկորդի մերում քան զմեղր, զանց զառաջինն առնել չար ախտի տգիտութեան՝ զանհաւատութեանն թուակցաւ։ Քանզի ինձ ոչ անիրաւ դատել թուի, որ զուգաթուեաց զսոսա, որպէս ծնաւղ անհաւասարութեան ասելով, թէ մտանիցէ անդ տգէտ կամ անհաւատ։ Յայտնի է մտաւորաց, զի որ ոչ տգիտացաւ՝ ճշմարիտ գիտութեանն հաւատարիմ մնաց։ Վասն որոյ և մեք մի զօտարացուցչացն յԱստուծոյ բուռն հարեալ զճանապարհացն, և զընդանեցուցչօքն քամահարեսցուք։ Եւ եթէ ււտարոտիք իմն այսոքիկ թուեսցին, և անբարիք և դառինք, այս վասն զի երկրորդովքդ ձեռովք հաստատեալ եք իբր բնութեամբ, զի այսպէս ի բազում ամաց կալեալն բնաւորեալ է լինել։

Նա զի և զհրեշտակական սպաս ահարկութեանն հանդէս, զիարդ ըստ որում էն գիտասցի մարմին, անչափ անջրպետութեամբ ունելով միջոց։ Բայց գործով զինքեանցն աւգտոց բուռն հարողաց ոչ ինչ եղիցի ծածուկ, որպէս որ փափկանայրն յայնոսիկ, ըստ որում մեք մարդիկ գոլով ստորնաքարշք ի մարմնոյս իրք, այսպէս և նա յայնս, զոր սովոր են մանկանց դեռածնաց առնել ծնօղք, այնպէս առնէր, թէպէտ ոչ զտիրապէս հասու եղեալսն ինքեան, որպէս ոչ կամեցեալ տալ զսրբութիւն շանց, կամ անկատարից զկատարելոցն կերակուր, այլ որպէս ի Քրիստոս տղայացելոց կաթն մեզ ջամբեաց, և զայն և զայնոսիկ առատ բանիւք, անպատրուակ յաւրինմամբ, անստուեր, առանց ծածկութիւ, բնաւից դիւրահաս, ի հետս արկեալ իւրն վարդապետի որ զարեգակն իւր ծագէ ի վերայ չարաց և բարեաց, և ածէ անձրև արդարոց և մեղաւորաց, առ ի բազմաց նախեղելոցն արանց սրբոցն անփոյթ եղելոցն<արանց սրբոցն անփույթ եղելոցն> ջան կալեալ լրման և մանավանդ առ ի մէնջ բնաւ ծածկելոցն և ի մերս զարմէ, զայոսիկ անջինջ յիշատակ արձանացուցեալ և առիթ փրկութեան ի ձեռնացեալս ժամանակի։

Եւ երանելի հայրապետս **Ներսէս**, և զորաւրինակ սովոր են հարք
առնել ի ժամանակս իւրեանց ամբարել կերակուրս, և կամ գին կերակրոյ
425ա զկնի մնացելոցն, որպէս զի մի միայն ի կեանս, այլ և||յետ մահու գըտ-
ցին դարմանիչք։ Այսպիսի իմն արար և սա, զի մի կենաւք միայն, այլ
և ետ աստեացն աւգտեսցուցէ, այլ և ոչ ամենայնի համեմատք, քան զի

*այնոքիկ մարմնոյ, իսկ այս հոգւոյ, և յայտնի է որչափ առաւել է հոգի.
և այնժամանակեայ, իսկ այս ոչ, այն ոմանց, և այս բնաւից։ Յայսմանէ
որ կերակրի, ոչ քաղցիցէ, բայց այնու բաղում անգամ լնանիմք։ Ո՜վ
հոգւոյն զաւրութեան, որ շնչէ ուր կամի, առանց չափոյ իւրոցն զիւրն
տալով, աննմանանձ հաւասարիչ արժանի գտելոցն նոյնպէս փոփոխէ և
յորս լինի։*

*Արդ, ո՞ ոք այնպէս մոլեգնեալ իցէ, մինչ զի ունելով հնար, երկին
ունելով երկրի, և զերկնայնոցն բերել նմանութիւն, և զանց արասցէ։
Իսկ եթէ կամեցեալ ուրուք և անգիտասցի զորպէսն թէ և նախ ունէին,
որով կրթել մարթէր կամողաց, որպէս զերիցս երանեալ հայրն մեր
Դիոնէսիոս, այլ յայտնագոյնս եկեալ ուսցին յայսմանէ։ Կարծեմ ոչ
ունայն ձեռամբ ուրուք գնգեողացն առ սա ելանել ստտի, այլ դառնա-
լով դարձցի զուարթադէմ, հնձեալ պտուղս քաղցրահամս և որ այս ամե-
նալիս թեև ունայն գայցէն ի սերմանց, քան զի երիւք յերրեակսն ի պա-
տիւ երրակի և եզակի լուսոյն բարդեալ դասքն ստտանաւր տեսցին, և
ոչ միայն, այլ և որ ի վերայ աթոռոցն հանգչի, բազմեալ ի մէջ մեր,
թողից ասել և զբարձրագոյնսն, որ և իմանալեացն անմատչելի, զի և
վասն իմ մարմնացեալն Աստուած, զի իմէ ոոպէս բնաւից, զի մի նա-
խանձ բերցի, սստ, ի մէնջ հաւր մատուցանի նուէր հաշտութեան,
425բ տուեալ իւրոյն ինձ, և զիմս առնելով յիւրն փոխարկէ։‖Քանզի վասն իմ
ճոխն աղքատացաւ զի իմն լցցի իւրով նուաստութեամբ։ Զայսոսիկ քաջ
հասողութիւն, կարծեմ ոչ նուաղեսցիս գիտել թէ բուռն հարցես զառա-
ջի արկելովքդ, քանզի որ ի գիտողացն հաստատեաց և փորձիւ ծանեանս
զամենայն իմաստիւք յայտնէ, որ սիրեացն զԱստուած և մնաց ի պա-
տուիրանս նորա։ Այլ զի մի որպէս անկարգս իմն և աւելորդս թուեցայց
խօսել, պարտիմ ի սկիզբն բանիս ընթանալով յաւարտն ժամանել,
զայսոսիկ մեզ տուողին ընդ հոգին միջնորդութեամբ, և մրով և քարտի-
սիւ կրկին զնոյն ստացողիս մաղթել առ Աստուած, որպէս և մեք ձերն
բացումն աչաց և զօգտելն հոգւով։*

*Արդ ի սկզբանն ի զսոյն մեզ պարգևողէ սրբոյն, գրեցաւ սա յերի-
տասարդականն հասակի, ի քսան և չորս ամացն լինել, որպէս զի քեզ
հաստատեսցի բան իմաստնոյն, որ ալիս՝ զիմաստութիւնն և հասակ ծե-
րութեան զանարատ կոչէ։ Եւ եղեւ այս մինչ անձամբ անձին առեալ էր
զլուծ խոնարհութեան խաչիւ խաչելոյն. զհետ մտեալ, վարժեալ յորմէ
լուաւ ասել. Բարի է մարդոյ որ էառ զլուծ խոնարհութեան ի մանկութե-
նէ իւրմէ, նստելով լռիկ ի տան, և տալով հողոյ զբերան, յայտ արա-
րեալ զմեծագունի իմն կալեալ յոյս։ Մինչ էրն ի լռութեան և ի միայնու-
թեան կրանս, ի Հայոց թուականութեանն ՈԻ և Զ (1177), իսկ առ ի
մէնջ ի նախ դրեալդ՝ յամի եւթներորդի փոխման սրբոյս, եւ խաւար
ածելոյ բազմաց, և յանգ ելանելոյ բանի մարգարէին որ ասէ. Յերեսաց
426ա անիրաւութեան բառնի արդար, և մեր առ ի նմանէ որբ մնալոյ։‖Ի չորրոր-
դումն ամի զրկելոյ եղբաւր սորա Հեթմոյ աստուածասէր և բարեպաշտ
իշխանի, և մեր և բովանդակ զարմից մերոց, ի սեպհական բնակութենէ
մերմէ, ի դղեկն Լամբ[ր]ան կոչեցելոյ, և միաբանակեցաց և հրեշտա-*

կարնակ ուխտէ Սկեւռայ վերձայնելոյ, յորում տեղւոշ ծնունդ և սնունդ սրրոյս ի միշի և այժմ դամբարանն սորա։

Եւ դոեցաւ սկիզբն գրոցս, որպէս յայտնի է որքանութիւնն գրոյն այլայլութեամբ, ի ձեռն ուրումն եղբաւր Անտեաց սրբասէր քահանայի ի միաբանակեցաց վանս Անապատ անուանելսյ, իսկ այլն ի Սկեւռայն վերասացեալ, ձեռամբ ուրումն ի կլերիկոսաց սուրբ եկեղեցւոյն Ջաւրվար անուանելոյ, ի յիշատակ Ներսէսի մեղապարտ ծառայի Աստուծոյ, ի դատապարտութիւն և միայն պիտակարար քահանայ կոչելոյ, որդւոյ քուեր սոյն Տեառն աստուածայնոյ, որոց յիշատակ իւրաքանչիւրոցն աւրհնութեամբ եղիցի և աղաւթք նոցա ի վերայ մեր։

Յիշատակեսցին աղաչեմ առաջի Աստուծոյ ամենայն բարեկամք նորա և եռչանիկ վարդապետքս մեր և տածիչք ոգւոց մերոց՝ Գրիգոր և Բասիլ, առ որովք այժմ դեգերինք ի վարժս, որովք լցեալ առ մեզ լինին թերութիւնն սրբոյն, յորմէ զրկեցաք, որք յաղատ և ի նսեմացեալ ժամանակս մեր, որպէս զաստեղս լուսապայծառս փայլեն ի գիշերի, բայց միայն զի խաւարաւ մեղաց կուրացեալ մեք ոչ կամիմք բանալով զաչս նայել։ Ընդ սոսին և սնուցիչ մեր և տախտակաւ վարժիչ զԲասիլ քահանայ եւ
426բ զայլ եւս ուսումնա‖կից և զաշակերտակից անձինս զՅոհաննէս և զԲարդօղէմէոս, նա և զամենայն զարմս մեր՝ զմեռեալս և զկենդանիս, զաշխարհականս և զեկեղեցականս, և որոց մի անգամ անուանքն գրեալ են ի դպրութեան կենաց, որպէս զի ընդ նոսին և անուանք ձեր յիշատակողացդ գրեալ լիցին յանմահ գիրն ի Քրիստոս ի Տէր մեր, որում ընդ Հաւր և Հոգւոյն Սրբոյ փառք, պատիւ և զաւրութիւն յաւիտեանս, ամէն։

Ընդօրինակեցաւ գիրքս այս ըստ առաջին գրեալսն ձեռամբ սրբոյ առնն Աստուծոյ և հաւատարիմ պաշտաւնէի Քրիստոսի Ներսիսի: Վասն որոյ զգուշասցի իւրաքանչիւր ոք, թէ ո գիտէ, և առցի ի գաղափար բանի և գրոյ՝ հրամանի և ստորատի և տան*։

## 20

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 88, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 399—400

Գրիչ՝ Կոզմա
Վայր՝ Խարբերդ

ա

302 Շնորհիւ Տեառն սկսա եւ ողորմութեամբ նորին կատարեցի զաստուածախաւս սուրբ Աւետարանս ի քաղաքիս Խարդբերդ, ընդ հովա-

---

* Երուսաղեմի օրինակում (Պողարյան, Ցուցակ Գ, էջ 72) պահպանվել է ստացողի հետևյալ հիշատակագրությունը (էջ 384). «Ջստացողիս կեանք, զստացօղսն իւր յոգի, զստացօղս Ներսէս, յոյժ վերջացեալ յաշակերտութիւն եւ որդիութիւն համանուն սուրբ հօրս, որոյ փափաքմամբ տառիցս տարփանօք, հարեալ յոգի սիրով, յաւելի զսա ի մթերս աստուածային շտեմարանաց, ըստ կրկնակին եւս մաղթելով ամբարել։ Արդ եղիցի յիշատակ երիցն ի մի բան յօդաւորել մեզ զսոյն տուողին եւ ստացողին ընդ աշխատեւումնս։

*նեաւ Սրբոյ Կարապետին և Սուրբ Յակովբայ, ի թուիս ՌՄԴ (1205) ընդ ձեռամբ* Կոզմայ *մեղաւորի եւ անարժան գրչի, հրամանաւ աստուածահաճոյ հաւր* Թորոսի *եւ ընդրեալ երաժշտի։ Արդ, աղաչեմք զամենեսեան, որք կարդայք յիշեսջիք զիս զմեղապարտ գրիչս* զԿոզմա, *եւ զծնողսն իմ, և զեղբարս իմ; եւ* զԹորոս *երաժիշտ՝ զստացաւղ սորա, զի ողորմեսցի մեզ Տէր Աստուած և փրկեսցէ յանշէջ գեհենի հրոյն. եւ յիշողացդ տացէ Տէր զանսպառ բարիսն ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում փառք յաւիտեանս, ամէն։*

*Եւս առաւել զհոգևոր եղբարք իմ զաստուածահաճոյ քահանայք* զՅոհաննէս *եւ* զՏիրացու, *որ առաջնորդ եւ աւգնական են գործոյս՝ յիշեսջիք ի Տէր Քրիստոս, աղաչեմ։*

Բ

92բ *Զ*Թաւրոս *երաժիշտ՝ զստացաւղ սուրբ տառիս յիշեսջիք ի Տէր Քրիստոս՝ ամենայն որդիք լուսոյ. ամէն։*

*Այլ եւ զմեղուցեալ գրիչս* զԿոզմա *աղաչեմ։*

Գ

146բ *Զպատուական հայր* Թորոս *երաժիշտ եւ ընդրեալ սուրբ յիշեսջիք ի Տէր Քրիստոս ամենայն որդիք Սիոնի սրբոյ, որ նորոգել ետ, ամէն։*

*Այլ եւ զանարժանս* Կոզմա *գրիչ, աղաչեմ,*

Դ

304ա *Զկին ոմն տառապեալ մեղաւք, որոյ անուն* Թագուհի, *յիշեսջիք ի Քրիստոս, եւ Աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։*

Ե

*Ստացող՝* Թաւրոս

*Ես նուաստ երաժիշտս Թաւրոս զփափագումն սրտի իմոյ եւ յիշատակ հոգւոյ իմոյ ետու գրել զսուրբ Աւետարանս՝ իմով աշխատութեամբ եւ արդեամբք՝ ի յիշատակ հոգւոյ իմոյ եւ ծնողաց իմոց, յուսալով յողորմածն եւ բարեգութն Աստուած որպէս խոստացաւ անսուտ խոստմամբ՝ թէ Բախեցէք, եւ բացցի ձեզ. եւ թէ Ոք եկեսցէ առ իս, ոչ հանից արտաքս։ Արդ ունելով իմ զսա բարեխաւս առ Քրիստոս, զի ողորմեսցի ինձ եւ ընկալցի զսակաւ նուէրս իմ, որպէս զխերեեշ այրւոյն, եւ հատուսցէ ինձ վարձս բարեաց յայսմ աշխարհիս եւ ի հանդերձեալսն՝ անըսպառ բարիսն ընդ սուրբս իւր։ Արդ աղաչեմ զամենեսեան որք լուսաւորիք ի սմանէ, յիշեսջիք զիս, զԹաւրոս երաժիշտ, եւ զծնողս իմ եւ, զեղբարս իմ եւ զամենայն ազգատոհմս իմ, զի ըստ բարերարութեանն իւրոյ ողորմեսցի մեզ Տէր Քրիստոս եւ փրկեսցէ ի սպառնալեաց հրոյն. եւ որ ոք յիշեն, առցեն զբարի հատուցումնն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որում փառք յաւիտեանս, ամէն։*





## 21

### ՆՈՆՈՍԻ ԺՈՂՈՎԱՐԱՆՔ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ ԱՌԱՍՊԵԼԱՑՆ

*Երևան 9663 (1830 թ.)*

Գրիչ՝ Յովանէս
Վայր՝ Սանահին

109 *Փառք Քրիստոսի Աստուծոյ մերոյ յաւիտեանս յաւիտ[ենից]։ Գրեցաւ Առասպելս այս և Աղճատանք հեթանոսականք՝ զորս յիշէ* Գրիգոր Աստուածաբան *առ ի խաղ առնել զնոսա, ԻԴ (24) գլուխ, Ի (20) Դարձեալ իմ Ցիսուս ճառին, և ԺԸ (18) ի* Բարսղի Արձանականն* *և այլն, ի* Յուլիանոսի *և ի* Կիպրիանոսի *ճառսն, ընդ ամենայն ՃԿէ (167) գլուխ, ձեռամբ* Յովանիսի *յոգնամեղ կրօնաւորի, ի թվ[ին] Հ[այոց] ՈԾԵ (1206), ի Հռչակեալս* Սանահին:

*Արդ, որք կարդայք կամ ընդօրինակէք, զբազմամեղս գծող յաղաւտս յիշեցէք, ընդ նմին և զխաշատուր վարդապետ***։

## 22

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՑ ԹՂԹՈՑ

*Վիեննա 1470, «Հանդէս ամսօրեայ», 1978 թ. էջ 432—434.*

Գրիչ՝ Պետրոս
Վայր՝ Սկեւռա

ա

165ա *Փառք և գոհութիւն, աւրհնութիւն եւ բարեբանութիւն ամենասուրբ Երրորդութեանն, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս։ Այս բազմալոյս եւ ս-*

---

* *Գրչի ծանոթագրությունն է «Առաջին ԻԴ գլուխքն պակասին յօրինակիս, զի յսկիզբնէ անհեալ են բազում թուղթք, որպէս և թուղթ մի անընթեռնելի էր, զոր չկարացի ընդօրինակել»։ Նույն ծանոթագրությունը հետագայում մեկը պարզաբանել է. «Այդ ԻԴ գլուխք գտանին ի ձեռագրին Ազգային Մատենադարանի Պարիս քաղաքի»։*

*Ձեռագրի առաջին էջի լուսանցքում գրված է. «Համեմատեցի Բարիզեան օրինակին, դրելոյ ի ՉԼԱ (1282)»։*

** *Այս նույն հիշատակարանը առ՛ս նաև Մատենադարանի № 9654 ձեռագրի 51ա էջում։ «Ցիշատակարանքում» (էջ 739) դրված է ՈԾէ (1208) թվականի տակ։*

տուածախաւս մատենի ցանկացայ նուաստ եւ տրուպս յորդիս եկեղեցւոյ Պետրոս եւ սկիզբն արարի տկար մարմնով, անպատկան նիւթով եւ անպատշաճ դեղով, անարհեստ դրչովւ Սակայն եկն ի կատարումն ողորմութեամբն Աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանսւ

Գրեցաւ մերձ ի դղեակս Լամբրուն ի գերահռչակ անապատս Սկեւռա ի մէջ քրիստոսազգեաց սուրբ ճգնաւոր եղբարց միաբանակեցած, որոց ձեռընտուութեամբ յանգեալ աւարտեցաւ կտակս սիրոյ կամաւք, զորս զամենեսեան պահեսցէ Քրիստոս անարատս ի կամս ողորմութեան իւրոյ եւ արժանի արասցէ իւրոյ աստուածային փառաց ողորմութեաննւ Արդ, որք ընթեռնուք եւ աւրինակէք, թողութիւն մեղաց խնդրեցէք յԱստուծոյ մեղաւորիս Պետրոսի եւ ծնաւղաց իմոց սուրբ հաւրեղբաւր իմոյ Խաչատրոյ, որ ծեր եւ տկար կենաւք զնիւթս պատրաստեաց, որ եւ աշխատի վասն մեր յամենայն պէտս, հատուսցէ սմա Քրիստոս որ առատն է ի պարգեւսւ

Եւ գրեցաւ ի թուիս Հայոց ՈԾԵ (1206) ի յիշատակ հարազատացն իմոց Եգնատիոսի քահանայի եւ Եղիայի սարկաւագի, որք յառաջ վախճանեցան ի Քրիստոս, եւ սուրբ հաւրեղբաւր իմոյ Յովհաննիսի, որ զմեզ զամենեսեան սնոյցւ Աղաչեմ սիրով յիշել, ո՜ բարի ընթերցողքւ Յայսմ ամի վախճանեցաւ ի Քրիստոս վարդապետն իմ Յովհաննէս տիկնաղգի որում ողորմեսցի Քրիստոսւ Արդ, որք սիրով յիշէք զվերոգրեալքս ի սմա ի թողութիւն մեղաց, յիշեսցէ եւ զձեզ Քրիստոս յողորմութիւնն իւր եւ նմա փառք յաւիտեանսւ

Բ

149բ Զմեղաւոր գրողիկս, զտկար մարմնով եւ զ(հ)իւանդս հոգւով աղերսիւ աղաչեմ յիշել ի Տէր, ո՜ աստուածասէր ընթերցողքւ

Գ

145բ Դաւթի քահանայի՝ հաւր իմոյ եւ Յոհաննիսի կրաւնաւոր քահանայի եւ Խաչատրոյ՝ հաւրեղբարց իմոց եւ Եգնատիոսի եղբաւր իմոյ յառաջ վախճանեալ ի Քրիստոս, ի գերեզմանս նոցա ցաւղ ողորմութեանն Աստուծոյ իջցէւ Ընդ սոսին եւ մեղուցելոյ գրողիս Պետրոսի Տէր իմ Քրիստոս ողորմեսցիւ

Դ

56ա Այսաւր ձեռս խիստ մսեցաւ, զի իմանալիս կրկին է սառեալ, վայւ

Ե

44բ Ոհ սորին կարաւտ ողորմելիս՝
յիս կուրացաւ յիմանալիսւ

Զ

147ա Աւաղ նազելի բանիցս աստուածայնոց յանպատկանաւոր նիւթս*ւ

---

* Նյութը՝ «հին հաստկեկ, ողորկ թուղթ» էւ

## 23

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Պալյան, Ցուցակ Կեսարիայի, էջ 9*

*Գրիչ՝* Գրիգոր
*Վայր՝* Տումարծա

*Փառք... գրեցաւ և ծաղկեցաւ աստուածաբուղխ սուրբ Աւետարանս Քրիստոսի ձեռամբ բազմամեղ փցուն, անիմաստ և յանցաւոր գրչի՝* Գրիգոր *քահանայիս, ի* Տումարծու, *որ անուամբ գոչիմ եւ ոչ գործօք։ Ի թուականիս Հայոց ՈԾԵ (1206) յաւարտեցաւ, յունվար ամսոյ Գ, աւր շաբաթ, ի գաւառս* Կեսարիոյ Կապադովկեցւոց, *ի հուշակաւոր անապատիս Սրբոյն Կարապետի Յովհաննու եւ Սրբոյն Ստեփանոսի Նախավկային եւ Սրբոյն Թէոդորոսի եւ Սրբոյն Մեռկեռիոսի զինաորի եւ այլ բազմահաւաք սրբութեանցս, ի յեպիսկոպոսութեան տէր* Ազարիա *վերայտեսչի։ Որոյ ցանկացող եղեալ այս փրկագործ սուրբ Աւետարանիս զհեզահոգի եւ զհաւատարիմ ծերումին՝* զԽըաբրպաշին, *և զիւր կողակից՝* զԿույասարն, *որ փոխեալ է ի Քրիստոս, եւ ամենայն արեան մերձաւորքն իւր։ Յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր* զԽարպաշին, *որ ստացաւ զսուրբ Աւետարանս, եւ յետ յիշատակ ի վանս Սրբոյն Գրի[գ]որի Նիւսացւոյն, որ է եղբայր սրբոյն* Բարսեղայ *հայրապետին։*

*Արդ մի ոք իշխեսցէ հանել զսա ի դըրանէ սորին. եթե (յ)անգգնի, զպատիժն Կայենի առցէ և զմասն Ուգայի, և զՔրիստոս խաչահանողացն, ամէն։ Եղիցի, եղիցի։ Հայր մեր, որ յերկինս, սուրբ եղիցի...։*

## 24

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

*Երևան 194*

Գրիչ՝ Առաքել
Վայր՝ Հաղբատ

ա

252բ *Ամենասուրբ Երրորդութեանն փառք յանսպառ յաւիտեանս, ամէն։
Ամենայն դասք ընտրելոցս Քրիստոսի կոչեցելոց յառաքելական ընտ-
րութիւնն ընկալան զիմաստս գիտութեան ի Հոգւոյն Աստուծոյ, եւ եղեն
քարոզք ճշմարտութեանն Բժ-անքն եւ Հ-ունքն ԾԻ-քն եւ Շ-իւրքն, եւ
երեք հազարքն, եւ հինգ հազարքն, եւ բիւրքն։ Բանիւ նոցա աւանդեցաւ
ուսուցանել զհաւատս բարեպաշտութեան, որով. եւ վիճակեցան հասա-
րակ աւետաբերք եւ համաքարոզք յընթանուրս տիեզերաց։
Ուստի եւ մեծն յառաքեալս Պաւղոս աստուածային անաւթն ընտ-
րութեան, որ յերկինս եւ առաջի խորհրդական Երրորդութեանն ընկ[ալ]
աւ զմեծ շնորհս հոգւոյն սրբոյ, ուստի լուաւ բանս անճառս եւ անհա-
253ա սականս‖եւ փռեալ ընդարձակեաց եկեղեցւոյ զբանն ճշմարտութեան եւ
ի շնորհս որդեգրութեան աւազանին լեզուս նորս ստացեալ բերան Քրիս-
տոսի, եղեալ իբրեւ թէ ինքն Պաւղոս ընդ ամենայն ումեք խաւսի, եւ
զբաժակ փրկութեան անապական այգւոյն, ի սրտին ամբարեալ շտե-
մարանս անտուստ մատռու[ա]կեալ ելից զամենայն տիեզերս։ Եւ չորեք-
տասամբք թղթովքս ի չորեսեան կող[մ]անս երկրի, հնչեաց զբանն կե-
նաց, որ է գանձ անկողոպտելի, եւ տեւէ մինչեւ ի գալուստն Քրիստոսի։
Վասն որոյ եւ այսր շահաւետ գանձու ցանկացող եղեալ Յոհան
քահանայ, սպասաւ[որ] տէրունեան խորհրդոյն, ստացաւ զսա յիշա-
տակ անջնջելի առաջի Աստուծոյ, եւ խնդրէ յամենցունց, որ յետ իւր
253բ առ ոյ ոք եւ իցէ սա, հանապազ յիշեսցէ ի Քրիստոս‖յոյսն ամենեցուն։
Եւ ես Յոհան նուաստ քահանայ աղաչեմ զամենսեան, ոյք ընթեռ-
նոյք եւ լուսաւորիք ի սուրբ պատուիրան[ա]ցս Քրիստոսի, եւ եթե ըն-
դաւրինակէք, յիշել աղաչեմ յաղաւթս՛ եւ թողութիւն հայցել ի Քրիստոսէ
յանցանաց իմոց, եւ ծնաւղաց, եւ եղբարց իմոց։ Եթէ ի հասարակաց
եկեղեցիս, եւ եթէ առանձինն առ եղբաւր ումեք իցէ սուրբ առաքեալս,
յիշել աղաչեմ ի Քրիստոս, որպէսզի բարեխաւսութեամբ սորին ողոր-
մեսցի մեզ Քրիստոս՝ մեզ յիշելոցս, եւ ձեզ յիջողացդ ի հասարակացն
յարութեան, ամէն։*

Գրեցաւ խոշորագիր գրով գիրքս այս, ձեռամբ նուաստ եւ ամենա-
մեղ քահանայի Առաքելոյ, ի սուրբ եւ ի հռչակաւոր ուխտս [Հաղբատ],
254ա ընդ հովանեաւ Սրբոյ Նշանիս եւ մաւրս լուսոյ Կաթողիկէի,‖յառաջնորդ-
գութեանն սուրբ հայրապետիս մերո տեառն Յոհանիսի, ի թուիս Հայոց
ՈՃԶ (1207), ընդ որս եւ ես աղաչեմ մասնաւորել զիս սուրբ աղաւթից
ձերոց, եւ Քրիստոս Աստուած հասարակաց ողորմեսցի, եւ ինքն եղիցի
աւրհնեալ յաւիտեանս։

Բ

Ի ստոյգ գիտողաց եւ յուղիղ աւրինակէ գրեցաւ, թէպէտ եւ ես ախ-
մար էի, գի ոչ մտահաճութեամբ է ընտրեալ, այլ ի բազում աւրինակաց
ընտրեալ եւ վկայեալ ի գիտ(ն)ականաց եկեղեցւոյ։

Գ

Փառք Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Կա-
392ա տարեցաւ սուրբ մատեանս ամենանուաստ եւ յետին կրաւնաւորի ձեռ‖
ամբ Առաքելի‖[անարժ]ան քահանային, խն///ոռ ի բարի յիշատակ ի///
[հան]դերձեալումն։

Զսուրբ Առաք[եալքս եւ] զՆսայիս ի մի տփի եդեալ///աղա[չ]եմք
Յունան ստացաւղ, ե[ւ]ս սուտ[անուն] գրիչս, որք աւգտիք ի սմանէ
մեզ ա[ն]մոռաց յիշել ի սուրբ յաղա[ւթ]ս ձե[ր], ընդ նմին եւ ծնողսն
մեր /// եւ Աստուած զձեզ յիշէ յիւրում գալստ[եանն ամէն]։

Դ

197ա Զստացաւղ սուրբ առաքելոյս զՅունան եւ զծնաւղսն իւր յիշեցէք ի
Քրիստոս, որք ճարակէք յանմահական յաղբեւրէս։ Ընդ նմին եւ զան-
պիտան գրիչս զԱռաքել, աղաչեմ ի Տէր։

Ե

225ա ԶՅունան ստացաւղ դրոցս յիշեցէք ի Քրիստոս, եւ զանպիտան
գրիչս աղաչեմ։

## 25

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Պատմութիւն հայ Տոմարծայի», էջ 601—602*

Գրիչ՝ Կարապետ
Վայր՝ Շիրակայ անապատ

Փառք... որ ետ կարողութիւն իմոյ տկարութեանս ժամանել ի կատարումն սուրբ եւ աստուածախաւս աւետաբեր աւետեաց Աւետարանիս,

* Ձեռագիրն այժմ պատկանում է ԱՄՆ-ի Ռեյսին քաղաքարնակ, Տոմարծացի այրի տիկին Պայծառ Տեր-Կարապետյանին, որոնց ընտանիքում այն պահվել է 38 սերունդներ ի վեր, որոնց նախապապն է համարվում մագաղաթյա Ավետարանի գրիչ տեր Կարապետը։

որ քառավտակ գնացիք զընդհանուրս ոռոգանելով պայծառացուցանէ զանձինս հաւատացելոց շնորհաւք Սուրբ Հոգւոյն։

Եւ ա․ող, դռեցաւ սա ի թվականիս մեր ՈԾԶ (1207) ի թագաւորութեանս Հայոց Մեծի Լեւոնի եւ բարեպաշտի, ի լեառնս Տարօնոյ, յանապատիս Շիրակայ, ընդ հովանեաւ սրբոյ Կարապետիս եւ այլ սրբոց, ի հայրապետութեան... Յովհաննու Հայոց կաթողիկոսին, հրամանաւ եւ արդեամբք Վարդանայ կրաւնաւոր քահանայի, որ ստացաւ զսա յիշատակ իւր, եւ ծնաւղաց իւրոց, եւ ազդականաց՝ կենդանեաց եւ ննջեցելոց /// իւրոց յաշխարհէ։ Եւ գրեցաւ սա ձեռամբ Կարապետի մեղապարտի եւ խոշորագիծ գրչի, ի ծերութեան եւ ի տկարութեան ժամանակի՝ խաւարեալ աչաւք։

Եւ արդ, աղաչեմ զամենեսեան, ոյք աւգտիք ի սուրբ մատենիս, յիշատակի արժանի առնել ղստացաւղ սորա զՎարդան, եւ զայէր Բարսեղ քուերորդի նորա, եւ զամենայն տոհմայինս նոցա՝ զմեռեալս եւ զկենդանիս, զի ողորմեսցի նոցա Քրիստոս Աստուած եւ ի հանդերձեալ գալըստեանն իւրոյ թողցէ զյանցանս նոցա, ամէն։ Ընդ նմին եւ զիս զտառապեալ գրչիս Կարապետ յիշեսջիք, եւ զամենայն վերոգրեալքս ի սմա։ Եւ որ առատն է ի տուրս, եւ աննախանձ ի հատուցումն Քրիստոս որդին Աստուծոյ ամենեցուն ողորմեսցի՝ յիշողացդ եւ յիշելոցս, եւ պարգեւեսցէ զարքայութիւնն իւր, եւ նմա փառք ընդ Հաւր եւ Հոգւոյն Սրբոյ եւ միշտ եւ յաւիտեանս, ամէն։

## 26

## ԱՒԵՏԱՐԱՆ

Կոնիբիր, Ցուցակ Լոնդոնի, էջ 7

Գրիչ՝ Գրիգոր

[ի թուականութեանս]Հայոց ՈԾԶ (1207), ի թագաւորութեան Լեւոնի Հայոց, ի կաթողիկոսութեանն տեառն Յոհանիսի (գրեցաւ) սուրբ Աւետարան[ս]։ Ստացաւ զսա պատուական քահանայն և սրբասնեալն Կոստանդին՝ ի յիշատակ իւր և ծնողաց իւրոց, և որդոց իւրոց՝ ի վաեյումն, որ Տէր Աստուած վայելել տացէ, ամէն, ամէն։ Եւ զիս զբազմամեղս Գրի[գոր]ի ///։

## 27

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐԴԱՆԱՅ ԵՂԻՇԷԻ

Երևան 1888

Գրիչ՝

122բ [Գրեցաւ ի] թու[ին] ՈԾԶ (1207)։

## 28

### ԱՒԵՏԱՐԱՆ ՄԼՔԷ ԹԱԳՈՒՀԻՈՅ

*Վենետիկ 86 (862 Թ.) Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 387*

*Ստացող՝* Անդրէաս
*Վայր՝* Վարագ

ա

360բ *ի ՌԾԷ (1208) թուականիս Հայոց, ես* Անդրէաս *քահանայ թափեցի զսուրբ Աւետարանս ի յանաւրինաց, եւ վերստին ետու զսա յընծայս Սրբոյ Նշանիս* Վարագայ՝ *յիշատակ ինձ և հայրաղատ եղբաւր իմոյ* Գէորգեայ *քահանայի։*

*Արդ, որք լուսաւորիք ի լուսայճաճանչ տերունեան հրամանացս, յիշեսջի[ք ի] Քրիստոս զիս՝* զԱնդրէաս, *եւ զեղբայրսն իմ* զԳէորգ, *եւ* զՀայրապետ *եւ* զՍարգիս, *եւ զծնողսն մեր, եւ Աստուած հասարակաց ողորմեսցի, ամէն։*

բ

137բ ԶԱնդրէաս *եւ* զԳէորգ *քահանայք ստացաւղք սուրբ Աւետարանիս յիշեսջիք ի Քրիստոս, աղաչեմք։*

## 29

### ՄԱՇՏՈՑ

*Վենետիկ 570, Սարգիսյան, Ցուցակ Գ, էջ 68—70*

*Գրիչ՝* Վարդան
*Վայր՝* Ասորեմայր

ա

149բ *Կատարեցաւ Քահանայաթաղս այս երկոտասան աւուրց, լի եւ թամամ, ի սերտ եւ յընդիր աւրինակէ, ձեռամբ* Վարդանայ *մեղաւոր և անպիտան գրչի, ի թուականիս Հայոց ի ՌԾԷ (1208), ի գաւառիս* Ծոփաց, *յանապատս որ կոչի* Ասորեմայր, *ընդ հովանեաւ Սուրբ Կիրակոսի եւ առաջնորդի սորա սրբազան եպիսկոպոսի տէր* Վարդանա, *հրամանաւ եւ ծախիւք աստուածասէր եւ քրիստոսադաւան քահանայի* Կարապետ *երիցու, որ գրեալ ետ զսա ի յարդար վաստակոց իւրոց, ի յիշատակ իւր եւ զաւակաց իւրոց* Բանարգէս *երիցու եւ այլոցն, եւ ամուսնոյ իւրոյ։ Արդ,*

որք ընթեռնոյք զսա, յիշեսջիք անմոռաց յաղաւթս զստացող սորա, եւ զգծող, եւ զծնողքն մեր, եւ Աստուած զձեզ յիշէ, ամէն։

Բ

133 Կատարեցաւ կարգ թաղման քահանայից ի սերտ եւ յընդիր աւրինակէ, ձեռամբ Վարդանա մեղաւոր եւ անպիտան քահանայի, հրամանաւ եւ ծախիւք աստուածընկալ և սրբասէր քահանայի Կարապեաի, եւ երէց որդոց իւրոյ Բանարգէսի, որոց ողորմեսցի տէր Աստուած իւրեանց եւ ծնողաց իւրեանց...

Գ

170ա Տէր Աստուած ողորմեա ստացողի սորա Կարապետի պատուական քահանայի, եւ մեղաւոր եւ անպիտան գծողի սորա Վարդանա, ամէն։

ՈՃԸ 1209

30

## ՀԱԽԱՏԱՐՄԱՏ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑՒՈՅ

*Երուսաղեմ 2526 (ժէ դ.), Ն. Պողարյան, Ցուցակ Ը, էջ 203—207*

*Հեղինակ՝* Վարդան Այգեկցի
*Վայր՝* Պաւլասան

ա

203 *Եւ ես ողորմելիս* Վարդան, *որ հաւաքեցի ղայս աստուածային և լուսափայլ մարգարիտս հաւատոյ՝ մեծաւ ցանկութեամբ յուսոյ և սիրոյ, հետևելով աստուածաղան և բարեփառ հարցն ուղիղ դաւանութեան, հաւատով խոստովանիմ անթերի մտօք՝ զհամագոյ և զամենասուրբ Երրորդութիւնն...։*

*Արդ, մեծաւ հոգաբարձութեամբ, և յղձալի սիրով հաւատոյ արարաք հաւաքումն բազում բանից, ամենայն ուղղափառ հայրապետացն խօսից և վարդապետաց եկեղեցոյ՝ ի մերոց* Հայ<ե>աստանեաց, *և յամենայն ազգաց, առեալ միայն զվկայութիւնսն՝ սակաւ բանիւ վկա մերոյ ճշմարիտ և ուղղափառ հաւատոյս, ընդդէմ երկաբնակացն և արիանոսացն, և ընդդէմ նոցա, որք ապականացու ասացին զանապական մարմին բանին Աստուծոյ և անգոսնելի կիրք ետուն նմա։*

*Դարձեալ եկ բաղձս-լի, և բեր զմիտս քո զխընամակալութեամբ Հոգւոյն Աստուծոյ, հաւաքեսցուք և այլ վկայութիւնս, որ կարի ևս պիտանացու է մերս եկեղեցւոյ կարգաց և օրինաց, որք են խորհրդածութիւնք հաւատոյ յամենայն աղգաց սուրբ առաջնորդաց և ի մերոց* Հայ<ե>աստանեայց, *և լցցուք զայս աստուածաբնակ տառս իբրև զդրախտ մի՝ լցեալ զանազան ծաղկօք, աստուածային հոգէխառն, բանիւք, և իբրև զքաղաք մի լցեալ ամենայն մեծութեամբ, և աստուածական համեմատ գանձիւ, և արասցուք զսա պարիսպ եկեղեցոյ ուղղափառաց յազգաց յազգըս, որով հերքեալ հալածեսցին ամենայն հերձուածօղքն, և պապանձեսցին շատաբան և անդուռն բերանք նոցա։*

*Եւ արդ սկիզբն արասցուք, ուստի սկսանել արժան է։ Նախ վասն ծննդեան Տեառն և մկրտութեանն, և սուրբ պատարագին, և խաչնցարին, և զեյի և մատաղի, զատկի, և նընջեցելոց. և վասն գառինն, զի եկեր Տէրն յերեկոյին Ե-շաբաթին, վասն աղի։*

## Բ

260 ...Եւ է սա երկոտասան գիրք, գրեալ և փոխեալ յառաջին օրինակէն, ձեռամբ մեղապարտիս Վարդանայ, և առաքել զպսակ՝ ուղղահաւատ եկեղեցւոյ Հայաստանեայց, որպէս և այլք, որ յառաջ քան զսայ թողեալ յիշատակ բարի մեզ, և ծնօղաց, և եղբարց մերոց, և ազգի մերոյ։ Եւ արդ, առ ոտս ամենեցուն անկեալ պաղատիմ աղերսանօք և աղաչեմ՝ արարէք յիշելոյ արժանի զմեզ զամենեսեան, և խնդրեցէք թողութիւն մեղաց մերոց յողորմածէն Յիսուսէ Քրիստոսէ Աստուծոյ մերմէ, զի թերևս ապրեսցուք անսպառ տանջանացն, որ և զձեզ փրկեսցէ Տէր Աստուած ի նմանէ, եւ նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Եւ գրեցաւ սա ի Պաւլասան, ՈՄԸ (1209) մերոյ թուիս, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս և Սրբոյ Նշանիս, յառաջնորդութեան տեառն Մանուէլի սքբասնեալ եպիսկոպոսի։

## Գ

Այս ինչ է կարգեալ այս աստուածաբնակ տառս. Սակաւ բան մեր յիշատակին, եւ պատուէր գրոցս առ ժառանգօղս իւր, եւ ուղիղ դաւանութիւն Սուրբ Երրորդութեանն, եւ բազում վկայութիւնք ընդդէմ երկաբնակացն, եւ բանն զոր ասէ սուրբն Աթանաս թէ դժոխք սգայռեցան ասել մի բնութիւն բանին Հօր և մարմնոյն որ ի Մարիամայ, եւ զոր Աստուածաբանն ասէ բնութիւնք երկուք, եւ զոր Եփրեմ ասէ թողլի գնա չարչարելի և թէ ի մահու անդ ոչ էր նայ ընդ նմայ։ Քանզի այս երեք բանս, զոր այս երեք սուրբքս ասեն, բազումք տկարանան, և զուղիղն ոչ կարեն իմանալ. Իսկ դու գտցես զսոսա պարզս, մեկնեալս, և եդեալ յիւրաքանչիւր կարգն, շնորհօքն Աստուծոյ, որով իմանաս ճշմարտութիւնն, և յամօթ առնես զանօպայսն, որք անմիտք են։ Եւ ընդդէմ նոցա յոլով վկայութիւնք, որոք (յ)ապականացու ասացին զանապական մարմին Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և անգոսնելի կիրք եդուն նմա, այսինքն կերակրոց և ըմպելեաց ախտաբար հոսումն. արդարև վա՜յ է նոցա։ Եւ վասն դժուարալուր բաներոյ ոչ է իմ տալ. Եւ անցո զբաժակս. և որք այսպիսիք են։ Եւ վասն ճրագալուցին, զի երեկունն պարտ է ուտել։ Եւ վասնզի պարտ է ի Զ-ն յունվարի տօնել, ի միում աւուր, զծնունդ Տեառն և զմկրտութիւնն։ Եւ զի եկեր Տէր զդառն յերեկոյին հինգշաբաթին։ Եւ զի պարտ է զպատարագն անխմոր և անջուր մատուցանել։ Եւ զի պարտ է ասել զխաչեցարն՝ ամենայն աւուր, ի դէմս Որդւոյ։ Եւ զի սուտ է, որ ուրբաթաղել առնէ։ Եւ զի բարի է զատկի մատաղ, և այլ մատաղ զոր առնեն։ Եւ աղն զոր աւրհնեն և տան անասնոց։

Զայսոսիկ գտցես եդեալ վկայութեամբ բազմաւ ամրացեալ, որով խնուս զբերանս հակառակողաց։

Արդ է սա գանձարան Աստուծոյ կենդանւոյ, լցեալ անբաւ և անճառ, լուսափայլ հաւատոյ մարգարտով։ Եւ որ շատ աշխատի ընթերձումն նորա՝ նա ճաշակէ զմեծապանծ գեղեցկութիւն սորա։ Քանզի սայ լեառն է Սինէական, ուր բնակէ և ուսուցանէ խօսի Աստուած, և սայ է հալածօղ հեր-

ձուածօղաց քարամբք հոգոյն պարտելով զնոսա։ Սա յ է լոյս հոգոյ խաւարին շաւիղսն յելսն մեր յերկինս։ Սա յ է հիմն և մայր հաւատոյ, որ կամի ճաշակել զԱստուած։ Սա յ է դուռն արքայութեան։ Սա յ է, որ տեսանել տայ մեզ զԱստուած և շրջել համարձակ և անամօթ յահագին ատենին. և օրհնեալ է [զ] Քրիստոս դատաւորն արդար։

Գ

Գրիչ՝ Աստուածատուր

260 Աւրհնեալ է ամէնաւրհնեալ և ամենաբարի բնութիւն, համագոյ և
ամէնասուրբ Երրորդութիւն, անբաժանելի ամենայն եղելոցս, յաւիտեանս
յաւիտեանից, ամէն, որ զօրացոյց զողորմելիս Աստուածատուր
իբր քահանայս, տանել ի կատարումն զայս աստուածաբնակ տառս, և
լցոյց զցանկութիւնս իմ ողորմութեամբն իւրով, որ և ցնծա հոգւովս ընդ
աւարտումն սորա։

31

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան, պատարիկ 1886

Կազմող՝ Մարգարէ
Վայր՝ Հառիճ

1ա Ամենասուրբ Երրո[րդ]ութեանն փառք, պատ[իւ] եւ գոհութիւն
յաւիտե[անս, ամէն]։

Եւ մեղուցեալ եւ յետի[նս] ի կրաւնաւորս Ովասափ[ս], որ եի
ազգաւ եւ տոհմիւ [ի] մեծ գեաւղաքաղաքէն Կո[ւ]միտոյ*, որ ի մանկութե[ան] կրաւնաւորեալ մինչեւ յալիս, եւ ոչ ինչ ունե[ի] թոշակ
երկայն [ճա]նա[պար]հին, բայց միայն զո[ղոր]մութիւնն Աստուծոյ,
ապա[ւ]ինե[ց]այ առ բարեգ[ութն, եւ]յիմ արդար ը[նչից, ստաց]այ
զսուրբ Աւետ[արանս փր]կանք հոգւոյ, [ազատ]եցի ի գերող[աց որ էր]
կարի զեղծեա[լ] /// էր, եւ առ անձուկ /// եւ յուսոյն զոր[ութեամբ] սուրբ
1բ Աւետարանն [ետու||դարձ]եալ նշանագրել ծաղ[կեալ], եւ կազմել, եւ
արծաթ[ով] փառազարդեալ առ ի [փ]ափաղ զտե<ղ>սաւղսն
[ա]զդելոյ, զի լիցի յիշատակ մեզ եւ ծնաւղաց մերոց եւ եղբարց, միշնորդ եւ բարեխաւս առ Քրիստոս, եւ մխիթար վշտագնեալ ոգւոյս։

[Ե]ւ արդ, աղաչեմ զձեզ [սուրբ] հարք եւ եղբարք եւ որդ[իք] սրբոյ
Սիոնի, յորժամ վ[երագ]առնայք զսուրբ [Աւետարա]նս եւ կարդ[այք] ///
այղիք ի քաղ[ցր /// [ճա]աշտկէս եւ /// առնոյք, [յիշեսջիք] ի սուրբ յաղաւթս [ձեր] առաջի զենմանն [գառին] զՈվասափս, եւ [զծնաւղսն]
իմ՝ զհայրն իմ զՔրիստափոր, եւ զեղբայրն իմ զԱբրահամ կրաւնաւոր՝
փոխեալ առ Քրիստոս, եւ զմիւս եղբայրն իմ զԱղբեր անուն, եւ զորդեակս նորա զՄարգիս: Նա եւ զհայր Վարդան Հառիճայոյ, եւ ըստ հոգ-

* Կումայրի-Գյումրի տեղանվան գրության հնագույն ձևն է։

տոյ զեղբարս մեր զԲարսեղ կուսակրաւն քահանայ, եւ զՍարգիս, եւ զԽաչոտն, եւ զմեղաւոր կազմաւղս զՄարգարէս, եւ զամենայն միաբանեալսն մեր։ Եւ Աստուած, որ առատն է ի տուրս, տացէ վարձս բարեաց ստացաւղացն եւ աշխատողացն, եւ ամենայն հաւատացելոց, եւ Աստուծոյ Հաւր փառք յաւիտեանս, ամէն։

ՈԾԸ (1209) թուիս կազմեցաւ։

## 32

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

Երևան 194 (1207 թ.)

Կազմող՝ Սուքիաս
Վայր՝ Հաղբատ

392ա Հ[ր]ամանաւ սրբազան քահանաի Յո[վհ]ան[ու], ի թուիս ՈԾԸ (1209), կազմեցաւ գիր[ս] առաքելական և մարգարէական, ձեռամբ իմոյս ախմար հեստի Սուքիասի, աղաչեմ եւ զիս մ[աօն]աւորել աղաւթիւ, թերեւս ի ձեռն ձեր տաց[ի] ողորմութիւն ի Տեառն, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։



ՌԾԹ 1210

### 33

### ՃԱՌՔ ՅՈՎՀԱՆՈՒ ՄԱՅՐԱՎԱՆԵՑՒՈՅ

*Երուսաղեմ 1999, Ն. Պողարյան, Ցուցակ Զ, էջ 594—595*

Գրիչ՝ Սիոն
Վայր՝ Նորսեսի անապատ

191 *Գոյացուցչին բոլորեցունց, անպատում եւ երկայնամիտ Սուրբ Երրորդութեանն, որ ներէ ամենայնի, որ վեհագոյն է քան զամենայն բարերարութիւնս իւր, նմա փառք յաւիտեան եւ յաւիտեանս յաւիտենից, որ ետ զաւրութիւն տկարութեանս մերում հասանել ի գիծ վերջին այսմ լուսազարդ եւ աստուածապատում մատենի, զոր ի Հոգոյն Սրբոյ ազդմանէ արարեալ է երիցս երանեալ սուրբ վարդապետն///* ացն կամաց, որք զահ ահեղ ատենին զմտաւ ածին, ոմն վասն պահոց, ոմն վասն աղաւթից, ոմն վասն ողորմութեան, եւ որոց այլ ինչ պակասութիւն է գործոց։*

*Արդ, ես նուաստ և վերջինս յորդիս եկեղեցոյ* Սիոն, *հանդերձ եղբարբ իմով* Թաքիոսի, Կաստատի, Հանիսին, Սիմաւոնի *ցանգացող եղաք այսմ հրաշապայծառ եւ հոգեւոր կտակիս, լինել առ ի յիշատակ մեզ եւ ծնաւղաց մերոց։*

*Եւ գրեցաւ սա յորում էր թուական Հայոց ՌԾԹ, (1210)՝ ի լեառն որ կոչի* Ակսակոմեր, *ի գեղն* Մուշեղկայ, *ի յանապատն* Նորսեսի, *առ դրան աստուածաբնակ Սուրբ Աստուածածնին, յառաջադրութիւն հաւրն* Նորսեսի *եւ երկրորդին* Թեոդոսի, *որք բարեմիտ կամաւք զտկարութիւնս իմ զաւրացուցանէին։*

*Վասն որոյ աղերս թախծանաց մատուցանեմ, ո՜վ աստուածարեալ հարք և եղբարք, յորս** եւ յերեսս անկեալ յուսալիր պաղատանաւք վարձս վաստակոց եւ պարգեւ ողորմութեան ի ձենջ այս շնորհեսցի ինձ աղաւթիւք յիշել զիս եւ զծնողսն իմ, եւ զհոգեւոր հայրն իմ* զՍարգիս: Տէր *Յիսուս Քրիստոս ողորմեա* Յուսեփայ *եւ* Գորգոյ *և իւրայոցն, որ զաւր[ինակս շնորհեցին]։*

---

* *Երկուսկես տող քերված։*

** *Պետք է կարդալ «յորս»։ Ցուցակում «ս»-ն դրված է փակագծի մեջ յոր(ս) ձևով։*





## 34

## ՀԱՂԲԱՏԻ ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6288

Գրիչ՝ Յակովբ
Վայր՝ Հաղբատ

ա

173ււ Յակովբ գրիչ յիշեսցի ի Տէր*։

բ

250ա* Ո՜, հոր ցուրտս նեղեաց։

գ

356ա Փառք բոլորից հաստչի, համապատիւ Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս։

Աւրհնութիւն, որ կարգս,
Գովութիւն, որ լսէ,
Փառք շնորհաւղին
Եւ յիշատակ՝ գրչիս։

Տէր Աստուած ամենակալ նորոգեա ի կեանս անծերանալիս զՍահակ՝ ստացաւղ սուրբ Աւետարանիս, ամէն**, ամէն։

դ

175ա Սահակայ է գիրքս ի փրկութիւն, ամէն***։

ե

Ուղղիչ՝ Մխիթար Քոբայրեցի

61ա ԶՄխիթար Քոյրայրեցի յիշեա ի Քրիստոս, աղաչեմ, ղուղղիչ****։

---

* Ձեռագրի գրիչը Յակովբն է, որը միայն Ա—Դ հիշատակագրությունները է թողել։ Ավելի ջատ հիշատակագրություններ գրել է Մարգարէ ծաղկողը (ներկերով՝ նկարների վրա և գրչով՝ ավետարանների վերջում և լուսանցքներում)։ Գլխավոր հիշատակարանը գրված է Սահակի անունից, բայց Հովհաննեսի ձեռքով։

Այս ձեռագրում կան երկաթագիր (Հակոբ), գրչագիր (Մարգարե), բոլորգիր (Հովհաննես) և շղագիր (Մխիթարի որոշ սրբագրությունները) գրություններ։

** Հունարեն է գրված։

*** Գրված է լուսանցքի երկարությամբ՝ զարդանախշի մեջ՝ նախշագրերով։

**** Գրված է շղագրով, «Քոյրայրեցի» ձևով, ճիշտը «Քոբայրեցի» է։ Նրա ձեռքով բազմաթիվ սրբագրություններ կան կատարված՝ բոլորգրով ու շղագրով (էջ 44, 63, 68, 139, 243)։

Գ

94ա Աստի յառաջ յառաջեա դու, չորիկ*։

Է

Ծաղկող՝ Մարգարէ
Վայր՝ [Անիի Բեխենց վանք]

111բ Սուրբ առաքեալ եւ աւետարանիչ բանին Հաւր, ի քոյդ ապաւինեալ բարեխաւսութիւն աղքատս եւ մեղաւոր աբեղայս Մարգարէս՝ նկարող սորին, որպեսզի ողորմեսցիս ինձ, նաեւ Սահակայ ստացողի եւ եղբաւր իւրում Իպատոսին, որ կիսաւրեա եւ յաշխարհէս։ Ով զմեզ աղաւթիւք յիշէ, Աստուած զինքն յիշէ։
Տէր Աստուած ողորմեա Սարգսի կուսակրաւն քահանայի, եւ եղբաւր իւրում Շահերոյն, եւ ծնաւղաց իւրեանց, ամէն։

Ը

173բ Տէր Աստուա՛ծ, ողորմեա Սահակայ ստացողի, եւ ծնաւղաց իւրոց, եւ եղբարց, եւ արայ զնոսա հաղորդս քո սրբոցն պսակի, ամէն։

Թ

276բ Յիշեա Քրիստոս Աստուած յողորմութեան քում զՍահակ ստացող սուրբ Աւետարանիս, եւ զծնաւղսն իւր, զեղբարսն եւ զքույրսն՝ զԹիմանոսն եւ զԿատայն, զԻպատոսն եւ զԱռաքելն, զՋարհայն եւ զՀոռոմակին, եւ արայ զնոսա քո սրբոցն դասակից եւ պսակակից, ամէն։
Նա(եւ) զՎարդն եւ զՅակովբոսն եւ զծնաւղսն նոցա եւ զամենայն ընդանիսն**։

Ժ

8բ Շերանիկ քանի գաս, ձուկն բեր։

ԺԱ

9ա Հայր Եղբայրիկ՝ առաջնորդ սուրբ ուխտիս յիշե[աջիք]։
Կազմիչ սորին հայր [Աբրահամ եւ մի]չ(ն)որդ ի սմին յիշեսջիք***։

ԺԲ

10բ [Քրիստոս] Աստուած ողորմեա Առաքել[ին, ա]մէն։

---

* Գրված է ստորին լուսանցքում։ Ձեռագիրն ունի մանրանկարչական բարձր արվեստ։ Տե՛ս Գ. Հովսեփյան, «Նիւթեր և ուսումնասիրութիւններ Հայ Արուեստի և մշակոյթի պատմութեան», պրակ Ա, Երուսաղեմ, 1935, էջ 15, 41—75։
** Վերջին տողերը գրված են նույն ժամանակ այլ գրչի ձեռքով։
*** Համտ. Գ. Հովսեփյան, նշված աշխատությունը։

ժգ

*Տէր Աստուած գթայ ի հոգի* Ռիմանոսին *ծառայի քո, ամէն։*

ժդ

*Հոգի սուրբ Աստուած գթայ ի հոգին* Իպատոսին *ծառայի [քո, ամէն]։*

ժե

11ա *Տէր Յիսուս ողորմեա* Սա[հա]կ[ա]յ, *ա[մէն]։*

ժզ

*Աստուած իմ Յիսուս, ողորմեա մեղուցեալ ոգւոյս, ամէն։*

ժէ

15ա *Տէր Աստուած ողորմեա* Մարգարէին՝ *գրչի եւ նկարչի, եւ* Սահակա *ստացողի, եւ ծնաւղաց իւրեանց, ամէն։*

ժը

17ա *Քրիստոս որդի Աստուծոյ, ընկալ զքո սուրբ զԱւետարանս ի սնապարտէս* Սահակայ *իբրեւ զխէրեւէշն այրոյն եւ ողորմեա ին[ձ]։*

ժթ

Առաքել *ծառայ Աստուծոյ**։

ժէ

*Ստացող՝* Սահակ
*Գրիչ՝* Յովաննէս
*Վայր՝* (Արջուառճի վանք)

357ա *Աստուածեղէն եւ լուսաւոր մատենագրութիւն չորից աւետարանչաց համաբարբառ եւ զուգապէս միաւորութեամբ, զոր նկարագրեցին վասն տնաւրէնութեան բանին Աստուծոյ, ըստ քառահոլով վտակացն Ադինա՝ աղբեւրաբար գետահետեալ, ոռոգելով զանդաստանս մտաց հաւատացելոց ի Քրիստոս, որով համաբոլոր եւ բովանդակապէս որքան կամ եղեւ Հոգւոյն Սրբոյ զամենայնն խորհուրդ զծածուկսն եւ զյայտնիսն արձանացուցին, տալով եկեղեցւոյ աւանդ աստուածատուր զբարձրագոյնսն եւ զխոնարհսն տընաւրինաբար խառնմամբ, զոր ընկալեալ ի վե-*

* *ժ—ժա հիշատակագրությունները գրված են համաբարբառի խորանների լուսանցքներում՝ համապատասխան անձանց կանգնած դիրքով նկարված պատկերների մոտ՝ թանաքով, ժբ—ժդ հիշատակագրությունները՝ խորանների գերանների վրա, ներկով, ժէ-ն ստորին գերանից ցած՝ թանաքով, վերջին՝ ժը—ժթ-ն՝ հասակով մեկ կանգնած Քրիստոսի աջ և ահյակ կողմերում.* Սահակի *և* Առաքելի *նկարների վերևում։*

րուստ յայտնութենէն, գոեցին առանձնապէս եւ զուգաբարբառ, որպէս զի յանցնիւրսն ժամանակ անթերի եւ աննիազ, բազմապատիկ եւ զանազան երախտեացն Աստուծոյ լիցի առ մեզ յիշատակ մինչ ի վախճան։ Որում այսպիսւոյ յոքնապատիկ բարեաց բաղձացող եղեալ իմ ամենա-
357բ նուաստի եւ տրուպ սպասաւորի տան Աստուծոյ Սանակ կրաւնաւորի‖և յետին քահանայի, որ էի աշակերտ սուրբ ուխտիս Հաղբատայ, ազգաւ եւ տոհմիւ ի մեծ մայրաքաղաքէն յԱնւոյ, սնեալ ի սրբաբան ուխտիս ի Հաղբատ, ստացայ զսուրբ Աւետարանս իմովք արդեամբք, առ ի յիշատակ ապագայից ինձ՝ նուաստիս Սանակայ, և ծնողացն իմոց Ռովմանոսին և Կատային, և երկուց հարազատ եղբարցն իմոց Իպատոսին և Առաքելին, և իւրեանց զաւակաց, և քերցն մերոց, և զաւակացն նոցուն, և աղգայնւոցն ամենից՝ կենդանեաց և մեռելոց։

Եւ ետու գծագրել զսա և կազմել ներքոյ և արտաքոյ յաւրինուածով ըստ իմում կարի, մեծաւ յուսով և կատարեալ սիրով, որ և աղերսական մաղթանաւք հայցեմ ի սիրողացդ Աստուծոյ, որք ժառանգորդքդ եք սրբոյ եկեղեցւոյ և սպասաւորք տէրունեան խորհրդոյն, յորժամ առնուք զսա ի ձեռս ձեր, յիշման արժանի արասջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զիս՝ զՍանակ ստացող սորա, և զվերագրեալ ծնաւղսն իմ, և զեղբարսն, և զՍարգիս հոգևոր ծնաւղն իմ, զՅակովբոսն և զՎարդն, որպէս զի ձերոյին սուրբ աղաւթիւքդ արժանասցուք հանդիպել ի դէպ ժամանակի հանդերձելոցն բարեաց*, պատրաստելոցն ի Քրիստոս սիրելեաց անուանն իւրոյ։

Եւ արդ, գրեցաւ սա և ծաղկեալ կամեցաւ յամի յորում էր թիւ համարոյ թուականութեանս Հայոց հարիւրոց վեցից և նույնքանեանց տասանց (1211), իսկ նորոյս շրջանի միոյ հարիւրոյ քսան և ութեակ թուով (1211)**, ի սուրբ ուխտս Հաղբատայ գծագրեցաւ ձեռամբ Յակովբայ, յառաջնորդութեան տեառն Յոհաննիսի սրբասիրի, ի թագաւորութեանն Հայոց արևմտային կողման Լևոնի քրիստոսասէր և յաղթող թագաւորի, և մերոց կողմանցս և Վրաց՝ Գեորգեայ թագաւորի, և ի սպարապետութեան Զաքարիայի շահնշահի, յորոց յաւուրս ժամանակաց յոլովս կատարեաց Աստուած յաղթութիւն ի բազում տեղիս, զորմէ այլք պատմեսցեն յայլ ինչ։

Եւ մեզ վասնզի խնդիր է առ սրբութիւնդ մատուցանել մաղթանս ոգեհեծ պաղատանաւք, ո՜վ լուսերամ բնակիչք սրբոյ ուխտիդ Արջուառճի, առ որ զլոյս հաւատոյ մեր եդեալ, զբովանդակ գոյք ծնողաց մերոց և եղբարց ծախեցաք և շինեցաք զաստուածաբնակ սուրբ եկեղեցիքս, և աւանդեցաք զսուրբ Աւետարանս յԱստուծոյ սուրբ եկեղեցիս, որ շինեցաւ ի մէնջ ի վանս Արջուառճի, որպէսզի սուրբ եկեղեցեաւս և սուրբ
360բ Աւետարանաւս մեք և ծնաւղքն մեր և եղբարք և ազգականք գտաք‖ողորմութիւն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, ի մեծ և ի սոսկալի աւուրն դա-

* Կազմելիս հիշատակարանի երկու թերթերի միջև երկու այլ թերթ է դրված՝ 1223 թ. ստացողների հիշատակարանից։

** Սարկավագի թվականով է հաշվված. 128+1083=1211։

տաստանի։ Եւ որք յիշէքդ զմեզ բարեմտաբար, գտջիք և դուք ողորմու-
թիւն յամենեցունց արարչէն, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Հրամանաւ Հաւր Միխիթարայ կաղմեցաւ ի վանքս Հոռոմոսի, որոյ ողորմեսցի Քրիստոս Աստուած։ Զկազմող սորին զԱբրահամ, և զնկարիչ սորին զՄարգարէն, և զողորմութեան խնդրողս զՅովանէս յիշեսջիք յաղաւթս վասն Տեառն աղաչեմք։

35

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5554

Գրիչ՝
Վայր՝ [Անի] Բեխենց վանք

ա

278 Փառք անսկզբնական բանին Աստուծոյ ընդ Հաւր իւրում եւ Սրբոյ Հոգւոյն այժմ եւ յանսպառ յաւիտեանսն, ամէն։

բ

85ա Այս կտակ աստուածախաւս սուրբ ուխտին է Զարեւնանի, Տէր Աստուած ողորմեսցի ստացողին, ամէն։

գ

143բ Աստուած Հայր, խնաեա յիս եղկելիս։

դ

Ծաղկող՝ Տիրացու

1բ [Զեղ]բայրիկն...:

ե

4ա ԶՏիրացու [գ]րի[չ]։

զ

6ա Սիմէոն ք[ա]հ[անա||յիչեա]։

է

զի վերստին նորոգեց Աւետարանս ի ձե[ռ]ն Տ[ի]րաց[ուի]

ը

8բ Եղբա[յրիկ]

թ

Եղբայրիկ զՀայր Բեխենց վանից յիշեցէք յաղաւթս։

ժ

[Խա]չ[այ]առուր եղբայր մեր յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր, [աղ]աչեմ։

ԺԱ

Գրիչ՝ Սիմէոն

7ա Զմիակեցն զՍիմէոն, որ բնակէր յանապատի, յողորմիս յիշեցէք, ամէն*։

ԺԲ

Վայր՝ Ջարեւճանի ուխտ

278ա Գրիգոր ստացող սուրբ Աւետարանիս, -և ցամուսին նորին, և որդիս նոցին յիշեսջիք ի Քրիստոս։ Ընդ նըմին և զՍիմէոն կրաւ[նա]ւոր պատճառ գործոյս, և զառաջնորդք Սուրբ ուխտիս Ջար<ե>ւճանի՝ զՕդիսէ Հայր, և զՎարդան փակակալ, և զԽաչայառը գործակից, զՍտեփաննոս, և զՂուկաս, զՎարոս միայնաւոր, և զայլ համայրէն միաբանք Սուրբ Նշանիս, որում սուրբ Աւետարանս է խայրի և ընծայ, աւանդեալ ի վերադրելոցս։

Եւ մի ոք իշխեսցէ դրժել զսա ի Կաթողիկեէս և ի Սուրբ‖Նշանէս, զի մի պատժեսցի սոցունց, այլ և զզարդարիչք սորա զՍթափկ աղախին Քրիստոսի և զ** անմոռաց յիշման արժանի արասջիք, ընդ որս և դուք ընկալջիք մասն բարի ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ են աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

ԺԳ

Նվիրող՝ Գրիգորէս

[Ե]ս Գրիգորէս և [ամուս]ին իմ [և///]նաւ տուաք ի հ[աշ]ալ արդեանց մե[ր]ոց ի գինս սուրբ Աւետարանիս դահեկան և որ[ք կ]արդայք մեղաց[թո]ղութիւն խնդր[եցէք ի]Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, [որ է աւրհնեալ ]յա[ւիտեանս]‖մեք խոստացայ[ք] /// առնել։

ԺԴ

Կազմող՝ Վանական

2ա Յիշեսջիք և զՎանական կազմող***։

ԺԵ

2բ Յիշեա Քրիստոս Աստուած զբնակիչք սուրբ ուխտիս Ջարեւճանի, որ հանգուցին զկեանս իմ լի դառնութեամբ****։

---

* Դ—ժա հիշատակագրությունները գրված են խորանների գերանների վրա և մեծ մասամբ ճմացված-ջնջված կամ ներկը թափված է։ Ջ և ը անունները գրված են գլխազարդերի վարդյակների մեջ։ ԺԱ-ն գրված է խառը ծաղկագիր-խճճանքով, որի վերին գերանի վրա՝ հունատառ ծածկագրություն է. վերծանել չհաջողվեց։

** Անունը քերված է։

*** Գրված է խորանի ստորին գերանից ներքև։

**** Թվում է նույն անձնավորությունն է գրել խառը գրությամբ։

ժզ

Միաբանող՝ Գրիգոր*

3ա Ես՝ Վարդայշահա որդի Գրիգոր ու ամուսին իմ՝ Բակուլ միայրանեցայ Սուրբ ուխտիս Զա[ր]եւանու Սուրբ Նշանիս, և ետու դանկակս ի հալա[լ] արդեանց իմոց, և ետ[ուն ս]պասաւորքս պատարագ ԺԵ (15) աւր ի տարին, Ե (5) աւր Աստուածածնին Թխիկն, Ե (5) աւր (Յ)այտնութեան Գրիգորու, Ե (5) աւր Զատկին Վարհամայ, ու զկենդանիքն յիշեան յաղաւթս՝ Զթուրանն և Երանշահ ու Սուլթան և զՄամաստին, և որշաք մեք կենդանի լինիք[չ]՝ ննջեցելոց ա[ւ՞ր]հնենք /// յիշենք, մեզ /// որ /// խաբան ծնողից /// յիշողացն և յիշեցելոց առ հասարակ ողորմեսցի, և նմայ փառք յաւիտեանս, ամէն**։

## 36

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 784 (պահպանակ)

Նվիրող՝
Վայր՝ Հաղբատ

[Վա]րդապետս /// ընծայեցի [ղա]յս ի սուրբ Կաթ[ողիկէս Հ]աղբատ /// մեր ամենեց[ուն] /// դ ով ուսմն /// թու ՈԿ (1211)***։

## 37

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 987

Գրիչ՝ Հայրապետ
Վայր՝ Սաքաստիա

ա

Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն։

Յամի վեցհարիւրորդի վաթսըներորդի (1211) թուականիս եղեւ աւարտ աստուածեան մատենիս սուրբ Աւետարանիս, ի խնդրոյ հաւր Յովանիսի եւ Բարսղի վանաց վանականի՝ սուրբ եւ ընտրեալ կրաւնաւո-

* Գրել է շղագրով։

** Տարեթիվը հայտնի չէ. տեղադրում ենք Հաղբատի Ավետարանի հիշատակարանին կից, որը նկարազարդված է նույն Բեխենց վանքում, Եղբայրիկի առաջնորդության ժամանակ։

*** Վարդապետի ով լինելը հայտնի չէ, բայց հայտնի է նրա նվիրած մատյանը։ Մագաղաթյա այս թերթը պարունակում է Աստուածաշնչի Թուոց գրքի, ԼԶ գլխի 3-րդ տան կես հատվածը («Ի վիճակէ ժառանգութեան մերոյ բառնայցէ»)՝ մինչև վերջ։ Երկրորդ էջի ստորին մասում, մեծ գրերով, գրված է «Թիւք», իսկ նրա ձախ մասում՝ սույն հիշատակագրությունը։ Ուրեմն ձեռագիրը եղել է «Հնգամատեան», որի թերթերը 1641 թվին արդեն օգտագործվում էին որպես պահպանակ։ Մյուս պահպանակը այս թերթի զույգն է։ Պահպանակը VIII դ. հնության ունի։

*րաց։ Սոքա ցանկացաւղ եղեալ սուրբ Աւետարանիս, պատրաստեցին*
313ա *զնիւթն եւ ոչ ժամանեցին մինչեւ գիծ,‖այլ փոխեցան մահուամբ ի*
*Քրիստոս, որոց յիշատակն նոցա կայ եւ մնա յաւիտեան։*
*Եւ ետ մահուան նոցա՝ կալեալ զաթոռ հայրապետութեան* Ներսէս
*քոյրորդին նոցա, որ էր հրեշտակ ի մարմնի, եւ մարմնով ի տեսիլ սե-*
*րովբէի, ըստ ընտրութեանն Երեմիայի, մաքուր յորովայնի եւ ճգնող*
*յանապատի։ Սա մեծափափագ սիրով եւ յաւժարական մտաւք գտեալ*
*զոմն աշխարհական* Խաչտուր *անուն, եւ տուեալ նորա յինչից իւրոց մասն*
*ինչ՝ բաժին հոգւոյ իւրոյ վասն ողորմութեան Տեառն։*
*Եւ ետ բազմաց ժամանակի ինչ անցանելոց, եղեւ այր մի իմաստուն*
*եւ բարի, շարժեալ ի Հոգւոյն Սրբոյ* Յեվանենէս *անուն*, եւ պարոն* Ուէֆան,
*եւ* Պապֆան, *այր‖իմաստունք, բարեբարք եւ բարեմիտք, բարեսէրք առ*
*ամենեսեան, բարի ծնաւղաց հարազատ որդիք, կամ եղեւ նոցա ամե-*
*նայն հոգեւոր սիրով կատարել զոր ինչ պիտոյ է սուրբ Աւետարանիս։*
*Եւ տուեալ յոսկոյ եւ յարծաթոյ իւրեանց, կատարեցաւ մինչև ի վերջին*
*գիծն, ի յիշատակ իւրեանց, եւ այնոցիկ ոյք աւգնական են լեալ սուրբ*
*Աւետարանիս, զի սա է գանձ հոգեւոր. լաւ է զսա ստանալ, քան զմեծու-*
*թիւն աշխարհի։*
*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ* Հայրապետի *նուաստի*
*քահանայի ըստ աշխարհի, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին և Սուրբ*
*Սարգսի զաւրավարին, որ յանուն սոցա կանգնեցաւ սուրբ եկեղեցիս ի*
*քաղաքիս* Սեբաստիա:
314ա *Արդ, ի հայրապետութեանն ոչ գիտեմ ասել եթե զում գրեցից անուն,*
*այլ ասեմ թե երից հակառակաց՝ տէր* Յովհաննիսի, *տէր* Անանէի *եւ*
*տէր* Դաւթի, *իսկ ի մերում դիտապետութեանս՝ տէր* Գրիգորի *սուրբ եւ*
*ընտրեալ եպիսկոպոսի, որ է հրեշտակ ի մարմնի, եւ զարմ մեծի եւ*
*հռչակաւոր վարդապետի, որ յաւուրսն իւր իբրեւ զարեգակն ճառագայ-*
*թեաց յաշխարհս մեր։*
*Արդ, գրեցաւ սա յանուն** Սուրբ Աստվածածնի եւ Սուրբ* Գրիգորի
*Լուսաւորչին, որ կոչի վանք* Փոսրընդայի, *ի հայրապետութիւն* Գրիգորի
*եւ եղբաւր իւրոյ* Վրթանիսի*** *սուրբ և ընտրեալ կրաւնաւորաց, ի վայե-*
*լումն իւրեանց եւ միանձանց, եւ ի յիշատակ այնոցիկ, որք աշխատու-*
*թեամբ եւ արդիւնաւորութեամբ աւգնական են լեալ։*
314բ *Եւս առաւել յիշեսջիք ի տէր* զԽաչատուր *քահանայն ըստ աշխարհի,*
*եւ* զԳրիգորէս *քահանա, եւ զծնաւղսն նոցա՝ զփոխեցեալսն ի Քրիստոս։*
*Արդ, որ միանգամ յայսպիսի յաստուածատուր եւ յաստուածահրաշ սե-*
*ղանոյս վայելէք, եւ վայելելոց էք, նորածին մանկունք նազելի մաւրն*
*Սիովնի, ըստ [յ]իւրաքանչիւր պիտոյից՝ յընթեռնուլ ի*
*բժշկութիւն, յուսանել, յաւրինակել, զի սկզբանէ զվերագրեալ աշխա-*
*տաւորքդ ի սմա զփոխեցեալսն ի Քրիստոս եւ զարդիս, եւ զմնացեալսն*

* *Այլ թանաքով և շղագրով շարունակել են «և* Բախանես *եղբայ[ր]», իսկ մյուս տողի սկզբում՝ «պարոն* Սարգիս»:
** *Նախորդ գրությամբ այստեղ ավելացված է «և Սուրբ Փո[կ]չին»։*
*** *Անվան սկզբի մասը ջնջված է գրչի ձեռքով և վերևում գրված «*Վրթան[իսի]:

*ի մարմնի, յիշեսջիք ի Քրիստոս՝ արժանաւոր յիշատակաւք, եւ զսպասաւորս մեր, եւ զծնաւղսն իւր եւ զեղբարսն յիշեսջիք ի Տէր։ Իսկ Աստուած, որ մեծ եւ առատ է յամենայն ձիրս պարգեւաց, ողորմած եւ աննախանձ*, ամենեցուն առհասարակ ողորմեսցի, ամէն։*

Բ

*Տէր Աստուած ողորմեա* Վասլին *հոգոյն* Ապլասքացոյն, *որ աւգնական եղեւ եւ աւարտեաց զսայ։*

118բ *Ո՛ գիր, որ մնաս,*
*է ձեռն, որ հողանաս։*

Գ

*Նկարող՝* Յոհանէս

234բ *Զ[մեղաւ]որ* Ս[ա]ր[ի] *որդի* Յոհա[ն]է[ս]
*ն[կ]ա[ր]աւղս յիշեցէք**։*

38

## *ՇԱՐԱԴՐՈՒԹԻՒՆ ԻՆՔՆԱԿԱԼԱՑՆ ՀՌՈՎՄԱՅ*

*Զարբհանալյան, Թարգմանութիւնք նախնեաց, էջ 627—648*

*Թարգմանիչ՝* Հեղի
*Վայր՝* ի վերայ ծովու, ի նաւարկութեան

ա

Ֆիլիպն՝ *եղբայր սորա և* Աւդ՝ *ընտանի և հակառակ սորա։*

*Ի սոյն ամի սպանաւ* Ֆիլիպն *յիշխանէ ումեմնէ և մնաց ինքնակալութիւն* Աւդին, *առ որ ճանապարհորդեմ ես՝ նուաստ Հեղի՝ հրեշտակութեամբ ի թագաւորէն մերմէ* Լեւոնէ, *առ վերոյգրեալ կայսրս* Աւդ*։ Եւ ի վերայ ծովու՝ ի նաւարկութեանս մերոյ թարգմանեցի զսա ի հռովմէականէն ի մերս՝ ի թուին Հայոց ՈԾԹ (1210)։*

*Իսկ արարեալ մեր առ ոտս նորա ամ մի և ամիս երեք, դարձոյց զմեզ հարկօք առ թագաւոր մեր, արձակելով ընդ մեզ և թագ արքայական բազմածախ և բազմագին՝ յականց պատուականաց և ի մեծագին մարգարտից ընդելուզեալ։*

*Զոր բերեալ մեր մեծաւ ուրախութեամբ՝ ընկալաւ թագաւորն մեր և պսակեաց ընդիր պսակաւն գեղեցիկ զ*Ռոբին, *որդի դստերն եղբօր իւրոյ*

---

* *Այստեղից հետո մինչև վերջ, ստորին լուսանցքի երկարությամբ, գրված է Բ հիշատակարանը. նույն թանաքով, ինչ վերին ծանոթագրությունները։*

** *Գրված է երկաթագրով ազատ էջի ստորին լուսանցքում։ Ներկը թափվել է և առանձին տառահետքեր են մնացել։*

*Այգ նույն գրով են գրված նաև ավետարանառաջներն ու ընթերցվածների առաջին տողերը, որոնք սկսվում են* Հովհաննեսի *գրած գեղեցիկ զարդագրերով։*

և որդի բրինձին Անտիոքայ Ռէմդին՝ ի թուին Հայոց ՈԿ (1211), ի տօն Սուրբ Աստուածածնին, յաւգոստոսի ԺԵ (15)։
Եւ թագաւորէ ընդ իւր՝ Հայոց, ի կամս Աստուծոյ։

Բ

Շարադրութիւն ճայրապետացն Հռովմայ

Ինուննցոնց Գ, որ այժմ հովուէ, առ որ յառաջեալ երթամք հրեշտակութեամբ ի թագաւորէն Հայոց ի Լեւոնէ, ես՝ Նուաստ Հեղի, որ և թարգմանեցի զսա ի հռովմայականէն ի մերս, յորժամ էաք նաւարկեալ մերձ յաշխարհն Բոյլաց, որ կոչին Լունկուպարտf, յաւուր պէնդակոստէիս՝ ի յունիսոյ ի հինգն, և ի թուականիս Հայոց ՈԾԹ (1210), ի փառս Քրիստոսի Աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

## 39

## ԱՂՕԹԱԳԻՐՔ

Երևան 7

Գրիչ՝ Քր[իստոսատուր]
Վայր՝ Միծռանfար անապատ

ա

126բ Ի վեցից հարիւրից եւ յոթեղից մի եւ ի տասն համարուց (1211), ի սպառել գարուց եւ ի նուազել ժամանակաց, ի ժամանակի վերջին, գրեցաւ տառս աստուածաշունչ հոգեւոր վարդապետին մականուն Սարկաւագի՝ Յոհաննէս կոչելոյ, ի պատճառս աղաւթից կրաւնաւորաց, ձեռա[մբ] մեղապարտի եւ յոգնամեղ գրչի Քր.[իստոսատուրի], ի գաւառս Առանի Պաղին, ի սրբափայլ լերինս Հայր Մակար կոչելոյ, յանապատս դժուարայարկ Միծռանfար կոչելոյ, ի ծերպս եւ ի քարանձաւս վիմաց, առ ոտն սրբոց չորեց ի տրանաց*։
Արդ, որք կարդայք եւ շահիք, զմեզ յաղաւթից մի մոռանայք, եւ Տէր եղիցի ընդ մեզ։

Բ

28ա Ո՞վ սուրբ եղբայր առաքինի,
Յիշման արա զիս արժանի,
Երբ արտասուս քեզ հանդիպի։

Գ

65բ Ընթերցող եղբայր, յիշեա և մի առներ անփոյթ։

Դ

99ա Զվաստակեալս մեղաւք յիշեա, եղբայր,

* Գուցէ՝ «չորեց [ա]ւ[ե]տրանա՞ց»։

## 40

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան, պատառիկ 907*

Գրիչ՝

*Փառք Համագո Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն։*

1ր *Ի թուականութեանս Հայոց ի ՈԿ (1211) եղեւ աւարտումն սուրբ եւ լուսերանկ, սրբարար եւ մաքրազարդ, յորդահոս, ծայրածաւալ, հրահոսան չորեք վտակեան գետիս աստուածային, առ ի յարբուցանել ղոլորտս տիեզերաց։*

*Այսմ քաղցրա<ա>համ վտակաց ցանկացող եղեալ պատուական կրաւ[նաւոր]...*

ՈԿԱ 1212

## 41

### ՋՈՐԵՔՏԱՍԱՆ ԹՂԹՈՑՆ ՊԱՒՂՈՍԻ ԳՆՈՐԳԱ ԿԱՂԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

*Երևան 1320*

Գրիչ՝ Բարսեղ

ա

10ա *Ո՛վ աստուածասէր ընթերցող և իմաստուն, մի հայիր ի խոշորու-*
*թիւն գրոյս, այլ ի շահն, և ըստ այնմ չափոյ յիշեա ղաշխատող սորա։*

բ

167բ *Զստացող սորին զ*Պետրոս *վարդապետ յիշեա, ո՛վ ընթերցող։*

գ

392ա *Ողորմեա Աստուած* Բարսղին *գրողի սորա և ստացողի սորին,*
*ամէն։*

դ

Կազմող՝ Պետրոս

397ա ...*ին* Զաքարիայի *և* Իւանէի, *որով փոխեցաւ ի Քրիստոս* Զաքարիայ
*և սուգ մեծ եթող* Հայաստանեայց *եկեղեցեացս։*

*Արդ ես յոքնամեղս* Պետրոս *արտասուաւք եւ ոգեհեծ պաղատանաւք անկանիմ առ ոտս ձեր, յիշել զմեզ ի սուրբ յաղաւթս ձեր, եւ խնդրել ի Քրիստոսէ զթողութիւն մեղաց մերոց, և ուր և վիճակեսցի կատարել զկե-շատակս մեր պատարագաւք անարատ գառինն Աստուծոյ, որ բառնայ զմեղս աշխարհի, և առհասարակ յիշողացդ և յիշեցելոցս ի գիրս ողորմեսցի մարդասէրն Քրիստոս, որ է աւ[ր]հնեալ յաւիտեանս, ամէն, ամէն։*

Կազմեցաւ *ձե[ռամբ] իմով* Պետ[րսի ան]*արժան կրաւն[աւոր] քա:հանայ[ի]**։

---

* *Ձեռագիրը կազմվել է* Զաքարիա *սպասալարի մահվան տարին՝ 1212 թ.։*

## 42

## ՔԱՐՈԶՔ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑՒՈՅ

Երուսաղեմ 936, Ն. Պողարյան, Ցուցակ Գ, էջ 478 (1703 թ.), Երևան 638 (1771 թ.)

Հեղինակ՝ Վարդան Այգեկցի
Վայր՝ Այգեկ անապատ

293բ Ես ողորմելիս Վարդան, տգէտս ի գիտնականաց եւ աննմանս ի կարգաւորս, գրեցի զայս աստուածաբնակ տառս ի խնդրոյ աստուածասէր իշխանին պարոն Պաղտինին, որ է ազն թագաւորին։ Եւ աղաչեմ անմեղադիր լինել գրիս անմարութեան, զի այս էր կարն մեր։ Եւ որչափ հասու եղեւ միտք մեր, ողորմութեամբն Աստուծոյ ժողովեցաք յօրինացն Աստուծոյ եւ եդաք ի սմա։ Եւ այս յոյժ ծանր եղեւ մեզ, զի երկու ամ է, որ ի զբաղումն աշխարհի էաք, եւ ոչ յընթերցումն գրոց. քանզի բուռն է կարիք մարմնոյ, յորժամ պակաս է։ Զի հալածական եղաք ի բնիկ ժառանգութենէ մերմէ՝ յերկրէն Կիւրիսոյ եւ ի գաւառէն Տըլխոյ* եւ եկաք յԱյդեկս: Եւ Աստուած ի բարի յաջողեաց զամենայն գործս մեր, եւ զպէտս մարմնոյ։

Իսկ ի հին ուսմանէ յիշեալ հաւաքեցի զսա։ Եւ յորժամ սկսայ ի սա, եւ կատարեցի զսա յաստուածաբնակ ցանկալի անապատս յԱյգեկս՝ ընդ հովանեաւ աստուածընկալ եւ հրաշազան սրբոցս՝ Սուրբ Սիոնի եւ Սուրբ Կարապետի, եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Կոստանդեայ սրբասնեալ եպիսկոպոսի, մատաղ հասակաւ նորընծայ գոլով յաստիճան ժամանեալ յառաքելական էր թուական Հայոց ՈԿԱ (1212), էր թագաւոր Հայոց Լեւոն Ռուբինեանց ի Կիլիկիայ՝ քրիստոսապսակ եւ ահարկու ի վերայ անօրինաց։

Եւ էր ի վերին հայք անուանի**, եւ զօրավար հալածիչ անօրինաց։

Եւ է ԻԴ (24) ամ, որ գերեալ է յանօրինաց Երուսաղէմ, եւ բարձաւ թագաւորութիւն Յունաց, եւ ազգն արիական առին զԿոստանդնուպօլիս: Եւ յայսմ ամի փոխեցաւ տէր Դաւիթ, որ կալաւ զկաթողիկոսութիւն սակաւ ամօք յԱրճականին:

Եւ արդ՝ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք զսա, աղօթս արարէք աստուածասէր իշխանին պարոն Պաղտինին, որպէսզի Աստուած ի խաղաղութեան պահեսցէ զնայ հարազատ եղբարբքն իւրօք, եւ թողութիւն շնորհեցէք ամենայն ննջեցելոց նորա, զի թողցէ Աստուած զյանցանս նոցա։

Յիշեցէք եւ զողորմելիս Վարդան, որ յարմարեաց զսա, եւ զծնօղս իմ, եւ զեղբարս, եւ զազգականս։ Եւ որք յիշէք զմեզ, որ աստ գրեցան, յիշեսցէ Աստուած զձեզ, եւ ղննջեցեալսն ձեր ի բարի, եւ նմա փառք անզրաւ յաւիտենիւ, ամէն։

* Ծիշտը՝ «Տլմոյ»

** Մատենադարանի № 638-ում «եւ էր ի վեր հայք անուանիք», միտքն այն է, թե վեր էր բոլոր անվանի հայերից։

## 43
## ԳԻՐՔ ՍՈՂՈՄՈՆԻ

Կյուլեսերյան, Ցուցակ Անկյուրիոյ, էջ 686 Գրիչ՝ Ջուքիաս

ա

424—26 Փառք եռակի, եզակի աստուածութեան յաւիտենաս յաւիտենից, ամէն։ Որ ետ զաւրութիւն անարժանիս աւարտել զսուրբ և յաստուածախաւս գիրս և զտառս իմաստութեան արքայի Սողոմովնի, որդւոյ Դաւթի մեծի մարգարէի։

Ի Հայկազնեայ թուաբերութեանս ի վեց հարիւրորդի վաթսներորդի առաջնորդի (1212), յամի յոր ելեալ թագաւորն Հայոց բազմութեամբ քրիստոնէական զաւրաւք ի վերայ անաւրինաց, և պաշարեալ զնոսա, ի մա[յ]րաքաղաքն Կապոդոկեցւոց Կեսարի, մինչեւ հնազանդեցոյց զնոսա, և բազում շահաւք դարձաւ ի Կիլիկիա: Գրեցաւ սա ընդ հովանեաւ Սրբոյ Յով[հ]աննու Կարապետիս։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք կամ գաղափար առնէք զսա, զի յաղնիւ աւրինակէ է, բոլոր սրտիւ յիշեցէք զթագաւորն Հայոց Լեւոն, և զստացողք սորա՝ զհոգեւոր տիկնայք՝ զտիկին Շուշան թագուհի և զքարի շառաւեղն իւր՝ զտիկին Աւիծ. և զամենայն ազգատոհմ իւրեանց՝ զկենդանիս և զհանգուցեալսն, նաեւ զքարի բողբոջ բոյս իւրեանց՝ զպարոն Մաղինն, և զծնաւղ իւր՝ զփոխեցեալն ի Քրիստոս։

Արդ, աղաչեմ զի և զանարժան դծաւղս յիշէք Ջուքիաս՝ և խոշորութեան և սխալանաց անմեղադիր լերուք։ Եւ Քրիստոս զձեզ և զամենայն հաւատացեալս արժանի արասցէ իւր արքայութեանն, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն, ամէն։

բ

466 Տէր Աստուած, քո սրբոց բարեխաւսութեամբ արա զսա յորդորիչ բարի գործոց և խորհրդոց հոգևոր տիկնա(ն)ցն և մանկանց եկեղեցւոյ, ամէն։ Աղաչեմ զամենեսեան զընթերցողք և զլսողքդ, անմոռաց յիշեցէք զստացողս սորա՝ զմատաղ զաւրավարն Մաղին, և զփոխեցեալսն ի Քրիստոս զծնաւղս նոցա, և զամենայն նախնիս, զոր Քրիստոս ի փառաց փառս փոխեսցէ, ամէն։ Աղաչեմ սխալանաց և խոշորութեան անմեղադիր լինել և յիշել զեղկելի ոգի գծողիս, և Քրիստոս զձեզ և զամենայն հաւատացեալս իւր յիշեսցէ, որ է աւրհնեալ յաւիտեան, ամէն։

գ

Տէր Յիսուս Քրիստոս, ողորմեայ /// այ Աւիծի, ամէն*։

* Ձեռագրի 687—689 էջերում եղել է հետևյալ ժամանակագրությունը. «Ժամ (անակա) գիր՝ բռնանց պարոն [Վահրամայ] Համուսցոյն:

Յանուն Հաւր և Որդւոյ և ամենախնամ Սուրբ Հոգւոյն, ամէն։

Ի թուականիս Հայոց Ձխե (1296) և ի Փոքր թվին ի Ժ, յամսեանն դեկտեմբերի [Ժ], յաւուր երկուշաբթի յիրիկունն, յայգ լուսանալ երեքշաբթի, ի կէս գիշեր մաւտ... ծնաւ աստուածապարգեւ և մխիթարիչ անդրանիկ որդին պարոն Վահր[ա]մայ որդոյն Վահրամ անուն նորին։ Եւ զկնի նորին, ի նոյն գիշերս, ծնաւ բարի դպտուղն Կոստանդին...

Ի թուականիս Հայոց Ձխէ (1298) և ի Փոքր թվին [ԺԲ] յամսեանն աւգոստոսի, որ աւր Ժ... ծնաւ։ աստուածապարգեւ քաղցրուկ և երրորդ որդին պարոն Աւշնին՝ պարոն Վահրամայ որդոյն...

Ի թուականիս Հայոց Ձխթ (1300) և ի Փոքր թվին ԺԴ, յամսեանն աւգոստոսի, որ աւր ԺԻ էր ամսոյն... ծնաւ աստուածատուր և դեռաբոյս և երջանիկ մանուկն պարոն Աւշնին՝ պարոն Վահր[ա]մայ որդոյն՝ Արեւգոյնն, որոյ յաւազանէն անուանեցաւ անուն սորին Ստեփաննոս, և մականուն Արեւգոյն և Ճաւփրի...»:

## 44

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 9857*

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Սաղմոսավանք

226բ *Ի թվականիս ՋԾԿԲ (1213), ես Գրիգոր պիտականում վարդապետս, որ սպասաւորեցի շինութեան վանուցս՝ եկեղեցեացս և ժամատանս, հրամանաւ և ծախիւք քրիստոսասէր մեծ իշխանին Վաչէի, և կանգնեցի զխաչս ի հանգստարանի իմոյ, քանզի անդառնալի ուղղոյն յիշատակ յաստեացս պարտեացս զայս գիր թողի, և ոք ընթեռնու իմովս բանիւ առ Աստուած կարդասցէ հանապազ խոստովանութեամբ, զոր գիրս ընդ մտացս և բանս ընդ հոգւոյս ողորմածն Աստուած միշտ թախանձեսցէ իբր յանեղծ մաղթողէ աղերս ընկալեալ Քրիստոսի իմոյս ձայնէ։ Արդ որք ընթեռնուք, աղօթիւք զիս յիշեցէք**։*

---

** Վաչե Բ Վաչուտեանցը՝ Սարգիս Քուրդ Ա-ի որդին, Զաքարէ սպասալարի կողմից կարգված էր Արագածոտնի, Շիրակի և Անբերդի վերակացու։ Սա ի թիվս այլ կառուցումների, 1215 թ. ավարտում է Սաղմոսավանքի Սուրբ Սիոն եկեղեցին, որի մասին թողել է արձանագրություն (տե՛ս «Այրարատ», էջ 162)։ Հիշված Գրիգոր վարդապետը երկու տարի առաջ (1213 թ.) գրել է այս հիշատակարանը, հայտնի չէ թե որտեղ, բայց այժմ այն գտնվում է 1674—1698 թթ. ընդօրինակված սույն Ժողովածուի մեջ, իրար հետ կապ չունեցող բազմաթիվ նյութերի շարքում։*

## 45

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Վենետիկ 137, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 592—594*

Գրիչ՝ Իգնատիոս
Վայր՝ Հաւու թառ

ա

351ա *Փառք անսկզբնական բանին Աստուծոյ ընդ Հաւր իւրում եւ Սրբոյ Հոգւոյն, այժմ եւ անսպառ յաւիտեանսն, ամէն։ Յոքնապատիկ հրաշիւք եւ գերապայծառ զարդուք պսակեալ ճոխացոյց զսուրբ Կաթուղիկէ եկեղեցի անպարագիծն Աստուած, յաւէտ պայծառագոյն քան զերկին՝ լցեալ ամենայն բարեաց ճաշակաւք իբրեւ զդրախտ աստուածատունկ պայծառափայլ դունովք եւ անուշահամ գեղեցկատեսիլ տնկովք զարդարեալ։ Ուստի որք ճաշակենն իմաստութեամբ մանրախոյզ քննութեամբ, քաղցրանայ ի քիմս նոցա առաւել, քան զխորիսխ մեղու ըստ ասաւղին ձայնի։ Եւ սոքաւք տեղեկացեալ ատեսցէ զամենայն ճանապարհս չարաց։ Յայտոցիկ յանմահական պտղոց է եւ այս հրամանք Փրկչին որ տայ աւետիս ամենեցուն եւ հրաւիրէ զարժանացեալսն Սրբոյ Երրորդութեան։*

*Սակս որոյ ցանկացող եղեալ այսմ լուսաւորական եւ մեծագին մարգարտի եւ գանձի աստուածայնւոյ՝ երկու հարազատ եղբարքս* Թադեոս *եւ* Հայրապետս*՝ ստացաք զսա մեծաւ յուսով ի մեր արդար վաստակոց՝ առ ի յիշատակ բարեաց մեզ եւ կտակ անջնջելի առ Աստուծոյ։ Տուաք գրել եւ նկարել* Իգնատիոս *գրչի՝ ոսկւով եւ երանգ երանգ խառնուածով զարդարեալ, ի վանքս որ կոչի* Հաւու թառ, *ընդ հովանեաւ Սուրբ Կաթողիկէիս եւ մեծահռչակ Սուրբ Նշանիս՝ Ամենափրկիչ կոչեցեալ, յառաջնորդութեան սուրբ ուխտիս՝ հեզի եւ ամենաբարւոյ* Պաւղոս *վարդապետի, եւ այլ սուրբ եւ ճգնազգեաց եւ համակամ եղբարց, որոց ողորմեսցի Քրիստոս Աստուած, ամէն։ Ի տէրութեան տեղւոյս* Իւանէի, *եւ ի կաթողիկոսութեան Հայոց տեառն* Յոհաննիսի:

*Եւ արդ ես* Թադեոս *յոգնամեղ ստացիչ սորա, ընծայեցի զսա խայրի տան Տեառն՝ մեծափառ քաւարանի իմոյ կայարանի սրբոյ ուխտի* Հաւու Թառու *կոչեցեալ վանք, փարթամացուցեալ զպակասութիւն սեփհական ուխտի։ Արդ աղաչեմ զամենեսեան եւ հայցեմ պաղատանաւք սիրոյ ի ժառանգաւորաց սորա, յընթերցողաց եւ ի լսաւղաց, յիշել ի սուրբ յաղաւթս ձեր ղիս* զԹադեոս, *և* զՀայրապետ *եղբայր իմ՝ կուսակրաւն քա-*

հանայ, եւ զծնողսն մեր, եւ զեղբարսն, եւ զամենայն աղգականսն մեր։ Նա եւ զփակակալ սրբոյ ուխտիս զՅակովբ ընտրեալ քահանայ, եւ զՄար-կոս ամենագովելի նպաստաւորն մեր սուրբ աղաւթիքն իւրով, եւ զԵղիայ սրբասէր քահանայ, եւ զԳեորգ, եւ զՎարդիկ ծերունի կրաւնաւոր, որ աղերսիւ հայցէ յիշել ի Տէր։ Եւ որպէս յիշէք՝ յիշեալ լիջիք եւ դուք յանս-պառ ուրախութիւնսն, որոց երանի որք վայելենն, ամէն։

Այղ դու, ո՛վ բան բանին անդամս առեալ գրի, ահա ի քեզ իսկ են հայցուածք մեր, յաւուրն յորում պսակաւորքն ճոխան, եւ եղկելիքն նուաղին, որք աղքատութեամբ զամենայն զգոյս մեր ծախեցաք ի քեզ՝ եւ ակն ունիմք զի մասին արժանացուսցես փրկութեան, զի մի անաւգ-նական եւ անայցելու զմեզ գտեալ չարին՝ գերի վարեալ վաճառեսցէ ի կորուստ անգտանելի, այլ տեսեալ զմեզ ի քէն պաշտպանեալ, նկուն եղեալ՝ ամաչեսցէ, եւ մեքենաւոր ղաւրութիւն նորա՝ տկարասցի ի պահ-պանական աջոյդ Յիսուսի։ Զի թէպէտ եւ մեք անարժան, սակայն դու քաղցր եւ յաճախագութ ես առ ամենեսեան, եւ չկամիս զկորուստ ումեք, որպէսղի եմ մեք ողորմութեամբ քո ապրեալ, արժանի եղէց անարատու-թեամբ գալ ի կոչումն քո սուրբ։ Եւ քեզ ընդ Հաւր եւ ընդ Հոգւոյն սրբոյ փառք յաւիտեանս, ամէն։

Եւ գրեցաւ ի թուիս Հայոց ՈԿԳ (1214), ձեռամբ Իգնատիոս մեղա-ւորի։ Աղաչեմ յիշել ի սուրբ յաղաւթս ձեր զիս եւ զծնաւղսն մեր, եւ զԵղիայ վարդապետն, եւ զՄխիթար վարդապետն, նաեւ զՆերսես պա-տանի՝ աշակերտ Թադեոսի։ Եւ որպէս յիշէք՝ յիշեալ լիջիք եւ դուք ողոր-մութիւնն Աստուծոյ, ամէն։ Արդ, որչափ ի սա գիր ստացաւղի սորա, այնչափ աւրհնութիւն յԱստուծոյ եւ յամենայն սրբոց նորա, ամէն։ Հոռո-մոսի վանացն ոսկետուփ Աւետարանն եւ այս՝ մին գրչի է գրած։

Բ

268ա Զաստուածապատիւ եւ զմեծայնուն զվարդապետն Եղիա յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր, աղաչեմ։

Գ

92ա Բարեխաւս Իգնաաիոսի*:

46

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 7570

Գրիչ՝ Յոհաննէս

228ա Ի վեցհարիւրերրորդի վաթսներրորդի երրորդի (1214) շրջագաութեան տոմարի Հայոց, ի հայրապետութեան տեառն Յոհաննիսի կորովամիտ

* Գրված է մանրանկար խաչի պատվանդանի վրա։

և խոՀեմ առաջնորդի, եւ ի թագաւորութեանն Լևոնի որդոյ Սաեֆանէի,
եւ ի սուլաանութեան Մելէֆըլեաերն, որ տիրէր Եգիպտոսի, եւ սուրբ
տեղեացն՝ մայրաքաղաքին ամենայն տիեզերաց Երուսաղէմի, եւ Դա-
մասկոսի, եւ Եդեսեա, եւ Ծոփաց երկրին, Դլաթա մինչեւ ի սինաւոն
Վրաց, եւ ի թագաւորութեան Վրաց Լաշու, որ տիրէր Տփխեաց եւ Անւո;
եւ այլ բաղում քաղաքաց առաջին տանուտերացն Հայոց, Ալանաց եւ
Աղուանից, ի Կարնոյ մինչեւ ի Պարս, եւ ի բռնակալութեանն որդւոյ
Խաւարովշանին, որ տիրէր երկրին Հոռոմոց, Կեսարիոյ, Սեբաստոյ եւ
Կաւնին, եւ այլ բազում մայրաքաղ[աք]աց, եւ Սինոպին, մինչև ի ծովն
Լիբնացոց, եւ ի թագաւորութեանն Հոռոմոց Լաշքարո, որ տիրէր ծովե-
զէրացն Ովկիանոսի՝ ի Սինոպէն մինչեւ թագաւորեալ քաղաքն Կոստան-
դինուպաւլիս, եւ սմա տիրէ ազգն Փռանգաց, խլեալ ի Հոռոմէն, եւ ի
228բ թագաւորութեանն Ասորւոց Եճաննաի, որ է ի Հնդիկս:

Ես Գրիգոր եպիսկոպոս եւ Կոստանգին քաՀանա արեանառու մեր, ստացաք զպատուական եւ զգերաշխարՀիկ եւ զտիեզերալոյս մատեան սուրբ Աւետարանի(ս) Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, թագաւորին անմաՀի, ի վայելումն [ման]կանց եկեղեցոյ [եւ ի] յիշատակ Հոգոց [մեր]ոց՝ զկնի ելից յաշ[խա]րՀէ, եւ ծնաւղաց մերոց՝ ուղևորելոցն առ Քրիստոս։

Արդ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք կամ աւրնակէք, յիշեսջիք առաշի Քրիստոսի զտէր Գրիգոր եւ զԿոսաանդին քաՀանա՝ զստացողք սուրբ Աւետարանիս, եւ զեղբարսն մեր զ[Հա]նգուցեալսն ի Քրիստոս՝ զԿարապետն եւ զԳէորգ, եւ զծնողսն մեր, եւ Քրիստոս զձեզ յիշէ յիւր ողորմութիւնն։

Գրեալ եղեւ ձեռամբ նուաստ գրչի Յոճաննիսի սարկաւագի [Հռո]մկլայցո, սնեալ եւ վարժեալ յաստուածապաՀ դղեկիս՝ Հայրապետանիստ քաղաքիս Հայոց, ընդ որում շնորՀեացէ զսա Քրիստոս ընդ երկայն աւուրս պատուական առաջն ///

47

## ՄԱՇՏՈՑ

Վիեննա 230, Տաշյան, Ցուցակ, էջ 704—705

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Ուռեթիլ

222ա ...սկսա եւ ողորմութեամբ նորին կատարեցի զաստուածապատում
տառ Մաշտոցիս, ի թուաբերութեանս Հայոց ի ՈԿԳ (1214) ...յոքնա-
խումբ եւ բազմավայելուչ ծաղկաւք եւ <եւ> անուշութեամբ, զոր բազ-
մերջանիկ եւ երանելի Հայրն մեր մականուն սորին սուրբ կտակիս Մաշ-
տոց, որ յիւր անուն կոչեմք զանուն սորայ, որ բազում աշխատութեամբ
ընթերցեալ յոլորտս աստուածային պատուիրանաց... կազմեաց բուրաս-
տան ցանկալի եւ ճեմարան սրբազանից եւ Հանգիստ եւ յուղարկող վախ-
ճանելոց...։

Արդ, այսպիսի գանձի շահաւէտութեան եւ ական պատուականի եւ մարգարտի գեղեցիկ հետընթացեալ իմաստուն եւ ճարտասան վաճառապետ արուեստիս Կիրակոս ոմն անուն ցանկալի եւ սարկաւագ լցեալ բարի արգասիւք եւ գործաւք առաքինութեամբ, ստացաւ զսայ իւրոյ սրբութեանն ճեմարան եւ վայելումն կենցաղավարութեան իւրութեան (այսպէս) իւրոյ, եւ յետ դարձի յաշխարհէս կտակ եւ յիշատակ անջինջ առաջի Աստուծոյ, իւր եւ սրբասնեալ քահանայի հաւր իւրոյ եւ բարեպաշտի մաւր իւրոյ եւ համաւր[էն] ազգականաց իւրոյ, եւ յուսապատ պաղատանօք հայցէ յամենայն սրբազան ընթերցողացդ յիշել յաստուածունակ աղաւթս ձեր...։

Արդ գրեցաւ սայ ի զարդ եւ ի պայծառութիւն եկեղեցոյ եւ ի վարժ նորավարժ ուսումնասիրաց, ի նահանգս Ոտճայոյ, ի գաւառս Շպղթան, ի հոյակապ եւ յականաւոր գիւղս Ուռեթիլ կոչեցեալ, ընդ հովանեաւ Սրբոյ Աստուածածնիս՝ յատոյգ եւ յընտիր աւրինակէ, որոյ շնորհեսցէ Տէր Աստուած վարձս բարեաց շնորհողի աւրինակին Վասիլ քահանային։ Եւ գրեցաւ ձեռամբ ամենամեղ եւ գերին գրչի Գրիգորոյ, ի ժամանակս որում բռնակալ էր անաւրինաց ազգին մեծն սուլտանն Մելիք Աշրաֆն, եւ հայկական ազգիս մերոյ քրիստոսապսակ թագաւորին Լեւոնի, որ բարեպաշտութեամբ իւրով ընդ ամենայն տիեզերս պայծառացեալ լինին եկեղեցիք եւ կարգք քրիստոնէութեան. որոյ տացէ Տէր Աստուած յաղթութիւն նմայ եւ հզաւր արասցէ...։ Աղաչեմ... յիշել դարձեալ յանուանէ զայս պատուականքս զԿիրակոս սարկաւագ եւ զծնողսն իւր եւ զամենայն աղգայինսն իւր, եւ սոցայ ամենեցուն խնդրեցէք զթողութիւն մեղաց...։ Եւ զամենամեղ գծողս եւ զվարդապետն յիշման արարէք արժանի աղաչեմ։

Կիրակոս առաջի Աստուծոյ Բ աւր ժամոյ պարտական է Թէոփիլէի հոգոյն, եւ Աստուած զվճարելն տայ իւր արժանաւորիլ, ամէն։

## 48

### ՄԱՇՏՈՑ

Երևան 8139

Գրիչ՝ Ղազար
Վայր՝ Ի լերին Սուրբ Լուսաւորչի

ա

113ա Քրիստոս Աստուած, աղաւթիւք եւ բարեխաւսութեամբ ամենայն սրբոց ողորմեա ստացողաց և աշխատողաց գրոցս, Ղազարու և Աստուածատրու նուաստ եղբարց, և Գրիգորի վարդապետի, և ծնաւղաց և եղբարց և քերց նոցուն, և ամենեցուն հոգւով ընդ նոսին միաբանելոցն։ Զնչեա Տէր զձեռագիր յանցանաց նոցուն և արժանաւորեա մեծի ողորմուլթեան քում յահաւոր գալստեան քում, որ ես աւրհնեալ ընդ Հաւր և Սուրբ Հոգւոյն այժմ, և միշտ և յաւիտեանս։

*Գրեցաւ ի լերին* Սուրբ Լուսաւորչիս, *մերձ ի հանգստարան Նորին*
113ր *երանելոյ՝ յանապատի Սուրբ Երից մանկանց, ի դուռսն սրբոյ վը||կա-
յարանիս։*

*Աղաչեմք, որք ընթեռնոյք կամ ընդաւրինակէք, զմեզ ի սուրբ յա-
ղաւթս ձեր յիշեսջիք, եւ Աստուած, որ մեծն է ողորմութեամբ, զյիշողքդ
յիշեցելովքս հանդերձ արժանի արասցէ երկնից սուրբ արքայութեան իւ-
րոյ ընդ ամենայն սուրբս, ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում փառք
յաւիտեանս, ամէն։*

Բ

113բ *Տէր Աստուած ողորմեա* Ղազարու *գրչի և վարդապետի, և* Աստուա-
ծատրու *եղբաւր հարազատի, և* Գրիգոր *վարդապետի, և ամենայն հա-
ւատացելոց, ամէն։*

Գ

*Ի թուականիս ՈԿԳ (1214) գրեցաւ ի փառս Աստուծոյ ամենակալի։*

Դ

112բ *Որ կարդա զյիշատակարանս Տէր Աստուած ողորմեցի նմա, ամէն**։

Ե

145ա *Տէր ողորմեա* Ղազարու:

## 49

## ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Երուսաղեմ 417, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 366—367*

*Գրիչ՝* Գրիգոր
*Վայր՝* Մեծfար անապատ

*Փառք քեզ միայնոյ սկզբանդ, եւ անսկզբանդ ընդ սկզբանդ, եւ սկըզբ-
նաւորիդ սկզբանց, երիցդ ի մի եւ միումդ յերիս, համագոյ տէրութեանդ,
այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Շնորհիւ Տեառն սկսայ եւ ողորմութեամբ Նորին յաւարտումն ածեալ
կատարեցի զմատեանս տառից աստուածախաւս մարգարէին Եսայեա, եւ
զգիրս առաքելոյն սրբոյն Պաւղոսի տիեզերաց լուսաւորչի եւ եկեղեցեաց
Քրիստոսի պայծառացուցանողի, որ ընթերցեալ լինի յեկեղեցիս Աստու-
ծոյ ըստ որում եւ առաքեալ ասի։*

*Զայս երկու գիրս նորոգեալ գրչութեամբ նուաստս եւ տրուպս յորդիս
եկեղեցւոյ* Գրիգոր, *ի խնդրոյ հարազատաց պատուական եւ ընտրեալ եղ-
բարց քահանայից Աստուծոյ* Յոհաննիսի *եւ*Ստեփաննոսի, *որ մեծաւ ցան-
կութեամբ փափագաւղ եղեալ սոցա յոյժ հարկեալ զմեզ ստացան զսա ի*

---

* *Այսպիսի հիշատակագրություններ կան նաև 143ր, 145ա էջերում։*

վայելս կենաց իւրեանց, եւ յիշատակ անջինջ ինքեանց եւ ծնաւղաց իւրեանց, որ փոխեալ են յաստեացս, մանաւանդ հաւր իւրեանց Գետրոսի սուրբ եւ ընտրեալ քահանայի ննջեցելոյ, որում ողորմեսցի Տէր։

Եւ արդ, եղեւ գրաւ գրչութեան սորա ի թուականիս ՌԿԳ (1214) ՝ի կաթողիկոսութեանն Հայոց տեառն Յոհաննիսի, եւ ի թագաւորութեանն Լեւոնի՝ որդւոյ Ստեփանէի՝ որդւոյն Լեւոնի՝ որդւոյ Կոստանդեա՝ որդւոյ Ռուբէնի, որ տիրեաց զաւրութեամբն Աստուծոյ եւ խաղաղացոյց զաշխարհս իւր յամենայն շուրջաբնակ թշնամեաց, որում տացէ Տէր յաղթութիւն իսպառ, եւ կեանս երկայնս՝ առողջութեամբ եւ բարեկարգութեամբ։

Բայց գրեցաւ սա յանապատիս որ կոչի Մեծափար, ընդ հովանեաւ սրբոյ եւ փառաւոր եկեղեցւոյս որ յանուն Տիրամաւրն, եւ գերահռչակ սրբոց վկայիցս Պրոբոսի, Տարագոսի, եւ Անդրոնիկոսի, յառաջնորդութեան ուխտիս տէր Աստուածատրոյ՝ սուրբ եւ ընտրեալ եպիսկոպոսի, ի գաւառիս որ Մանուտ կոչի, եւ բարեպաշտ իշխանիս մերոյ Գեորգեա՝ իշխեցողի անապատիս։

Բայց սակաւ բանիւք պատմեցից վասն իշխանիս այսմիկ։ Սա որդի էր իշխանաց իշխանին մեծին Մլեհի, հաւրեղբաւրորդի թագաւորին Լեւոնի, եւ էր սա քաջ եւ յաղթող ի պատերազմի, առատաձեռն, առատասեղան, բաշխաւղ աղքատաց, պարգեւատու զինուորեալ մարդոց։ Ապա աստանաւր ամաչեմ ասել զազգիս մերոյ զնենգութիւն և ղըշար կարծիս առ իրեարս, որ ի սկզբանէ նախանձոտք եւ ընկերատեացք լեալ են։ Եւ մարդիկ ոմանք չարք եւ քսմոսք մտեալ առ թագաւորն ասեն եթէ ազգային քո Գեորգ հակառակ է թագաւորութեան քո; Մինչ զի աստուածասէր եւ բարեպաշտ թագաւորն ի ցասումն ջարժեալ կալաւ զազգայինն իւր զմեծն Գեորգ, յափշտակեաց զամենայն ինչս նորա եւ եգ զնա ի բանդի ի դղեակ եւ յանառիկ բերդին Սիսոյ թագաւորաբնակ քաղաքին, եւ ի նմին աւուր խաւարեցոյց զաչս նորա, ի թուականին Հայոց ի ՌԾԷ (1208)։ Իսկ նա եկեալ խաւարեալ աչաւք ի հայրենաշէն վանս իւր, զոր հայրն իւր բարեպաշտն մեծն Մլեհ շինեալ էր՝ զհռչակաւոր անապատս Մեծափար եւ զմեծ եկեղեցին յանուն Տիրամաւրն, որում ողորմեսցի նմա Տէր բարեխաւսութեամբ Սրբոյ Աստուածածնին եւ սրբոց վկայիցս։

Իսկ Գեորգ թէպէտ եւ զլոյս աշխարհիս կորոյս, բայց երկնաւոր լուսոյն արժանի եղեւ տեսանելոյ շնորհաւքն Քրիստոսի, բազում ճգնութիւնս եւ ծնրադրութիւնս յանձն առեալ կրէ, եւ աղաւթից ստէպ կայ հանապազ ի տուէ եւ ի գիշերի արիաբար, կալով յաղաւթս առաջի [գե]րահրաշ վկայիցն։ Եւ յայսմ ամի շինեաց եկեղեցի ի վերայ քնարանի սրբոց եւ շինեաց պռաւպիլս առաջի դրանց սրբոց եկեղեցեացն, մաւտ ի դիրս սըրբոցն, որ ի յունական կոչի դրան սրահ, եւ անուանեաց զնա իւր տապանատուն, զի ի վախճանին իւրոյ անդ թաղեսցեն զնա։ Այլ մեք յառաջիկայսն երթիցուք։

Եւ արդ աղաչեմ զամենայն որդիս եկեղեցւոյ, որք կարդայք եւ կամ աւրինակէք, յիշման աղաւթից արժանի արասջիք զստացաւղք սորա եւ զծնաւղսն իւրեանց եւ զբաւանդակ ազգատոհմն իւրեանց։

Այլ եւ զբազմամեղ գծողս աղաչեմ յիշել մեղաց թողութիւն, եւ խոշորութեան գրոյս եւ սխալանաց անմեղադիր լերուք։ Միայն ի սիրոյ համարձակեցայ տալ զանձն յայս աշխատութիւն։ Մի ոք եպերեսցէ զմեզ անգոսնելով, այլ ուղղեսցէ եղբայրաբար, զի մարդ ընդ տկարութեամբ անկեալ, եւ զըբաղում զբաղմամբ աշխարհիս փա /// ոչ համակ ի բերան ունելով զը ///։

## 50

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 3257

ա

250 Զմեղաւյարտ- գրիչս Կարապետ աղաչեմ յիշել ի Տէր, որք լուսաւորիք ի սուրբ Աւետարանէս, ո՛վ դասք սրբոց։

բ

402 Զմեղապարտ գրիչս Կարապետ աղաչեմ, յիշել ի սրբամատոյց յաղաւթս ձեր, ո՛վ սուրբ մանկունք եկեղեցւոյ սրբոյ։

գ

521 Փառք ամենասուրբ Երրորդութեանն և մի աստուածութեանն Հաւր և Որդոյ և Հոգւոյն Սրբոյ այժմ և...

Ստացաւղ սուրբ աւետարանիս զԿարապետ շնորհազարդ սարկաւագ և զծնաւղսն իւր յիշեսջիք ի Քրիստոս, ամենայն որդիք լուսոյ։

Ի թուականութեանս ՌԿԳ (1214)։

## 51

## ՀԱՒԱՔՄՈՒՆՔ ԳՈՐԾՈՑ

Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 771—772

Գրիչ՝ Ստեփանոս

102 Սրբազան և պատուական քահանայի Վարդանի Աստուած վայելեալ տացէ զդրեալս զայս։ Ի թուականութեան Հայոց ՈՃԿԳ (1214) գրեցաւ գիրքս այս ձե[ռ]ամբ Ստեփաննոսի անպիտան գրչի։ Արդ, որք աւգտիք ի սմանէ կամ աւրինակ առնոյք, յիշեսջիք զմեզ ի Քրիստոս Յիսուս, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Ընդ նմին և զստացող նորա Վարդան:

Խոշորութեան գրոյս մի մեղադրէք, և Քրիստոսի փառք յաւիտ[եան]*։

---

* Ձեռագիրը գտնվում է Լորենձինա Մեդիչյան գրադարանում։ Այս թվականին արտագրվել է Արիստակես Լաստիվերցու «Հայոց պատմութեան» մի օրինակ, որից 1840 թ., Հաղբատում արտագրվել է Մատենադարանի № 6457 ձեռագիրը։ Հին օրինակը գտնվել է Ջառների քարայրից։

ՌԿԴ 1215

## 52

### ՅԱՃԱԽԱՊԱՏՈՒՄ ՃԱՌՔ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

Երուսաղեմ 94, Ն. Պողարյան, Ցուցակ Ա, էջ 283—289

Գրիչ՝ Պետրոս
Վայր՝ Ակներոյ վանք

168ա Փառք, պատիւ և գոհութիւն ամենասուրբ Երրորդութեանն։

Շնորհիւ բարերարին Աստուծոյ կատարեցաւ լուսաւոր վարդապետութիւնս Սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի, գիրքս որ կոչի Յաճախապատում, ի թուականութեանս Հայոց ՌԿԴ (1215), ի հայրապետութեան տեառն Յոհաննիսի Հայոց կաթողիկոսի, և ի թագաւորութեան աստուածասէր և բարեպաշտի Լեւոնի։ Գրեցաւ հրամանաւ հաւր Թորոսի, և յաւժարութեամբ ամենայն եղբայրութեանս, ի մեծ և հռչակաւոր անապատիս որ կոչի Ակներոյ վանք, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս և Սուրբ Առաքելոցս և աստուածընկալ Նշանացս։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք և լուսաւորիք ի սուրբ վարդապետութեանցս, յիշելոյ արժանի արարէք զմեղապարտ և անարժան գրողս Պետրոս, և զծնողսն իմ, և զեղբարս՝ զկենդանիս և զհանգուցեալսն, և Աստուած որ առատն է՝ ողորմութեամբ իւրով հատուսցէ ձեզ, և մեզ ընդ ձեզ, ամէն։

Դարձեալ աղաչեմ զընթերցողսդ, սխալանաց և խոշորութեան և անյարմար դրելոյս չլինել մեղադիր քանզի ախմար էի, և այլ ոչ էի արաբեալ, և յայս վասն ստուգաբանութեան աւրինակին համարձակեցա, աղաչեմ անմեղադիր լինել, և որ այսչափ եղեւ ոչ իմ կարողութեամբ, այլ շնորհւն Քրիստոս Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս։

Ողորմեսցի Քրիստոս Աստուած առաջնորդաց սուրբ ուխտիս, և ամենայն եղբայրութեանս և միաբանաց սոցա՝ մեծի և փոքու, ամէն։

Ողորմեսցի Քրիստոս Աստուած Պետրոսի և ծնողաց իւրոց, որ զըսկիզբն գրոցս արար, և գրեսցէ զանուն նորա ի գիրն կենաց, ամէն։

Ողորմեսցի Քրիստոս Աստուած Կիրակոսի և ծնողաց իւրոց, որ միամիտ յաւժարութեամբ աշխատեցաւ ի սմա. տացէ նմա Քրիստոս վարձս բարերաց յառատապարգեւ ողորմութենէ իւրմէ, ամէն։

Ողորմեսցի Քրիստոս Աստուած և կազմողի սորա և ծնողաց իւրոց։

Ողորմեսցի Քրիստոս Աստուած եղկելի գրողի սորա և ծնողաց իւրոց, և ամենայն աշխատողաց ի սմա, որ շատ և որ սակաւ։

*Ողորմեսցի Քրիստոս ամենայն հաւատացելոց, կենդանեաց և ննջեցելոց, և նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

## 53

## ՃԱՌՔ ՍԵՒԵՐԻԱՆՈՍԻ ԵՒ ԵՓՐԵՄԻ

*Երևան 947*

Գրիչ՝ Պետրոս
Վայր՝ Ակներ

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն, Հաւր եւ Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամեն։*

161ա *Յամի Վեցհարիւրորդի վաթսներորդի չորրորդի (1215) թուականութեանս Հայոց, գրեցաւ գիրքս Յաճախապատում լուսաւոր վարդապետութիւն եւ խրատք ոգեշահք, ազգի ազգի բժշկարանք ախտացելոց հոգով, ասացեալ սուրբ եւ երջանիկ* Լուսաւորչին *Հայոց* Գրիգորի, *ընդ նմին և ուղղափառ վարդապետութիւն ընդդէմ հերձուածողաց ազգի ազգի աւրինաւք, վկայութեամբ սուրբ գրոց սրբոյն* Սեբերիանոսի *ուղղափառ վարդապետի**, *ասացեալ յաւգուտ և ի շահ ուղղադաւան եկեղեցոյ և ի կործանումն և յամաւթ չարափառ հերձուածողաց, ի գերահռչակ անապատս որ կոչի* Ակներ, *ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս և Սուրբ Առաքելոցս, հրամանաւ երիցս արանեալ հաւրն* Թորոսոյ, *և այլ միակամ և միախորհուրդ եղբայրութեանս, ձեռամբ* Պետրոսի *փցուն և անպիտան գրչի, ի թագաւորութեանն Հայոց* Լեւոնի *յաղթողի եւ բարեպաշտի, եւ ի հայրապետութեանն տեառն* Յոհաննիսի *Հայոց կաթողիկոսի։*

*Արդ, որք աւգտիք ի սմանէ, յիշեսջիք աղաւթիւք զհայրն* Թորոս, *և զմիաբանեալ եղբարսն իւր՝ զմեծամեծս և զփոքունս, զյառաջեալսն առ*
161բ *Քրիստոս, և որ այժմ են, և որ զկնի մեր գալոց են, զի զամեն‖եսեան արժանաւորս արասցէ խոստացելոց բարութեանցն, զոր ակն ոչ ետես և ունկըն ոչ լուաւ։*

*Յիշեսջիք և զանպիտան անձն* Պետրոսի *գրչի, և զհարազատ եղբայրն իմ* զՍիմեոն, *և զծնողսն մեր՝ զհոգևոր և զմարմնաւոր, եւ զամենայն երախտաւորսն մեր, եւ որք յիշէքդ, յիշեալ լիջիք և դուք յողորմութիւնն Աստուծոյ։ Եղբարք, ամենայն ինչ փոխարէնք է, թէ դուք զմեզ յիշէք հաւատով, Աստուած նովին չափովն ձեզ հատուցանէ։*

## Բ

Կազմող՝ Ռոբին

*Մեղապարտ անձն* Ռոբինա *կազմողի սորա, աղաչե զձեզ, ով սուրբ եղբարք, ասել ցաւակցութեամբ, թէ Աստուած ջնջեա զյանցանս* Ռոբինա *եւ ծնողաց իւրոց, և Աստուած զձերն ջնջէ, և նմա փառք յաւիտեանս***։

---

* *Լուսանցքում հետագայում այլ գրչով և թանաքով ավելացված է «զանուն Քռէ»:*

** *«Ըստ այս հիշատակարանի,— գրում է Գ. Հովսեփյանը,— ձեռագիրս... նախ պարունակում է Գր. Լուսավորչի վերագրված «Յաճախապատումը» և ապա՝ Սեբերիանոսի ճառերը։ Բայց*

54

# ԺԱՌԸՆՏԻՐ

Վենետիկ 204, Բ. Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 144—145

Գրիչ՝ Յովան
Վայր՝ Երուսաղէմ

385բ Յամի վեցհարիւրերորդի վաթսներորդի և չորրորդում ամի շրջաբերութեան Հայոց տումարի (1215), ի թագաւորութեանս Հայոց Լեւոնի, ի վերջացեալ և ի նուազեալ դառն ժամանակի, յաւուրս աստուածապատիւ և հոգևոր տեառն Յոհաննէսի Հայոց կաթողիկոսի, յաշխարհս Պաղեստին՝ ի մէջ գերութեանս Երուսաղէմի, ընդ հովանեաւ Սուրբ Յակովբայ առաքելական աթոռոյս՝ գրեցաւ գիրս գերահրաշ և ամենապայծառ, լուսայիղձ և բազմատենչ, յոքունց փափագելի հոգևոր մատեանքս՝ աստուածային տառիս, գերափայլեալ, գերազարդ, վիպասանապէս արտաճառեալս. բայցայայտ շարունակեալ անվրէպ շարակածութեամբ, գեղեցկադիր և ամենայարմար համանման բաղաձայնութեամբ, յոքնագունակ բայիւք և ճոխական իմաստիւք և խորիմաց բառիւք, ի լոյս ածեալ հեշտալուր և դիւրահաս մեկին մտաց իմացութեամբ ասացուածովք յառաշընդրեալ հոգեկից սրբոց արանց աստուածազգեստից ուղղադաւան և լուսաւոր վարդապետաց, և գերամաքուր առաշնորդաց՝ ներբողեանք՝ բազմատեսակս դրուատեց, և յորդորական բանք գովեստից՝ վսեմական գովասանութեան.

Արդ՝ ցանկացող եղեալ այսմ գեղեցիկ աստուածային տառիցս, ճըգնաւոր ոմն՝ անուն Յովաննէս, հանդերձ քեռբ իւրով կրաւնաւոր կարդաւ և բարիանուն, ստացեալ յանձինս՝ իւրեանց ունելո զվանս արտաքու Երուսաղէմի, հանդէպ Սուրբ Սիոնի՝ ի վերա ճանապարհին Բեդղէեմի, որ է լեալ հանկստարան Սուրբ Աստուածածնին, մինչ գայր յընծայումն ի տաճարն, աստուածացեալ մանկամբն Յիսուսիւ Քրիստոսիւ։ Վասն այսորիկ բարիանուն և ընդրեալ քահանայն Գէորգ կանկնեաց զտաճարն սուրբ և անուանեաց յանուն Սուրբ Աստուածածնի. յիշատակ նորա ւրհնութեամբ։ Նմանապէս և եղբաւրորդի իւր Յովաննէս, զոր վերագոյն յիշեցաք՝ ընկալաւ զսայ բարեաց յիշատակ և բարեխաւս առ Աստուած՝

---

ձեռագրիս մեջ չկա Ցաճախապատումը, այլ միայն կան Սեբերիանոսի և Եփրեմ Խուրիի ճառերը։ Եփրեմի ճառերը չեն հիշվում այս հիշատակարանի մեջ. Ն. Մառը նկատել է այս պարագան («Բանաւէր», 1901, պրակ Ա, էջ 41—43)։

Ինչպես բացատրել «Ցաճախապատումի» բացակայությունը Ջեռագրիս մեջ, հակառակ հիշատակարանիս բացահայտ վկայության... Նախորդ հիշատակարանը մեզ հիմք և իրավունք է տալիս ենթադրելու, թե Պետրոս գրիչը Ակների վանահայր կամ «հայր Թորոսի հրամանաւ» 1215 թվին գրել է մի Ցաճախապատում և Սեբերիանոսի ճառերը։ Առաջին ձեռագիրը, որ պարունակում է Գր. Լուսավորչի վերագրված Ցաճախապատումը, անցել է Երուսաղեմ, և այժմ սեփականությունն է Ս. Հակոբեանց ձեռագրատան, իսկ Սեբերիանոսի ճառերը՝ էջմիածին (այժմ Մաշտոցի անվան Մատենադարան, № 947)։ Այդ պարագային մեր այս Հիշատակարանը, որ առաջ ենք բերել վերևում, պատկանում է թե Երուսաղեմի № 94 ձեռագրին, և թե էջմիածնի ձեռագրին («Յիշատակարանք», էջ 778—779)։

իւրեանց և ծնողաց իւրեանց, և աւանդեցին ի Սուրբ Աստուածածինն գանձ անկողոպտելի, ի վայելումն շնորհազարդ որդւոյ իւրեանց Գրիգորոյ սարկաւագի, և այլ կրամաւորաց և քահանայից։

Արդ, աղաչեմք զամենեսեան՝ որք աւկտիք ի սմանէ ընթերցմամբ կամ գաղափար առնելով, սրտի մտաւք յիշատակեսջիք զստացողք սորա զՅովհաննէս և զքեռ իւր զՏիկնեռես, և զծառանկաւոր նոցունց Գրիգոր սարկաւագ, և զԳէորգ՝ զգնացեալն առ Քրիստոս, և զվերջին աշխատողս և զգծողս և զկազմողս զՅովան՝ զվերչեցեալս յամենայն բարեաց, և խոշորութեանս [գրոյս] անմեղադիր [լեր]ուք, եւ որք աւգնական եղեն ի գին սոր[ին] ի կանայց կամ յարանց կամ ի քահանայից, Քրիստոս Աստուած միոյն հաղարապատ[իկ հատուցէ] ///

## 55

## ԳԻՐՔ ՊԱՐԱՊՄԱՆՑ ԿԻՒՐՂԻ ԵՐՈՒՍԱՂԵՄԱՑՈՅ

Երևան 3276 (ժէ դ.)

Գրիչ՝ Բասի՞լ

ա

50ա Հրամանաւ տեառն Ներսիսի և տիեզերական վարդապետի, կազմեցաւ գիրքս այս ձեռամբ ումեմն տառապեալ Գրիգորի Արևելցոյ:

Արդ, Տէր Յիսուս վայելել տացէ երկար ժամանակօք ի կամս իւր, ամէն։

բ

Ի ՌԿԴ (1215) թվականիս շարադրեցաւ բանս աստուածային ի ձեռն Ներսիսի:

Հետագա գրիչ՝ Բասիլ

ԶԲասիլս յիշեցէք ի Տէր զկնի աշխատողի սորին։

## 56

## ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 6512

Գրիչ՝ Խաչատուր

72դ Ի թուին ՌԿԴ (1215)։

Քրիստոս Աստուած ողորմեայ Խաչատուր քահանային եւ Մարգ[ար]տայ, ամէն։

## 57

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 378

Գրիչ՝ Թորոս

ա

308ա Աստանաւր յանկ ելեալ կատարեցաւ հրաշապատում մատենիս այսորիկ սրբոյ Աւետարանիս, հրամանաւ և ծախիւք բարեսէր և աստուածահաճոյ առն Վախտանգա, որդւոյ Հասանա, որդւոյ Վախտանգա, եւ քրիստոսասէր ամուսնոյ նորա Խորիշահի՝ դուստր մեծ սպարապետին Սարգսի:

Արդ, ես Վախտանգ եւ լծակից իմ Խորիշահ ըստ կամացն Աստուծոյ քաղաքավարեալ ծնաք երիս ուստերս եւ երիս դստերս՝ ժառանգ մարմնաւոր եւ յիշատակ հոգեւոր։ Այսմ առաւել նախանձախնդիր եղեալ, բազում փափագանաւք եւ յաւժարութեամբ սրտից մերոց, շինեցաք զեկեղեցիս եւ երեւելի սպասիւք զարդարեալ ներքս և արտաքս եւ հաստահեղուն յարինուածովք։

308բ Աստանաւոր հոգւոյ ակամբ·նաեցեալ ի փառսն զոր խոստացեալ է սիրելեաց իւրոց անսուտն Աստուած նա[խ]ապէս եւ մեք կամեցաք գրել զանուանս մեր ի գիրն կենդանի, վստահ եղեալ ի մարդասիրութիւն Աստուծոյ։ Զկենդանարար եւ զցանկալի ընդ զսուրբս զայս զԱւետարան ետաք գրել, բազում եւ զանազան դեղովք զարդարեալ զհամաբարբառս եւ ոսկէդեղ գրով զառաջս աւետարաներոյն զարդարեալ, եւ յիշատակ յաւիտենից լինել ի տան Տեառն եւ ի գաւիթս Աստուծոյ մերոյ, զմտաւ ածեալ զբան մարգարէին, որ ասէ. Պատուիրանք Տեառն լոյս են եւ լոյս տան աչաց եւ երկիւղն Աստուծոյ մնա յաւիտեան։

Արդ ես Վախտանգ եւ զուգակից իմ Խորիշահ ցանկացող եղաք սրբո Աւետարանիս*։

---

* Գ. Հովսեփյանը հիշատակարանը դնում է 1212—1216 թվականների միջոցին, նկատի ունենալով, որ «Խորիշահ վերստին մի եկեղեցի է շինել ՌԿԱ—1212 թվին (Արցախ, էջ 171) որ ակնարկված է այստեղ», իսկ «Խորիշահի ամուսին Վախտանգի մահը... 1216 թվից առաջ է պատահել, ըստ Գանձասարի վանքի արձանագրության (Արցախ, էջ 173)»։ Ձեռագրի վերջին թերթերի մասին կարդում ենք. «Հետևեալ չորեքին մագաղաթեայ թերթքն (305—308), յորոց վերջինն է Յիշատակարան սուրբ Աւետարանիս, գտանի № 1497 Ցայսմաւուրս, որք և եդեալ էին ի կողս նորին իբրև պահպանակք։ Սահակ վարդապետ Ամատունի, 1897» (էջ 304բ)։ Ս. Ամատունին անջատել է թերթերը և միացրել ձեռագրին, ուր և գտնվում են այժմ։

Բ

2ա ԶԹորոս նուաստ գրիչ յիշեսջիք ի Քրիստոս*

Գ

3բ Թորոս նկարիչս յիշեցէք ի Տէր**։

Դ

6ա Տէր Աստուած զՎախտանգ եւ զԽորիշ||աճ յիշեա ողորմութեամբ քո եւ ողորմեա***։

Ե

9բ Քրիստոս Աստուած յորժամ գաս հայրական փառաւք զԽորիշաճ և զՎախտանգ ընդ սուրբս քո դասեա, ամէն։
Թորոս նկարիչ****։

Զ

258բ Քրիստոս Աստուած, ողորմեա Թորոս գրչի, ամէն, եւ ծնաւղաց իւրոց եւ աղգականաց։

## 58

## ՄԱՍՈՒՆՔ ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆԻ

Երևան 155

Գրիչ՝ Որդի Սարգսի

106բ Զբարի անուն և զԱստուծով մեծացեալ զմեծ պատրոնն զՎախտանգն յիշեցէք ի Տէր, նաև զբազմամեղ գծողս և զծնողսն իմ զՍարգիս և զԹագուճի և Աստուած զձեզ յիշէ*****։

## 59

## ՄԱՇՏՈՑ

Վենետիկ 323, Բ. Սարգիսյան, Գ. Սարգսյան, Ցուցակ Գ, էջ 91

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Պայաս գիւղ

ա

323ա Փառք անսկզբին եւ անժամանակ, անք[ան]ակ եւ անորակ, անեղբն եւ անուստեք, անյաւէ եւ անշաղակապ, անջատելի եւ անպարոյր, անհաս եւ անքննին, համագոյ եւ համապատիւ, եռակի եւ զեզակի տէրու-

* Գրված է Եվսեբիոսի նամակի վերջում։
** Գրված է խորանի միջին գերանի վրա։
*** Գրված է խորանի միջին և ստորին գերանների վրա։
**** Գրված է խորանի գլխամասում, ոսկե տառերով, կապույտ խորքի վրա։ Նկարիչն իր անունը գրել է նույն տողում, նախավերջին և վերջին տողերի միջև, վարդագույն խորքի վրա՝ կարմիրով։
***** Ձեռագրի 49բ և 85ր շրջանակաձև լուսանցազարդերի մեջ համապատասխանաբար գրված է «Պարոն Վախ[տանգի] է», և «Պարոն Վաղթանգ[ի է գ]իրք[ս]»։

*թեանն՝ Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ, այժմ եւ միշտ եւ յաւիտենից, ամէն։*

*Խնամաւք բարերարին Աստուծոյ սկսա եւ ներելով նորին կատարեցի զաւրհնութիւնաքեր ցուցակս, որ է բուրաստան ամենալից կանաչացեալ բողբոջիւք, երփն-երփն երանգաւք, սաղարթափթիթ տերեւաւք, զանազան դունաւք եւ բազմապայծառ ծաղկաւք, զոր յաւրինեաց մեզ սուրբ հայրն և երանելի ճգնաւորն* Մաշդոց, *ի թուականութեանս Հայոց ՌԿԵ (1216), ի կաթողիկոսութեանն տեառն* Յոհաննիսի, *եւ ի ժամանակիս քրիստոսասպսակ թագաւորին Հայոց* Լեւոնի, *ի ծովեզերս ովկիանոսի, ի գաւառս որ* Ճկեր *անուանի, ի գեաւղս որ* Պայաս *կոչի, ընդ հովանեաւ ամենաւրհնեալ մաւրն լուսոյ Աստուածածնիս եւ այլ սրբոցս, յամս յորում տէրամբ յաղթող թագաւորն Հայոց* Լեւոն *էառ* զԱնափոՙ *զմեծ մայրաքաղաքն* Ասորւոց:

*Եւ արդ, ես* Ստեփանոս *դատապարտեալ մեղաւք, ցանկացող եղէ այսմ աւրհնութիւնաքեր տառիս, եւ ստացա զսա ի վայելումն անձին իմոյ եւ յիշատակ մեղուցեալ հոգւոյ իմոյ։*

*Արդ, աղաչեմ եւ երեսս անկեալ արտասուալից պաղատանաւք հայցեմ ի ձէնչ, ո՜վ աստուածասէր հարք իմ եւ եղբարք, եւ սիրելի մանկունք, որք ընթեռնոյք կամ ընդաւրինակէք եւ կամ ուսանիք, վշտակցաբար սիրով հայցեցէք ի Քրիստոսէ զթողութիւն մեղաց ինձ, եւ ծնաւղաց իմոց, եւ եղբարց, եւ քերց, եւ ամենայն ազգականաց իմոց, եւ Քրիստոս Աստուած զձեր յանցանսն թողցէ, եւ ինքն եղիցի աւրհնեալ յաւիտեանս, ամէն։ Խոշորութեան գրոյս եւ սխալանացս, եւ եթէ այլ ինչ պատճառ կայ, անմեղադիր լերուք աղաչեմ, զի աւրինակ ոչ ունէի ըստ կամաց, եւ գրչի մեղաւորիս թողութիւն խնդրեցէք, եւ դուք թողութիւն արարէք, եւ Աստուած զձեր յանցանս թողցէ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

Բ

*Զմեղաւոր գրողս* զՍտեփանոս *յիշեա, ո՜վ սուրբ ընթերցող, եւ Աստուած քեզ յիշեսցէ։*

Գ

*ԲՌ։ ԴՌ։ Ե։ ԸՌ։ Ա։ ԴՃ։ ՋՃ։ ԲՌ։ ԲՃ։ Է։ ԹԺ։ Ա։ ԷՌ։ ՋՃ։ ԵՌ։ ԵԺ։ Ա. Ռ։ Ա։ ԹՌ։ ԵՌ։ ԲԺ։ ԲՌ։ ԴՌ։ ՋՃ։ ԲՌ։ [ԲԺ]*։*

*Ո՜ր կարմրադեղովն է եւ թուագլուխն ունի զգիր համարուն գիտ, եւ որ սևադեղովն է, զնոյն գիր առ եւ անաշխատ ընթեռնուս**։*

Դ

*Ռ։ Ռ։ Ժ՝։ Ռ՝։ Ճ։ Ռ։ Ճ։ Ռ։ Դ։ Ժ։ Ա։ Ռ։ Ռ։ Ե։ Ռ։ Ժ։ Ճ։ Ճ։ Ժ։ Ճ։ Ռ։ Ճ։ Ե։ Ա։ Ճ։ Ժ։ Ճ։ Ե։ Ժ։ Ա։ Ռ։ Ճ։ Ռ։ Ժ։ Ռ։****

---

* *Ընդգծված տառերը բոլորգիր են և կարմիրով գրված։*

** *Լուսանցքի վրա հետագայում մեկը գրել է. «Ես անարժան ԲՌ, ԴՌ, Է, ԸՌ, Ա, ԴՃ. ՋՃ:* ԲՌ (Ստեփանոս) *եպիսկոպոս, կամաւքն Աստուծոյ եւ ողորմութեամբ սկսայ եւ գտայ զփակ գիրս զայս զթուխ գիրն եւ զկարմիրն.* «Ստէփանոս *մեղաւոր ծառա Քրիստոս[ի]»։*

*** *Ծածկագրի իմաստն է, «Քրիստոս որդի Աստուծոյ ողորմեա ինձ մեղաւորիս»։*

Թէ ես դպիր գիտում,
Դու կարդա գինքս սիրում,
Ապա թէ չես այր խմաստում,
Աշխատ առնես զանձիդ ի բում,
Իբրեւ ի ծով անձինս յանհում,
Վտանգիս յալեաց տարաբերում,
[Շրշիս] հեղձիս, ալեկոծում,
Բարեկամ մի լինիս նման բլում,
Իրաւք ի քում, աչաւքտ՝ արթում,
/// նման գիշերհաւում։
Երգաւք զաւրաւոր բազմաբեղում,
Կանուխ յառնէ մէշ գիշերոյն,
Զարթուցանէ զմարդ ի հեշտալից թմբիր քնում․
Զձայն քաղցրիկ ածէ առաւատում,
Գուշակէ զգալն լուսոյն,
Սիրել ի գնալ երանհոգի քում,
Քան աշխատիս նման իշում։
Աղաչեմ չլինել մեղադիր ։

## 60

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երեւան 6273, էջ 32ա—32բ, Փիրղալեմյան, Նշխարք Ա

Գրիչ

Փառք քեզ միայնոյ սկզբանդ, և անսկզբանդ ընդ սկզբանդ, և սկզբնաւորիդ սկզբանց, երից դիմի և միոյդ յերիս համագոյ տէրութեանդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Անունն սէր՝ է արմատ ամենայն բարեաց, բարի ծառ բարի պտուղ բերէ։ Այս բարի զաւակ **Սմբատ** բարի ծնողաց պտուղ էր, իսկ Սօղոմոնի Իմաստունն ելս ճանապարհաց գովի։ Այս երանելի **Սմբատս**, որ ատեաց զաշխարհ և սիրեաց զՔրիստոս և սիրեցաւ ի նմանէ, որ ատեաց զքաղաք և զգեաւղ և զագարակ, և սիրեաց զեկեղեցի և զաղօթս և զանապատ, և եթող զմարմնաւոր թագաւորս և զիշխանսն և սիրեաց զերկնաւոր թագաւորն և զօրութիւնս երկնից, և եթող զգեղեցկազարդ և զվայելչազուարթ եղբարս իւր զ**Ասպետ** և զ**Կոստանդին** և զևոյսն և փափագեաց յաւիտենական կենացն, և եթող զսրբասէր քոյր իւր զ**Վահանոր**, և զեղբօր որդի իւր զպարոն **Վարդ** և ցանկացաւ վերին ուրախութեանն։ Այս երանելի **Սմբատ**, որ ատեաց զաշխարհի վայելութիւն և սիրեաց զԱւետարանս և զայլ աստուածային կտակարանսն, մեծ յոյս ունէր զԱւետարանս, և էգ ի մեզ՝ ի նուաստ ծառայս Աստուծոյ ի **Յակոբ**, որ ղորդէի և զպակասնն լնուի և զպատկերս աւետարանչացն նկարէի և կազմէի։ Եւ նա ոչ ժամանեաց՝ ցվերջն, [այլ] փոխեցաւ առ փափագելին իւր Քրիստոս, ի թուին ՈԿԵ (1216), ի յուրբ զատկին ի յարութեան Տեառն, որ և Քրիստոս Աս-

տուած, որ սիրեաց զնա, յարութիւն կենաց շնորհեսցէ նմա, և բարի ծնողաց նորա, և եղբարց, և յիշատակաց եղբարց իւրոց տացէ Հոգի իմաստութեան և հանճարոյ, և զբարեսէր իշխանն Առիւծ*, և զամենայն եղբարսն իւր՝ զպարոն Ասլեւտն, և զԿոստանդինն, և զԼոյսն՝ անփորձ և անսասան պահեսցէ ամենայն տամբ իւրեանց, ամէն։

Դարձեալ անուանի Սմբատ-Ստեփանոս՝ նախավկային անուանակից, որ և մասնակից արասցէ զնա Քրիստոս պսակի, զի գտաւ զնա Քրիստոս և յապաշխարանք, ի պահք և յաղօթս, և ի սէր եկեղեցւոյ և քահանայից։ Տէր Յիսուս Քրիստոս ողորմեա Ստեփաննոսի, ամէն**։

## 61

### ԱՒԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 27, Տէր-Աւետիսյան, Ցուցակ, էջ 42

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Յիսվանց ոփտ

274ա Փառք... ի թուականութեանս Հայոց ՈԿԵ (1216), ի թագաւորութեանն բարեպաշտ աստուածասէր և քրիստոսապսակ թագաւորին Հայոց Լէոնի՝ մեծի և յաղթողի, և ի հայրապետութեանն Հայոց տեառն Յոհաննիսի աւարտեցաւ տէրունական աւետեաց կտակս, ձեռամբ ամենամեղ հոգւոյ Յովհաննիսի, ի սուրբ և ի հռչակաւոր և յաստուածաբնակ ուխտս, որ յորջորջի Յիսվանց, ընդ հովանեաւ սրբոյ մաւրս մերոյ Սիովնի և կենսակիր Սուրբ Նշանի, ի ձեռն որոյ բազում և պէսպէս սքանչելիք կատարեն, մերձ ի մեծ մայրաքաղաքն Անտիոք, յամի յորում մեծ արհիեպիսկոպոսն և աշխարհալոյս վարդապետն Անտիոքու Յուսէփ փոխեցաւ ի Քրիստոս, որոյ յիշատակն աւրհնութեամբ կատարեսցի, և զկնի նորա յաջորդեաց յաթոռն Վարդան սրբազան եպիսկոպոս։

Արդ աղաչեմ զամէ[նե]սեանս, որք աւկտիք ի սմանէ, ընդաւրինակելով և կամ ընթերցմամբ վայելելով, յիշեսջիք առաջի զենլոյն՝ վասն մեր ամենամաքուր գառինն Քրիստոսի, զախմար և զանպիտան և զամենամեղ հոգիս Յովհաննէս և զպատճառս գալոյ մեր յաշխարհս, որք ըստ մարմնոյ և ըստ հոգւոյ, յիշել հայցեմ ի Տէր զհոգևոր եղբայր իմ զՎարդան սրբասէր քահանայ, որ աւժանդակ եղև և ծառայեաց զմեզ ի գրչութեանս, և յիշողացս և յիշելոցս ողորմեսցի Քրիստոս, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն, ամէն***։

---

* Սմբատի հայրն է։

** Հիշատակարանը համառոտ բերված է «Ծիշատակարանքում» (էջ 789), որի աղբյուրը Գ. Զարբհանալյանի «Մատենադարան հայկական թարգմանութեանց» աշխատությունն է։

*** Վերջին կտրված թերթի վրա կարդացվում է «զԹորոս» անունը։

62

ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 2ա, Տէր-Աւետիսեան, Ցուցակ, էջ 37

Գրիչ՝ Գրիգոր Սկեռացի
Վայր՝ Սկեռա

ա

239ա ԶԳրիգոր գծողս յիշեա

բ

Գրիչ՝ Գրիգոր սարկաւագ
Վայր՝ Տարսոն

311ա Փառք... Արդ զայս քան կենսացուցիչ և բազում բարեաւք առ լցեալ և նորոգ ամուր յուսալիր կաթոգին ոգիով և խանդակաթ սիրով բանս լուեալ և ուսեալ եղանելիս այս՝ պատուեալ աւծութեան քահանայական շնորհիւ Ստեփանոս վերակարդացեալ անուն, սպասաւոր բանի բանին Աստուծոյ և բացայայտող խորհրդոց նորա։ Սա որպէս հուր բորբոքեալ ի սիրոյ անտի որ ի սուրբսն՝ խնդրեաց կցորդել նոցին պսակացն, և մեծաւ աշխատութեամբ ջանաց ստանալ զկենսաբեր սուրբ Աւետարանս։ Զոր և հայեցեալ Աստուած ի յաւժարութիւն ոգւոյ նորա որ ի բարիս՝ ոչ անտես արար զտարփումն մտաց նորա, այլ փութապէս կատարեաց, թէպէտ եւ նուաղ գոլով սորա ի մարմնական փարթամութեանց, սակայն ջանիւ ջանացեալ կատարեաց զսա ըստ իւրում կարողութեանն այսչափ։

Արդ, եղև ոկիզբն գրչութեան սորա ի թուաբերութեանս Հայկազնեան ազգիս ՌԿԴ (1215), ի հայրապետութեան տեառն Յոհաննիսի որդւոյ Կոստանդեայ, և ի թագաւորութեան մեծապսակ արքայիս Հայոց Մեծաց Լեւոնի որդւոյ Ստեփանէի՝ որդւոյ Լեւոնի, որդւոյ Կոստանդեայ յԱռովբինեանց, և ճշմարիտ և հաւատարիմ ծառայից Աստուծոյ և յուղղափառ դաւանողաց զհամագոյ Սուրբ Երրորդութիւնն, ձեռամբ Գրիգորի մեծահռչակ գրչի, ի սուրբ ուխտին Սկեռայ կոչեցեալ, զոր և հասեալ ի վերջ սորա ոչ կարաց կատարել, զի հասարակաց բնութիւնս զիւրն պահանջեաց, մեռաւ ի բարւոք ծերութիւն, զոր և Տէր Յիսուս հանգուսցէ զնա ընդ սուրբս իւր։

Իսկ սա մնացեալ թերակատար՝ ի տարակուսանս ընկէց զառաջասացեալ ստացւղս սորա. իսկ իմ, տեսանեալ զնա յայնպիսի տարակուսանս, կամեցայ լնուլ զպակասն, և առեալ, թէպէտ և ոչ կատարեալ յարհեստըս, սակայն ապաւինեալ յԱստուած եւ յաղաւթս՝ ձեռս եդեալ կատարեցի զսա ///* և բարեխաւսութիւն հոգւո ստացաւղի սորա։

Եղեւ կատարումն սորա ի թուին ՌԿԵ (1216), ի քաղաքիս Տարսոն, ընդ հովանեաւ Սուրբ Նախավկային Ստեփանոսի ///** սիրոյ պտուղ զսա վարկցի և ոչ յանդգնութեան կամ ընչից յաւելուածոյ, վասնզի գի-

* Մի տող ջնջված է։
** Մի տող ջնջված է։

*տող եւ իրաւարար այսմ բանիցս Աստուած է, և ստացաւ զսա հոգւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց յիշատակ։ Եւ դուք յիշատակի արժանի արարէք զըստացաւզս սորա* **զՍտեփանոս** *վարդապետ և զհայր սորա՝ զպատուական քահանայն* **Յովաննէս**, *որդի* **Յովսեփայ** *քահանայի։ Զսոսա զամենեսեան յիշել ի Քրիստոս աղաչեմ, և զեղբարք սորա ըստ մարմնոյ, և զորդիս սոցա, և զամենայն մերձաւորք սորա առհասարակ, աղաչեմ յիշել ի Տէր։*

*Ժտիմ դարձեալ և ես՝ մեղապարտ գրիչս* **Գրիգոր** *սարկաւագ, յիշել զամենայն վերայկարդացեալ անուանս, որ ի սմա, և զիս զմեղապարտ գրիչս* **Գրիգոր** *սարկաւագ, և զծնաւղսն իմ, և զամենայն մերձաւորս իմ՝ աղաչեմ յիշել ի Տէր և Աստուած որ առատն է ///*։*

Գ

*Ստացող՝* **Ստեփանոս**

315բ *Այս իմ գիր է* **Ստեփաննոսի** *անարժան քահանայի և անպիտան ծառայ ի Քրիստոս և իմ եղբաւրն* **Յովանէս** *քահանայի, որդոյ մեծ* **Կարապետ** *քահանայի, որ ստացայ զսուրբ զԱւետարանս զայս, յիմ արդար արդեանց ըստ վերագրելոյդ, ի յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց։ Եւ ետու զսա սրտի յաւժարութեամբ և աւրհնութեամբ իմով եղբօր որդոյ* **Յովսէփայ** *քահանայի, զոր Աստուած վայելել տացէ իւր և որդւոց իւրոց։ Արդ, չունի ոք հրաման յԱստուծոյ եւ յինէն հակառակ կալ այս գրոյս, ո՛չ յիմոց և ո՛չ յաւտարաց, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։*

Դ

**Կազմող**

316ա *Ձվերջին ստացող սուրբ Աւետարանիս զերանուհի կրաւնաւորն* **Հռիփսիմի**՝ *ըզքոյր Թագաւորին Հայոց* **Հեթմոյ**, *յիշեսջիք ի սոսկալի ժամու մեղսաքաւիչ սրբոյ պատարագին, ով դասք սրբազանից, որ ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ և յետ ելից աստեացս յիշատակ հոգո իւրոյ և բարեպաշտ ծնողաց իւրոց և ամենայն զարմից։ Եւ որ առատն է ի ձիրս բարեացապարտն Յիսուս, տացէ վարձս բարեաց ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս, և նմա փառք ընդ Հաւր և Սուրբ Հոգւո, յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Զեղկելի կազմաւղ սորա աղաչեմ յիշել ի Տէր**։*

---

* Երկու տող ջնջված է։

** Կազմվել է մի քանի տասնամյակ հետո, բայց քանի որ թվականը որոշ չէ՝ թողնում ենք գրչությանը կից։

## 63

## ԱՒԵՏԱՐԱՆ

Տէր-Մովսիսյան, Համահավաք ցուցակ, Աւետարանք, էջ 143

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Տարսոն

Գրիչ Գրիգոր, եղբայր Համազասպ քահանայի, յօրինակէն Ներսէս քահանայնի քորեպիսկոպոսի քաղաքին Տարսոնի, հրամանաւ Բասիլ քահանայի։

Ի Թուի Հայոց ՈԿԵ (1216), յառաջնորդութեան տեառն Յովհաննիսի եւ ի Թագաւորութիւն աստուածապսակ արքային Լեւոնի, ի քաղաքիս Տարսոն, ընդ հովանեաւ Նախավկայիս Սուրբ Ստեփաննոսի... յորում ժամանակի զաւրաժողով եղեալ անաւրինաց ազգն Հագարու առ դղեկաւն որ Կապան կոչի, իսկ աստուածասէր Թագաւորն մեր ժողովեալ զամենայն քրիստոնեայս, որ ընդ իշխանութեամբ նորին էին, այլ եւ զռամիկս քաղաքաց եւ գեղջկաց, իսկ եւ զկրաւնաւորս եւ զքահանայս՝ գալ ի մի վայր, աղաչել զԱստուած, զի մի արասցէ ըստ մեղաց մերոց։

Իսկ յանաւրէն զաւրացն գունդ հասեալ, ասպատակեալ աւերէին զսահմանսն՝ ուր եւ կարէին։ Իսկ քրիստոսասէր Թագաւորն մեր առաքեալ զքեռորդին իւր զԿոստանդին գունդստապլ զաւրաւք սակաւուք ընդդէմ, առ ի չԹողացուցանել զաւերումն սահմանաց մերոց։ Զայն գիտացեալ անաւրինացն, դիմեցին ի վերայ նոցա. եւ սոցա, բազում յանաւրինացն սրակոտոր արարեալ, կամեցան դառնալ անդրէն ի բանակս իւրեանց։ Իսկ ապա գիտացեալ զայս անաւրէն ամիրապետին իւրեանց, առաքէ բազում զաւրս ի վերայ սոցա. եկեալ գաղտագողի կալան զելս ճանապարհին զաւրացն, որք ի մէնչ էին, եւ սուր եդեալ կոտորեցին զնոսա. եւ զբազումս ձեռբակալ արարեալ տարան ի գերութիւն յաշխարհ իւրեանց. կալան զԿոստանդին գունդստապլ եւ գերկու իշխանսն ընդ նմին՝ զԿեռսակ եւ զմիւս Կոստանդին՝ զորդի Հեթմոյ սեւաստոսի...

## 64

## ՅԱՃԱԽԱՊԱՏՈՒՄ ՃԱՌՔ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

Երեւան 5528

Գրիչ՝ Բարսեղ
Վայր՝ Սկեռա

ա

258բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն յափտեանս յափտենից, ամէն, ամէն։

Ի բազում տեսակս զանազանին աւրինակք ուրախութեամբ հանգըստից, և աւելորդ է մեզ ի պիտութիւն առաջի եդելոյս՝ զամենայն մի ըստ միոջէ Թուել, բայց որքան ի մրրկեալ և ի կուտակադէզ ալեաց ծովու նաւ

ի խաղաղն ժամանէ նաւահանգիստ, նոյնպէս և գրիչ ի տարժանելի ճգանցըն ի վերջին գիծն ղկայ առեալ՝ զգոհացողականն մատուցած Աստուծոյ ւորհնութիւն։

Արդ, սմին այսորիկ հոգէլից և առատաշնորհ մատենի սուրբ Լուսաւորիչին երանելւոյն Գրիգորի ցանկացող եղեալ ըղձալից և փափագ
259ա ‖մամբ սուրբ սիրով արժանապատիւ քահանայ ոմն Կարապետ անուն, ստացաւ զսա յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց և եղբարց, ձեռամբ իմով՝ Բաւսեղի քահանայի, զի եւ թէպէտ և անտեղեակ էի արհեստի գրչութեան, բայց զաւժարութիւնն տեսի զայնմ լուսակիր առն, և ձեռն ի գործ արկեալ յանգեցի ի մեծ և հռչակաւոր սուրբ ուխտս Սկևռայ, յամի վեցհարիւրորդի վատսներորդի հինգերորդի (1216) թուականիս Հայոց, ի դիտապետութեան տեառն Յոհաննիսի, և ի թագաւորութեանն Հայոց Մեծաց քրիստոսապսակն Լևոնի, ընդ հովանեաւ Սուրբ Փրկչիս և մաւր իւրոյ Սրբահւոյ Աստուածածնի և կենսակիր Նշանիս, որ է մերձ անմատոյց դղեկին Լամբ(ր)ու յորջորջելոյ։ Իսկ բարեացապարտ Տէրն մեր Յիսուս Քրիստոս յիշեսցէ ողորմութեամբ իւրով և աղաւթեաւք ձեռովք զվերոյգրեալն Կարապետ և զծնաւղսն նորա և զեղբարս։

Աղաչեմ յիշել և զանարժան ծառայս ձեր, և զքեռին իմ Բարսեղ քահանայ, և զընաւս զորս յիշատակեցաք, և Աստուած ամենեցուն ողորմեսցի, որ աւրհնեալն է յաւիտեանս, ամէն։

Բ

84ա ԶԿարապետ քրիստոսասէր քահանայ յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս, ընդ նմին և զանարժան ծառայս Աստուծոյ զՎասլուկ:

Գ

128ա Զտառապեալ աշխատողս Բարսեղ յիշել աղաչեմ, ընդ նմին ե զԿարապետ քրիստոսասէր քահանայ։

Դ

146ա Յայսմ աւուր փոխեցաւ ի Քրիստոս պատուական և սուրբ հայրն իմ Գրիգոր քահանայ։ Արդ աղաչեմ զամենեսեան յիշել զնախասացեալս Գրիգոր յաղաւթս ձեր և Աստուած ձեզ ողորմեսցի, ամէն:

Ե

154ա ԶԿարապետ աստուածարեալ քահանա յիշեսջիք, և զանարժան ծառայ Աստուծոյ Բարսիլ, և զՍտ[եփանոս] քահանայ։

Զ

169բ ԶԿարապետ աստուածահաճոյ քահանա յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս, և զիս զանարժան ծառայս Աստուծոյ, որ բազում վշտաւք գրեցի զսա։

Է

187ա ԶԿարապետ աստուածահաճոյ քահանայ յիշեսջիք ի Քրիստոս, և վտառապեալ խոշորագիծս Բասիլ:

Ը

189բ ԶԿարապետ աստուածարեալ քահանայ և զծնաւղսն իւր յիշեսջիք, և զմեզ արժանի համարեսջիք բարի յիշատակի զԲարսեղ և զՍտեփաննոս քահանա։

Թ

189ա Ոչ է պակաս պաղութիւն աւդայս, քան քառասնիցն։ Տէր Յիսուս ողորմեա ինձ և Կարապետին, ամէն։

Ժ

31ա Տեառնհամարս սխալ է, միտ դիր*։

## 65

### ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

Երուսաղէմ 354, Ն. Պողարյան, Ցուցակ Բ, էջ 253

Գրիչ՝ Վարդան

307 Փառք ամենասուրբ Երրորդութեան անզրաւ յաւիտեանս յաւիտենից։

Շնորհիւն Աստուծոյ սկսայ եւ ողորմութեամբ նորին կատարեցի զԳործս Սուրբ Առաքելոցն ես մեղաւորս Վարդան, ի թուիս ՈԿԵ (1216), ի թագաւորութեան Հայոց Մեծաց Լեւոնի, յամին յորում էառ զԱնախոմ թագաւորն Հայոց Լեւոն:

Արդ, որք աւկտիք ի սմանէ ուսմամբ կամ գինչ եւ իցէ, թողութիւն մեղաց հայցեցէք, եւ Աստուած ձեզ շնորհեսցէ զիւր ողորմութիւնն։ Զստացող գրոցս զՍտեփաննոս սրբասէր քահանա եւ զծնաւղս իւր յիշեսջիք ի Քրիստոս, զի ստացաւ զսա յիւր արդար վաստակոց ի ժառանգութիւն որդոյ իւրոյ Յոհաննէսի, որում վայելել տացէ Աստուած։ Եւ խոչորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի [այսչափ էր կարն իմ]։

---

* Նկատի ունի պրականիշերը, որոնք ինքն ուղղել է։

ՌԿՁ 1217

# 66

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 4509**

Գրիչ՝ Աբել
Վայր՝ Այրիվանք

ա

211ա Աստուածային իրաց դիտաւորութիւն, անպատում գոյաւորութիւն
ամենայնքն անասելիք են, մանաւանդ յեղական անճառ մարդեղութեան
բանին Աստուծոյ, որ երևեցաւ մարմնով անբովանդակելի բնութեամբ
կեցուցանել կամեցեալ նմանեաւն զնմանս, ի ձեռն առաքելոցն կեն[ս]-
ահրաւէր քարոզութեան, ըստ այնմ, թե Երթայք, աշակերտեցէք զամե-
311բ նայն հեթանոսս, մկրտեցէք զնոսա յանուն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն
Սրբոյ, որով լցին զտիեզերս աւետեաւք սուրբ և կենսաբեր յարութեանն,
որում ականատես եղեալ քարոզեցին ընդհանուր զբան հաւատոյ, լու-
սաւորելով ղխաւարեալս մեղաւք յիւրաքանչիւր վիճակս ընտրութեանն
իւրեանց և ընդ քառահոլով տիեզերս վկայ ճշմարտութեան աւանդիցն գտանե-
լով, ճշմարտիմաց դաւանմամբ զմիածին Աստուծոյ Տեառն մերոյ
Յիսուսի Քրիստոսի տնաւրինութիւն ներմարդութեան գրով և անգիր յայ-
տապատում բանիւք հաւաստարմացուցանելով, իմանալի լուսոյն զամե-
նեսեան մերձ կացուցանելով։ Այլ վասնզի կամք հոգւոյն կենաց զնորո-
գումն անճառ շնորհացն զպարգև, ոչ բանիւ միայն, այլ և գրով մշտըն-
312ա ջենաւոր այսմ յաւիտենի արձանացուցանել հա‖ճեցաւ, զորս մաքրազա-
տեաց իշմամբ ի սուրբ վերնատանն երկրորդելով ի հոգիս նոցա, ըստ
Տեառն, թէ Յիշեցուցանէ ձեզ զամենայն զոր ինչ ասացի ձեզ, յորում
զտարակոյս տրտմութեանն փարատեալ մխիթարեաց։ Զորս և հրազի-
նեալ քարոզս ընդ տիեզերս տարածանէր ի ձեռն մկրտութեան աւազա-
նին, յորդէգրութիւն կենաց զամենեսեան հրաւիրէր։

Իսկ չորից աւ[ե]տարանչացն խո[ր]հուրդ բազմատեսակ իմն ցուց-
մամբ տեսանի, զի ոմանք ասեն, թե չորից աւետարանչացն են չորք ան-
կիւնք արարածոց, պարտ էր համասփիւռ քարոզել զԱւետարանն։ Իսկ
ոմանց հաճոյ թուեցաւ ըստ չորից մշտահոս գետոցն յադենական աղբերէ
312բ յառաշխաղացեալ առ ի տիեզերաց ոռոգումն, և սոցա զոլով‖նմանապէս
թուով ուռճացեալք ի կենդանական աղբերէն ոռոգանել սպասքեալ միտս
մարդկային բնութեանս։ Նոյնաւրինակ ըստ տեսութեանն Եզեկիէլի քա-
ռակերպն աթոռոյ զանմարմնոցն, Տէր տեսանելով բազմեալ ի փառացն

աթոռ իմանալի ցուցմամբ, զխնամս բոլոր [ր]նութեանս զակնարկումն,
որ աստուածապէս և տիրաբար բերմամբ նշանակէ զլինելն առ ի հողա-
ծինս հոգեղինացն անմահից, զմահկանացուս առնել հաղորդս, եւս և ի
դերակատար հանել ի փառս, վասն զի փառաց Թագաւորն Քրիստոս, փա-
ռակիցն Հաւր և Հոգոյն, զմերս առնլով բնութիւն, ինքեան միացոյց աս-
տուածութեան, ուսուցանելով մի՛ դաւանել որդի, որ յԱստուծոյ Հաւրէ,
եւ որ ի Մարիամայ կուսէ, անճառ միութեամբ, „զոր աւետարանականն
313ա ուսուցանեն բանք‖մինչ ի կատարած անպակաս և անյաւելուած հաւա-
նութեամբ, հաւատահաստատ կարգաւք· ի նոյն յարելով յառաքելասանդն
քարոզութիւն, որ զաստուածախաւսն վարդապետութիւն դրոշմեալ, զսա-
կաւս ի բազմացն առ ի հաւատալ, թե Յիսուս Քրիստոս է՝ որդի Աստուծոյ
ըստ վեհին Յովհաննու, հաւատալ և զկեանսն յաւիտենականս ընգունել
յանուն նորա։

Ուստի և տեսեալ զսորայս ա[ն]ճառ փրկագործութեան խորհուրդ,
ոմն ի յընտրելո[ց] քահանայից Աստուծոյ, որ էր մի ի ժառանգաւո-
րաց սուրբ ուխտին Այրիվանաց, սնեալ և ուսեալ ի նմին մենաստանի,
Խաչատուր անուն կոչեցեալ, եռափափագ սրտիւ ցանկացեալ այսմ ներ-
գործական բանից փրկչին Յիսուսի, ստանա զսա յարդարապէս գոյից
313բ իւրոց, հանդերձ երեք եղբարբք իւրովք ‖ և քերս՝ յաշ[խ]արհական դա-
սուէ ամուսնացելոց, և ոչ ունելով արու որդի զսա ստացեալ զաւակ՝
զսուրբ գիրսս, և առ Աստուած զյոյս իւրեանց եդեալ, զդրեալսն կատա-
րելո[վ], թէ՝ Բարի է յուսալ ի Տէր, քան յուսալ ի մարդիկ։

Եւ գեղեցիկ խորհրդածութեամբ տան ի բնիկն իւրեանց ի գերա[պ]-
անծ արքայանիստն Գեղամի, որ Գառնի, յորում հրաշակերտ հովանոցն
է զարդարեալ հաստահեղոյս քարամբք ի սրաւսանս թագաւորաց և թա-
գուհեաց, եւ աւանդէն զսա մեծափառ Կաթողիկէին, տալով ի ձեռս սպա-
սաւորաց նորին սրբասէր քահանայիցն, որ ի նմա տաղաւարին, և զմայ-
լին ուրախարար բաժակաւն և զենմամբն Քրիստոսի։

Արդ աղերսիւ հայցեմ զարժանապատիւ քահանայսդ և զխուռներամ
314ա ժողովսդ քրիստոնէից, որք գումարիք ի դուռն յայդմ քաւա‖րանի, յա-
գաղս քաւութեան մեղաց, իբրև պարտականաւրէն և տրիտուր փոխարէն
վճարի, յիշեսջիք զստացողք սորա զԽաչատուր կուսակրաւն քահանայ և
զծնաւղսն իւր, զմահացեալսն, և զլերդակից հարազատսն իւր՝ զՎարդա-
գէլն, և զԱպստամբն, և զՍտեփանոս, որք աւժիտք եղէն այսմ աստուա-
ծախաւս տառի, և յիշողքդ և յիշեցեալքս յիշեալ եղիցին ի Քրիստոսէ յա-
ւուրն համառաւտի և մեծի, ուր բանք սպառ[ին] և գործք թագ[աւ]որեն,
և նմա փառ[ք] յաւիտեանս, ամ[էն]։

Եւ յանցելում եռի[ց] ամաց թագաւորազնն՝ մեծն և աջողակն և
ըմբշամարտիկն քաջ Զաքարայ, որդին Սարգսի սպարապետին Վրաց
արքային, աւաղական մահուամբ բարձաւ յաստեացս, վճարելով զկէտ
կենաց իւրոց, ի տիս միջահասակի, և յաջորդէ զաթոռ նորա գեղեցկաբոզ-
բոջ պատանին՝ շառաւէղ նորին Շահանշահ, որ բացայայտի՝ թագաւոր
թագաւորաց։

314բ ‖[Ը]նդ որս և ես աղա[չե]մ աղերսալի բազ[մա]վիշտս Աբել յի[շե]լ և զիմ նորատու[ն]կսն զերեսին եղբարսն, որ ի վայրկենի միում խամրացան և հատան իբրև զուռի բարունակէ, և կիսաւրեա ելին յ[ա]աշխարհէ՝ երթալով առ յոյսն իւրեանց Քրիստոս։

Ի մերումս ժամանակի երկուք հովուապետք հան[գ]իպեցան բարիոքք և ճշմարիտք՝ տեառն Վրթանէս ի կողմն Վարաժնունեաց, որ առ Հրազդան գետով՝ և այսր և անդր պարփակեալ են շինանի[ս]տք լայնք ը ընդարձակք, ունելով զվայրս բերրի յոյժ, եւ տեառն Դաւիթ ի կողմն Խոսրովակերտի, առ որս իշանէ Ազատ գետ և հասանէ ի մեծն Երասխ և շինանիստք, որ առ նովաւ, և Ռուբար դաշտ արգաւանդ և ամենալի ողկուզաբեր, որ ճմլի արիւն խաղողոյ, որ ուրախ առնէ զստացողսն։

Բ

Նկարող՝ Սարգիս
Վայր՝ Դեղձանայ մենաստան

97ա Զկուսակրաւն քահանայ Աստուծոյ զԽաչատուրն, զստացող սուրբ Աւետարանիս յիշեսջիք ի Քրիստոս, ընդ նմին զգրիչս Աբել:

Գ

151ա Զստացող սուրբ Աւետարանիս զկուսակրաւն քահանայ զԽաչատուրըն, և զհարազատսն իւր՝ զԱպըստամբն և զՎարդագելն և զՍտեփանոս յիշեցէք ի Տէր։

Դ

211ա ԶՍարգիս նկարիչն եւ զՍիբենոս շարայարողն, որ աշխատեցան ի յերանգ սորա և ի կազմն, յիշեցէք ի Քրիստոս։

Ե

Այսմ գործառնութեան բարւոյ սկիզբն եղև ի գերադրական սուրբ
ուխտին, որ կոչի Այրից վանք, որ է բանակեալ լուսակիր արանց և կա-
98բ ցորդ լուսաւորչացն նախնեաց,‖եւ յանգեցաւ ի պարկեշտաժողով մենաս-
տանիս Դեղձանոյ, ընդ հովանեաւ Սուրբ Կարապետիս Յովաննու, և առ
ոտս մեծ հեղինակիս Կարապետիս և այլ սրբոց միանձանցս, յիշատակ
նոցա աւրհնութեամբ։

Դարձեալ աղաչեմ յիշել զԽաչատուրն և սիրելի հարազատսն իւր, զՎարդագէլն և զկենակից նորին զԽաթունիկն, որ բազում գթով և խնամոտ սիրով սպասաւորեաց մերում նուաստութեանս։ Աւրհնութիւնն Քրիստոսի ի վերայ նորայ և զփոխարէնն հատուցէ բազմապատիկ աստ և հանդերձելումն, ամէն։

Թուին ՌԿԶ (1217)։

Զ

Կազմող՝ Սէբենոս

241ա Զաստուածարեալ և սրբասէր և զհաճոյակատար հրամանի Տեառն զՎաչատուր քահանայ՝ զարեան մերձաւորն մեր լիաբերան և սրտի մտաւք

յիշեցէք ի Քրիստոս, և Տէր զձեզ յիշեսցէ յիւրում գալստեանն, ամէն։

Ընդ նմին և զՍէքենոս կազ(մ)ի<ն>ն, որ բազում աշխատեցաւ ի ծաղիս և ի կազմս սորա, և նայ յիշեցէք և ծնաւղսն իւր ի մաքրայփա(յ)լ յաղաւթսդ ձեր, և Աստուած զձեզ յիշէ, ամէն։

է

241ա Զկուսակրաւն քահանայ և ղձեռասուն աշակերտ մեր զԿարապետ ճշմարիտ պատարագող մեղսաքաւիչ մարմնոյ և արեանն Տեառն, որ զբազում աշխատեցաւ ի սուրբ Աւետարանս, յիշեսջիք ի սուրբ և յաստուածահաճոյ աղաւթսդ ձեր, և Աստուած զձեզ յիշեսցէ, ամէն։

## 67

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 136, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 600—602

Վայր՝ Դրազարկ

Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն։ Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զկենսունակ սուրբ Աւետարանս, հրամանաւ Թորոս միայնակեցի, մականուն՝ Գորգացի կոչեցելոյ, որ և ըստ բազմամեայ ծերութեան իւրում անկեալ կայր ի մահիճս և յարգելանոցի խցկան, և զի թէպէտ և մարմնով ծերացեալ էր և անցեալ զաւուրբք բազմաւք, սակայն տեսչութեամբ և նախախնամութեամբ մեծին Աստուծոյ արիագոյն և քաջամարտիկ էր ի պատուիրանս սուրբս, և յընթերցմունս աստուածային գրոց։ Վասն այնորիկ ստացաւ զսա ի սփոփանս ծերութեան իւրոյ և գանձ անկապուտ կողոպուտ և մարգարիտ անգին՝ հոգւոյ իւրոյ վշտագնելոյ ի յունայնութեանց չար կենցաղոյս այսորիկ. իսկ զկնի ելից կենաց իւրոց և յաշխարհէ և փոխելոյ առ քրիստոս յոյսն ամենեցուն, ետ զսա մանկահասակ եղբաւրորդւոյ իւրոյ Պետրոսի և բեմական քահանայի՝ ստացուած նմին սեպհական և յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց, զոր Տէր Աստուած վայելել տացէ նախասացեալ քահանայիս Պետրոսի և եղբարց իւրոց ընդ երկայն աւուրս։

Բայց կատարեցաւ սա ի թուականութեանս Հայկազնեան տոմարի՝ ՌԿԶ (1217), ի հայրապետութեան տեառն Յովհաննիսի Հայոց հեղինակի և իմաստուն դիտապետի, և ի թագաւորութեան քրիստոսապսակ արքայիս մերոյ ՙՂևոնի որ է որդի Ստեփանէի՝ եղբայր մեծին Ռուբէնայ, որ միապետեալ ունի թագաւորական իշխանութեամբ զամենայն նահանգս Կիլիկեցւոց և զմեծն Անտաւ, որոյ յիշատակ նոր[ին] աւրհնութեամբ եղիցի և անուն նորա՝ ազգաց յազգս։

Իսկ կատարեցաւ սա ի հռչակաւոր և յականաւոր վանս Դրազարկ կոչեցեալ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի և բնակարան փրկչին մերոյ Յիսուսի։

*Արդ աղաչեմք զամենեսեան զընթերցողսդ և զլսաւղսդ զի յիշեսջիք բարի յիշմամբ առ ի Քրիստոս զայսոսիկ, զորս յառաջն ասացաք, և զտէր* Գրիգոր *որ աւգնական եղև ի գինս սորա, և զեղկելի գրիչս և զծնաւղսն իմ, զի և Քրիստոս Աստուած զձեզ յիշէ յիւր մեծ ողորմութիւնն, ամէն։*

## 68

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

*Երևան 1813 և 1797 պահպանակներ*

*Գրիչ՝* Մարգարէ

(Աւրհնութիւն երից մանկանց)

*Ի թվիս Հայոց ՌԿԶ (1217)։ Գրեցաւ շնորհալի տառս մարգարէական նուագացս՝ ի զարդ տաւնից տէրունականաց, հրամանաւ և յաւժարական փափ||ագմամբ ի խնդրոյ եղբաւր մերոյ ըստ հոգւոյ՝* Գրիգորոյ, *զոր Տէր Յիսուս վայելել տացէ սրբութեամբ հանդերձ, ամէն։ Արդ որք երգէք սովաւ, յիշեսջիք զստաց||աւղ սորին, նա եւ զիս չուառական ոմն գծաւղ սորին՝ զ*Մարգարէ *մեղաւոր, եւ Տէր Յիսուս զձեզ զամենէսին յիշեսցէ եւ ողորմեսցի, ամէն։*

## 69

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 2877 (Ժ դար)*

ա

219ա *Քրիստոս Աստուած ողորմի* Վրացաիկնի Մելաե, *որ եղև միաբան Սուրբ Աստուածածնի և իւր սպասաւորացն, և զինչ որ իւր կարողութիւն է՝ յամենայն տարի հաստուցանէ զնուէրոն, և մասնակից է յամենայն բաբոյ մասն ի պատարագ եւ յաղաւթք։*

բ

*Յանուն Աստուծոյ, որ եկին* Գուգիկն *և իւր քուրադուստրն* Գոճարագիգն, *և միաբան եղեն Սուրբ Աստուածածնին և իւր սպասաւորացն։ Քրիստոս Աստուած, Սուրբ Աստուածամաւրն բարեխաւսութեամբ, իւր արքայութիւն հանգուցէ զնոցա հոգիսն, և ինքն Քրիստոս աւրհնեալ եղիցի յաւիտենն։*

գ

*Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ Սուրբ Աստուածածնին, ողորմեա պատրոն* Մանիլին, *և իւր կենակցին* Ոսկիաիկնա, *և իւրեանց ծնողացն։ Թվին ՌԿԶ (1217)**։*

---

** Այս հիշատակագրությունները գրված են հաջորդականությամբ, որից հետևում է, որ ա և բ գրվել են 1217-ից առաջ։ Իսկ գ—ե՝ հետո։ Գրելաձևից երևում է, որ սրանք ժամանակով իրարից շատ հեռու չեն, ուստի դնում ենք նույն թվաշարքում։*

Դ

Աւրհնեայ Քրիստոս Աստուած՝ Թորոս խապազն որ եղև միաբան Սուրբ Աստուածամաւրն։ Յամեն տարի Ո(600) մ[ոթ] հաց վանիցն պտղի ե։

Ե

218բ ՝ Քրիստոս Աստուած աւրհնէ զպարոն Սիրեն Աստուածամաւրն բարեխաւսութեամբ, որ եկ հայրն||

---

Դ հիշատակագրությունը Գ. Հովսեփյանի «Յիշատակարանքում» (էջ 751—752) գրված է 1211 թվականի տակ։ Վերծանելիս բաց է թողնված վերջի միավորը՝ Զ (6)-ն։ Նույնպես է նաև «Դրչության արուեստի» մեջ (էջ 46 և 71, տախտ. ԼԴ)։

## 70

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա 26, Տէր-Աւետիսյան, Ցուցակ, էջ 39*

*Գրիչ՝* Գրիգոր սարկաւագ
*Վայր՝* Սկեռա

*Էութիւն բնութեանս կրկին գոյութեամբ էացեալս, այսպէս տար, որ ի չունել բաղձանս ի կցալի եւ յիմանալի, եւ որ մի անգամ ի բարւոյ եղելում մասին արտաքսյիլ ի կականաչութ շուայտութեան կենցաղոյս իբր ի հիացման մշտընչենաւորել ներդրամագրեցելոյ աղմունք զաւրութեանց անփոխանորդապէս վեր առաքին. նկատելով զէապէս եւ զանզուգականն բարի ղնմանեալն մեղ յայնց որք գերակատար արփիովն պայծառացեալ անդուստ որոտային զբանն կենաց զկենսաբեր քարոզութիւն սուրբ Աւետարանին։*

*Արդ, ամենայն իմաստութեան պատճառք յաստուածային երկիւղն ղբաւրեմտացն գոլ իմանամք բարձունք, որպէս եւ զպատուեալս ածութեամբ քահանայական շնորհիւ* Սարգիս *վերաձայնեալ ի ծնաւղաց, որոց խորհուրդ բարի յինքեան բերեալ, մտաբերեաց սկիզբն առնել ամենայն առաքինութեամբ ղինքն կարգաւորել՝ հանդերձ որդւովքն իւրովք* Դաւթիւ *քահանայիւ, եւ* Վարդանաւ *սարկաւագիւ, եւ միւս եւ դեռաբոյս պատանեակաւ* Յովհաննիւիւ, *սովիմք, որպէս ձիթենի պտղալից վարսաւորեալ ի տուն Տեառն, ուր ըստ աւրէ խորհէր պայծառապէս յաւելուլ ի սպաս սրբութեան տաճարին Տեառն, խորհեցաւ զկնի այլ առաքինութեան մասանցն ձեռն արկանել՝ ստանալ զկենսունակ սուրբ Աւետարանս ոչ ի ծանրութիւն նիւթիցն նայելով, այլ ի յառատաձիր պարգեւս հատուցան փոխարինին, եւ աղաչեաց թախանձանաւք զմեծանուն գրիչն զ*Գրիգոր *յանձն առնուլ դրել ղսա ըստ տենչման սրտին իւրոյ։ Իսկ նա թէպէտ եւ յոյժ ծերացեալ էր եւ վատեալ ի տեսանելոյ, սակայն հարկեալ յանձն առ սկիզբն արար գրչութեան սորա եւ հասեալ ի վերջ գործոյս գրին, եւ այլ ոչինչ կարացեալ առնել, վասն զի աւրհասն ճեպեալ փոխեցաւ յաշխարհէ։ Եւ ապա իմ տեսեալ զթերութիւն սորա՝* Գրիգոր *սարկաւագ, ձեռն արկեալ լըցի զթերին ծաղկաւ՝ հանդերձ համ[ա]բարբառաւքն, ոչ ի տկարութիւն անկարութեանն նայելով, այլ ապաւինելով յԱստուած եւ յաղաւթ սրբոյ իմոյ ստացողի սուրբ գրոյս, եւ ըստ իմում կարի ջանացեալ լըցի զպակասն որպէս եւ Աստուած պատահեաց։*

Եւ գրեցաւ սա գրիւ ի մեծանուն անապատն Սկևռայ, որ մերձ յամուր դղեակ Լամբրու կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ եկեղեցւոյ որոյ անուն Սուրբ Փրկիչ կոչի, եւ մաւրն նորին Աստուածածնի, եւ գերահռչակ կենսունակ Սուրբ Նշանին, ի հայրապետութեան աստուածապատիւ տեառն Յովհաննիսի, եւ ի թագաւորութեանս աստուածապսակ արքային Լևոնի, յորում էր թուական Հայոց ՈԿԷ (1218), ի դառն եւ ի նեղ ժամանակի, յորում ասի ազգք քրիստոնեից որ ի Սպանիա, որ եւ Ալամանք և Ունկռք, եւ այդ բազում ազգք քրիստոնեայք, ձայն տուեալ միմեանց ժողովեցան անհամար հազարք, եւ ամենեցուն զխաչն տէրունական ի միջի եդեալ, երդմամբ հաստատեցին ի սիրտս իւրեանց՝ մեռանել յաղագս Քրիստոսի և սրբոյ գերեզմանի նորա։ Եւ որպէս սկսան նոյնպէս ի նոյն կատարեցան, թէպէտ և ոչ ամենայնքն, սակայն բազումք և մեծ մասն ի նոցանէ. քանզի դէմ եդեալ եկին հասին միաբանութեամբ ի քաղաքն Աքայիա, և մարտ եդեալ կռուէին ընդ հոյլս անաւրինաց. իսկ վասն բազմութեան յանցանաց մերոց, անգործ եղեալ մերայինքն, բազումք ցան եւ ցիր ցրուեցան եւ եղեալ հասին մինչեւ ի մեզ յերկրիս Կիլիկեցւոց, եւ բազումք մոլորեալ ի ճանապարհի՝ մատնեցան ի բանդս եւ ի սուր սուսերի, եւ այս վասն բազմութեան յանցանաց մերոց գործեցաւ։ Իսկ թագաւորն Ունկռաց եկեալ եհաս ի քաղաքս կիւլիկեցւոց ի Տարսոն առ թագաւորս մեր եւ երդմամբ սիրոյ և խնամութեան ուխտ հաստատեալ ի միջի իւրեանց՝ նա զառաջի եդեալ ճանապարհն ուղևորեալ յաշխարհ իւր։ Զայս փոքր ի շատէ ծանուցի։

Եւ վասն որոյ սկիզբն արարի յիշատակի գրոյս, ի նոյն դարձեալ վերստին, զամենայն դասս սրբազանից աղաչեմ՝ որք ընթեռնուք զսա եւ կամ աւրինակ առեալ աւգտիք սմանէ, ղստացաւղ սորա զՍարգիս աստուածապատիւ քահանայ, եւ զեղբայր սորա զՅովհաննէս քահանայ՝ զգնացեալն առ Քրիստոս, աղաւթից մասին արժանի արարէք։ Եւ զըստ մարմնոյ ծնաւղ սորա զԴաւիթ քահանայ, եւ զՎարդան եղբայր նորին, եւ զմայրն Հատաւրի՝ զհանգուցեալսն առ Քրիստոս, յիշատակի արժանի արարէք։ Այլ եւ զբարեպաշտուհի մայր որդւոց ստացաւղի սուրբ գրոյս՝ Իշխանաւրի անուն, աղաչեմ եւ զսա յիշել ի Տէր։ Իսկ եւ զեղբայր ստացաւղիս Ստեփանոս քահանայ՝ գնացեալն առ Քրիստոս, աղաչեմ յիշել ի Տէր, եւ առ հասարակ զամենեսեան՝ զկենդանիսս եւ զհանգուցեալսն, յիշել աղաւթիւք ի Տէր ամենայն ազգատոհմիւք իւրեանց։

Աղաչեմ եւ ես մեղապարտ գրիչս և յետին աշխատողս Գրիգոր, յիշել ողորմութեամբ զմեղուցեալ հոգի իմ, եւ զծնաւղսն իմ ըստ մարմնոյ, եւ զամենայն ազգատոհմս, եւ որ ճշմարիտ սիրով եւ հեզութեամբ զիմս նուաստութիւն արժանի արարեալ խրատու ներկրթութեան արհեստիս՝ զսկզբնագրող սուրբ Աւետարանիս զյառաջասացեալ գերահռչակ գրիչն Գրիգոր՝ տրամախոհ եւ անհամեմատ յարուեստս յիշատակի արժանի արարէք, եւ դուք յիշեալ լիջիք յողորմութիւնն Աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

71

## ՏԱՒՆԱՊԱՏՃԱՌ

«Բազմավէպ», 1887 թ., էջ 107—108

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Հաղբատ

*Ի թուականութեան Հայոց ՈԿԷ (1218), և ի հայրապետութեան սուրբ ուխտիս Հաղբատայ տեառն Յովհաննիսի՝ հեզի և առաքինւոյ... եւ [ի] սպարապետութեանս Հայոց և Վրաց Իւանէի և մանկանն Շահնշահի, ես նուաստ Ստեփանոս, հանդերձ եղբաւրս իմոյ Սարգսի, և յետին աշակերտք հոգեւոր վարդապետին Իգնատիոսի, որոյ յիշատակն աւրհնութեամբ, սնեալ և վարժեալ առ ոտս Սրբոյ Նշանիս Հաղբատայ: Արդ ցանկացող եղեալ իմ այս Տաւնամակացս՝ լցեալ հոգևոր գանձիւք և յերկնային մանանայիւն, զոր շարայարեալ սրբոց վարդապետաց.*

## 72

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԽՓԽՍԱՅԻՈՑ ԹՂԹԻ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ

*Երևան 1382*

Գրիչ՝ Յոհաննէս
Վայր՝ Հաւին

ա

304բ *Ամենասուրբ Երրորդութեանն փառք, եւ երկրպագութիւն և մեծ գո-*
*հութիւն յամենայն յարարածոց՝ յերկնաւորաց և յերկրաւորաց, և ի մերմէ*
*յանարժան բերանոցս աւրհնութիւն և փառաբանութիւն՛ այժմ և յաւի-*
*տեանս յաւիտենից, ամէն։*
*Յանսպառ և ի կեն[սատ]ու աղբերէ Հոգւոյն Ս[րբո որ]պէս ար-*
*բեալ սքանչելի այրս* [սուրբ] հայրապետս* Յոհան Ոսկե[բերան զ]*մայ-*
*լեալ անմահական պարգև[աւք] նորա քարոզեալն ի սրբ[ամիտ և աս-*
*տուած]ազան առաքելոյն ի Պաւղոսէ զբանն կենաց, առեալ ի միտ մեծ ի-*
*մաստութեամբ և քաղցր բարբառով և բարձր ձայնիւ, մեկնէ և յայտ առնէ*
*զքաղցր և զամենողորմ կամքն Աստուծոյ, զոր ունի առ ազգս մարդկան։*
*Քանզի միածին որդին Աստուծոյ, Տէր մեր և փրկիչն Յիսուս Քրիստոս,*
305ա *կամաւ Հաւր և հաճ‖ութեամբ Հոգւոյն Սրբոյ խոնարհեալ յանճառ փա-*
*ռաց՝ առ մարմին յամենասուրբ կուսէն Մարիամայ, և կրեալ զամենայն*
*կիրս մարդկային, բայց ի մեղաց, եւ նոր արարչագործութիւն ստեղծա-*
*գործեալ՝ կանգնեաց զեկեղեցի՝ յերկինք երկրի, և տուեալ զկենսագոր-*
*ծող մարմին և զարիւն իւր կերակուր հաւատացելոց///զմարմին և զա-*
*րիւն ի մ///և Հայր և Հոգին Սուրբ ի նմա։///զեզրական պարգևքս///տեան*
*տեսեալ սուրբ հայրապ[ետն]///համեզ և քաղցր խրատիւ պատուիրէ*
*զգուշանալ ի մեղաց, որ է պատճառ կորստեան, և կալ հաստատուն ի*
*կոչմանն յոր կոչեցարաւք, սպասել և ակն ունել մեծի և աներեակ*
*աւուրն, յորում գայ Որդին Աստուծոյ՝ դատաւորն ամենայն հոգւոց, հա-*
*տուցանել ըստ իւրաքանչիւր գործոց անսպառ հատուցմամբ։*
305բ *Այսմ աստուածային և կենսունակ կտակիս, որ ի ձեռն սրբոյն* Յո-
հաննու *աւանդեցաւ եկեղեցւոյ սրբոյ, ես անպիտան յորդիս եկեղեցւոյ*
Յոհանէս *ցանկացայ փափագմամբ սրտիւ, և գծագրեցի զսա դիւրընթերց*
*գրով և ուղիւղ բանիւք, յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց, եղբարց և քերց*
*իմոց։*

---

* *Այս և հաջորդ էջերի միջին մասը խոնավությունից քայքայվել է և չի ընթերցվում։*

Եւ դրեցաւ ի ՌԿԸ (1219) Թ[ուիս] Հայոց, ի հրեշտակաբնակ ուխտիս Հառիճ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս և Սուրբ Գրիգորոյ և ի հրաշակերտ նոր կաթողիկէիս, յառաջնորդութեան հաւր Պետրոսի և Քրիստափորի և Սոսթենիսի և այլ միաբան սուրբ եղբարցս, որք կ[ա]մակ[ի]ց եղեն և աւգնական աղաւթիւք, և ընծայեցի ղսայ ի սուրբ ուխտս Հառիճայ, յառաջնորդութիւն Գրիգորոյ վարդապետիս, որդւոյ Աբասայ, որ եկն ի սուրբ ուխտէն Սանահնէն՝ առաջնորդ մաւրս լուսոյ և սպասաւոր, որ է հեղ և խաղաղարար և բարեսէր։

306ա [Ար]դ, աղ[ա]չեմ զամենեսեան, որք կարդայք և լսէք և աւկտիք ի սուրբ գրոցս, կամ գաղաբար առնոյք, զիս՝ զանարհեստ և ողորմելի գրողս և զստացիչս զՅոհաննէս, և զծնաւղսն իմ, և զեղբարս, և զքեռնս, և զՎարդերեսն յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր, և զվերայգրեալս՝ զհայր Պետրոս, և զՔրիստափոր, և զ[Ս]ոսթենես, և առաւել զնոր հայրս [մ]եր՝ զԳր[գ]որ վարդապետս որդի Ա[բա]սայ՝ զա[ր]դարեա[լն ամ]ե[ն]այն ա[ռ]աքին[ու]թե[ամ]բ, և զայլ միաբան ե[ղ]բարքսս՝ զքահանայսս և զկրաւն[աւ] որսս, և ղծ[երսս] և զերիտասարդսս [յի-շե]ցէք յա[ղաւթս ձ]եր։ Եւ [ո]րք յայսմ [սուրբ] ուխտս հա[ն]գու[ցէ] ///ատ և այլ//աբան յա//այժմ, և որ զկնի [մ]եր հանգուցէ, Քրիստոս Աստուած [զհ]ոգիս նոցա ընդ ամենայն [սու]րբս իւ[ր ամ]էն։

Եւ զմեծ իշխանն մեր ղ[բա]րեպաշտ Վարհամ, որ զժամատունս շինեաց ի դրան կաթողիկէիս, և զորդիսս իւր՝ զԻշխանն և զՍարգիս պա-հեսցէ խաղաղութեամբ մեզ ի խորին ծերութիւնն Քրիստոս, և յետ աստի ելանելոյ հանգուսցէ զհոգիս նոցա յարքայութեանն ըստ սիրելիսս իւր, ամէն։

306բ Եւ զՂազար տանուտէր տարոյս, որ է հոգաբարձու եղբարցս, յիշես-ջիք յաղաւթս, և որք յիշեքդ զմեզ՝ զպարգևատուն ամենեցուն Յիսուս Քրիստոս հատուսցէ պարգևս բարեաց մեզ և ձեզ և ամենայն հաւատա-ցելոց, աստ և ի հանդերձելումն, եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս յաւ[իտե]նից, ամէն։

Բ

45ա Զտառատպող գրոցս զՅոհաննէս ստացիչ յիշեցէք, աղաչեմ, յա-ղաւթսդ ձեր։

Գ

89ա ԶՅոհաննէս գրիչ յիշեցէք յաղաւթս։

Դ

138բ Ո՜վ աստուածարեալ հարք և եղբարք, աղաւթից մասին արժանի արարէք զստացող և զգծող գրոցս, զանարժանս և զեղկելիս զՅոհաննէս և զծնաւղսն իմ, և որք յիշէքդ, յիշեալ լիջիք Քրիստոսէ Աստուծոյ մե-րոյ, ամէն*։

---

* Այս կարգի հիշատակագրություններ կան նաև 176ա. 194բ, 224բ, 304ա էջերում։

## 73

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 803—804*

*Գրիչ՝* Բարսեղ

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն յաւիտենսս, ամէն։*

*Ես՝ տառապեալ գրաւղս* Բարսեղ՝ *զտիւն ամենայն տքնեալ ի վերայ փայտեղէն տախտակի, եղեգնակոխ արաւրով և խաւսուն ակաւսաւք՝ հին-գաշար կենդանի ամլաւք, եռահիւսակ, միահեծան ընդ միմեանս շաբա-յարեցի զբանս կենսաբեր սրբոյ Աւետարանիս, ի թուականիս Հայոց ՈԿԸ (1219), ի թագաւորութեանս Հայոց* Մեծաց Լեւոնի, *և ի հայրապետու-թեան տեառն* Յոհաննիսի *Հայոց կաթողիկոսի, և յիշխանութեանս մերոյ* Վահր(ա)մա՝ *որդոյ* Արեւգունի, *որում Տէր Յիսուս ողորմեսցի։*

*Եւ աղաչեմ ամենեսեան հայցել ի Քրիստոս զթողութիւն մեղաց ինձ* Բարսեղի՝ *գրչի դրոյս։*

*Ստացող՝* Յոհաննէս

*Ես՝* Յոհաննէս *աւագ սարկաւագ* Այտուցի, Մուխէս *իրիցու որդի, որ ստացայ զդա. յարդար վաստակոց իմոց՝ ի յիշատակ ինձ և ծնաւղաց և եղբարց իմոց, ի վայելումն եղբաւրորդոյն իմոյ* Նորսիսի՝ *ճշմարիտ քահանայի, և մատաղ մանգան իւրոյ՝ համանուն հաւուն իւրոյ* Մովսիսի, *որում Քրիստոս ողորմեսցի ա[յ]ժմ և ի յ[ա]պագայն, յաւուրս աներե-կին՝ առաջի արդար դատաւորին անմահ փեսային, և լսել զձայն Նորա որ ասէ. Եկայք, աւրհնեալք Հաւր, իմոյ, մտէք յուրախութիւն Տեառն ձեր։ Ընդ Նոսին և մեք մտցուք ի յառագաստ Նորա։*

*Ծաղկող՝* Յովհաննէս

*Ես՝* Յովհաննէս, *որ լցի զպակասութիւն սորա բանիւք, ծաղկաւք և ցանդաւք և համաբարբառաւք, աղաչեմ զամեսնեսեան, որք ընթեռնույք զյիշատակարան սուրբ Աւետարանիս, յիշեցէք զիս և զծնողքն իմ և զու-սուցիչս իմ։ Եւ որ զմեզ յիշէ, յիշեալ եղիցի, ամէն, ամէն, ամէն։*

## 74

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7734*

*Գրիչ՝* Կոզմա
*Վայր՝* Բարշան

ա

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն եւ մի աստուածութեանն յաւի-տեանս յաւիտենից, ամէն։*

354ա Շնորհիվ Տեառն սկսա եւ ող[որ]մութեամբ նորին կատարեցի զկենսաբեր սուրբ Աւետարանս ի փառաւոր աւրինակէ, որոյ Մուրզանեցի կոչիցի, ի թուիս ՈԿԸ (1219), ի նուաստ անպատիկս Բարչանենա, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, ի հայրապետութեանս տեառն Յոհաննիսի և յեպիսկոպոսութեանն տէր Առաքելի, ընդ ձեռամբ Կոզմաի մեղաւորի եւ անարժան գրչի։

Արդ, ո՜վ աստուածասէր հարք եւ եղբարք, յորժամ լուսաւորիք սովաւ յիշեսջ[իք] զիս՝ զԿոզմա, եւ զծնաւղս իմ, եւ զեղբարս, զի ողորմեսցի մեզ Տէր Քրիստոս, եւ զտառապեալ կին ոմն Թագուհի, եւ յիշողացդ տացէ Տէր զանսպառ բարիսն ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, որում փառք յաւիտե[անս]։

355ա Ես Խաչեր մեղապարտ ծառա Աստուծոյ, եւ նուաստ ի քահանայս, զփափաքումն սրտի իմոյ եւ զյիշատակ հոգւոյ իմոյ ստացա զսուրբ Աւետարանս՝ իմով աշխատութեամբ եւ արդեամբք, ի յիշատակ հոգւոյ իմոյ եւ ծնողաց իմոց, եւ ի վախճանումն աստուածատուր հարազատ որդեկի իմոյ Մարգարէի, ունելով իմ զսա բարեխաւս առ Քրիստոս Աստուած, զի թերեւս ընկալցի զնուէրս իմ ողորմութեամբն իւրով։

Արդ աղաչեմք զամենեսեան, որք լուսաւորիք սովաւ եւ ընթեռնույք, յիշեսջիք զիս, զԽաչեր նուաստ քահանա, եւ զծնաւղսն իմ, եւ զկենակից իմ զԵմէն, եւ զհարազատ որդեակքս իմ զՄարգարէ եւ զՎանենի, զի
355բ ողորմեսցի մեզ Տէր Քրիստոս, եւ տացէ մեզ վար||ձս բարեաց յիւր առատ պարգեւացն, եւ փրկեսցէ ի սպառնալեաց գեհենի հրոյն։

Եւ յիշողացդ տացէ Տէր զանսպառ բարիսն ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որում վայել է փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամեն։

Բ

108բ Զանարժան գրիչս զԿոզմա յիշեսջիք ի Տէր*։

## 75

## ԱՒԵՏԱՐԱՆ

«Ցուցակ ձեռագրաց որ ի Հանդէս ամսօրեայ», էջ 48—49

Գրիչ՝ Կոզմա

ա

141ա Ստացաւղ սորա՝ զաստուածաբնակ սուրբ եպիսկոպոս վերադիտող տանն Ռապնա զտէր Կոստանդին եւ զշնորհազարդ կրաւնաւորն զեղբայր նորա տէր զԵպիփան յիշեսջիք ի Քրիստոս ամենայն որդիք լուսոյ, որ ետուն գծել զկենսաբեր սուրբ Աւետարանս յիշատակ ինքեանցն եւ ծնողաց իւրեանց, ամէն։ Այլ եւ զանարժան գրիչս զԿոզմա աղաչեմ յիշման արժանի արարէք եւ Աստուած ձեզ ողորմեսցի ամէն։

* Եվսեբիոսի նամակի խորանների գլխազարդ կամարների մեջ նույնպես ոսկեգույն ներկով գրված է «Կոզմա անարժան գրիչ» (էջ 1բ—2ա)։

Բ

237 Զտրբազան եպիսկոպոսն զտէր Կոստանդին՝ ղստացաւղ սորա յիշեսջիք ի Քրիստոս, ամէն։ Այլ եւ զմեղապարտ գրիչս զԿոզմա։

Գ

501ա Զաստուածապատիւ եպիսկոպոս զտէր Գրիգոր վերագիտող տանն Փեւազմեայ (*) եւ զՀրաշալի* ծերունի եղբայր նորա զՂազարէ կրամաւոր յիշեսջիք ի Քրիստոս՝ ամենայն ընթերցողք, ամէն։ Այլ եւ զմեղապարտ գրիչս զԿոզմա աղաչեմ յիշել, եւ Աստուած զձեզ յիշելոյ արժանի արասցէ, ամէն։

Դ

Ո՜վ տէր Պետրոս աբեղայ, մի մոռանար աղաւթից, մեղայ Տեառն Աստուծոյ իմոյ, մեղայ՝ մեղայ թշուառացեալս մեղաւ

76

ԱՒԵՏԱՐԱՆ

Գուշակյան, Ցուցակ Սեբաստիայի, էջ 25

Գրիչ՝ Կոզմա

ա

156 Զմեղապարտ գրիչս զԿսզմա աղաչեմ յիշել։

Բ

543 Ես նուաստ քահանայ եւ կրամաւորս Վարգան զփափագումն սրտի իմոյ եւ զյիշատակ հոգւոյ իմոյ՝ ետու գրել զսուրբ Աւետարանս իմով աշխատութեամբ եւ արդեամբք, ծաղկի նկարով եւ ոսկւով զարդեալ, ի յիշատակ հոգւոյ իմոյ, եւ ծնողաց իմոց՝ հաւր իմոյ Դաւթի եւ մաւր իմոյ Թագուհիի, եւս առաւել հաւրեղբաւր իմոյ Գրիգորի, որոց ողորմեսցի Տէր Քրիստոս եւ հանգուսցէ զհոգիս նոցա ի դասս արդարոց։ Եւ ես ակն ունելով յողորմածն Աստուած, զի ընկալցի զսակաւ նուէրս իմ որպէս զլումայս որդի աղքատին, եւ բարեխաւսութեամբ սուրբ Աւետարանս հատուսցէ ինձ եւ իմոցն յիւր առատ պարգեւացն զտուրս եւ զողորմութիւն, եւ Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս։ Եւ որ կարդայք, աղաչեմ զամենեսեան յիշեսջիք զմեզ առաջի Քրիստոսի, զի եւ դուք ընկալջիք ի նմանէ զվարձս բարեաց, զՊետրոս ջնորհալից պատանեակ եւ հարազատ որդեակ իմ յիշեսջիք ի Քրիստոս։...

Շնորհիւ Աստուածոյ սկսայ եւ ողորմութեամբ նորին կատարեցի զկենսաբեր սուրբ Աւետարանս ի ճշմարիտ եւ փառաւոր աւրինակէ, որոյ մականուն Կոզռաճ ///**։

* Տպագրված է «զհիրշալի»։

** Հաջորդ թերթը չի պահպանվել։

գ

Գրիչ՝ Տերունի քահանա

156 Քրիստոս Աստուած, անսասանելի պահեա յաւիտեան զպարոն Սըմ-բատ եւ զտիկին իւր Անիզա, որ եւ ստացաւ զսուրբ Աւետարանս յարդար վաստակոց իւրեանց, ի յիշատակ հոգւոյ իւրեանց, աղաչեմ յիշեսջիք առաջի Քրիստոսի Աստուծոյ մերոյ ամէն։

Զմեղապարտ քահանայ զՏերունի աղաչեմ յիշել ի Տէր///։

77

ԱՒԵՏԱՐԱՆ

Հ. Քյուրտյանի Հավաքածու, 20

Գրիչ՝ Կոզմա

ա

1ա Տէր Աստուած ողորմեա Կոզմայի մեղապարտ կրաւնաւորի եւ ան-պիտան գրչի, ի յաւուր քո դատաստանի, եւ իւր ծնողացն Պետրոսի եւ Մարիայի, ամէն, ամէն։

բ

33ա Քրիստոս Աստուած ողորմեա Կոզմայի մեղապարտ կրաւնաւորի եւ գծողի կենսատու տառի քո, եւ ծնողաց իւրոց յաւուր դատաստանի քո, ամէն, ամէն։ Ընդ նոսին եւ Պապա Սիմեոնն Ուռնայեցոյ, եւ ծնողաց իւ-րոց Կիրակոս քահանայի, ամէն, ամէն։

78

ՃԱՌՔ ԵՓՐԵՄԻ ԱՍՈՐՒՈՅ

Երևան 947 (1215 թ.)

Թարգմանիչ՝ Գէորգ

Վայր՝ Քեսուն քաղաք

ա

160բ ԶԳէորգ մեղապարտ յիշեսջիք մեղաց թողութեամբ ի Քրիստոս, որ զայս հանդիսաւոր ճառս թարգմանեցի ի քաղաքս Քեսուն վասն սիրոյն և խաղաղութեան։

բ

Գրիչ՝ Վահրամ

Վայր՝ Ակներ

160բ Եւ Վահր[ա]մա ողորմեսցի Տէր Աստուած և ծնողաց նորա։ Յիշեայ Քրիստոս Աստուած զՅակոբ, որ փափագանաւք ստացաւ զսա ի յիշա-տակ իւր և ծնողաց իւրոց։

161բ Ի թուիս ՌԿԸ (1219) մեռաւ թագաւորն Հայոց Լեւոն, որում ողոր-մեսցի Քրիստոս Աստուած և սուրբ թագաւորացն պսակակից արասցէ։

Եւ յայսմ ամի տապալեցին անիծեալ տաճիկքն զՕրուսաղէմ ի հի-մանց՝ զբովանդակ եկեղեցիսն, և զպարիսպն շուրջանակի, և զամենայն շինութիւն քաղաքին։ Ճշմարտապէս աստ կատարեցաւ ասացեալն ի Տեառնէ, թէ ոչ մնասցէ այդր քար ի քարի վերա, որ ոչ քակտեսցի, այլ յառաջիկայն Աստուծոյ է գիտելի։

79

ԱՌԱԿՔ ՍՈՂՈՎՄՈՆԻ, ԵՐԳ ԵՐԳՈՑ

Երևան 5979

128ա Ջստացաւղ գրոյս, զաշխատեալս գրիչ աղաչեմ յիշել ի Տէր և Աս-տուած զձեզ յիշեսցէ ի միւս անգամ գալստեանն իւրոյ, ամէն։

Ի Թու[իս] ՈԿԸ (1219) գրեցաւ գիրս։

# 80

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Ն. Ջուղա 29, Տեր Ավետիսյան, Ցուցակ, էջ 43*

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Արճակաղին

ա

201բ *Փառք Սուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդոյ եւ Հոգւոյն Սրբոյ այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից։*

*Ի Թուականիս Հայոց ՌԿԹ (1220) եղեւ աւարտումն աստուածախաւս մատենիս աւետարանութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զորս տնաւրենութեամբն իւրով կատարեաց վասն փրկութեան ազգին մարդկան։ Որում ցանկացող եղեալ եղբայր ոմն Սուքիաս սրբասէր քահանայ, ստանալ զսա յաղագս անձին իւրոյ, ձեռնարկեաց գրել եւ ոչ ժամանեաց, զի չոգաւ առ Տէրն իւր։ Եւ յետ այնր այլ ոմն աստուածասէր քահանայ ստացեալ զսա, ետ աւարտել զսա վասն յիշատակի իւրոյ և ծնաւղաց իւրոց։ Եւ հանդիպեալ իմոյ անարժանութեանս Վարդանա գրչի, վերջացելոյ յամենայն բարեաց, կատարեցաւ ղսա ի վանս սուրբ եւ հռչակաւոր ուխտիս Արճակաղնոյ, ընդ հովանեաւ Սրբոց Զորավարաց և Սրբո̈յ Նշանիս Կոսաանդեա:*

*Յայսմ ամի, ի մուտ տարւոյս, հանգեաւ Թագաւորն Լեոն: Ողորմեսցի նմա Տէր Քրիստոս։*

*Արդ որք աւկտիք ի սմանէ, արժանի արասջիք յիշատակի զաշխատողքս ի սմա զՍուքիասն և զԻգնատիոս, որ ստացաւ զսա յարդար ընչից իւրոց, ընդ նմին և զմեղապարտ գրիչս. եւ Քրիստոս պարգևատուն բարեաց ողորմեսցի ձեզ յիշողացդ և մեզ յիշելեացս, և նմա փառք այժմ և յանըսպառ յաւիտենին։*

*//:/:///: : /· ////: ://:///: : :////://:/: : : · /· ////: : : · /: : ·*
*////: : /· ////: : · /· ///: : ////:*
*ԲԱ, ՌՏ, ԳԲ, Ա, ԺԻ, ՌՍ, Ա, ՌՏ, ԲԲ, Ա, ՄՄ, Ա, ԲԱ, ՍՎ, ՆՅ, ԺԺ**

բ

200ա *Տէր Աստուած ողորմեայ Իգնատիոսի քահանայի՝ ստացողի սորա;*
*Ընդ նմին և մեղապարտ գրչիս, ամմէն։*

---

* *Սյունագիր ծածկագրով գրված է. «Իգնատիոսի է Աւետարանս», իսկ թվագիր ծածկագրով՝ «Գրեալ Վարդանա գրչի»։*

## 81

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 275 (1077 թ.)

Կազմող՝ Գրիգոր

### ա

Քրիստոս Աստուած ի միւս անգամ քո գալստեանդ ողորմեա մեղուցեալ քո ծառայի Գրիգորի, ամէն։

265ա Արդ, որոց լուսաւորեալ են մտացն առաջարկութիւնսն, եւ ըղփոյթ եւ զյաւժարութիւն առ վերին աշխարհն ունիցին, պմենայն ինչ դիւրաւ հանդիպի հաճոյ Տեառն և մարդկան, որպէս եւ այժմ է տեսանել առ այր ոմն մեծ եւ երեւլի՝ ընդ իմաստունս համեմատեալ, եւ քան զբազումս խոհեմ գտեալ, որբոց եւ այրեաց, անիրաւելոց եւ զրկելոց անվեհեր աւգնական եւ բարեխաւս ի դրունս արքունեաց, քրիստոսասէր եւ

265բ ազատ‖ ծընաւղաց զաւակ, որոյ անուն Խայտեր ճանաչիւր, ստացաւղ զլուսաւոր աւետարանութիւնս Աստուծոյ բանին Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ, որք առա[տա]հոս վտակաւք արբուցանէ զամենայն հաւատացելոց անձինս, ըստ նախանկար գետոյն յաստուածատունկ դրախտէ անտի բղխեալ ոռոգանել զամենայն երկիր, որ աւրինակէր զլուսաւոր վտակս սըրբոյ Աւետարանիս։

Արդ, այս նախասացեալ պատրոն Խայտերս ստացաւ զսուրբ Աւետա[րա]նս զաւակ ի Սիովնի եւ ընտանի յԵրուսաղէմն վերին։

266ա Արդ, հայցէ յամենեցունց, որք լուսաւորիք ի սուրբ պատուիրանէս, յիշել յարժանախումբ ձեր սուրբ հանդէսս զպատրոն Խայտերն՝ զստացաւղ սորա, եւ զծնաւղսն իւր, զաստուածասէր ամուսին իւր զՇմենիկն, զհարազատ զաւակ նորա զՍտեփան, եւ զդուստերսն իւր զՆասերն եւ զԱնըլներն, զի ողորմեսցի սոցա Քրիստոս իւրում փառաւոր եւ ի հրաշազարդ առաւաւտուն, եւ գրեսցէ զանուանս սոցա ի դպրութիւն կենաց,

266բ եւ շնչեսցէ զամենայն պարտիս սոցա, եւ ընդ միոյ ընծայա‖բերութեամբս այսորիկ հատուսցէ զանվախճան բարիսն, ամէն։

### բ

Բայց նորոգեցաւ սուրբ Աւետարանս ի թուականիս Հայոց ՈԿԹ (1220), հրամանաւ պատուական եւ աստուածասէր պատրոնին Ալէքսին, որ բազում փափագանաւք սրտի իւրոյ ետ նորոգել զսուրբ կտակս, եւ զարդարեաց ծաղկազարդ երանկաւք, ոսկովք պատուականաւ, եւ գոյնագունեան վայելչական դեղովք, ի յիշատակ ոգւոյ իւրոյ, եւ ծընաւղաց

167ա իւրոց՝ հաւր իւրոյ‖Վարդանայ եւ մաւր իւրոյ զԸմբաղին, եւ գեղեցիկ եւ անդրանիկ պատանեկի իւրոյ Մըխիթ[ա]ր[ի]չին, որ է յիշատակ եւ ժառանգ ամենայնի, զոր Տէր Յիսուս աղաւթիւք սրբոցն ընդ երկայն աւուրս պահեսցէ, ամէն։

Արդ, աղեբս մաղթանաց արկանեմք առաշի մանկանց Նոր Սիովնի՝ յիշել ի միագումար եւ ի սրաթռիչ աղաւթս ձեր զվերագրեալսդ ամենայն,

որոց ողորմեսցի սոցա Քրիստոս յաւուր մեծի ծագման իւրոյ, յորժամ բանք սպառին եւ գործք թագաւորեն։

167բ Եւ որ տէրն է մահու եւ կենաց՝ Յիսուս Քրիստոս, զյիշողքդ հանդերձ յիշելովքս, յիշեսցէ իւր ամենամեծ ողորմութեամբն, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ընդ նոսին եւ զկաղմող սորա զԳրիգոր կրաւնաւոր եւ զծնաւղսն իւր յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս, ամէն*։

## 82

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երեւան 1912

Գրիչ՝ Մխիթար
Վայր [Հաղբատ]

ա

46ա Աղաչեմ վասն սիրոյն Քրիստոսի եւ սուրբ հաւրս ասասջիք Տէր Աստուած սուրբ հաւրս բարեխաւսութեամբ և ամենայն սրբոց քոց, ողորմեայ Մխիթարա գրչի և ծնաւղաց իւրոց, և դուք յիշեալ լիջիք յԱստուծոյ, ամէն։

բ

85բ Ո՜վ Քրիստոսի արեամբն փրկեալ Նոր ժողովուրդք, մեծ հաւատով հայցեմ՝ ասասջիք՝ Տէր Յիսուս սուրբ հաւրս բարեխաւսութեամբ ողորմեա աչխատողի և գրողի սորա ի քում գալստեանդ, եւ նոյն Տէրն ձեզ ողորմեսցի, որ և զմեզ յիշէքդ, ամէն։

գ

100ա Ով ասասցէ սրտի մտաւք՝ Տէր աստուած սուրբ հաւրս բարեխաւսութեամբ ողորմեա գրողի սորա եւ իւրայոց ննջեցելոցն, Քրիստոս Աստուած զինքն Սուրբ Գրիգորոյ մասնակից արասցէ, ամէն։

դ

131ա Սուրբ հայր, խնայեա յիս։

---

* Չնայած երկու ստացողների հիշատակարաններ են, բայց գրիչը նույն կազմող Գրիգորն է, որը հիշատակարանների առաջին տողերը և վերջին պարբերությունը գրել է երկաթագրով, իսկ մնացածը՝ գրչագրով։

Վերջում, ստորին լուսանցքում, պահպանվել է նաև մի այլ ստացողի բոլորգիր հիշատակագրությունը, որը, հավանաբար, ԺԳ դարից է. «Ո՜վ ընդրեալ սուրբ մա(ն)կու(ն)ք Սիոնի, [զ]Սարգիս յիշեոջիք ներկարար և զամուսին իւր, և զաւակսն իւր, որ հալալ վաստակոց գնեաց սուրբ Աւետարանս և եթող յիշատակ հոգոյ և մարմ(ն)ոց...»։ Իսկ ԺԷ դարի հիշատակագրություններից երևում է, որ, Իսպէս և Գրիգոր եղբայրները գնել և նվիրել են «զայս սուրբ Աւետարանս Ոեսւեու վանացն», հավանաբար Արագածոտնի։

Ե

133ա Եղբարք, աղաչեմ վասն սիրոյն Քրիստոսի, ասասջիք՝ Տէր Աստուած սուրբ Հաւրս բարեխաւսութեամբ եւ ամենայն սրբոց ի քում գալստեանն ողորմեա Մխիթարայ գրաւղի սորայ, Աստուած ղինքն իւր սուրբ առաքելոցն մասնակից արասցէ։

Զ

138բ Ո՜վ նոր ժողովուրդք Քրիստոսի, աղաչեմ յիշեսջիք զՍարգիս քահանայ, եւ զՄկրտիչն, եւ զԲռնաւորն ի Քրիստոս, քանզի մեծ հաւատով յիշել հայցեմ, որ Աստուած զձեզ յիշէ իւրում գալստեանն։

Է

Որք ընթեռնուք յիշելոյ արժանի համարեսջիք զտառապեալ եւ զտարակուսեալս մեղաւք զանպիտան գրիչս, զի աստի եւ անդի գրեցի յաղագս սիրոյ սրբոցս, որ Աստուած զձեզ յիշե։

Կատարեցաւ պատմութիւն եւ գովասանութիւն եւ սքանչելիք եւ վարք
178 սուրբ հաւրն մերոյ եւ Լուսավորչի Արեւելեան աշխարհիս Սրբոյն Գրիգորի յամի վեցհարիւրրորդի վաթսներորդի իններորդի (1220), ձեռամբ անպիտան եւ տխմար գրչի, որոյ զանունն գրեսցէ Քրիստոս ի գիրն կենդանի՝ աղաւթիւք եւ բարեխաւսութեամբ Սուրբ Լուսաւորչիս, եւ Սրբոց Հռիփսեմեանց, եւ աղաւթիւք ձերովք, որք կարդայք եւ յիշելոցդ արժանի առնէք։

Եղբա՛րք, մեծ հաւատով հայցեմ, յիշեսջիք ղանպիտան գրիչս եւ ղծնաւղսն իմ, որ Աստուած ղձեզ յիշէ, ամէն։

Ը

198ա Սքանչելագործ Աստուած, բարէխաւսութեամբ սրբոց քառասունիցն, զգիր յանցանաց մեր եւ ծնաւղաց մերոց ջնջեայ եւ պատառեա, եւ զայնոցիկ, որք լի բերանով ամէն ասեն, քանզի ամենեքեան կարաւտ եմք ողորմութեան քո, յորժամ գաս ի նորոգել զերկիր։

Թ

Գրիչ՝ Մարտիրոս

228ա Զտէր Յովանէս արհեպիսկոպոս եւ զԿիրակոս անյաղթ փիլիսոփայ եւ զհաւրեղբարն իմ զՍանակ յիշեսջիք յաղաւթս ձեր։

Ժ

235բ ...[զՅովա]նէս առացաւղ...

ԺԱ

240բ Քրիստոս Աստուած, ողորմեա տեառն Յովաննէսի՝ սրբոյ ուխտին առաջնորդի եւ բարիոք հովուապետի, ամէն։ Ընդ նմին սորին տրուպ եւ անհեդեդ գրչի Մարտիրոսի, ամէն։

ժբ

*Գրիչ՝* Կիրակոս փիլիսոփա

276բ *ԶԿիրակոս փիլիսոփայն* յիշեսջիք ի յաղաւթս ձեր։*

ժգ

277բ *Քրիստոս Աստուած, ողորմեա տէր* Յովաննէսի *եւ եղբաւրն իւրոյ* Վարդայպետին *ամէն, ամէն։*

ժդ

320ա *Քրիստոս Աստուած ողորմի* Կէրիոյնի *եւ ծնողաց իւրոյ, ամէն։*

## 83

## ՄԱՇՏՈՑ

*Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ, էջ 384*

*Վայր՝* Կիլիկիա

*Գրեալ ի թվին ՈԿԹ (1220), ի* Կիլիկիա:

---

** Գ. Հովսեփյանը այս երեք գրիչներին համարում է իրար ժամանակակիցներ, իսկ գրչության վայրը՝ ենթադրաբար՝ Հաղբատը (էջ 810)։*

ՈՀ 1221

84

ԱՒԵՏԱՐԱՆ

*Հովսէփյան, Յիշատակարանք, էջ 813—814*

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Տարսոն

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն, ամէն։*

*Ըստ յաճախման աստուածային բանին և զՀոգոյն Սրբոյ, որով լուսաւորէ զհոգիս աստուածասիրաց անձանց, և տպաւորէ ի նոսա զլոյս աստուածագիտութեան իւրոյ, և մերձաւորս առնէ աստուածային երանութեանն, որ և զհուր սիրոյ իւրոյ արկեալ ի սիրտ աստուածասէր և ամենաբարի տիկնոջ Աւիծի և փափաքաւղ եղեալ աստուածային և կենսաբեր սուրբ Աւետարանիս՝ ի յիշատակ իւր, և ծնաւղաց իւրոց, և ամենայն զարմից, ի զուարճումն և ի պայծառութիւն Նորոյ Սիոնի։ Զի յետ ստացելոյ բազում տառից Հին և Նոր կտակարանաց՝ յաւել զսա ի գանձս աստուածային։*

*Արդ, գրեցաւ լուսաւոր և կենսունակ սուրբ Աւետարանս ի թուականութեանս Հայոց ի ՈՀ (1221), ի մայրաքաղաքս* Տարսոն, *յորում ամենայն ոք տատանէր, և մեղքն բազմանայր, և բարին ի յետկոյս ուղղէր։ Յետ մահուան աստուածասէր թագաւորին մերոյ* Լեւոնի՝ *վշտատէս ազդրս Հայոց վշտանայր և չարն տեղի տայր. որոշեցան ոմանք ի սուրբ ուխտէս և ի միմեանց միաբանութենէ, և որպէս է ազգիս սովորութիւն՝ ամենայն ոք զինքն յառաջ կոչէր, և չհաւանեալ միմեանց՝ լինէր արեան ճապախիս ի բազում տեղիս, և գաւառք և գեա[ւ]ղք քանդէին և եկեղեցիք աւերէին։ Ի յայսմ դառն և ի շփոթման ժամանակի աւարտեցի զգիրս սուրբ։*

*Աղաչեմ զամենեսեան, որք կարդայք և լուսաւորիք յաստուածային բանիցս, յիշեսջիք սրտի մտաւք առաջի Քրիստոսի զնախասացեալ տիկին* Աւիծ *և զբարի ծնաւղն իւր՝* զՇուշան *թագուհի, զոր պահեսցէ Քրիստոս խաղաղութեամբ և առանց վրդովմանց՝ ի մխիթարութիւն որբոց և այրեաց և առաւել կրաւնաւորաց դասուց, և յետ աստեացս՝ անպատում ուրախութեանցն ժառանգորդս արասցէ։ Զքրիստոսասէր և զքաջարին՝ զհայր սորա՝* զսիր Պաղառյն՝ *զգնացեալն առ Քրիստոս յիշեսջիք ի Տէր. ընդ սմին և զքոյր երանուհոյս՝ զտիկին* Ակաց *զփոխեալն առ Քրիստոս, և զամենայն ազգատոհմն, և զբարի շառաւեղն ի բարի արմատոյն՝*

*զքրիստոսատուր պատանին՝ զսիր* Մանս[ւ]էլ՝ *զգունդստապլ Աստուծոյ քաղաքին* Անտիոքայ, *զքուերորդի աստուածասէր տիկնոջս յիշեսջիք ի Տէր, և զմեղապարտ գրիչս* զԳրի[գոր] *սարկաւագ։ Եւ որք յիշէք բարի յիշմամբ և աներկբայ հաւատով, յիշեսցէ և զձեզ Քրիստոս ի գալստեանն իւրում, յորժամ բանք սպառին և դործք թագաւորեն, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

## 85

## *ՄԱՇՏՈՑ*

*Վենետիկ 325, Բ. Սարգիսյան, Գ. Սարգսյան, Ցուցակ Գ, էջ 104—106*

*Գրիչ՝* Տիմաւթ

ա

207 *Փառք երից անբաւից, անհասից, անիմանալե[աց], միանւոյ ամենակալին Աստուծոյ։ Փառք ամենայսուրբ Երրորդութեան ի բարձունս, Հոր եւ Որդոյ եւ Հոգոյն Սրբոյ, այժմ եւ միշտ, եւ յաւիտենից։*

*Ի թուականութեանս Հայոց ՈՀ (1221), ի յամսեանն մեհեկի, որ է աւգաւստոս, որ աւր [Աստուա]ծածնին պահոցն, գրեցաւ ցուցակս այս քահանայ[ա]թ[ա]ղու, ի յընտիր եւ ի լաւ աւրինակէ, եւ Աստուած ողորմի աւրինակիս գրողի* Անտոնի *եւ ստացողին* Բենկանն: *Եւ գրեցաւ սայ ձեռամբ* Տիմաւթի *անարժան քահանայի, ի վայելումն* Ըոստագիսի *եւ որդոց իւրոց։ Արդ աղաչեմ վամենիսեան, որք աւտիք, ուր անկանի սայ եւ ոյր լինիցի, յիշեսցէ յաղաւթս ասելով այսպէս. Տէր Աստուած ողորմեայ գրողի սորայ* Տիմաւթի, *եւ ծնողաց իւրոց ամէն։ Եւ ողորմեայ ստացողի սորայ* Ըոստագիսի *եւ ծնողաց իւրոց, եւ ննջեցելոց իւրոց, ամէն։ Եւ որք յիշեն զմեզ եւ խնդրեն մեղաց զթողութիւն ի Տեառնէ վասն մեր եւ վասն ննջեցելոց մերոց, երախտահատոյցն Աստուած, բարերարն Քրիստոս ողորմեսցի մեզ եւ նոցայ, եւ թողցէ զյանցանս նոցա, եւ ըստ մեծի ողորմութեանն իւրում առ հաս[ար]ակ ողորմեսցի մեղ եւ ննջեցելոց մերոց, եւ յիշողացն եւ ննջեցելոց իւրեանց։ Եւ ինքն բարերան Քրիստոս որդին Աստուծոյ, աւրհնեալ է յաւիտեանս, յայսմ ժամանակի եւ յիւրում գալստեանն, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն։*

բ

*Գրիչ՝* Ճարակ

104բ *Քրիստոս Աստուած ողորմեայ գրողի սորա* Ճարակի, *եւ ստացողի սորա* Ըրսաագիսի *քահանայի**։

գ

*Ստացող՝* Թորոս

133ա *Ես* Թորոս, *որ առի սոյ ուսայ զգիրքս զայս, Տէր Աստուած ողորմի գրոցս գրաւղիս հոգոյն, ամէն, ամէն, եղիցին։*

Բանարգես *շատ ապրես Ռ (1000) տարի, ամէն։*

---

* *Այս և հաջորդ հիշատակագրությունները հետո են գրված, բայց նույն դարում։*

Դ

Յիշ[ե]այ Տէր, որ անցք անցին ընդ մեզ։ Զսա Թորոս գրեց. Տէր Աստուած ողորմի սորայ ամէն, ոյ* զԹանարգեսն:

## 86

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 285

Գրիչ՝ Կոստանդին

ա

Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Հոգոյն Սրբոյ, այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից։

278բ Շնորհիւ Աստուծոյ սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ և ղցանկալի Աւետարանս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, զոր աւետարանեցին մեզ առաքելաքն ծարաւելոցս յարբուցումն։

բ

Կազմող՝ Յոհաննէս

74ա Ի խնդրոյ սրբասէր և ընտրեալ եղբաւր մերոյ Յոհաննիսի պատուական ծերունւոյ, ի յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց և եղբարց և ամենայն ազգատոհմի, ի յարդար արդեանց իւրոց, ի վայելումն անձին իւրոյ յաստիս և ի հանդերձելումն։

Արդ, գրեցաւ ցանկալի Աւետարանս ի թուին ՈՀ (1221), ձեռամբ Կոստանտեա մեղապարտ գրչի։ Արդ, որք աւգտիք ի սմանէ կարդալով և գաղափար առնլով, յիշեսջիք զստացող սորա զյառաջասացեալ ծերունին Յոհաննէս, և զծնաւղս իւր և զեղբարս, և զքոյրս, և որ ոք յիշեսցէ սրտի մտաւք, ինքն յիշեալ եղիցի յաներեկ աւուրն, ուր բանք սպառին և գործք թագաւորեն, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։

Եւ զանպիտան կազմողս Յոհաննէս յիշեսջիք յաղաւթս ձեր, մանկունք նազելի մաւր Սիովնի։

գ

Հբ Ո՜ եղբայր, գիտեա, զի զանուն աւետարանչացն այլ ի վայր պիտէր, որ ղորդ գայր**։

## 87

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 272

Ստացող՝ Սմբատ

314բ Յանուն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյ Սրբոյ; Ես Սմբատ մեղապարտ ծառայ Աստուծոյ, որ խնդրեցի զսուրբ Աւետարանս ի Հ<աղ>աւրեզ-

* Այստեղ, ինչպես նաև վերևում «ոյ»-ը «ու» շաղկապի նշանակությունն ունի։
** Գրված է խորանի մեջ։

*բուրէն իմմէ եւ ի հոգեւոր տեառնէն տէր* Ոհաննիսէ *Հայոց կաթողիկոսէ։ Եւ նմա շնորհեալ ղսա ինձ ի վայելումն կենաց իմոց, եւ ի յիշատակ հոգւոյ իմոյ եւ ծնաւղաց եւ եղբաւր։*

*Արդ, որք կարդայք զսուրբ Աւետարանս կամ աւրինակէք, զմեղապարտ ծառայս Աստուծոյ զՍմբատ եւ զծնողս իմ եւ զեղբայրն յաղաւթս ձեր անմոռաց յիշեսջիք, եւ Աստուած ձեզ եւ մեզ ողորմեսցի իւրում գալստեանն, ամէն, ամէն։ ՌՀ (1221)։*

## 88

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երեւան 8795*

*Գրիչ՝* Գրիգորիս

*Փառք անեղ, անհաս, անքննին, միշտ և համագոյ Երրորդութեանն անբաւելի Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ, յաւիտեանս յաւիտենից։*

*Գրեցաւ սուրբ և աստուածային ցանկալի տառս [նու]աստ քահանայիս ձեռամբ* Գրիգորիսի: *Արդ, որք կարդայք կամ աւրինակէք, մեղաց թողութիւն խնդրեցէք ինձ և ծնաւղաց իմոց, և ազգականաց, և Աստուած ձեզ ամենցուն ողորմ[եսցի] այժմ և հանապազ։*

*[Գր]եցաւ ի թուիս ՌՀ (1221)։*

## 89

### ԱԻԾՏԱՐԱՆ

*Քյուրտյան, Ցուցակ Հարդֆորդի, «Սիոն», 1975 Թ., էջ 82—33*

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Փոս անապատ

ա

*Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զյղձալիս յոքունց, որով փրկեցան համայրէն ծնունդ[ք] Ադամա՝ ազատեալք ի մեղա ց և զերծեալք ի խաւարէ կռապաշտութեամբ, գալստեամբ Տեառն մեր Յիսուսի Քրիստոսի յաշխարհս, որպէս ծանեաք զՀայրն և զՍուրբ Հոգին լուսաւորեալ և նորոգեալ և նորափետուր զարդարեալ աւազանաւն մաքուր, յորում որդեգրիմք երկնաւոր Հաւրն առհաւատչեա առեալ պարգև զՀոգին Սուրբ, վարդապետութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։*

*Արդ, չորեքվտակեան անծայրածաւալ ծովս չորեքեզերեան տիեզերս բոլոր սեռից, ենթակայացեալ բաղկացութեամբ ի մի առ ոգեալ արբուցանել իբր զմի դրախտ։ Վասն զի և զհեղեալ բանն ի ծոցոյ Հաւր ամենայն արարածք անոյշութեամբ լցան ըստ ճշգրիտ և անհաս պատմութեան, աղնթեր վկայիւ մերձ կացելոյ անկելոյ զլանջաւք տէրունական, տեղեկացեալ և հասու լեալ անհաս խորին խորհրդոց մեծին Աստուծոյ, ծանուցանէ տիեզերաց զաստուածութիւնն Որդւոյ, հանդերձ իրիւք ընկերիւք աստուածաբանեալ Մաթէոս, Մարկոս, Ղուկաս, Յոհանէս։ Սմա բաղձացեալ միայնացեալ* Աստուածատուր *անուն յորջորջի, ի մխիթարութիւն հոգւոյ և մարմնոյ յար ընդ նմա խաւսակցելոյ, և յետ մահու յիշատակ իւր և ազգատոհմի իւրոյ։*

*Արդ, ես ողբալիս և հոգով մեռեալս* Գրիգոր *կոչեցեալ փցուն մտաւք և գրչաւ, աղաչեմք զամենեսեան չլինել մեղադիր խոշորութեան գրոյս, զի թեպետ և///բայց տառիս դառն. զի անաւրէնք յամենայն կողմանց գերեցին զաշխարհս* Կիլիկեցւոց*. զի թագաւոր ոչ գոյր, և իշխանսն անհընաղանդ իւրեանց, մինչ Աստուած կամեցաւ և թագաւոր ետ, և սակաւ մի խաղաղացաւ յայս դառն ամքս։ Ես անհամգիստ, ի տեղիս տեղիս փոփոխելով, աւարտեցի զգիրս յընտիր աւրինակէ՝ յանապատս* Փոս *կոչեցեալ, ընդ հովանեաւ Սրբոյ Աստուածածնին և այլ սքանչելագործ սրբոց ի մէջ///ոբ եղբարց, և ընտիր առաջնորդի, որ զպէտս մարմնականս*

անթերի պահէր և յորդորէր ի գիրս, և զայն որ զառաջի զգիրն և զծաղիկն զարդարեաց, և զամենեսեան որ զաւգնական են լեալ, և որ հակառակ լեալ են, ինքն գիտէ, զի խիստ(յ)ոյժ ինձ հատոյց, և այն ի չարէն էր ամենայն; Որ առատն է ի տուրս, տացէ* ամենեցուն յանպակաս պարգևացն մասն բարեաց՝ յիշողացս և յիշեցելեացդ առ հասարկ, և նմա փառք յաւիտեանս և յապառանին, այժմ և միշտ, յամէն, ամէն։ Եւ ի թուականս ՈՀԱ (1222), և կաթողիկոս Հայոց Կոստանդին, և թագաւոր Փիլիպպոս, յայսմ ամի հաստատեցան յաթոռս, Քրիստոս Աստուած ըստ կամաց իւրոց հաստատուն պահեսցէ...

Բ

Աւետեաց բաշխող Քրիստոս առատապարգև, պարգևեայ մեղսասէր անձին գրչի թողութիւն մեղաց, և ստացողի սորա, [և] ամենայն մեղաւորաց, զի կարող ես յամենայնի և ընդ քեզ, Հաւր և Սուրբ Հոգւոյն փառք յաւիտեանս, ամէն, ամէն։

Գ

Հետագա լրացնող Մարգարէ

Ո՜վ սուրբ եղբայրք, որք հանդիպիք այսմ սուրբ Աւետարանիս, կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի մեղսաքաւիչ աղաւթս ձեր զՍիմէոն քահանայ վանից, որ ստացաւ զսա յարդար ընչից իւրոց յիշատակ իւր և ծնողաց իւրոց, և ամենայն ազգայտոհմից՝ կենդանեաց և ննջեցելոցն։ Ընդ նոսին և զիս զմեղաւք լցեալ ոգիս զՄարգարէ, որ սակաւ մի աշխատեցա ի սայ, ի համարքն գրել, և թուխթս որ պակաս էր և կտրեց** ու գրեցի, և Աստուած ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս ողորմեսցի ի յարդար դատաստանին, և նման փառք, ամէն։

90

## ԳԻՐ ՀԱՒԱՏՈՅ ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅ ԵԿԵՂԵՑՈՅ

Երուսաղեմ 354, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 253

Գրիչ՝ Յոհաննէս

ա

463 Փառք Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս ամէն, որ ետ զաւրութիւն տկարութեանս իմոյ հասանել յաւարտումն մատենի տառիս եւ խոստովանութեան Հայաստանեաց գրոյս, զոր սուրբն՝ Ներսէս /// ազգս Հայաստանեաց զի առեալ նմա /// Հոգոյն Սրբոյ թելադրեալ ի շրթունս /// անից, յայտնապէս ցուցեալ զպատասխանատութիւն հերձուածողաց, եւ այլասեռ ազգաց, եւ այս սովորութիւն Յունաց եւ բարբարոսաց անմտից եւ տգիտաց, որք ոչ խաւսեցին զուղեղս, այլ հակառակ նորին։ Սովաւ

* Տպագրված է «որ առատն է ես ուր ստացէ»։
** Այսինքն՝ «կտրուած»։

ազգս մեր ափ ի բերան առնեն զայնոսիկ, որ հակառակին ճշմարտութեանն։

Եւ ես տրուպս եւ յետինս, բազմամեղս եւ անիմաստս, եւ նուաստս ի քահանայն ի գործ առեալ գրեցի զսա ի խնդրոյ սրբասնեալ քահանային Ստեփանոսի, ի վայելումն անդրանիկ որդոյ իւրոյ Յոհաննիսի<սի> դեռաբոյս սարկաւագի, եւ յիշատակ ննջեցելոց իւրոց։

Արդ, որք աւկտիք ի սմանէ կամ աւրինակէք, յիշեսջիք ի Քրիստոս զսրբասնեալ քահա[նա]յն զՍտեփանոս եւ զՅոհաննէս որդին նորին։

Եւ ես մեղաւք լցեալս անարժանս յիշելոյ, յերեսս անգեալ լալով աղաչեմ զսուրբ քահանայսդ եւ զսուրբ մանկունս եկեղեցւոյ որք աւկտիք ի սմանէ, յիշեսջիք զիմ անարժանութիւնս, եւ թողութիւն հայցեցէք յԱստուծոյ բազմամեղ անձին իմոյ եւ Աստուած ձեզ եւ մեզ ողորմեսցի։ ՈՀԱ (1222)։

Բ

368 Ո՜վ սրբասնեալ քահան[ա]յք եւ աստուածասէր ժողովուրդք, յերեսս անկեալ աղաչեմ զձեզ, խնդրեցէք յԱստուծոյ զթողութիւն յանցանաց բազմամեղիս Յոհանիսի, եւ Աստուած [ձեզ եւ մեզ] ողորմեսցի։

Գ

Քրիստոս որդի Աստուծոյ, յորժամ գաս քո հայրենական փառաւքդ հատուցանել ըստ գործոց, դու ողորմեա մեղուցեալ ծառայիս քո Յոհաննիսի, եւ շնորհ[ե]ա թողութիւն բազում եւ դժընդակ յանցանաց նորա, եւ քեզ փառք յաւիտեան, ամէն։

## 91

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 695 (1681 թ.)

186ա Երազահանս այս խալաֆ սուլթանն Սիսիանու և Խորասանու և Յարախու տէր էր, զիւր յաշխարհին գիտնականքն ժողովեաց ի Ա տեղ և հրամայեաց թէ ի վեր ձգեցէք զինչ փեղամպարքն երազ են տեսեր։ Եւ մեկնեցին Աստուծոյ հրամանաւ...

188ա Զայս Երազահանս ի տաճիկ յարապ գրէ ի հայ գիր մեկնեալ Առաքել իմաստասէր աբեղայն, որ մականուն Վառ ասեն, և Մխիթար Կելկանց և Շերանն, ի յԱնի քաղաքին դռան ի վերա բերդ և անունն Մաղասբերդ‖ և բերդին անունն Ծարքար: Ի յայն բերդին զընտանն մեծ մարդ մի կայր տաճկաց, և այս գիրս ի հետ յայն զընտանին և յայս Գ հոգիս փոխել են ՈՀԱ (1222) թվին ի հայ լեզու, ի սահմի ամսոյ Գ աւուրն, որ է աւրհնեալ անզրաւ յաւիտեանս, ամէն*։

---

* Վիեննայի Մխիթարյանների № 88 ձեռագրում (էջ 6բ) հիշատակարանն այլ խմբագրությամբ է. «Այս Երազահան գիրքս խալաւ խանին եւ սուլթանին է. նովաւ յարեզան յԱնեցի, որ անուամբ Առաքել ասեն, ու Մխիթարիչ Եկշկանց, եւ Շիրակվանեցի, ի յԱնի քաղաքի մաւտն։ Եւ

## 92

### ԱՒԵՏԱՐԱՆ

Վիեննա 218, Տաշյան, Ցուցակ, էջ 558—559

Գրիչ՝ **Նորագէս**
Վայր՝ **Սեբաստիա**

ա

260բ Յամի վեցհարիւրորդի* [եւ] թանասներորդի** եւ միերորդի թուաբերի յարեթական սեռի եւ ազքանազեան տոհմի։

Գրեցաւ աւետարեր սուրբ մատեանս ի քաղաքիս **Սեբաստիոյ**, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի եւ նախախնամողին Աստուծոյ զամէնեսեան, որով եւ մեք խնամեալք նորին ողորմութեամբ աւարտեցաք զսա ի փառս Քրիստոսի Աստուծոյ...։ Արդ, որք աւքտիք ի սմանէ ընթերցմամբ կամ գաղափարաւ, յիշեսջիք զստացող գրոցս զ**Նորագէս**, զսուտ եւ զախմար գրիչ, զի ոչ եթէ հոիտոր էի գրչութեանն արհեստի, այլ ի յաւժարութենէ մտաց եւ ի կարաստութենէ ձեռնամուխ եղէ գրոյս։ Տէր Յիսուս ի միւսանգամ գալստեան քո ողորմեա **Ներսէսի** սուտանուն քահանայի եւ ծնողաց իմոց **Բարսեղ** երիցոյ եւ մաւր իմոյ **Մարիանէ**. եւ եղբարց իմոց **Բանարգէս** էրիցոյ եւ **Յովաննէսի** եւ **Նահայպետի** եւ ընդ նոսին քեոցն իմոց **Տիրանցի** եւ **Տալիթի** եւ այլ ազգացն՝ կենդանեաց եւ առ Քրիստոս փոխեցելոցն եւ **Դշխուին** եւ **Պոծառին**, զի դեռաբոյս էին եւ ոչ ժամանեցին յապաշխարանս մինչ հասարակաց ննջումն եհաս ի վերայ նոցա. եւ **Հայրապետ** երիցոյ եւ **Գրիգորոյ** եւ ընդանեաց նոցա ողորմեա Տէր, զի ծնողաբար ընկալան ի յարկս իւրեանց մինչեւ յաւարտումն գրոյս։ Եւ **Սիմէոնի** գրակապի եւ որ շատ եւ որ սակաւ աւգնական եղեւ տալով կամ խաւսաւք կամ բարիոք հայելով, ընդ միոյ հարիւրապ[ատ]իկ առցէ ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, ամէն, ամէն։

բ

261բ Ով արարիչ իմ Տէր եւ յոյս,
Եւ լուսատու խաւարելոյս,
Ճեպեա ի ճար անճարելոյս,
Կարեկցելով ինձ նեղելոյս
Ջեռնատու լեր ծփելոյս.
Ծովակենցաղ ընկլուզելոյս,
Գովեալ փրկիչ յուսացելոյս։

ի թվականութեան Թորգոմեան ՈՀԱ (1222) էր, ես անարժան Առաքել աբեղայս թարգմանեցի ի յարապ լեզուէ ի հայոց բառ, եւ ի յամսեանն Հայոց Մեծաց սահմի Գ.։

Իսկ Երուսաղեմի № 1605 ձեռագրում (Ն. Պողարյան, Ցուցակ Ե, էջ 400) այսպես է. 177 «Այս Երազահան գիրքս խալօ սուլթանին է, նովաւ աբեղան Անեցի, որ անուն Առաքել ասէին ու Մխիթարիչ Ջեչկանց, ի Շիրակունի, ի յԱնի քաղաքն ի մաւտ, ՈՀԱ (1222) էր թիւն, թարգմանեցին ի յարապ լեզուէն ի հայ լեզու, ի յամսեանն սահմի Գ»։

Այս երեք հիշատակարանների միահամուռ վկայությամբ Երազահանը թարգմանվել է 1222 թ. սահմի 3-ին, Անիի միջավայրում, երեք անձանց համագործակցությամբ։

* Մի տող քերված է։

** Կարող է լինել նաև «ութանասներորդի» (1232)։

Գ

Եւ Աստուած յիշողացն եւ յիշեյոցն ողորմեսցի եւ նմայ փառք յաւիտեանս ամէն։ Խոշորութիւն եւ պակասութեան գրոյս մի մեղադրէք աղաչեմ աղաչեմ։

Դ

121ա Տէր Յիսուս քո սուրբ ծնողիդ բարեխաւսութեամբս… ողորմեա Դըժխուին, եւ Պոծառին, եւ ընդ նմին եւ գծողի սորա բազմամեղի ի քո միւսանգամ գալստեանն, ամէն։

Ե

201բ Տէր Յիսուս Քրիստոս… ողորմեա Դժխուին եւ Պոծառին տարաժամ եւ անապաշխար վախճանելոցն։

## 93

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 819—820*

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Սիս

Ի Թուականութեանս Հայոց ՈՀԱ (1222), ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ եւ ի թագաւորութեան Փիլիպպոսի նորընծայ արքայի, որ յայսմ ամի պսակեցաւ եւ ընկալաւ զաթոռ թագաւորութեան տանս Հայոց, գրեցաւ սուրբ եւ կենսագիր Աւետարանս, ձեռամբ Յովհաննիսի բազմամեղի, ի քաղաքն Սիս, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս, որ յանուն Սրբուհւոյն Մարինէի։

## 94

## ՀԱՂԲԱՏԻ ԱՒԵՏԱՐԱՆ [1]

6288 (1211 թ.)

Վայր՝ Մեծ Կողմանց
Ս. Գրիգոր եկեղեցի

358ա Սիրոյ զաւրութիւն գերեզ[ա]նց է քան զբնութիւն, եւ բարեխորհ
արանց անյագայպէս ունի առ ի բարին զ[ը]նթացս որ առ Աստուած,
մանաւանդ առ որ աստուածայինն զաւրանայ գիտութիւն, եւ բաց եւ
սրահաց ունի զհոգոյն տեսութիւն, արհամարհելով զանցաւոր եւ զապա-
կանացու կեանս, որպէս աստանաւր տեսաք, յորս աստուածայնոյն գտաւ
բարոյն տեսութիւն առանց դանդաղանաց, որպէս սիրեցեալս յԱստուծոյ
եւ յաստուածայնոցս Սարգիս քահանայ սնեալ սրբութեամբ ի մէջ եկե-
358բ ղեցոյ, եւ զարգացեալ ի մէջ իմաստ||[ու]ն եւ հոգեւոր արանց, ըստացաւ
զկենսաբեր Աւետարանս, զոր քառայհոլով վտակաւքն արբուցանէ զտիե-
զերս, գանձ անպակաս յերկինս, եւ յիշատակ յաւիտենից, ըստ գրեցե-
լումն, թէ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն եւ ընտանիք իցեն նորայ
յԵրուսաղէմ։
Արդ երանելիս Սարգիս իբրեւ զիմաստուն վաճառական ի խնդիր
եղեալ պատուական մարգարտին, եւ գտեալ զսա ի գաւառին Անոյ, մե-
ծայծախ, ոսկեգիր եւ ոսկեճաճանչ ծաղկաւք զարդարեալ, ըստացաւ զսա
359ա ի հալալ [ըն]չից իւրոց, ի բարեխա||ւս հոգոյ իւր առ Քրիստոս, եւ յի-
շա[տակ յաւ]իտենական ծնաւղաց իւրոց, եւ ընծայեաց զսա Մեծկող-
մանց եպիսկոպոսարանիս, որ է իւր տեղի սնընդեան, եւ ի տարոջն Բ
աւր ժամ նմայ յիշատակ կատարեն սրբոյ Սարգսի տանին։ Որ խա-
փանէ, նորա ազգի յանցանացն պարտական եղիցի, եւ որ զայս Աւետա-
րանս ի յեպիսկոպոսարանէս հանել ջանայ, ի յառաջնորդաց եւ կամ
յիշխանաց, հանե[ա]լ եղիցի նա յարքայութենէն Աստուծոյ, եւ որոշեալ
հոգով եւ մարմնով ի Սուրբ Երրորդութենէն,. եւ նզովեալ եղիցի ՅԺԸ
հայրապետէն։
359բ Ընծայեցաւ կենսայ||[բե]ր Աւետարանս Սուրբ Գրիգորիս, ի թուա-
կանութեանս ՈՀԲ (1223), ի յիշխանութեանս հզաւրին Հասանայ որդոյ
Վախտանգա, եւ ի հայրապետութեանս տեառն Յոհաննիսի: Արդ, որք
ընթեռնոյք եւ լուսաւորէք, կամ գաղափար առնոյք, զՍարգիս եւ զՄխի-
թար, որ գնեաց եւ եբեր զԱւետարանս, յիշեցէք ի սրբայփայլ եւ ընդու-

*նակ յաղաւթս ձեր, եւ Քրիստոս Աստուած յիշաւղացդ եւ յիշեցելոցդ ողորմեսցի իւրում գալստեանն եւ յապագայի աւուրն, ամէն։*

*Ձսակաւ աշխատողս յիշեցէք ի Տէր աղաչեմ։*

## 95

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Ղազիկյան, Համառօտ ցուցակ Ղալաթիոյ, էջ 13*

*Վայր՝* **Թագուրի վանք**

*Արդ եղեւ ղրաւ գրութեան սորա ի թուականիս Հայոց ի ՈՀԲ (1223), ընդ հովանեաւ սուրբ տաճարիս Տիրամաւրն, յանապատիս* **Թագուրի վանք.** *ընդ հովանեաւ* **Մամեղիոյ**...

## 96

### ԱՒԵՏԱՐ-ԱՆ

*Վենետիկ 94 (1543), Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 422—423*

*Գրիչ՝* **Պետրոս**
*Վայր՝* **Խամ քաղաք**

237բ *Փառք կենարարին եւ յիշատակ գրչի։*

*Փառք անբարժանելի եւ անպատումն Սուրբ Երրորդութեան եւ մի աստուածութեան՝ Հաւր և Որդոյ և Սուրբ Հոգւոյն, որ արժանի արար զտկարութիւնս իմ հասանել ի կատարումն այսմ աստուածապատում և կենդղուտ սուրբ Աւետարանիս։ Որ [է] սայ ծաղիկ անթառամ և անուշահոտութիւն խնկոց, լոյս խորհրդոց և առ Աստուած ընթացք, և դաստիարակ մանկանց առագաստի։ Եւ այժմ աւարտեալ յանկեցաւ ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։*

*Արդ, աղաչեմք զամենիսեան սիրովն Աստուծոյ յիշել աղաւթիւք զգծողս սուրբ Աւետարանիս՝ զ***Պետրոս** *երեց, և զհայրն իմ զ***Եղիշէ** *քահանայ, և զմայրն իմ զ***Նուշան**, *և խոշորութեան գծիս անմեղադիր լերուք, և Տէր Յիսուս Քրիստոս մեզ և ձեզ ողորմեսցի յաւուր գալստեանն իւրում, ամէն։*

*Տէր աստուած ողորմի* **Վաճանադրէի**, *և հաւրն իւրոյ* **Յովճանենէս** *քահանաի, և մաւր նորայ որ անուն* **Տիկին** *յորջորջի, զի և սայ շատ աշխատեցաւ զկնի մերում և շանս դնէր վասն գծելոյ սուրբ Աւետարանիս, և սմայ ողորմեսցի Տէր Յիսուս, ամէն։*

*Տէր ողորմեսցի հոյսանն* **Աստուածատուր** *և ամուսնու իւրոյ* **Ռամին**, *որ ստացաւ զսայ յարդար վաստակոց իւրոց որգեկին իւրոյ* **Հազրպետ** *քահանայի, վասն զի շատ ցանկութիւն ունէր հոգեւորական և բարեպաշտութիւն գործու, և ջանս շատ եղեալ զաւակին իւր քահանայութեան՝ մինչև ժամանեաց ի կատարումն խորհրդոցն և տեսաւ զորդեակն իւր*

քահանայ, և ստացաւ զսայ յիշատակ հոգւոյ իւրոյ և ի վայելումն պատանեկի իւրոյ Հազրպետի: Եւ Տէր Աստուած վայելել տացէ մինչև ի խորին ծերութիւն, և ողորմեսցի Աստուածատրին հոգւոյն, ամէն։

Տէր Աստուած ողորմեսցի գաւառապետին՝ Մրվան դարբնի, որ սաբուծիկն մեր զուգէր, և այլ զինչ և տանս պէտք էր՝ անտրտում աշխատէր և ոչ յապաղէր, այլ սրտով, խորհրդով գործէր, և փափաքանաւք ցանկայր յիշել զանուն նորա ի սուրբ յԱւետարանս. Տէր Աստուած ողորմի սմա և թողցէ զբազմութիւն մեղաց իւրոց, ամէն։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուիս ՈՀԲ (1223), ի գաւառիս Հայոց Նիկոպալիս, որ և Ախշար յորջորջի, և մականուն Մելիսոյ, ի քաղաքնս որ կոչի Խաւմ, ընդ հովանեաւ Սրբոյն Ստեփաննոսի, ձեռամբ Պետրոսի մեղապարտ քահանայի, ի վայելումն պատանեկին Հազրպետի և զաւակի իւրոյ Մարտիրոսի: Արդ աղաչեմք զամենեսեն վասն սիրոյն Քրիստոսի թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ՝ վասն մեղաց մեր և ննջեցելոց մերոց, և Քրիստոս Աստուած ձեզ ողորմեսցի, ամէն։

Քրիստոս Աստուած, աւգնեա Յովանիս քահանայի և ողորմ[ե]ա ծնողաց իւրոց, որ գնամակն կոկէր և ձեռնատու լինէր մեզ։

## 97

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2101

Գրիչ՝ Ստեփանոս Աղթամարցի
Վայր՝ Խորանաշատ

ա

85բ Ի ՈՀԲ (1223) թուականիս Հայոց գրեցաւ Առասպելախաւս տետ-
[ր]ակս այս ի ձեռն Ստեփանոսի Աղթամարեցոյ, ի վանքս Խորանաշա-
տու, ի գաւառիս Գարդմանայ, առ ոտս աղփաճեմ <և> և աստուածար-
86ա դիմական վարդապետիս Վանականի, որ փայլէ ի ժամանակիս որպէս||
զաստղ առաւաւտու և ի կողմանց հիւս[ի]սոյ, նահանգիս Թորգոմա՝
ամպ հոգէցաւղ, հանապազ հոսելով զաստուածայինսն և զբանաւորաց
ոռոգանէ երկիր։ Եւ թեպէտ կրսեր էաք ի լսարան համահանդիսիս և
անարուեստ գոլով գծոյ գրոյ, այլ յաւժարութեամբ սրտիւ, միայն յուսացեալ յԱստուած, ի ձմեռնային յաւուրս գրեցաւ։ Այլ աղաչեմ չլինել մեղադիր թիւրութեանն, զի զյոլովն ճրագով գրեցի։ Եւ զայս միայն խնդրեմ՝ յիշել զիս, և զհայրն իմ տէր Սարգիս, և զծնաւղսն իմ ըստ մարմնոյ, և զեղբարսն, և զսիրելին իմ զԻգնատիոս քահանայ, և Քրիստոս հասարակաց ողորմեսցիս՝ յիշողացդ և յիշեցելոցս, և նա եղիցի աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

բ

190ա Աւրհնեալ է Աստուած յաւիտեանս, որ հասին ի վերջին գիծս Նախախնամական գրոցս, ի թովիս ՈՀԲ (1223), ի տաւնի Աստուածածնիս, ի վանք Խորանաշատու, շինեալ Վանականի իմ վարդապետիս, որոյ ի

հանգէտն չհասի, այլ ի վերջ անկեալ անպիտանիս, որպէս զանաս ի յասողէ։

Գ

204ա Աւրհնեալ Սուրբ Երրորդութիւն Աստուած յաւիտեանս, ամէն։

Գրեցաւ Իմաստացոյց բանքս առաջնոց գրաւղաց բնութեան իրաց, որ ըստ գովի և պարսաւի, ի ՈՀԲ (1223) թուաբերութեանս մերաին ազանց, ի վանքս Խոռանաշատ կոչեցեալ, ի նահանգիս Աղուանից, ընդ-[հով]անեաւ մաւրս լուսոյ Աստուածածնիս, ձեռամբ Ստ[եփ]անոս Աղ-թամարեցոյ, կրթեալ առ Վանական վ[ար]դապետիս։

Արդ, աղաչեմ գհանդիպեալստ յի[շել] միով Տէր ողորմեաւ զվար-դապետն իմ զտէր Սարգիս հաւրեղբայր և զծնաւղսն իմ զՅոհաննէ[նէս և] զիմսն ամենայն. և հասարակաց ողորմեսցի Աստուած՝ յիշողացդ և շեչեցելոցս, և ինքն եղիցի աւրհ[նեալ] յաւիտեանս։

## 98

## ԾԱՇՈՑ

Վիեննա 5, Տաշյան, Ցուցակ, էջ 20—21

Գրիչ՝ Յոհանէս Բաբերդացի
Վայր՝ Բաբերդ

ա

134բ Ով սուրբ դասք քահանայից... արդ ի յայնմ ատենի յիշեսջիք զստա-ցաւղ սուրբ տառիս աստուածապատում զՄկրտիչ քահանայն, եւ զծը-նաւղք սորին զպարոն Տիրացոյն եւ զՄամխան տիկինն, եւ զեղբայրն զՄելիքշահն, զհանգուցեալսն առ Քրիստոս։ Եւ զքարեսէր եւ զհեզահոգի ամուսինն զՄկրտիչ քահանային, զԿիրա խաթունն եւ զնորաբողբոջ եւ ղդեռահաս զաւակք սոցին, զՄխիթարն, եւ զՄելքիսեդեկն, եւ զԱբդլմը-սեհն, զոր Տէր Աստուած պահեսցէ զսոսա...

Արդ, ստացաւ զսա Մկրտիչ քահանայն ի հալալ արդեանց իւրոց յի-շատակ բարի ինքեան եւ ծնաւղաց իւրոց, եւ ամենայն արեան մերձա-կայից եւ ազգականաց իւրոց, եւ ի վայելումն անձին իւրոյ եւ զաւակացն իւրոց վերոյգրելոցն ի սմա՝ Մխիթարին եւ Մելքիսեդեկին եւ Աբդլմսե-հին, զոր Տէր Աստուած վայելեալ տացէ զսա սոցին ընդ երկայն աւուրս, ամէն։ Արդ աղաչեմ զամենեսեան զարժանաւոր եւ զառաքինասէր դասս ընթերցողաց սուրբ գրոցս, արժանի առնել յիշատակի...։ Եւ զիս զա-ռածեալս մեղաւք եւ զանարժանս ի գրչաց զՅովանէս երէց եւ զծնաւղսն իմ յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր եւ զԵրկայն քահանայն՝ զփո-խեցեալն ի Քրիստոս։

Բ

333բ Քրիստոս Աստուած մեր...
Ողորմեա ստացողի սուրբ բուրաստանիս
Եւ ծաղկաւետ լցեալ տնկիս,

Որ նորոգաւղ է աշխարհիս,
Յաւէտատող տամնապխմբիս։
...Յերես անկեալ կամ ի յերկրիս
Եւ աղաչեմ զձեզ ողբալիս,
Յիշման առնել զիս արժանիս
ԶՄեղաւք լցեալս եւ զգազրալիս,
ԶՅովան Բաբերդացիս:

գ

34բ Ոհ, որ թանաքս է մածուցեալ եւ գծագիրս է յիմարեալ։

դ

75բ ...Ի հասանել դռնաբացիս
Յիշեա եւ զիս զողորմելիս
ԶՅովանէս Բաբերդացիս:

ե

Ծաղկող՝ Մկրտիչ

134բ Նուաստ եւ ներգեւեալ ոգի Մկրտիչ եպիսկոպոս եւ սպասաւոր բանի գրեցի, ով որ զյիշատակարանն ջնջէ՝ Աստուած զինքն ջնջէ ի դպրութենէն կենաց, ամէն*։

զ

Հետագա գրիչ

1ա Թվին ՌՄԺԷ (1768)-ին գիրքս այս եղեւ ՇԽԵ (545) տարեկան**։

## 99

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 389—390

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Առոյծ Մարգ

ա

264բ Փառք եւ պատիւ եւ գոհութիւն ամենասուրբ Երրորդութեանն, Հաւր եւ Որդոյ եւ Սուրբ Հոգւոյն, յաւիտեանս յաւիտենից, ամեն։ Որ ետ զաւրութիւն ծառայի իւրոյ Գրիգորի կատարել զսուրբ տառս քառառած աւետարեր սուրբ նամակս, որ յորդառատ բղխեալ լցուցանէ զտիեզերս ամենայն աստուածայհրաման կանոնագրութեամբ; Եւ է սա սահման եւ կնիք երկնագնաց ճանապարհին, եւ դուռն մտից կենաց սովաւ վարժեցոյն, որում ցանկացող եղեալ բարեսէր քահանայի ուրումն Մարտի-

* Գրված է լուսանցազարդի մոտ, զարդերի թանաքով։

** Նույնը կրկնված է նաև էջի մեջտեղը։ Հիշատակարանի թվականը ունեցող մասը, որ 1768 թվին դեռ կար, այժմ կորած է։ 1768 թվին ձեռագիրը ՇԽԵ (545) տարեկան էր, նշանակամ է գրված է եղել 1768—545=1223 թ.։

րոս կոչեցելոյ, որ բազմաբաղձիկ տարփմամբ եւ կենաղաւտ տենչմամբ եւ սիրայորդոր փութով ստացաւ զսա զանձ աստուածային եւ մարգարիտ պատուական եւ վերին պայծառութեանն առիթ։ Որոյ եւ ես հլու եւ հպատակ եղէ աստուածահաճոյ կամաց նորա, յանձն առի գրել վասն իմ հոգւոյս, քանզի ես հաւատացի ի ձեռն այս գծագրութեան ողորմութիւն ընդունել ի Քրիստոսէ աւգնականութեամբ աղաւթից ձերոց։

Բայց գրեցաւ ի թուականիս Հայոց ՈՀԲ (1223), յերրորդում ամի հայրապետութեան տէր Անանի Հայոց կաթողիկոսի, ի գաւառիս Մընձրոյ Մարգ, ի գեղս որ կոչի Առոյծ Մարգ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին եւ Սրբոյն Գրիգոր եւ Սրբոյն Յակոբայ։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան՝ որք ընթեռնոյք զսուրբ պատուիրանս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ստացող սորա զՄարտիրոս քահանայ, եւ զիւր տղայքըն, եւ զիւր երիցակին, եւ զիւր աներն՝ զԹաւրոս, եւ զՀերիքէ՝ որ հանդերձիկն երեն, եւ զԹաւրոս ի Յաւձ գեղս՝ որ զգտակն երեն, եւ զմեղաւոր խոշորագիծս, եւ զծնողս իմ, եւ զեղբարսն իմ, եւ զքոյրսն իմ, յիշման արժանի արարէք ի Տէր Քրիստոս, զի ողորմեսցի մեզ ի վերջնում աւուրն, եւ ի հրացայտ շարժմանն սրբովք աղաւթիւք ձերովք ապրեսցուք /// Մարտի[րոս] եւ [Յո]հանէսն, եւ սպասաւոր սուրբ խորհրդոյն, անմոռաց յիշեսջիր զիս եւ զծնողս իմ ի կառավարեան. եւ դու յիշեալ լիշիր ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Բ

205ա Զմեղաւոր ծառաս Քրիստոսի Աստուծոյ զԳրիգոր՝ որ եւ զսիրեցեալ որդի իմ զՄարտիրոս, եւ զկենակիցն իւր, եւ զծնողսն իմ, եւ զեղբարսն իմ, եւ զքոյրսն իմ, եւ զերիցակին իմ, եւ զԹորոս ի Յաւձ գեղս՝ որ զգտակն երեն, անմոռաց յիշեցէք ի Տէր, եւ Աստուած յիշողաց Տէր ողորմեսցի՝ որ է աւրհնեալ յաւիտեանս։

Գ

31 Քրիստոս Աստուած ողորմի Վարթաիկնա հոգոյն։

## 100

## ԱՐԾՏԱՐԱՆ

Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ, էջ 388

Գրեալ ի լեառն Կարմիր, ի մենաստանն ուխտիս, որ է [յ]անուն Աստուածամաւր, ի կաթողիկոսութեան տեառն Կոստանդեայ, և ի ժամանակս մեծի արքային Փիլիպպոսի, ի թուականութեանս ՈՀԲ (1223)։





## 101

## ԽՈՐԱՆԱՇԱՏՈՑ ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4823*

Նվիրող՝ Վանէնի, դուստր
Ջաջռոյ Խաղբակեանց

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն, որ արժանի արար զեղկելի գրիչս տեսանել զվերջին գիծս ամէն, ամէն։*

317ա *Ես* Վանէնի՝ *աղախին Քրիստոսի, դուստր* Ջաջռոյ Խաղբակեանց, *ամուսին* Կուկին՝ *որդւոյ* Աբասա Սեւադեանց *իշխանաժեացն, միաբանեցա ի* Խորանշատոյ *Սուրբ Աստուածածնիս, յիշելով զբանն Եսայա մարգարէի. Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն, եւ ետու զծախս սուրբ Աւետարանիս, ստանալ զսա ինձ զաւակ հոգեւոր յեկեղեցի յիմանալիս՝ Երուսաղէմ, ի ժամանակս թագաւորութեան դստեր* Թամարին՝ *թոռին* Գէորգեայ, *եւ ի տերութեան* Այրարատեան *նահանգին եւ* Խաչենոյ, *մինչ մի կողմանս* Զարեֆին *աթաբակ* Իւանէի:

*Յայսմ ժամանակի ինքնակալ տանս* Ռանա Վարհամ *եւ* Ասադն *եղբայր իւր, ի հայրապետութեան տեառն* Յովանիսի, *ի ՈՀԳ (1224) թվականիս եւ շինող և առաջնորդ վանիցս* Վանական *վարդապետն հաստատեաց ինձ աւուր մահուանն իմոյ Ա քառասունք, Ը աւր անբիծք, եւ յամէն տարի Ա աւր ժամ՝ յիշատակ ինձ Ցինանցն աւուր տաւնի աւետեաց Աստուածածնին։*

*Արդ թէ ոք զայս Աւետարանս զայս եկեղեցւոյս հանէ ի մերոց կամ յաւտարաց, նզովս առցէ, եւ իմ խղճոյս տէր է։ Կատարիչիք հրամանի գրոցս աւրհնեալ եղիցին յԱստուծոյ, ամէն։*

## 102

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Անֆալզ, Ցուցակ Գերմանիայի, էջ 5—6*

*Գրիչ՝* Սարգիս

ա

103 *Ո՜վ սուրբ ընթերցող բարի, զ*Սարգիս *գրիչ, և զ*Աթանաս *եղբայր հոգևոր և զ*Սահփաննոս *վարդապետն մեր, որ ղպատ[ու]ական աւրինակս շնորհեաց, եւ զ*Վանրամ *ստացող, եւ զ*Վարդան *եւ զ*Դաւիթ *ղընկերակիցք նորին, յիշեա ի սուրբ ա[զաւ]թս քո։*

Բ

168 *Արդ աղաչեմ զընթերցող սուրբ Աւետարանիս անմոռաց յիշել զըստացող սորա զ*Վահրամ *կրամաւոր, և զգրող սորա զ*Սարգիս, *եւ որ զաւրինակն շնորհեաց զվարդապետն մեր զ*Ստեփաննոս, *եւ նմա հայցէք ներումն եւ թողութիւն ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։*

Գ

200 *...Որ թէ գրեալ էին ՌՀԳ (1224)։*

Դ

200 *Յաւրինակն հայնց էր գրած, թէ այս սքանչելի գթութեան շնորհ ի Քրիստոսէ ի հերրաեցի Աւետարանէն։*

Ե

220 *Ի թւին հայոց ՋՃՀԳ (924)**

## 103

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Վենետիկ 200. Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 33—35*

*Գրիչ՝* Թադէոս
*Վայր՝* Սուրբ Գրիգորի գերեզման

ա

511ա *Քրիստոս Աստուած ողորմեա ստացողաց գրոցս՝ հայր* Կոստանդեա, *և* Թադէոսի *գրչի, և որք ի ծաղկելն աւժանդակեցին՝* Վարդան *ի* Կապաոյն վանիցն, *և* Ղազար *գրիչ, որոց ամենեցուն սոցա ողորմեսցի մարդասէրն Քրիստոս բարեխաւսութեամբ Սրբոց Քառասնիցս, նա և ամենայն հաւ[ատ]ով միաբանաց Սուրբ Լուսաւորչիս գերեզմանիս։ Եւ զյիշողսդ յիշեսցէ Քրիստոս Աստուած, և աւրհնեսցէ կրկնապատիկ, ամէն։ Որ այամ սուրբ կտակի խնամ տանի, ընկալցի և նա ողորմութիւն յամենառատ պարգևացն Աստուծոյ, ամէն։*

բ

476բ *Արդ աղաչեմք զամենեսեան, որք լուսաւորիք ի սուրբ կտակէս,* զՎարդան *քահանայ* Կապոսցի, *և* զՂազար *գրագիր յիշեսջիք յաղաւթս ձեր ի տանի սուրբ քահանայիցս, որ բազում ջանիւ և աշխատութեամբ զգիրքս ծաղկերանկ և գունակ գունակ դեղաւք զարդարեցին, և պայծառազգեաց արարեալ փայլեցուցին ի տես աչաց և յուրախութիւն սրտից։*

* Տպագրված է ԳՃՀԳ (373+551=924), շտկում ենք ըստ վերը բերված թվականի՝ ՋՃՀԳ։

*Արդ, որպէս սոքա ղսա պայծառացուցին ծաղկաւք իբրև զծաղկաւէտ երկիր Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ սուրբ վկայիցս, զիւրեանց հոգին, և զիւրեանց ննջեցելոցն, եւթնկրկին առաւել պայծառացուսցէ յիւր յարքայութիւնն, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

գ

*Այլ և հայր* Կոստանդին*, որ զայս յիշատակարանս գրեաց՝ գրեսցի և ինքն ի գիրն կենաց՝ հանդերձ ի սմա գրեցելովք, ամէն։*

դ

*Ընդ նոսին և* զՅովաննէս *տառապեալ յիշեցէք յաղաւթս, ամէն*։*

ե

365ա *Բարեխաւսութեամբ ամենայն սրբոց, եւ սուրբ վկայիս Յուլիանէ, ողորմութիւն շնորհեսցէ Քրիստոս* Աստուածատրոյ*՝ հաւր անապատիս, և ամենայն ննջեցելոց իւրոց. ղի առ մեզ սէր բազում եցոյց և խնամածութիւն, հատուսցէ Քրիստոս նմա յառատատուր պարգևացն։*

զ

*Ընդ նմին և* Ղազարա *գրչի՝ բնակչի Սուրբ Գրիգոր անապատի, որ զանուանս սուրբ վկայիցս նշանագրեցի ի լուսանցոյց պատմագրիս՝ առ ի դիւրագիւտ լինելոյ խնդրողին, Քրիստոս Աստուած գրեսցէ զանուն նորա ի գիր կենաց ընդ սուրբս իւր, ամէն։*

է

332բ *Ո՜վ ամենազով սուրբ վկայուհէ, ըստ քումդ խնդրոյ աղաչեա զՔրիստոս ողորմութիւն շնորհել վասն սուրբ չարչարանաց քոց* Կոստանեա*՝ հաւր և սպասաւորի Սուրբ Լուսաւորչին գերեզմանի, և* Մեսրոպայ *պատուական քահանայի, որ ի սպասաւորութիւն մեր և կոկել նիւթոյս աւգնական է, և համբակին* Վարդանայ*, որ սպասաւորէ կենաց մերոյ հրամանաւ* Կոստանդէ*: Ընդ նոսին և մեղապարտ գրչի* Թադէոսի*, և հոգևով միաբանելոցն մեր ուր և իցեն, մանաւանդ* Պետրոսի*, և ծնողաց մերոց, և ամենայն ննջեցելոց, և հաւատացելոց Քրիստոսի, և ընթերցողաց, և լսողաց, ամէն։*

* Ձեռագրաց Ցուցակում թվականը նշանակված է 1224։

## 104

### ՀԱՅԵՐԷՆ ՀՆԱԳՈՅՆ ԹՂԹԵԱՅ ՁԵՌԱԳԻՐ

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2679 (981 թ.)

Գնող՝ Յովհաննէս որդի Գիշի

ա

164ա Տէր Յիսուս Քրիստոս՝ միածին որդի Աստուծոյ, ողորմեա Գիշին և Ազիզմամին, եւ զաւակաց նոցա՝ տէր Սարգսի, Կարապետին եւ Մելքիսեդեկա, եւ մեղաւոր աւաղէրէց Յովաննիսի՝ որդոյ Գիշի, որ զգրկումքս գնեցի, եւ յետ ՄԾԴ* (254) ամի զցանկս յաւրինեցի, ի ՈՀԴ (1225) թուականիս։

բ

41ա Աստ պակաս է Ներուաս, և Տրաիանոս, և Ադրիանոս, և Տիտոս-Անտոնինոս, որ թէ ընդաւրինակէս և զնոսա գրէս և զԳիշին որդին ի բարի յիշէս։

գ

159բ Քրիստոս Աստուած ողորմեա Յովաննիսի որդւոյ Գիշի:

## 105

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 5537

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Տարսոն քաղաք

ա

Փառք ամենասուրբ Երրորդութեանն, ամէն

293ա Յամի վեցհարիւրորդի եւթանասներորդի և չորրորդի (1225) թուաբերութեանս Հայոց, գրեցաւ կենսաբեր սուրբ Աւետարանս այս, ձեռամբ Գրիգորի մեղապարտ գրչի, ի քաղաքիս Տարսոն Կ[ի]լիկեա, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս, որոյ անուն Սրբուհւոյ Աստուածածնին կանկ-

* Ծ-ի վրա գրիչը նշան է դրել, ցույց տալու համար, որ այն սխալ է, և դրել է նորոգման թվականը, որովհետև եթե 981 թ. գումարենք 254-ը կստանանք 1235 և ոչ 1225 թվականը։ Ուրեմն Ծ-ի փոխարեն պետք է կարդալ «Խ», այսպես. «Եւ յետ ՄԽԴ (244) ամի»։

նեալ է, որ և մականուամբ յորջորջի Սուրբ Սոփեայ, ի յիշխանութեանս աստուածասէր և բարեպաշտ իշխանաց իշխանիս մերոյ և սպարապետիս Հայւոց Կոստանդեայ քեռորդւոյ թագաւորին Հայոց Լեոնի:

Իսկ ի խնդրոյ գրեցաւ սա բարեպաշտ տանուտեառն միոյ Կոստանդեայ և որդւոյ նորին Ստեփաննոսի քահանայի, ի վայելումն կենաց իւրեանց, և զկնի ելից՝ յիշատակ հոգւոց իւրեանց։

Արդ, որ ոք ւգտեսցի ընթերցմամբ ի սմանէ, յիշել աղաչեմ յաղաւթս զստացաւղ սորա զպատուական ք[ա]հան[ա]յն Ստեփանոս և զհայր նորին Կոստան[դ]ին, և զմայր Ստեփանոսի զԱննոց, իսկ և
293բ զհայրն Կոստան||դեաց՝ ստացողի սուրբ Աւետարանիս Գրիգոր, և զմայրն Տալիթայ, և զամենայն ազգատոհմն սոցա առհասարակ աղաչեմ յիշել աղաւթիւք ի Տէր։ Իսկ և զեղկելի գրիչս Գրիգոր և ծնաւղսն [զ]իմ աղաչեմ յիշել ի Տէր, և Աստուած ամենեցուն առ հասարակ՝ մեզ և յիշելոցս և ձեզ յիշողացդ ողորմեսցի, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Բ

140բ Ստացաւղ սրբոյ Աւետարանիս Կոստանդին հանդերձ մանկանըն իւրով Ստեփաննոսիւ քահանայիւ յիշեսջիք ի Տէր*։

## 106

## ՀԱԻԱՔԱԾՈՒ

Զմմառ, 204 (1123 թ.) Քեշիշյան, Ցուցակ, էջ 494

Ով սայ մնայ եւ մատունքս հողանայ,
Զեռս երթայ, գիրս մնայ,
Որ զայս գիրս գա[ր]դայ
Տէր ողորմեց ինձ եւ նմայ։
Ի թվականիս Հայոց ՈՀԴ (1225)։

* Ձեռագրի վերջում հետաքրքիր հիշատակարան է թողել Դավիթ երեցը. 198ա. «Եւ դարձեալ լի սրտիւ Է։ բոլոր հաւատով Աստուած ողորմի ասացէք մեղսաթաթախ Դաւիթ իրիցուն, որ զիմ կայ ու ղկէն զամէն (ղ)ոչխար թէ մէկ է թէ հարիւր է, զտաւար՝ թէ մէկ է թէ հիսուն, թէ չուլ է ՙէ չվալ է, թէ առն է թէ տեղ է, թէ դուռ է թէ դուրս է, թէ խոփ է թէ ձնիչ է, թէ բախ է թէ փայտատ է, թէ զինչ և իցէ ի հազար ոսխ եմ արեր ի դուռն Կոբեկեց Սուրբ Աստուածածնին, երկու գ/ւղի: ի վկայութեամբ մեծի և փոքրի՝ յԱրտամետու և Զվրատանայ, որ ոք հակառակէ յետ իմ անցման կամ դաւէ անէ կամ (տալապ անէ), մազիմ ի չաք... յեկեղեցոյ քարզհանէն հանէ և ցրւէ, նա զանէծքն օձին և զՎայենին... (198բ) Որ անհաւատ և անօրէն մարդ չատ կան, որ յԱստուծոյ չեն երկնչեր, վասն որոյ պատճառ անեն և այլ և այլ չար սերմանե զկապած և զփակած ոխի, վասն որոյ զայս ես իմ ձեռօքս եմ գրեր ու զիմ մոհր ի վերայ եմ զարկեր (իսկապես 298ա էջի վերին և ստորին անկյուններում կնիքն է «Յս. Քս. ծռ. Այ. Դաւիթ երէցս»), որ այլ և այլ չի ս.Նենւ Վասն որոյ թէ անօրենութիւն լինի ու զսրաղութիւն դաւէ, նայ Բ գիւղ, թէ քահանայ թէ տանուտէր, թէ ըռամիկ, թէ ժողովուրդ ամենեքեն որ չգան ի միատեղ ու միաբանէն ու զեկեղեցու ապրանքն թողուն որ անհաւատ մարդիկ տանեն։ Դարձեալ գիտասջիք ժողովուրդք, վկայ լինիք, որ զիմ գրքեր՝ Սաղմոսարան, Շարակնոց, Տօնացոյց, Աղօթմատոյց, Խրատգիրք, մի Տօմար ու Տաղգիրք մի՝ ծախեր եմ Բաբկէն իմ սարկաւագուն, ինձ այլ գիրք չկայ, որ այլ մարդ դաւէ անէ»։

## 107

### ԱՒԵՏԱՐԱՆ (յունարէն)

*«Հանդէս ամսօրեայ» 1908 թ., էջ 220—221*

Գրիչ՝ Վասիլ դպրապետ
Վայր՝ Կեսարիա

ա

166ա *Փառք Աստուծոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Գրեցաւ եւ կատարեցաւ Աւետարանս ձեռամբ իմով Վասլի դպրապետիս ի Մելիտինոյ որդւոյ Առեսաի քահանայի, թվին ՈՀԵ (1226), յամսեան մայիս, ի պէտս անձին իմոյ եւ յիշատակ հոգւոյ, ի կամս Քրիստոսի։*

բ

165բ *Զվասիլ գրիչ յիշեսջիք առ Քրիստոս, զի եւ դուք յիշեալ լիջիք։*

գ

(Թարգմանութիւն յունարէն յիշատակարանի)

166ա *Աւարտեցաւ չորք Աւետարանք քարոզողացն Աստուծոյ, մեծացն չորից աւետարանչացն Մատթէոսի, Մարկոսի, Ղուկասու եւ Յովհաննու, ձեռամբ իմով Վասլի դպրապետի Մելիտինեցւոյ, որդւոյ Ովրեստէսի քահանայի, ի ժամանակին յորժամ նուաճեաց մեծն սուլթան Քեյկաւադ, որդին Ղիաթեդինի Քեյ Խոսրովու զՅունաստան, զՀայաստան, զԱսորիս եւ զամենայն տեղիս եւ զգաւառս Թուրքեստանի եւ զծովու, մինչեւ ի մեծն Կեսարիա: Եւ որք հանդիպիք այսմ Աւետարանիս կամ օրինակէք կամ ընթեռնուք, յիշեսջիք զիս զբազմամեղ զՎասիլ, եւ զծնողս իմ ի Տէր հանգուցեալ՝ զՈվրեստէս քահանայ եւ զմայրն իմ զՍոփիա, եւ ընդ այսր ողորմեսցի ձեզ ամենեցուն ամենասուրբն Աստուած, պահեսցէ անվնաս իւրով մարդասիրութեամբն. այժմ եւ միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Գրեցաւ ի թուին աշխարհի ՑՉԼԴ (1226) եւ յինդիկտիոնի ԺԴ, յամսեանն մայիսի Ա (1)։*



10—487

ՈՀԶ 1227

## 108

### ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 6196

Գրիչ՝ Ներսէս
Վայր՝ Աւագ վանք

ա

46ա Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ սուրբ վկայիս ողորմեա Վարդան վարդապետի, որ յառաջարկու եղեւ ձեռնամուխ լինել ի գիր գրոցս։ Ողորմեա Տէր նմա և ծնաւղաց նորա՝ կենդանեաց և մեռելոց, և քեզ փառք յաւիտեանս, յաւիտեանս, ամէն։

բ

58ա Սուրբդ Աստուծոյ, աւգնեա Սոսթենէս քահանայի, որ զպաստեղս եբեր մեզ։

գ

91ա Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ սրբոց քոց վկայիցն ողորմեա Ղազարու վարդապետին յաւուր ծագման միւս անգամ գալստեանն քոյ յայնմ ահեղ ատենին, ուր բանք սպառին և գործք թագաւորեն։ Տէր աղաչեմ ողորմեա նմա և ծնողաց նորա, ամէն։

Ողորմեա Տէր և Վարդան վարդապետի, ստացողի սուրբ գրոցս, և յառաջարկողի ի գործ աստուածային մատենի, և ձեռնասուն մանկանց Փիլիպոսի և Աստուածատրի մանկանց սուրբ եկեղեցւոյ, ամէն։

դ

103բ ԶՓիլիպպոս սուրբ և ընտրեալ քահանայ յաղաւթս ձեր յիշեսջիք, որ զտաք զգոնս եբեր։ Տացէ նմա Տէր Աստուած զհանդերձեալ փառսն ընդ ամենայն սուրբս և ընդ սիրելիս անուանն իւրոյ, ամէն։

120ա Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ սուրբ ճգնաւորին Բարսամոյի և ամենայն սրբոց քոց, թողութիւն շնորհեա Վարդան վարդապետի, ընդ նմին և Ղազարու սրբոյ վարդապետի և ծնողաց նորա, ամէն*։

---

* Այսպիսի հիշատակագրություններ կան նաև 105բ, 127բ, 245բ էջերում։

Ե

172ա Աղաւթիւք սորա ողորմեա Քրիստոս Աստուած Վարդան վարդապետի ստացողի գրոցս, ընդ նմին և Ղազարու վարդապետի և Աստուածատուրի եղբաւր նորին և ծնաւղաց նոցա ողորմեա Քրիստոս աստուած, ամէն։

Զ

187բ Զարմանամ ընդ սքանչելիս, բայց Աստուծոյ ամենայն ինչ կարելի է, որ ի ձեռն սրբոց իւրոց ներգործէ, նմա փառք յաւիտեան*։

Է

188բ Սեացեալ նիւթիս անմեղադիր լերուք ըստ հանդիպման ժամանակիս, ո՛վ եղբարք**։

Ը

189ա Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ սրբոյն Գէորգեա և ամենայն սրբոց քոց ողորմեա Վարդան վարդապետի և եղբաւր նորա Դաւթի և ծնողաց նոցա՝ աստ և ի հանդերձեալ ապագային, որ բանք սպառին և գործք թագաւորեն։ Յայնմ աւուր ողորմեա նոցա մարդասէր Քրիստոս, այլ և աշխատողացն ամենեցուն, ամէն։

Թ

196ա Տէր Աստուած ողորմեա Գրիգորի կազմագործի և ծնողաց նորա, ամէն։

Ժ

202ա Աղաչեմ զընթերցողսդ և զլսողսդ զՎարդան վարդապետ՝ նմանեալ Զաւրաբաբելի և Յովսեդեկա քահանայի, յաղաւթս ձեր յիշել, և Աստուած զձեզ յիշեսցէ յիւրում արքայութեանն, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

ԺԱ

273բ Քրիստոս Աստուած սուրբ բարեխաւսութեամբ սրբոց մարտիրոսացս, որք վասն անուանդ քո հեղին զպատուական սուրբ զարիւնս իւրեանց, ողորմեա Վարդան վարդապետին ստացողի սուրբ գրոցս, ընդ նմին և Ղազարու՝ իմոյ վարդապետի, և ծնողաց նոցա։

ԺԲ

277բ Տէր Աստուած Յիսուս Քրիստոս, աղաւթիւք սրբոցն Երմոնի ողորմեա Յովաննէս քահանայի և գրչի և ծնողաց նորա, այլ և Եփրեմի մանկագոյն քահանայի, որ հայցեցին գրել ի Քիրքս։ Տէր փրկեա զնոսա և ողորմեա նոցա։

---

* Գրված է «Սքանչելիք Գէորգեա» հատի տակ։
** Թանաք է թափել։

ԺԳ

285բ ԶԱտոմ պատուական քահանայ և զծնողսն նորա յաղաւթս ձեր յիշեսջիք, ո՛վ մանկուք Նոր Սիոնի, որ ի կոկելն աւժնտակեաց բազում աշխատութեամբ։

ԺԴ

308բ Քրիստոս Աստուած, աղաւթիւք և բարեխաւսութեամբ սրբոյ քահանայապետին Թեոդորիտեա, ողորմեա Վարդան վարդապետի և Գրիգորի կտաւագործի, որ աւգնական եղև ի գիրքս ըստ չափու կարեաց, ամէն։

ԺԵ

328ա Աւգնեա ինձ, անբարբառ բարեխաւս*։

ԺԶ

329բ Քրիստո՛ս աւգնեա Ատոմ քահանայի և ծնողաց նորա, և փրկեա յաւիտնական հրոյն, որ զթուղթս կոկեաց, ամէն։

ԺԷ

334բ Զպատուական քահանայն Վարդան մեծ և անուանի, էրեց լինել համաշխարհական կաթողիկէ եկեղեցւոյ, և զբարեպաշտ երիցակինն իւր յաղաւթս ձեր յիշեսջիք։

Այլ և զպարոն Սանփանոս պատուեալ և մեծարեալ յԱստուծոյ և ի մարդկանէ, հանդերձ ամուսնաւն իւրով, յիշեցէք ի Քրիստոս։ Տէր Աստուած ողորմի նոցա և ծնողացն նոցա, յաւր մեծի գալստեանն իւրոյ։

Զտառապեալ գրողս յիշեցէք։

ԺԸ

371բ Քրիստոս Աստուած, աւգնեա Տիմոթեա քահանայի, որ զթուղթս լաւ է կոկեալ, և փրկեա զնա ի սատանայէ, ամէն։

ԺԹ

387բ Ո՛վ ամենագով երջանիկ սուրբ վկայուհի Մարիանէ, ըստ քում խնդրոյ աղաչեա զՔրիստոս ողորմութիւն շնորհել վասն սուրբ չարչարանաց քոց Վարդան վարդապետի, ընդ նմին և Ղազարու վարդապետի իմոյ, ընդ նմին Աստուածատրու և Փիլիպպոսի և Տիմոթի, և տնտեսին Խաչատրոյ և Գինէպետ միայնակեցին, ընդ նոսին Ներսէսի սուտանուն գրչի և ծնողաց ամէն, ամէն։

Ի

404ա Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ սրբոյ վկային Մինասի ողորմեա Վարդան վարդապետի ստացողի գրոցս, ընդ նմին և հայր Կա–

* Սուրբ խաչին է դիմում։

րապետին՝ սուրբ և ընտրեալ և պատուեալ կրանաւորին և հմուտ և յառաջադէմ յարհեստ գրչութեան։ Ընդ նմին յիշեա Քրիստոս զԹադեոս Հայր Խարձի անապատին, թող Տէր զյանցանս նոցա, և ողորմեա յամենայնի մեծի գալստեան քո, ամէն։

իա

407ա Ի յիշատակի սուրբ Հայրապետացս յիշեցէք աղաչիւք բարեխաւս ունելով զսուրբսն, զամենայն առաքինութեամբ և բարի վարուք զարդարեալ զՂազար վարդապետն իմ և զնորին ծնողսն, ո՛վ պատուական եղբարք։

իբ

465բ Արդ աղաչեմ զամենեսեան, որք կարդայք զսուրբ և զգերահռչակ կտակս, վարդապետն Վարդան յաղաւթս ձեր յիշեսջիք, ո՛վ պատուական հարք և եղբարք, և Աստուած զձեզ յիշէ։

իգ

498բ ԶԽաչատուր տնտեսն յիշեցէք [ի] Քրիստոս, զի և նմա ողորմեսցի Քրիստոս, ամէն։

իդ

548ա Զստացող սուրբ գրոցս զՎարդան սուրբ, գերահռչակ վարդապետ յաղաւթս ձեր յիշեսջիք, ընդ նմին և զՂազար վ.րդապետն իմ և զծնաւղս նորա աղաչեմ։

իե

571բ ԶԱտոմ քահանայ յիշեսջիք յաղաւթս ձեր, որ բազում շանիւ և աշխատութեամբ կոկեաց զքարտէզս։ Քրիստոս Աստուած ողորմեա նմա և ծնողաց նորա, ամէն։

իզ

574 Զմանկունք եկեղեցւոյ սրբոյ զԱստուածատուր և զՓիլիպպոս և զՏիմոթ, որ ի կոկել քարտիզին աւժանդակեցին, յաղաւթս ձեր յիշեցէք։ Տէր Աստուած աւգնեսցէ նոցա և փրկեսցէ զնոսա ի հաղթից թշնա(մ)ոցն, ամէն։

## 109

## ՃԱՌԸՆՏԻՐ

Երևան 3779

Ստացող՝ Տուրէ
Վայր՝ Աւագ վանք

ա

Փառք քեզ աներևութ Աստուած, անսկիզբն Հայր, արարիչ բոլոր գոյից և ամենայն եղելոց։ Փառք քեզ Որդիդ միածին, արարչակից Հաւր և

Սուրբ Հոգւոյդ փրկիչ ազգի մարդկան, Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Փառք
քեզ ամենասուրբ Հոգի փառակից Հաւր և Որդւոյ և Աստուած բոլորից։
545ա Փառք գոհացողական աւրհնութեամբ ի բարձունս երից անբաւից, անբաւ
բնութեան համազդոյ տէրութեանդ և միաստուածութեանդ՝ Հաւր և Որդ-
ւոյ և Հոգւոյդ Սրբոյ, որ արարչական սիրով գթաս ի վերայ խնդրողաց
զքեզ, և լինիս առատապարգև, որք հայցէն ի քէն։ Որ և զմեզ անարժանս
արժանի արարէր հասանել փափագման տենչալի այսմ հոգևոր ստացուա-
ծոյս, և ղաւրացուցէր ի կատարումն ածել զբաղձանս սրտի՝ յաւարտումն
այսմ տառի։
Արդ, ընկալ մարդասիրապէս ի հաճոյս կամաց քոց զշան և զվաս-
տակ աշխատասէր գործոյս, զոր յանուն քո աւարտեցաւ զգերապայծառ
սրբոց քոց զճառս վկայական հանդիսից, զնահատակութիւն ճգնութեան
մարտից արեամբ կատարելոցն, խոստովանողացն զաստուածութիւնդ քո,
որ ընդունելոց են ի քէն զպսակն անապական և զանվախճան կեանսն ի
փառաւոր քո գալստեանն։ Եւ մեզ ողորմութիւն շնորհեա յայնմ մեծի
աւուրն բարեխաւսութեամբ համագումար ընդ աջմէ քում դասելոցն գԹաս-
ցիս ի մեզ և յամենայն սիրողս սրբոց քոց։ Եւ քեզ երկրպագութիւն և փառք
յերկնաւորաց և յերկրաւորաց և յամենայն գոյից, այժմ և յաւիտեանից։
Եւ ձեզ, ո՜վ առաքեալք սուրբք, հայրապետք և վկայք Քրիստոսի, գո-
հաբանութիւն և աւրհնութիւն ի մերմէ տկարութենէս, գերապայծառ ճա-
ռագայթք արփիափայլ լուսովն առ լցեալք, գանձք աստուածայնւոյն ամ-
բարեալք յերկինս յանեղաշէն բնակութիւնս անճառ լուսո՚ն, որ աւժան-
դակ եղէք մեզ այսմ հոգևոր աշխատութեանս յաւարտումն հասուցանել
զձեր հանդիսական ճգնութեանցդ և զյաղթող նահատակ[ու]թեանցդ
զպատմութիւնս ժողովել ի միասին ըստ կարի մերում, որ ի վերայ աս-
տուածատուր աւրինացն կրեցէք և անտանելի չարչարանացսն համբերս-
ցէք, խաչակից եղեալ որդւոյն Աստուծոյ, հիմն և հաստատութիւն եկեղեց-
ւոյ և պարծանք քրիստոնէից, և բարեխաւս ամենայն աշխարհի առ Քրիս-
տոս, և ընդ նմա թագաւորելոց էք մեծապանծ պարծանաւք ի փառս ան-
վախճանս։ Աղաչեմք զձեզ գթութեամբն Աստուծոյ մի անտես առնէք զմեր
545բ սակաւ սատարութիւնս, զշան և զփափա[գան]աց երկր///ան սիրելոյ
զձեզ /// առաքեցաք /// զգովեալ ի /// ձեր ցանկալի կատարման ի մխի-
թարութիւն և ի յոյս գնացելոց /// սիրո հաւատացելոցս /// ստանալ վկա-
յաբանութիւնս ձեր և տացէ վարձս բարեաց և ընթերցողաց և լսողաց
զզջմամբ և երկիւղիւ Տեառն, զի ամենեքեան գտցուք ողորմութիւն յա-
բարչէն մերմէ և փրկչէն, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտեանից։
Արդ, ի թուականութեանս Հայոց ՌՀԶ (1227), ես նուաստ ծերս և ան-
պիտան ծառայս Աստուծոյ Տուրք անուն կոչեցեալ, ի լուսաւորութենէ սըր-
բոյ աւազանին, ցանկացող եղէ վարուց և պատմութեանց սրբոց հարցն և
հայրապետացն և ճգնազգեաց մարտիրոսացն, և վկայիցն Քրիստոսի,
մանաւանդ սրբազան աշակերտաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որք
զանազան և անտանելի տանջանաւք կատարեցին զընթացս իւրեանց ի
հաճոյս կամացն Աստուծոյ, որպէսզի աղաւթիւք սոցա և բարեխաւսու-
թեաբ արժանի լիցուք մասին ժառանգութեան սրբոցն ի լոյս, վասն որոյ

ստացա զսա յարդեանց իմոյ, ի յիշատակ բազմամեղ անձին իմոյ, և ծնաւղաց և եղբարց իմոց ի Քրիստոս ննջեցելոցն։

Իսկ այժմ բարի առաջարկութեանս եղե[ւ] մեզ Թելադիր և առիթ և յորդորիչ սուրբ և պատուական հարքս և առաջնորդք սուրբ ուխտիս Աւագ վանիցս՝ Ստեփանոս, Պետրոս [և Յո]հան, որ է ի լերին Սուրբ Լուսաւորչիս մերոյ, ի գաւառիս Դարանաղեաց գերադրական սուրբ մենաստանս, զարդարեալ գեղեցկաշէն սրբարանաւք և սպասիւք պատուականաւք, հիմնացեալք սուրբ քաւարանքս մինն յանունն Սրբոյ Աստուածածնին և յերկրորդն յանուն Սրբոյ Կարապետին Յովաննու, յերրորդն յանուն Սրբոց Առաքելոցն, և միւս ևս յանուն Սրբոյն Ստեփաննոսի Նախավկայի, և եզի զսա ի դուռն երկնահանգէտ սուրբ քաւարանացս իբրև զարձան լուսեղէն, միջնորդ և բարեխաւս ունելով ինձ առ Քրիստոս զերջանիկ սուրբ մարտիրոսացն դասն։

Եւ արդ, աղաչեմ զամենեսեան ի դէպ ժամանակի գաստուածարեալ հարսդ և զեղբարսդ, զմանկունս սրբոց եկեղեցւոյ ընթերցողսդ և զլսողսդ պատմութեանց ///

Բ

Գրիչ*

2բ Քրիստոս Աստուած, քո անարատ եւ սուրբ ծնաւղիդ բարեխաւսութեամբ ողորմեայ մեղապարտ եւ անարժան գրողի սորա. եւ որք բարի կամաւք յիշատակի արժանի առնէն Աստուած իւր անճառ բարեացն եւ ողորմութեանն զնոսա արժանաւորեսցէ, ամէն։

Գ

170ա Բարեխաւսութեամբ սուրբ հայրապետիս եւ ամենայն սրբոց, Քրիստոս Աստուած, ողորմեայ Տոռցն հոգւոյն եւ իւր ծնաւղացն, եւ հայր Ստեփանոսի եւ իւրոցն ամենի, ամէն**։

Դ

215բ Բարեխաւսութեամբ սուրբ եւ փառաւորեալ հայրապետիս եւ ամենայն սրբոց, Քրիստոս Աստուած, ողորմեայ Եղիազարու հոգիազարդ եւ աստուածաշնորհ վարդապետի՝ հեզոյ եւ խոնարհի եւ պատարուն ամենայն պատուիրանապահութեամբ եւ զարդարեալ ամենայն արդարութեամբ։

Շնորհեա Տէր նմա թողութիւն մեղաց, ամէն։

Ե

248բ Քրիստոս Աստուած, ողորմեաց Տոռցն հոգւոյն՝ բարեխաւսութեամբ այս սուրբ մարտիրոսացս, և Եղիազարու ընտրեալ վարդապետի։ Տէր ընկալ զհոգիս նոցա յաւթեւանս սրբոց քոց։

* Ձեռագրի առաջին մասի գրիչն է, որն անուն չի տալիս։

** Այս կարգի հիշատակագրություններ կան 194բ, 210բ, 226ա, 235բ, 255ա, 263բ, 272ա, և այլ էջերում։

գ

370բ Քրիստոս Աստուած, ողորմեսցի ստացողի գրոցս Տուրf միակեցի, և ամենայն աշխատողացն ի սմա, և Հայր Ստեփանոսի, և ամենայն միաբանաց եղբարցն, որ յԱւագ վանքն՝ կենդանեաց և մեռելոց, և որք կենդանի լինի լինելոց եւ ի դէպ ժամանակի, ամէն։

է

381ա Ստացող սուրբ գրոցս զՏուրf միակեացն եւ զսպասաւորք սուրբ ուխտին Աւագ վանիցն:

ը

Գրիչ՝ Կարապետ

2ա Ստացողի գրոցս Տուրf միակեցի ողորմեա մարդասէր Աստուած և շնորհեա թողութիւն մեղաց և յանցանաց, ամէն։

թ

94բ Ստացող սուրբ կտակիս զՏուրf միայնակեացն յաղաւթս յիշեսջիք, ընդ նմին և զՀայր Ստեփանոս եղբարք իւրովք՝ հանդերձ ամենեքումբք, որք աշխատեալ են ի գիրքս յայս, որոց ողորմեսցի Քրիստոս աստուած աղաթիւք և բարեխաւսութեամբ ամենայն սրբոց, ամէն։

ժ

392ա Ողորմեա Քրիստոս աստուած Տուրf միակեցին և զարմից իւրոց. ընդնմին և Հայր Ստեփանոսի և եղբարց և միաբանաց իւրոց, նա և աշխատողացն ի սմա, Կարապետին, Ղազարու և Ներսիսի, ամէն։

ժա

398ա Տէր աստուած ողորմեա Տուրf միակեցին և ջնջեա զձեռագիր յանցանաց նորա, ընդ նմին և աշխատողաց գրոցս, և Հայր Ստեփանոսի և միաբան եղբարցն, որ յԱւագ վանքին՝ կենդանեաց և մեռելոց ամէն։

ժբ

401 Ստացող սուրբ գրոցս զՏուրf միայնակեացն և զծնաւղսն իւր յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր, ընդ նմին և զՀայր Ստեփանոս, և զեղբարսն իւր զՅովհան և զՊետրոս, և զայլ միաբանեալսն ընդ նոսա, և զանպիտան գրիչս։

ժգ

429բ Տէր աստուած, ողորմեա Տրոց միայնակեցի և ծնողաց նորա՝ ստացողի գրոցս, ընդ նմին և Հայր Ստեփանոսի և եղբարց նորա, և ծնողաց նոցա և գրչի անպիտանի՝ Կարապետին և Ղազարու վարդապետին, և եղբաւր իւրոյ Աստուածատրին՝ սպասաւորաց Սուրբ Լուսաւորչին անապատին, որք զգիրքս աւարտեցին։

Քրիստոս Աստուած աղաւթիւք սորոց քոց վկայիցս շնորհեա թողու-
թիւն մեղաց և յանցանաց ամենեցուն ի սմա վերագրելոցս, ամէն։ Եւ զիս
զնուաստ աշակերտս և զախմար գրիչս յիշեա մարդասէր Տէր ամենակալ,
և զձեզ զամենեսեան ուրհնեսցէ Տէր Աստուած, այն որ ուրհնեալ է յա-
մենայն յարարածոց, ամէն*։

ժդ

501 Զստացող գրոցս զՏուրf միայնակեացն և զծնողսն իւր յաղաւթս յի-
շեսջիք, ընդ նմին և զվարդապետս իմ զՂազար և զԱստուածատուր, ո՜վ
եղբարք։

ժե

525բ Արfային ածմեա Քրիստոս, որ երեր զտետրերս ի Սուրբ Գրիգորոյ
յանապատէս՝ յԱւագ վանքն, Աստուած ող[որմի]։

ժզ

52ա Քրիստոս Աստուած, շնորհեա զկենաց բաժակն Աստուածատրոյ, զի
մատոյց մեզ զուրախարարն բաժակ յայսմ ժամու։ Տէր Աստուած շնորհեա
նմա թողութիւն մեղաց և յանցանաց, և ինձ ընդ նմին, ամէն։

ժէ

370ա Սրբոյն Յակոբա բարեխաւսութեամբ սորա ողորմեա Քրիստոս Աս-
տուած Տրդցն, ընդ նմին և ամենեցուն աշխատողացն ի սմա։

ժր

412բ Աղաւթիւք Սրբոյն Գրիգորի ողորմեա Քրիստոս Աստուած Ղազարու,
որ աշխատ եղեալ և ուղղեաց ըստ կարի; Տէր շնոր[հեա ն]մա հանգիստ
յարդարոցն կայեանս, ամէն։

ժթ

450բ Երկուց բիւրոցն վասն սոցա ճգնութեան և նահատակութեան ողորմեա
Քրիստոս Աստուած մեղապարտ ծառ[այ]ի քո Ղազարու, որ ուղղեաց ի
կարդալն զսա։

ի

454ա Սոցա բարեխաւսութեամբ ողորմեա Քրիստոս Աստուած Ղազարու
աշխատեցելոց յուղղելն։

իա

465բ Ողորմեա Քրիստոս Աստուած ի քեզ ապաւինեալ ծառային քո, որ
ուղղեաց զսա ի կարդալն /// Տէր թողութիւն մեղաց և յանցանաց նոցա և
Աստուածատրո և Գրիգորի վարդապետի, ամէն։

---

* Գրիչ Կարապետը հիշատակագրության վերջին մասը լրացրել է շղագրով։ Նա է գրել նաև մյուս հիշատակագրությունները առաջին գրչի հիշատակագրություններից հետո։

իբ

117ա ԶՍոսթանէս, որ զգիրքս ծաղկաղարդեաց և զամուսին նորա ///

իգ

360ա Զպատանեակքս զԳրիգոր և զՅովհան ///

## 110

### ԺՈՂՈՎԱԾՈՒ ԳՈՐԾՈՑ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՅ

Երևան 1013

Գրիչ՝ Սիմէոն
Վայր՝ Սպլէնձաճան

291բ Յամի ՑՁԼԵ-երորդի (6735=1227) յաւիտենից թուոյն գրեցաւ և աւարտեցաւ գիրքս Գրիգորի Նիւսացոյ եպիսկոպոսի, յ(ը)նդիր և լաւ աւրինակաց հնոց, որ թարգմանչացն գրած էր, ձեռամբ մեղապարտ և անարժան կրաւնաւորի Սիմէոնի, յերկիրս Հայւոց, մերձ ի Լաւռէ, ի վանքն որ կոչի Սպլէնձաճան, ընդ հովանև Սուրբ [Աստուած]ածնին, յիշխանութիւն Իվանէ աթապագին՝ շինողի վանիցս, զոր երկար ժամանակ արասցէ Տէր, որդովք հանդէրձ։

Արդ, աղաչեմ, որք ընթեռնոյք կամ աւրինակէք, յիշման արժանի արարէք, և որք յիշէք, յիշեալ լիցիք ի Տեառնէ։

## 111

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9319 (ԺԷ դ.)

Գրիչ
Վայր՝ Սիս

21ա Օգնեա Յիսուս Քրիստոս և աջողեա, որ աւարտեմ զըսկսեալս իմ, ի թվին ՌՀԶ (1227), ի Սիս:





## 112

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑՒՈՅ

Վատիկան 4, Տիսերան, Ցուցակ, էջ 223—224

Գրիչ՝ Թադէոս·
Վայր՝ [Հռոմ]

ա

349 Փառք ամենասուրբ Երրորդութեանն, որ զաւրացոյց զտկարութիւնս աւարտել զսա։ Արդ, ես Թադէոս ցանկացող եղեալ սուրբ հաւրս գրոցս անյագ ըղձիւ, եւ ոչ ունէի ինչս, ղի դրեալ տայի՝ եւ անյագ բաղձանաւք սկսա գրել զսա, թերեւս աւգտեցայց ի սմանէ, եւ ի զղջման ածից զանձն իմ եղկելի, եւ զմիտս, եւ զխորհուրդս սահեցող յածմամբ նանրութեամբ սուտ ժամանակիս, որ ի մերում աւուրս հան[դիպ]եցաւ մերոյ աշխարհին արե[ւելեան]։ Վասն մեղաց մերոց բարկացաւ [անբար]կանալին և խրատե /// մերոյ եւ եհան աշխարհին սուր անպատմելի, զոր տեսաք աչաւք մերովք, զի զհամարն Աստուած միայն գիտէ զկոտորելոցն սրով և զգերելոցն ի ձեռս անաւրինաց։ Եւ յետ այնր մահ և սով սաստիկ, և այս ամենայն եղև վասն բազմանալոյ անաւրենութեանց, զի ոչ գտանի ոք զթիւն պատմէ, քան զի անճառ է։

Բայց գրեցաւ սա ի թուիս ՌՀԷ (1228), ձեռամբ Թադէոսի անարժան քահանայի, որ անուամբ եւ ձևով միայն երեւի մարդկան եւ գործովք մեռեալ, եւ ակնկալեալ ողորմութեանն Աստուծոյ և սրբոց աղաւթից։

Արդ, աղաչեմ եւ երեսս անկեալ պաղատիմ գետնաքարշ գիմաւք թողութիւն հայցեցէք /// եցոյց մերոց ծնողաց և անմեղադիր /// աւք խոշորութեան, քանզի ոչ էր գր /// գրա /// եր, գրեցաւ ի սուրբ մենաստ[անիս] ///

բ

4բ Ո՞վ պատուական եղբայր, աւրինակն թիւր էր, որ գրեցի։ Այլ գիրք առի եւ տեսա շատ պակաս գտայ յառաջին աւրինակն, և որքան կարացի [ո]ւղղեցի։

գ

121 Տէր Աստուած ողորմեա Թադէոսի գծողին և իւր ննջեցելոցն ամենեցուն*։

---

* Այսպիսի հիշատակագրությունները բազմաթիվ են։

դ

350 Ես Թադեոս տուի զիմ գիրգս ի Հռոմայ Ռսպեքալս, եւ որ հեռացուցանէ զսայ, յայտ յազաւթից տանէդ՝ զվարձս Ուդայի առցէ։ Զ///անիս զերկու/// աշխատեցաք և բերաք գծողս/// եւոց արժանի արարէք և զձեզ յիշէ և զմեզ, ամէն։

113

ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երուսաղեմ 1295, Ն. Պողարյան, Ցուցակ Դ, էջ 515—516

Գրիչ՝ Կոստանդ
Վայր՝ Սկեւռա

ա

628 Փառք քեզ Կոնեա քող [արեգսագոյն] կիսագնտի եւ Դեմետր[ի արարիչ] վայել տացէ զգիրքս նորընծա... Ո՜վ պատուական եղբայր...։ Ի վեցհարիւրորդի, եւթա[նասներորդի] է երորդի (1228) թու[ականիս, ի հայրապե]տութեան աստուածարեալ [Կոստանդեայ կաթողիկոսի, եւ ի թագ]աւորութեանն Հեթմոյ/// գրեցաւ/// [ի Սկեռ]այ, ընդ հովանեաւ ամ[ենաւրհնեալ Սուրբ] Աստուածածնի եւ կենսա[կիր Սուրբ Նշանիս, որ է մերձ յան]մատոյց դղեակս Լա[մբրոնի] ||

[Գր]եցաւ սայ ձեռամբ///Կոստանդ պիտակ/// յոյժ նեղեալ աղքատ/// զրովանդակն գրեալ/// լիցի սա///եղբաւր իմո Պաւղ[ոսի]... եւ յետ ելից մեր///

բ

Գրիչ՝ Պաւ[ղոս]

54 Շնորհատուն բարեաց Յիսուս, եւ աղբիւր բարութեանց Հոգին Սուրբ, կամաւք Հաւր, որովք տիեզերք պայծառացան, տացէ շնորհս եւ ողորմութիւն տեառն իմոյ եւ հայրազատ եղբաւր Կոստանդեայ վարդապետի, զի ողորմած է եւ մարդասէր։ Ո՜վ բարեմիք ամենիմաստք եւ հոգելիցք, յորժամ փարթամանայք ի սուրբ երգոյս, մեղաց թողութիւն հայցեցէք յԱստուծոյ, որով առէք իշխանութիւն կապել եւ արձակել։ Եւ իմ ժտելով եւ բախելով, եւ ապաւինելով ի լուսաթուիչ աղաւթս ձեր, հայցեմ յառատ եւ ի ձրի պարգեւողէն մտանել յորդեգրութիւն Հաւրն երկնաւորի։ Եւ որ առատն է առ ամենեսեան եւ բարին, ձեզ եւ մեզ եւ ծնաւղաց եւ եղբարց մերոց եւ ամենայն հաւատացելոց ի Քրիստոս առհասարակ ողորմեսցի, եւ նմա փառք այժմ եւ յանըսպառ յաւիտեանսն, ամէն։ Աղաչեմ չմեղադրել խոշորութեան գրոյս, վասնզի յոյժ անվարժ էի ըստ հոգւոյ եւ մա[ր]մնոյ։

գ

383 Աղաչեմ յիշել զԻսիկ(՞)։

դ

417 Ո՜վ վարդապետ Կոստանդին,
Հոգւով լցեալ աստուածային,

*Դու քարոզող անմահ բանին,*
*Եւ ճշմարտիւ մշակ նորին։*
*Ի սերմանել քո զգանձն անգին,*
*Եւ ի յառնուլն զանհատ բարին,*
*Շնորհեա եւ ինձ մասն ընդ քոին,*
*Առնուլ զպսակ յաղթանակին,*
*Եւ ժառանգորդ լինել դրախտին։*

Ե

2 *Կենաց Տէր Յիսուս ողորմեա ստացող[ի] սորա Հեթում վարդ[ա-պետի] և ծնողաց իւր, ամէն։*

## 114

## ՃԱՇՈՑ

*Հովակիմյան, Ցուցակ Նիկոմեդիայի, էջ 76*

*Գրիչ՝* Յուսիկ
*Վայր՝* Յիսուանց անապատ

*Փառք ամենասուրբ Երրորդութեան Հաւր անսկզբնականի եւ Որդւոյ ծնեցելոյ եւ եղաւղի Հոգւոյն Սրբոյ այժմ, եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Աստուածային գործառնութեանն սկիզբն, եւ խնամոց նորա սէր, եւ ողորմութեան նորա տարածումն, եւ երկայնմտութեան նորա ներումն, եւ առատութեան նորա պարգեւք ի կատարումն աստուածախումբ տառիս եւ լուսափայլ մարգարտիս*

*Արդ, յամի ՌՀԸ (1229) թուականութեան Հայոց...* եւ ի հայրապետութեան տեառն* Կոստանդեայ, *գրեցաւ գիրս ընթերցուածոց մարգարեական եւ առաքելական, եւ աւետարանական, եւ աղաւթական բանից, հրամանաւ սրբազան եւ առաքելաշնորհ աստուածապատիւ տեառն* Միքայէլի, *ձեռամբ անպիտանի յոքնամեղ եւ թարմատար գրչի* Յուսկան, *ի հռչակաւոր և մեծանուն անապատիս եւ հրեշտակաբնակ սուրբ ուխտիս* Յիսուանց, *յորում հովուէր սմա տէրս* Միքայէլ *եպիսկոպոս* Անտիոքու, *առ դուրս Սուրբ Կաթողիկէ տաճարիս հոգեւոր մաւրս մերո Սիովնի նորոյ եւ Աստուածածնիս, եւ ընդ հովանեաւ սքանչելահրաշ կենսաբեր եւ ամենայաղթ Սուրբ Խաչիս, վասն զի ստուգապէս Քրիստոս ի սմա բնակելով բազում նշանս առնէ առ հիւանդս եւ ախտաժէտս, վասն զի եւ սա կոնքն յորում լուանար եւ մաքրէր զմերս աղտեղութիւն սուրբ եւ անկարատն մաքրութեան տղայացեալն վասն մեր Տէրն եւ փրկիչն Յիսուս Քրիստոս։ Մերձ յաստուածապահ դռեկին* Պաղրաս, *ի սահմանս* Անտիոք *քաղաքի, առ ստորոտ լերինս փոքու, որ կոչի* Ծամրնդաւ, *յորում բնակեալ են աստուածահաճոյ հարք և կուսակրաւն ճգնաւորք, եւ անդադար Սաղմոսիւ եւ աւրհնութեամբ, ի տուէ եւ ի գիշերի, երգովք հոգեւորաւք եւ ձայնիւք քաղցրութեամբ փառաւորեն զամենասուրբ Երրորդութիւն, որ է աւրհնեալ յաւիտեան։*

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ ուսմամբ կամ ընթերցմամբ, կամ գաղափարաւ, յիշեսջիք ի Տէր զվերոյ յիշատակեալդ*

---

** «Հավանաբար գրաքննութենէ վախնալով Հայակի Կիլիկիո թագաւորին անունը չէ արտագրած»,—գրում է հրատարակիչը։*

զարհիեպիսկոպոս Անտիոքու զՄիքայէլ, դողորմածն, զաղքատասէրն, զատարասէրն, զներողն ի վերայ ամենեցուն, որ եւ մերոյ պանդխտութեանս եղեւ յարկ ծածկութի, վասն զի յոյժ բերէ սա զնմանութիւն ճըշմարիտ քահանայապետին յինքն, յորում շնորհեսցէ զսա Տէր մեզ մինչև ի խորին ծերութիւն, եւ ետ ելիցն՝ ընդ սրբոց քահանայապետիցն դասել։ Յիշեսջիք ի Տէր զՎարդան քուերորդի սմին, սարկաւագ եւ սպասաւոր սուրբ սեղանոյն, զի արժանի լիցի աստիճանի քահանայութեան, եւ ի պատշաճ ժամու յառաւելն վերադասիլ պատիւ։ Նա եւ զՍտեփանոս փակակալ սրբոյ տաճարացս, այր սրբասէր եւ ատարասէր, որ եւ իմոյ անարժանութեանս բազում մարդասիրութիւն ցուցեալ։ Յիշել հայցիմ ի Տէր եւ զհոգևոր հայր իմ եւ գետ մառմնոյ ազգական զԳրիգոր անհաս գրիչ, զսնուցիչն իմ և լուսաւորիչ աստուածային իմաստից, նա եւ զետ մարմնոյ ծնաւղսն իմ՝ զգնացեալսն առ տէր, զհոգևոր եղբայրս իմ, եւ զուսումնակիցք, եւ զազդականք զՍարգիս և զԹորոս: Յիշեսջիք ի Տէր եւ զՎարդան՝ հայր վանիցս, եւ զհոգևոր հայր իմ զՅովհաննէս, եւ մերոյ անապատին աշակերտ, այլ եւ զմիաբան եղբարք սուրբ ուխտիս։

Արդ, գրեցաւ սա ի վայելումն մաքրափայլ եպիսկոպոսիս եւ մանկանց եկեղեցւոյ, եւ ի յիշատակ ամենաբարի հոգւոյ իւրոյ, եւ անպիտան գրչիս։ Եւ արդ ես՝ ետնեալս եւ ունայնացեալս ամենայն գործոց բարեաց, յոքնամեղ եւ բիւր յանցանաց պարտական, փանաքի եւ թարմատար գրիչ, երեսս անկեալ առ ոտս ամենեցուն, սրտառուչ կականմամբ եւ բազում արտասուաւք խնդրեմ ի ջենջ, որ առ այժմս էք, եւ որ զկնի գալոց էք, զի եւ զիմս անարժանութիւնս արժանի արասջիք յիշատակի բարեաց, խնդրելով ի Տէր զթողութիւն յանցանաց իմոց, որպէս զի եւ դուք կարող լինիջիք ասել առ Հայր ձեր երկնաւոր, Թող մեզ զպարտս մեր, որպէս եւ մեք թողաք մերոց պարտապանացն, եւ որ առատն է ի պարգևս, եւ ողորմած առ ամենեսեան, որ խնդրէն ի նմանէ, ողորմեսցի ամենեցուն յիշողացդ և յիշելոցս իւրում փառաւոր եւ միւսանգամ դալըստեանն, որ է աւրհնեալ յաւիտեանս։

Յայսմ ամի եւ կայսրն Ալամանաց Ըմբրիուրն, այսինքն թագաւորաց թագաւորն, իբրև այն թէ յԱստուծոյ առաքեալ, քանզի ոմանք յանաւրինաց հնազանդեցան նմա, եւ արարին խաղաղութիւն, եւ ետուն սիրով զսուրբ քաղաքն Երուսաղէմ, եւ այլ բազում ամրոցս, քանզի ազգն Իսմայելեան դողան սարսափմամբ յահէ նորա եւ եղեն փախստական եւ սոքա գնացեալ մտին ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, եւ սկիզբն արարին շինման, որ ի նոցանէն աւերեալ էր։ Եւ եղեւ ուրախութիւն եւ ցնծութիւն ամենայն հաւատացելոց եւ բերկրալից խնդութեամբ, եւ գրճւանաւք ընթանան ամենեքեան երկրպագութիւն սուրբ գերեզմանին, քանզի հաշտեցաւ աստուածութիւնն ողորմութեամբ ընդ արարածս և թողութիւն շնորհեաց մեզ։ Արդ, զ՚ինչ տացուք տրիտուր Տեառն, բայց միայն աւրհնեսցուք, գովեսցուք, բարեբանեսցուք, ծունր կրկնեսցուք եւ երկրպագութեամբ հանդերձ, որում վայել է փառք եւ պատիւ՝ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 115

### ՃԱՌԸՆՏԻՐ

*Երևան 6169 (1227 թ.)*

*Ստացող*՝ Վարդան Վարդապետ
*Վայր*՝ Աւագ վանք

202բ *Ի թուականութեանս Հայոց ի ՈՀԶ (1227) ծախաւք և ընչիւք նուաստ սպասաւորի բանի* Վարդանա *գրեցաւ ցանգալի կտակս, իսկ ՈՀԷ (1228) կազմեցաւ, և զի ոչ էր կարդացած և ուղղած, ի ՈՀԸ (1229) կարդացի և ոչ կարացի ուղղել, վասն զի շատ էր սղալն աւելի և պակաս, զոր ոչ կարացի զաւելին հանել և կամ զպակասն գրել, վասն զի նորակազմ էր գիրքս և սաստիկ պինդ։ Եւ եհաս ինձ սուք անմխիթար, վասն զի սիրեցեալ եղբայր մի էր, որում անուն* Յակոբ՝ *վախճանեցաւ և եթող բազում տղայս, որ[բ]ս և աղքատ, այլ և ծերացեալ մայր, որ կարի ես թշուառացուցանէր զիս ողբովք, այլ և քույր և եղբաւր էին սոքա երեքեան, ի միում ամսեան վախճանեցան, ընդ որ կարի յոյժ վիրաւորեցա, մանաւանդ զմտաւ ածելով զերկու դաս որբերն։ Վասն որոյ աղաչեմ զսուրբ և զպատուական ընթերցողստ յիշեսջիք զնոսա ի մաքրափայլ աղաւթս ձեր, այլ և զտառապեալ կրաւնաւորս* զՎարդան *զստացող գրոցս, և զծնողս, և զեղբարսն իմ՝ զհոգևոր և զմարմնաւոր, այլև զայնոսիկ, որ յանձնեալ են յիշատակեալ յաղաւթս, որպէս զի բարեխաւսութեամբ և աղաւթիւք Սրբոյ Աստուածածնին՝ մաւրն լուսոյ, Յովանու* Կարապետին *և Սրբոյն Ստեփանոսի աղաւթիւք, և չարչարանաւք* Լուսաւորչին *մերոյ* Գրիգորի, *նահատակութեամբ և հեղմամբ արեամբ յոգնախումբ և բազմերանեան սուրբ և փառաւորեալ վկայիցս, որ ի սմա հաւաքեալ կան, յիշատակելոյս և յիշողացդ ողորմեսցի, մեղաց և յանցանաց թողութիւն շնորհեսցէ և իւրում սուրբ արքայութեանն արժանի արասցէ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

*Յայսմ ամի* Խորազմ շահն *բազում զաւառս աւարեաց և անմարդ արար, և անթիւ զաւրաւք պաշարեաց* զԽլաթ *և ումի ի մեծ նեղութիւն, որ և առ ի նույն ամի**։

## 116

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

*Երևան 472*

*Գրիչ*՝ Մարկոս

ա

265ր *Ի թուական[ու]թիւնս Հայոց ՈՀԸ (1229), գրեցաւ բուրաստանս ամենազան պտղաւք ոչ ապականացաւք, այլ անմահականաւք, աւետ<տ>ար[ան]ականաւք, առաքելա<ն>կանաւք եւ մարգ[ար]եայականաւք, ի ձեռն ան[պ]իտան երիցոյ* Մարկոս *կոչեցեալ, որ ա[ն]ուամբ միայն եւ գործով ոչ զնոյն կատ[ար]եալ։ Զի յայսմ ամի եւ չարեաց՝ թա[գ]աւոր* Ջալալատին *կոչեցեալ։*

* *Վերջին նախադասությունը գրված է ներքևում, այլ գրչով և թանաքով։*

Բ

197բ Ո՞վ իմաստասէր անձ, սիրով հայիր և մի բա[մ]բասէր, զի կարողութեամբ նմանիլ Աստուծոյ, ասացեալ իմաս[տ]նոց, այլև ժամանակ ամենայն իր, զի ժամա[նա]կս խ[ի]ստ էր տարտարոս, եւ ես փախըստեայ, վասն [յ]անցանաց իմոց՝ յանաւրինաց, եւ զմիտս գերէր սատանայ, վասն այնր սխալ է և անարուեստ գրեցի։ Եւ ես Մարկոս սուտ երեց կոչեցեալ, զոռ գծեցի ղգի[ր]ս զայս անար[ու]եստ բաժանմամբ, աղաչեմ զամենիսեան, որք կարդայք զանճառ բուրաստանս այնմենա Տեառն լցեալ անմահական ճաշական, որ մնա ի կեանս, զտառապեալ ոգիս յաղաւթս յիշեսջիք, և Աստուած զձեզ յիշէ։

Գ

246բ Ո՞վ եղբայր պատուական, որ կամիս շահեալ յաստուած[այ]ին կտակէս, զիս սուտանուն քահանա յիշեա յաղաւթս, և սխալանաց թողութիւն արա, վասն զի ես տգէտ, եւ ժամանակս տարտարոս՝՝ի չ․․ր նետողացս, բայց փոքր մի խաղաղացաւ կամաւքն Աստուծոյ*։

117

ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 122, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 537—538

Գրիչ՝ Ստեփանոս

ա

245բ Աւրհնեալ է Քրիստոս Աստուած իմ, ամէն։
Թուին ՈՀԸ (1229)։

Բ

189բ Տէր ողորմեա Ստեփանոսի յոյժ մեղաւորի, և [որ] ասէ ամէն, և նմայ Տէր ողորմեայ։

118

ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԻԽԱՅԻԼԻ ԱՍՈՐԻՈՅ

Երուսաղեմ 662, Պողարյան, Ցուցակ Գ, էջ 94 (1679 թ.)

Ի թվին Հայոց ՈՀԸ (1229) կատարեցաւ աշխարհապատում Պատմութիւնս տէր Միխաէլի սուրբ. պատրիարգին Ասորոց, զոր ստուգիւ գրեաց ծայրաքաղ առնելով, յաստուածաստեղծ մարդոյն Ադամայ սկիզբն առնելով՝ ասաց մի ըստ միոջէ զկարգ եւ զծնունդ եւ զշինութիւն արարածոցս, զոր նախ քան ջրհեղեղն աշխարհակործան, եւ զոր յետո ջրհեղեղին յորդոցն Նոյի շինեալ եւ աճել ըստ հրամանի, եւ ուխտեցին ամենա-

* Լուսանցքներում այսպիսի հիշատակագրություններ կան. «Խալատ է նշանայգրած ընկեր սորա» (222բ)։ «Այս տետր զհետ գիմին է» (23), այսինքն Գ պրակի հետ է. Նրա մասն է և այլն։

*կալին Աստուծոյ, որ եղ ընդ նոսա յետ ջրհեղեղին։ Եւ ի վերայ այսորիկ զկարգ եւ զթիւ թագաւորացն Հոռոմոց եւ զՊարսից, եւ զկնի Պարսից թագաւորութեան վճարելոյ՝ սկիզբն առնէ թագաւորութեան Արաբկաց, որ են Տաճիկք. եւ զկատարածի սոցա զԹուրքաց սուլտանութիւնն եւ զտիրելն բազում աշխարհաց եւ գաւառաց, զոր դեռ այժմ եւս ունին բռնացեալք ընդդէմ բազում ազգաց եւ ազանց։ Որ են թիւք ելիցն Ադամայ մինչեւ ի ժամանակս կատարելոյ գրոցս ի ձեռն* Միխայէլի *Ասորոց պատրիարգի ամք ՉՌԴԾ եւ Լ(6430)**, *եւ այժմ է թիւս Հայոց ՈՀԸ (1229)։*

## 119

## Խնդիրք և հարցումն տէր Միքայէլի Անդիոքայ եպիսկոպոսին ի մեղաւորէս Վարդանայ եթէ որպիսի աւրինակաւ է մարդս պատկեր Աստուծոյ

*Երևան 8198 (ԺԴ դար)*

75ա *Ով գերապատուեալդ յԱստուծոյ և ի մարդկանէ, հրեշտականուն եպիսկոպոս տէր* Միքայէլ *մեծին* Անտիոքու *և սուրբ ուխտիս, որ կոչի* Յիզվանց...

77ա *...Եւ սկսայց կատարել զհրամանս քո զոր տայ Սուրբ Հոգին ի հին յիշատակաց և ի յուսմանց, բայց և ամենայն ի շնորհաց նորա լինի և ոչ ի մեր շանուց, քանզի խաւարեցաւ միտք իմ յախտից աշխարհիս, և նուաղեցաւ լոյս աչացս և տկարացայ ծերութեամբս։ Ապայ սէրն քո մոռանալ տայ ինձ զամենայն, նայ և զի մնացէ սայ ի ձեռս քո ինձ յիշատակ, որպէս զի յետ մահու յիշատակեսցես զողորմելիս առաջի անմահ գառինն Քրիստոսի, որ վասն մեր զենանի անծախապէս, բայց և երկեայ յԱստուծոյ և սկսայ, զի մի պատժեսցէ զիս ընդ այրն քանքարաթաղոյց, ի վերայ այլ անթիւ յանցանաց իմոց։*

*Եւ դու ընկալ զսա ի ձեռաց իմոց սիրով, որպէս Քրիստոս ընկալաւ*
77բ *զխէրևէշն ի ձեռաց երանելի այրոյն, և արդիւնացուսցէ զսա Քրիստոս‖*
*ի հոգիս քո և զամենայն լսողաց, մինչև ի կատարած աշխարհիս, և պսակ*
*լուսափայլ արասցէ զսայ Աստուած ի գլուխ քո այժմ և յաւուրն դատաստանի, և նմայ փառք յաւիտեան***։

---

* *Հավանաբար «էչ» միավորը բաց են թողել։ Վերականգնելով միավորը կստանանք 6437 կայսերական թվականը, որը համապատասխանում է Հայոց 1229-ին։*

** *Ըստ Ն. Մառի, գրված է 1229 թվականին, այսինքն խաչակրաց հինգերորդ արշավանքից հետո* (Сборник притчь Вардана, С. Петербург, 1892 г., *էջ 312*)։

## 120

### ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 129, Բ. Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 567—574

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Թէոդոպալիս

ա

390բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն, Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Իմաստք աստուածային և շնորհք Սուրբ Հոգւոյն միշտ հեղեալ յորդիս եկեղեցւոյ՝ առ ի լցուցանել զպասուք ծարաւեաց կամայաւժար փափագողաց ի յարբումն ոգեկան շահաւէտից և մարմնական վայելմանց, մանաւանդ և որք տրփան ի նոյն տենչանս երկուց առաջարկութեանց, զոր աստուաստ բարեժամանակիս և առ յապագայիցն համատելոց և ճեմարանաց որոճալով և հետամուտ լինելով երկուցս, զոր ցուցաք, յարատեւակ շահելովն և երկեակ շահիցն՝ բացայայտ գոլով սորին։ Մինն յոգիսն ամբարելով, իսկ միւսն յետ ժողովելոյն և ի բնաւիցն զրկեալ գտանի։ Այլ առաքելահոս վտակըս այս՝ քառահոլով բղխմամբ ըստ աւրինակի չորից գետոցն բղխեալ յագենայն, արբուցանէ զչորեքեղրեան ծագս երկրի։ Իսկ ես եղկելիս, Գրիգոր գրիչ, փափագող եղեալ այսմ անմահական ըմպելոյ, հայցեմ ի Տեառնէ զայս ջուր կենդանարար բղխեալ ի բնութենէ Սրբոյ Երրորդութեանն՝ ի յարբուցումն պասքեալ հոգւոյ իմոյ։ Եւ ըստ յուսոյն իմոյ, որ առ Քրիստոս, ետ Տէր զխնդրուածս իմ, զի ի վաղուց ժամու ցանկացեալ էի այսմ անգիւտ մարգարտիս և ամենալաւ աւրինակիս, որ կոչի Գրիգորի Մուղանեցւոյ, ճարտարագիծ գրչի և անյաղթ գիտնականի։ Եւ ըստ յաջողելոյն Աստուծոյ՝ եղեւ ըստ կամաց իմոց։ Եւ ես ըստ կարի իմում՝ բազում աշխատութեամբ գծագրեցի իմով ձեռամբ և ծաղկազարդեալ յաւրինեցի ոսկւով պատուականաւ, հրով փորձեալ և զտեալ, և երփներփն երանգաւք և պայծառ դեղովք գրոշմեալ, ներգործեցի ի սմա ազգի ազգի քանդակս խորանաձեւս և երկնանմանացս և այլ մանրամասն ինչ ծաղկաւք՝ ըստ տուեցելոյ ինձ ի շնորհաց Հոգւոյն Սրբոյ։

Արդ, եղեւ կատարումն կտակիս, մանաւանդ թէ քրիստոսաձրի մատենիս, ի ժամանակս վերջինս, յորում քննեալ գտաք ի հանդիպման ամիս լինել յելիցն Ադամայ ի դրախտէն մինչեւ առ մեզ՝ հազարաց վեցից և չորից հարիւրից, երեսուն յաւելեալ ամաւք։ Իսկ ի ծագմանէ բա-

նին Աստուծոյ՝ հազարի միոյ և երկուց հարիւրից, երեսուն և երկուս յաւելեալ ամաւք (1232), եւ Հայկազնեան տումարիս վեցից հարիւրից եւթանասուն և ինն ամաց (1230), ի հոյակապ և ի հռչակաւոր քաղաքիս **Թէոդոպօլիս**, ընդ հովանեաւ Սրբոյ Յարութեանս՝ յիշատակ հոգւոյ իմոյ և ծնաւղաց իմոց։

Արդ խնդրեմք և ի ձեզէ հեղինակէ և ուրէնսապատում եկեղեցւոյ մանկունք, որք յաստուածային պտղոցս խորհրդիւ դիտէք ճաշակել, յորժամ ի ձեռն առեալ զփափագելի սուրբ զԱւետարանս ի յաւուրս տաւնից տէրունականաց, զի և ի ձերում անզրաւելի ուրախութեանց յիշեսջիք զ**Գրիգոր** գրիչ, նաեւ զհայր իմ զ**Խաչատուր** քահանայ՝ դլյոժ հմուտ ե հռետոր այսմ արհեստի, եւ զմայր իմ եղկելի, որ բազում աշխատութիւնս կրեաց ի վերայ մեր՝ տացէ նմա Տէր վարձս ընդ վերջին մշակացն, նոյն և զքուերսն իմ՝ զ**Թանկերն** և զ**Ազգերն** և զ**Ակներն**՝ հանդերձ հարազատաւք իւրովք, եւ զփեսայ իմ զ**Վահրամ**՝ զսիրելի անձին իմոյ, եւ զ**Յովասափ** փիլիսոփայ՝ զհոգ[ե]ւոր եղբայր մեր, զի արժանի եղիցուք Թագաւորական պատ[ո]ւոյն ընդ [մե]ռեալսն և մի մնասցուք առ երկենի, քանզի եմք սբաղեալք յագարակի զուրավաստակ պատճառանաւ, հինգաթեւ եզանց լծորդութեամբ։ Այլ և աղաչեմ յիշել զմեզ առաջի Քրիստոսի, զի ի ձեռն հայցման աղաւթից ձերոց թեթեւասցուք ի ծանրութենէ մեղաց և արժանաւորք հանդիպեսցուք գտանել ողորմութիւն յաւուրն այցելութեանն՝ ընդ սուրբս և ընդ սիրելիս անուանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որում փառք յաւիտեանս։ Եւ նոյնինքն Տէր մեր Յիսուս Քրիստոս, որ առատն է յամենայնի, շնորհեսցէ ողորմութիւն յիշողացդ և յիշեցելոցս յաւուր մեծի ծագման իւրոյ, և նմա փառք այժմ և յաւիտեանս, ամէն։

Զգեղեցիկ և զքրիստոսասէր պատանեակին՝ զպարոն **Վարգ** զբարեգործ, որ աշխատեցաւ ի պարզել թղթոյս և մասն ինչ ետ յԱւետարանս՝ յարդար ընչից իւրոց, տացէ նմա Տէր մասն և բաժին յարքայութեան արդարոց։ Եւ որք կարդայք աղաւթիւք ձերովք, աւրհնեսցուք զնա։ Յիշեսջիք և զբարեպաշտուհի զմաւրքոյր իմ՝ զ**Գումարն**՝ հանդերձ հարազատ որդւովք իւրովք, որ և սա մասն ինչ ետ յԱւետարանս, որոց ողորմեսցի սոցա Քրիստոս ձերովք սուրբ աղաւթիւք։ Ընդ նմին յիշեսջիք և զ**Ազատիկին**, և զդստրիկն իւր՝ զ**Նուռանեթի**, որ յայս ամի փոխեցաւ ի Քրիստոս, քան զի և սա սակաւ ինչ աւգնական եղեւ, որոց գթասցի ի սոսա Քրիստոս յաւուր փրկութեան։ Զ**Խաչատուր** վարդապետն իմ և զ**Ամախս** քահանայ, որ ի. մագաղաթս աշխատեցաւ ընդ իս, յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս։ Եւ ամենեքեան, որք միաբանեալ են ընդ մեզ հոգեւոր սիրով, աւրհնեսցէ զընոսա Քրիստոս Աստուած հոգւով և մարմնով, ամէն։

Աւա՜ղ, աւա՜ղ և հազար աւա՜ղ դառնութեան ժամանակիս։

Բ

116ա Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ սուրբ և ընտրեալ առաքելոյս ողորմեա մեղուցեալ և պարտաւոր անձին իմոյ՝ **Գրիգորի** գրչի,

և ծնաւղաց իմոց, և քուերց և ազգականաց մերոց, և այնոցիկ, որք միաբանեալ են ընդ մեզ հոգւով։

Գ

138բ Քրիստոս Աստուած, ողորմեա Գագկանց Միթարոյ, որ յայսմ աւուր կոչեցեր առ քեզ, և թող զյանցանս նորա։

121

ՃԱՇՈՑ

Հռոմ, Լեոնյան վարժարան 4, Ն. Ակինյան, Ցուցակ, էջ 53—54

Գրիչ՝ Մխիթար
Վայր՝ Կապոսի վանք

ա

258ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն եւ մի աստուածութեանն՝ Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Բայց գրեցաւ աստուածային գանձս ի տամայխմբութիւն սրբոց մարտիրոսաց, ի թուականութեան Հայկազեան տոմարի ՈՀԹ (1230), ի լեառն Սուրբ Լուսաւորչիս, յանապատիս որ կոչի Կապոսի, հրամանաւ պատուական քահանայիցն Վարդանայ եւ Սարգսի, որ են ի գաւառէն Եկեղեաց, ի գեղջէն որ կոչի Իշոխա։ Եւ զմտաւ ածեալ զճգնութիւն սրբոց մարտիրոսացն եւ զսէր սրբոցն, զերկիւղ ամենայն կարեաց ի բաց մերժեցաք եւ ստացաք զսա մեզ ի ժառանգութիւն եւ յիշատակ ամենայն զարմից մերոց։ Արդ, աղաչեմք զամենեսեան որք աւգտիք ի սմանէ ուսանելով կամ կարդալով, կամ աւրինակաւ, յիշեսջիք ի Քրիստոս, որ աղաւթիւք սրբոց մարգարէից, առաքելոց, մարտիրոսաց ողորմեսցի եւ թողութիւն շնորհեսցէ Վարդանայ եւ Սարգսի, եւ հաւր եւ մաւր իւրեանց Սոսթանիսի եւ Ազգկանն, են հոգեւոր զաւակացն Աթանասի եւ Յովսեփայ քահանայից, եւ պատանեկին Յուսկանն:

Յիշեա Քրիստոս Աստուած ի քո արքայութիւնդ զՎարդան եւ զՍարգիս, զԳրիգոր եւ զԳորդ հարազատ եղբարք, եւ զքոյրեր մեր զՏիկնացն եւ զԿանացն, եւ զփեսայնին մեր զԻնքնաաիոս եւ զԹիոդոս, եւ զՈվանէս խնամին մեր։ Տէր Յիսուս ողորմեա դրելոցս ի սմա եւ թողութիւն շնորհեա սոցա։

Եւ ինձ Մխիթարայ, որ զսակաւ յիշատակս գրեցի, ողորմեա Տէր, եւ քեզ փառք յաւիտեանս, ամէն։

բ

Գրիչ՝ Գրիգոր

45բ Ո՛վ աստուածասէրք եւ աստուածապաշտք, որ ժողովեալ եք կատարել զտաւն պայծառակերպութեանն Քրիստոսի, յիշեսջիք զթշւառականս զԳրիգոր գրող բարի յուսով եւ սիրով, եւ ասասջիք՝ Քրիստո՛ս, քո սուրբ պայծառակերպութեամբդ ողորմեա, եւ որք զմեզ յիշեն, եւ քեզ փառք այժմ, յաւիտեան։

գ

Գրիգոր ամենաթշւառ գրիչ զամենայն ժողովալքս աղաչեմ մեղաց
126բ թողութիւն խնդրեցէք ի Սուրբ Երրորդութենէն ինձ եւ իմոցն եւ ձերաոցն,
Քրիստոս զձեզ յիշե իւր ողորմութեամբն։

## 122

## ԱՒԵՏԱՐԱՆ

Քյուրտյան, Ցուցակ, էջ 405

Գրիչ՝ Յովաննէս

ա

148 Զբազմամեղս զՅո[վ]ն[աննէս] յիշեսջիք։

Յայսմ ամի մեծ ահ կա Խորազմշահին յամենայն արարածս, զի այժմ առ զԽլաթ և զամենայն սրով մաշեաց զգաւառն։

Այժմ աւելի են գերիքն յաշխարհի, քան զազատքն, և նա փքա իբրև զվիշապ և գոչէ իբրև զառիւծ։ Եւ սուլտանն Հոռոմոց աշխարհախումբ ժողովով ընդդէմ նորա, և ամենայն սիրտ բեկեալ և զարհուրին առաջի ումի։ Երանի որ ոչ է իմ ժամս յայս։

բ

180 Յուլիս ամսոյ Թ (9), յաւուր երեքշաբ[թի] պահոցն այլակերպութեանն, ընդ Զ (6) ժամն և ընդ Թ (9)-ի մէջ շարժ եղև լաւ։ Փառք Աստուծոյ։

գ

382 Ի թու[ին] Հայոց ՈՀԹ (1230), յամիս աւգոստոս ԻԵ (25) աւրն, յաւուր կիրակէի եկն առ մեզ Սարգիս հայրն և երեր մեզ վատ զրոյց, որ եկեալ Լեոն թագաւորին թագուհի ի Կիպռասա ի Սելևկիա, որ տենայր զիր դուստրն, որ էր Հեթում թագաւորին թագուհի։ Եւ տարան զթագուհին ի Սելևկիա, և անդ եռեւ զմայրն իւր, և խաբեց զթագաւորին հայրն զպարոն Կոստանդին, և մտաւ ի Սելևկիա, և մոտեց հետ իր մաւրն, և զպարոնն հանին քաշնաւք բերդէն։ Այս այսպէս գործեցաւ, և ենք յահի և յերկեղի. այլ յառաջկայն Աստուծոյ է գիտելի։

Եւ Հոռմոց սուլտանն և Մելէք յԵտլին, երեք որդի՝ բազում զաւրաւք, և Խորազմշահնն՝ բազում խուժադուժ ամբոխիւ դէմ իրերաց են դումաբեալ. որ պատերազմին. այլ զոր լինելոց է՝ Աստուծոյ է գիտելի, այլ ար[ար]ածքս ամենայն են ի վտանգի։

դ

129 Քունն խիստ կու չարչարէ և աւէրէ։

## 123

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ն. Ջուղա 29, Տէր-Աւետիսյան, Ցուցակ, էջ 43—44

Գրիչ՝ **Ներսէս**
Վայր՝ **Ամասիա**

Տէր Յիսուս ողորմեա գծաւղի սորա **Ներսիսի**, և ծնաւղաց իւրոց, և ամենայն զարմից իւրոց, որք են հանգուցել առ Քրիստոս։

Փառք... Շնորհիւն ամենակալին Աստուծոյ սկսայ և ողորմութեամբ Յիսուսի Քրիստոսի կատարեցի զսուրբ Աւետարանս յամի Ո-երորդի Հ-երորդի Թ-երորդի (1230) թուաբերութեանս Հայկազնեան տումարիս, ի բռնակալութեան Իսմայելական ազգին, ի չար և ի դառն ժամանակի, զի ըստ նախասաց տեսութեան մարգարէից և տէրունական աստուածապատում հրամանին լցաւ և աւարտեցաւ աւուրք ժամանակաց և մերձեցաւ և եհաս աւուրք պղծոյն անապատի, ըստ Պաւղոսի ձայնին և թէ Մինչև բարձցի որ այժմդ ունի, ապա յայտնեսցի որդին կորստեան և թէ ի բազմանալոյ անաւրէնութեան ցամաքեսցի սէր բազմաց, և եթէ Եղիցի նեղութիւն մեծ որպիսի ոչ եղ ի սկզբանէ աշխարհի։

Եւ արդ տեսանեմ նեղութիւն և անձկութիւն անբաւ, տագնապ և արհաւիրք անհանդուրժելիք, քանդումն և քայքայումն քաղաքաց և աւանից, աշխարհացն, գաւառից, զրկանք և յափշտակութիւն տկարաց և աւտարաց, կործանումն տանց և շինուածոց և եկեղեցեաց, զի ի յաճախելոյ և բազմանալոյ անաւրէնութեանց մերոց անկեալք ի ծառայութիւն աւտար և բարբարոս ազգաց, որք զաւրէն հրոյ անյագաբար ճարակեն զմարմինս։

Եւ ի վերայ այսր ամենայնի ոչ զարհուրումն և ոչ դողումն, ոչ փոյթ և ոչ երկիւղ, ոչ պնդութիւն հաւատոյ և ոչ յաւժարութիւն գործոց բարեաց, այլ հաւատք պակասեալք և ամպարշտութիւն զօրացեալ, արդարութիւն հալածեալ և անաւրէնութիւն արմատացեալ, սէր եղծեալ և անգթութիւն ծաղկեալ, Աստուած վաճառեալ և ագահութիւն թագաւորեալ, անուն և ձև լոկ՝ քրիստոնէութեան, և կարգք և վարք՝ և ոչ բնաւ ումեք։

Արդ այսպիսի չարաշշուկ և բազմավրդով, ծանր, աղետաբեր դառանակալի աւուրս, ես ունայնացեալս ի գործառնութենէ կանուխ ժամանելոյն յոյժ խաւարաժառանգ և պարապնդեալս մեղօք **Ներսէս** անպիտան գրիչ և սուտ անուն քահանայ, գրեցի զգերունակ և զաստուածատուր կտակ զսուրբ Աւետարանս ի ստոյգ և յընտիր աւրինակէ և ի բազմաց վկայեալ, ի յիշատակ **Խաչուկ** քահանայի և ծնաւղաց և զաւակաց իւրոց, ընդ նմին և պարոն **Վարդին** և ծնաւղացն և զաւակաց նոցին, ի պայծառութիւն եկեղեցւոյ և ի վարժումն մանկանց նոր առագաստի։

Արդ, որք ընթեռնուք և աւգտիք և կամ գրչութեան ընդաւրինակէք, և որք լսելով լուսաւորիք, թողութիւն մեղաց հայցեցէք ի Քրիստոսէ **Խաչուկ** քահանայի և հաւր՝ զուգակցի իւրոյ, որոյ անունն **Վարդ** կոչի։ Եւ գրեցաւ սա յանապատիս **Ամասիոյ**, ընդ հովանեաւ Սուրբ Կարապետի։ Տէր Յիսուս ողորմեա **Մանուէլի** վարդապետի, որ բազում սիրով ընկալաւ և հանգոյց զմեզ, զոր Տէր Յիսուս հատուսցէ նմա յետ գալստեան,

որ աւգնական և առիթ եղև գրոցս։ Տէր Աստուած ողորմեսցի Սարգսի քահանայի, և հարազատ որդւոց իւրոց Կարապետի քահանայի, և եղբաւր իմոյ ըստ հոգւոյ, որ զաւրինակս շնորհեցին։

Արդ, որք ընթեռնուք և լուսաւորիք, խոշորութեան անմեղադիր լերուք, և Քրիստոս որ առատն է ողորմութեանց ձեզ և մեզ ողորմեսցի, և Սուրբ Երրորդութեանն փառք յաւիտեանս։ Ընդ նմին ողորմեսցի Տէր Աստուած ծնաւղաց իմոց Սիմէօնի և մաւր իմոյ Թամար տիկնոյ, ամէն։

Որ յայս սուրբ Աւետարանիս զինքն աւգնական լինի, Տէր Աստուած իւր աւգնական լինի և մեղաց նորա թողութիւն շնորհեսցէ, եթե այր, և եթէ կին, եթէ ծեր, և եթէ տղայ։

124

ԳԻՐՔ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՈՑ

Երևան, պատառիկ 828

1ա Ի [թ]վիս ՌՀԹ (1230) ըստ յ[աճ]ախելոյ մեղաց մերո[ց], ելանէ ազգն այլայս[եռ] և խուժադուժ ազգին որ Թաթարքն, և ի սու[ր] սուսերի մաշեց զ[տ]իեզերս, մինչ ոչ մնաց տ[ե]ղի ողջ, զեկեղեցիս տապալեաց, զքահան[այս կ]ոտորեց և ոչ խնայեց [մէ]կն նոցա ի կեն-
1բ դան, և այլ զամենիսեան առ[հա]ս[ա]րակ կոտորեց զայ ‖ դարձոյց ի տեղիս իւ[րե]անց, ընդ որս և գնեց զայս Ընթերցուածս և [դա]րձեալ եա ի իւր առ[ա]ջին տեղին՝ ի Սուրբ Աստուածա[ծի]նն, յիշատակ իւրն, և [ծն]ողաց իւրոց, և եղբաւ[ր] իւրոյ Ստեփանոսին, եւ [ե]ղբաւր որդոյն Łուսկա[Ն]Ն, որ տղայ հասակաւ փո[խե]ցաւ ի Քրիստոս։

Արդ, ո՛վ սուրբ մ[ա]նգունք սուրբ եկեղեցոյ, որ[ք] կարդայք կամ աւկ[տ]ի[ք] ի [ս]մանէ ///*։

125

ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆ

Երուսաղեմ 1818 (ԺԲ դ.), Պողարյան, Ցուցակ Զ, էջ 184

Ստացող՝ Առաքել
Վայր՝ Կիլիկիա

ա

384ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ...

---

* Ընթերցուածոց գրքից մի թերթի կես է մնացել, որը հետագայում ծալել են և պահպանակ դարձրել։ Մյուս սյունակում ևս կա հիշատակագրություն նույն ձեռագրի գերությունից փրկելու մասին. այն հավանաբար գրված է ԺԳ դարի վերջերին կամ ԺԴ դարի սկզբներին. բերում ենք ամբողջությամբ։ «Կամաւ ամենակալի Աստուծոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ես՝ Նազարդինս, Շիրին սարկաւագի որդիս Թաւրիզեցի, տեսայ զԸնթերցուածս ի ձեռն այլազգեաց, և առի և տվի յեկեղեցին։ Արդ, ով կարդայք, զմեղուցեալ ծառայս Քրիստոսի յիշեսցէք, և զկենակիցն իմ զՈլղումելիք, և զվերայփոխեալ ի Քրիստոս զաւակն իմ՝ զՍադադին, և զծնաւղս իմ ///»։

Մյուս էջում Ստեփանոս գրակապի հիշատակարանն է ձեռագիրը գնելու մասին։

Յամի Ո-որդի, ւեթանասներորդի, իններորդի (1230), Թուականիս Հայոց, ի հայրապետութեան տեառն Կոստ[անդեայ], եւ ի թագաւորութեան քրիստոսապսակ արքայի Հեթմոյ, ես Առաքեալ նուաստ աշակերտ եւ սպասաւոր ուսման բանի, փափագաւղ եղեալ մատենի սրբոյ եւ կայծակնաճաշակ մարգարէին Եսայայ, ստացայ զսա յարդար ընչից իմոց, ի վայելումն ինձ եւ յիշատակ հոգւոյ իմոյ, եւ եղբաւր իմոյ Գրիգ[որ] քահ[անայի], որ յայս ամի փոխեցաւ ի Քրիստոս, եւ ծնաւղաց իմոց, եւ սնուցողացն և ուսուցչացն զիս հոգեւոր հարցն եւ ըստ մարմնոյ, Վարդանայ հաւրեղբաւր իմոյ, եւ Պետրոսի քեռոյ իմոյ, որ բազումս աշխատեցան ի վերայ իմ յիմաստս աստուածային ուսմանց, նաեւ զինչս իւրեանց ետուն ի պէտս իմ, որոց Տէր Յիսուս ընդ միոյն հարիւրապատիկ հատուսցէ նոցա աստ եւ ի հանդերձեալսն զփիւր ողորմութիւնն, ամէն։

Արդ, աղաչեմ զամենեսեան, ղմանկունսդ եկեղեցւոյ, զժառանգողք սմին եւ զվայելողքդ, եւ որք աւգտիք ի սմանէ ուսմամբ կամ ընթերցմամբ կամ գաղափարաւ, յիշեսջիք ի մաքրափայլ եւ ի սրբամատոյց յաղաւթս ձեր որ առ Տէր զվերոյ յիշատակեալքս ի սմա, եւ որ առատն է ի պարգեւս եւ աննախանձ ի տուրս, որք հայցեն ի նմանէ, Քրիստոս ամենեցուն ողորմեսցի յիշելոցս եւ յիշողացդ յիւրում գալստեանն, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն։

Յայսմ ամի եղեւ շարժ սաստիկ ի գաւառիս Կիլիկեցւոց, եւ բազում շէնս փլոյց, առաւել ի հո[յա]կապ քաղաքն զՏարսոն աւերեաց։

Բ

Գրիչ՝ Կոստանդին
Վայր՝ Մլիճո վանք

401 Ո՜վ եղբարք, որք ընթեռնուք զգիրս զայս, յիշեսջիք ի Քրիստոս զստացող սորին զԳրիգոր քահանայ, եւ զծնողսն իւր, եւ զեղբայր իւր զՍտեփանոս փոխեալն առ Քրիստոս, եւ զգրող սորա զԿոստա[նդին]:

Գ

416 Զստացող սորին զԳրիգոր կրաւնաւոր, որ է փակակալ սուրբ ուխտին Մլիճոյս, յիշեսջիք յաղաւթս առ Տէր, եւ զծնաւղսն իւր, եւ զհարազատն իւր զՍտեփանոս կրաւ[նաւոր]։ Ընդ նոցին եւ զգրողիկ սորին զԿոստա[նդին] եւ ըզծնողս, եւ Քրիստոս որ առ[ատ]ն է ի պարգեւս՝ ողորմեսցի յիշելոցն եւ յիշողացդ ամէն։

## 126

## ՄԱՍՈՒՆՔ ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԻ

*Էջմիածին 233*

*Գրիչ՝* **Ստեփաննոս**
*Վայր՝* **Յեսուանց վանք**

**ա**

269բ *Փառք ամենասուրբ Երրորդութեան Հաւր և Որդո և կենդանարար և ազատիչ Սուրբ Հոգւոյն, անբաժանելի և միասնական Սուրբ Երրորդութեանն, այժմ և հանապազ և յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն, ամէն։ [Ի] թուականութեանս Հայոց [Ո]ՀԸ (1229), գրեցաւ տաոս Թագաւորութեանց, ի խնդրոյ աստուածապատիւ և առաքելաշնորհ արհիեպիսկոպոսին* **Անտի[ո]քո*** *տեառն* **Միքայելի** *և առաշնորդ սուրբ ուխտի* **Յեսուանց**, *ի վայելումն մանկանց եկեղեցւոյ, և ի յիշատակ հոգւոյ իւր և ծնողաց իւրոցն, ամէն։*

*Եղև գրաւ սորայ յանապատս* **Յեսուանց** *ի վանսն, ընդ հովանեաւ մաւրս մերոյ Սուրբ Սիոնի, և Սուրբ Աստուածածնիս, և զկենսակիր և սքանչելագործ Սուրբ Նշանիս, ձեռամբ յանարժան* **Ստեփաննոսի**, *ի թագաւորութեանն նոր օծեալ ընծային*** **Հեթմոյ** *և ի կաթողիկոսութեանն տեառն* **Կոստանդեայ**, *ամէն։*

**բ**

206բ *Տէր Յիսուս ի քո միւս անգամ գալստեանդ և ի հասարակաց յարութեանդ ողորմեա տէր* **Միքայելի**՝ *ստացողի գրոցս և ծնողաց իւրոց, ամէն։*

## 127

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 867—870*

*Ծաղկող՝* **Սիմաւոն**

**ա**

*Տէր Աստուած, ողորմեա ծաղկողի սմին* **Սիմէ**՝ *ծանրամեղի և ծնողաց իւրոց, ամէն։*

**բ**

**Սիմաւոն*****:

---

* *Նորոգված է, որոշ տառեր սխալ են վերծանվել. այստեղ՝ «Անտիոքոս»։*

** *Նորոգված է. հավանաբար եղել է «արքային»։*

*** *Բոլոր Ավետարանների խորանների գլխազարդում գրված է «Սիմաւոն», ուրեմն ծաղկող Սիմէ-Սիմավոնն է։ Գրության մասին պահպանվել է հետագայում արտագրված սույն հիշատակարանը, որ բերում ենք ստորև։*

## 128

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հովսեփյան, Ցիշատակարանք, էջ 870*

«Յիշատակարան սուրբ Աւետարանիս

*Արդ աղաչեմ զձեզ յիշել ի Տէր զգրողն և զգրել տուողն սուրբ Աւետարանիս, որ զսորայ հին յիշատակարանն գտաք, որ Բարսեղ յանուն գրագիր գրեալ է զսա և թուական եդեալ էր այսպէս. ՈՀԹ (1230) թվին գրեալ էր։ Այսչափ հազիւ գտաք և գրեցաք։ Վասն որոյ ասեմք՝ Աստուած ողորմեսցի նոցա որպէս և կամեսցի»։*

## 129

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 10688*

Գրիչ՝ Ներսէս
Վայր՝ Սուակիս քաղաք

ա

224ա *Փառք անսկիզբն և զուգական, անեղական, այլայլական, միասնա-
կան, անտանելի, անքրն[ն]ելի, անհասանելի, անիմանալի, անպարա-
գրելի, անծերանալի, աներբ, անուր, անորակ, [ա]նքանա[կ], անբա-
ժանելի, էական Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս, ամէն, որ զտկարու-
թիւն իմ զաւրացոյց յաւէտ իւրոյ իմաստութեանն, վասն որոյ և ես
յանձն առեալ ոգւով չափ, կատարեցի զտառս հոգեշունչ, աստուածա-
զարդ, աստուածախաւս սուրբ Աւետարանս, զոր ամենասուրբ Հոգին
հա[նգ]չելով երանելի աւետարանիչսն, ընդ համատիւռ ոլորտս տիե-
զերաց լոյս շահացուցին։ Իսկ ի լինելութեան արարածոց, յորժամ բանն
Հաւր բղխեցոյց յարարչագործն յԵդեմայ չորս առաչս գետոց զչորս կ-
244բ մանս երկրի պարաբելով, որ բերէր աւրինակ զաւետաբեր չորս առա‖չս
աւետարանիս, վասն զի բղխելով ի կենդանի աղբիւրէն Քրիստոսի զբա-
նաւոր բարոմակս, այսինքն զքառանիւթեան զմարդիկ երկնաւոր այգե-
գործին ի ծաղկաւետութիւն և պտղածնութիւն ուրախութեան կազմեցին։
Նման են սոքա քառանկիւն աշխարհիս։ Իսկ զխորհուրդ չորեքկեր-
պեան աթոռոցն զի՞նչ ասացից, զի են ի նոսա չորս դէմս՝ մարդոյ, առիւ-
ծոյ, եզին, արծուոյ, Մաթէոս դէմս մարդոյ պատմի, Մարկոս դէմս առիւ-
ծոյ, Ղուկաս դէմս ցլոյ, իսկ Յոհաննէս դէմս արծուոյ սրաթև, արագաթռիչ
ի բարձունս ելանէ և զանճառսն ճառէ, և իւրաքանչիւր զմարմնաւորու-
թիւնն Քրիստոսի գուշակէին։ Քանզի և Տէրն մէր Յիսուս Քրիստոս զքա-
ռանիւթեան մարմին նախաստեղծին Ադամայ զգեցեալ և երկրորդ Ադամ
զինքն անուանելով բևեռեցաւ ի վերայ քառաթև խաչին, զարեգակն խա-
ւարեցոյց, զլուսին յարիւն դարձոյց, զերկիր շարժեաց, զվէմս պատա-
ռեաց, զմեռեալսն արտաքս վերածեաց, զդժոխսն աւարեաց, զհոգիսն
225ա ազատեաց, զհպարտացեալ գոռոզն, զթշնամին ար‖[գ]արութեան, որ
եհան [զ]ն[ախա]ստեղծն ի դրա[խ]տէն՝ կապեաց, յարեաւ սքանչելա-
պէս յաւուր երրորդի և յարոյց ընդ իւր [զ]ապականեալ մարմինն Ադա-
մայ և մեզ հաւատացելոցս խրախոյս տալով ասէ. Քաջալերեցարուք, զի
ես յաղթեցի աշխարհի։ Եւ առ ծնաւղն իւր հրաշալի մարմնով, և հրաւի-*

րեաց զմեզ իւր անմահութիւնն, առաքեաց զմխիթարիչ Սուրբ Հոգին յառաքեալսն և հրեղինաւք լեզուաւք զհաւատացեալքս ի Սուրբ Երրորդութիւնն, որում ամենեքեան արժանի լիցուք շնորհաւք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, որում փառք յաւիտեանս։

Գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուիս Հայոց ՈԶ (1231), ձեռամբ Ներսիսի փցուն և վատ գրչի և քահանայի ըստ աշխարհի, ի քաղաքի Սսաւկիոյ, ի յիշատակ Յովանեսի, և ամուսնոյ նորին, և հաւր իւրոյ Վարդի, և եղբաւր նորին Յոհանեսի քահանայի ի Քրիստոս փոխելոյ։

Արդ, աղաչեմ զամենեսեան մանկունս եկեղեցւոյ, որ ոք ըն[թեռ]նու

285բ զսուրբ Աւետարանս, յիշեսջիք /// և մեղաց թողութիւն խնդրեցէք յԱստուծոյ Յովանիսին, և ծնաւղին իւրոյ Վարդին, և Յոհանեսի, և Աստուած զձեզ յիշողացդ ողորմեսցի, և որ յիշէ՝ ինքն յիշեալ եղիցի յԱստուծոյ։ Տէր Աստուած ողորմեսցի սուրբ քահանայից եղբարց իմոց Անտոնի և Կոստնդնայ, որ առիթ և կամակից եղեն սուրբ Աւետարանիս, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։ Աւրհնեալ Սուրբ Երրորդութիւն, որ հասոյց զիս ի վերջին գիրս, մեծ գոհութիւն զԱստուծոյ։

Բ

1բ Եւ Տէր Յիսուս Ներսիսի գրողի ողորմեսցի և ծնողաց իւրոյ, ամէն։

Գ

Ստացող՝ Յովհանէս

Յ[անու]ն Աստուծոյ ես Յովանն[էս քահանայ ս]տացայ զսուրբ [Աւետարանս յարդ]ար [ս]տացուածոց իմո [և] ետու ի Սուրբ///Օգսենդ ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց, և եղբաւր իմոյ Յոհանէս քահանայի ի Քրիստոս հանգուց[ել]ոց, և աւանդեցի ի ձեռն և ի հրաման Անդոն քահ<ա-յ>անայի, որ պիտութիւն առնէ։ Բայց մի ոք իշխեսցէ ւաձ[ա]ել զսա եկեղեցւյս կամ պարոյք տալ, կամ ումեք միրայթ հանել, այլ մնայ յայս եկեղեցիս ի Սուրբ Թորոս <Օգսենդ>*, և փրկութիւն հոգւոյ իմոյ Յովանէսի, և եղբաւր իմոյ Յոհանէս քահանայի, [և] Քրիստոսի Փ[ա]ռք յաւիտեանս։

130

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՈՑ

Երևան 1204

Գրիչ՝ Մաթէոս
Վայր՝ Սանահին

ա

219բ Եւ զիս Մաթէոս, որ կաշկանեալ կամ բազ[ում մեղաց]։

---

* Առաջին հիշատակության անվանումը ջնջված է և վերևում այլ գրով գրված «Օգսենդ», իսկ այստեղ այն լավ չի ջնջված և ռամ գրչի գրած «Թորոս» անունը կարդացվում է։

բ

Գրիչ՝ Կարապետ
Վայր՝ Սանահին

324բ [Ի] Թ[ու]ին ՈՁ (1231) գրեցաւ աստուածային ընթերցուածի Մեկնութիւնս ի մեծահռչակ ուխտս Սանահինս, իմով ձեռամբ Մաքէոսի, զոր գրեցի ինձ ի վայելումն, և ոչ ժամանեցի ի սա ուրախանալ, այլ աւանդեցի զսայ սիրելի ուսումնակցի իմոյ Ստեփաննոսի, և ես կիսաւրեայ գնացի յաշխարհէ, և սուգ մեծ թողի սիրելեաց իմոց, մանաւանդ հարազատ եղբաւրն Կարապետին: Եւ ես Կարապետս առեալ զիշատակագրեցի խաւարեալ աչաւք և մանրեալ ձեռաւք ի մեծ գանձարանէն, որ իբրև զարեգակն փայլէր յայս[մ]աւուրքս ի մէջ մարդկան։

Արդ, որ կարդայք և աւգտ[իք, յիշ]եսջիք զՄաքէոս, և զխաւարեալս Կարապետ, [և զՍտեփ]աննոս վայելող գրոյս, և որք յիշեք յիշ[եալ լիջիք ի Տեառնէ]։

գ

Այլ գրիչ

286ա Վարդապետ ամենագով, զփիծ գիրս ընթերցիր և զվայթարեալսն ի սմա ուղղեա, բայց զսորին գծաւղս ի բարի յիշեա։

դ

Այլ գրիչ

288բ Վայ քարտիսիս։

131

ԳԻՐՔ ԴԱՏԱՍՏԱՆԻ

*Ազգային գրադարան, Մաքլեր, Ցուցակ Փարիզի, էջ 100*
*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 877—878, Մանրաժապավեն 1016*

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Հաւռոմկլա

ա

յա Ի թուականութեանս Հայոց ՈՁ (1231), գրեցաւ Գիրքս Դատաստանի՝ ի խնդրոյ աստուածապատիւ և սրբասէր եպիսկոպոսին տէր Դաւթայ, որոյ և հայրն փառաց վայելել տացէ իւր և ի ժառանգութիւն արասցէ հոգւոյ և մարմնոյ։ Արդ, որք աւգտիք ի սմանէ և կամ ընդաւրինակէք, զերջանիկ եպիսկոպոսս՝ զտէր Դաւիթ յիշելոյ արժանի [արդ]ասցուք. ընդ նմին և զանարժան և զյախմար գծողս, զորոյ և չեմ արժանի զանուն յիշելոյ և կամ ընդ դրաւ արկանելոյ։ Եւ որք յիշէքդ, յամենակալէն Աստուծոյ և ի միածին Որդւոյ նորա և ի Սուրբ Հոգւոյն աւրհնեալ եղիցուք։ Եւ խոշորութեան գրոյս անմեղադիր լերուք, զի այսքան է կար մեր և դեռ ես սակաւիկ մի կու հմտանանք ի գիծս։ Եւ աւրհնեալ եղիցի Տէր մեր Յիսուս Քրիստոս, յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն։

Բ

125բ Ի թուականութեանս Հայոց ՈՁ (1231), ի թագաւորութեանս Հեթմոյ՝
որդւոյ Կոստանդեայ իշխանաց իշխանի, [և ի] հայրապետութեանս
տեառն Կոստանդեայ և արժանատւեալ կաթողիկոսին, գրեցաւ գիրքս
այս ձեռամբ մեղաւոր և յախմար գրչի Թորոսի, ի յաստուածապահ անա-
ռիկ դղեակս Հառոմկլայս, ընդ հովանեաւ Սրբոյ Գրիգորի Լուսաւորչի, ի
խնդրոյ քրիստոսազգեաց և առաքելաշնորհ եպիսկոպոսին տէր Դաւթայ:
Արդ, որք աւգտիք ի սմանէ և կամ ընդաւրինակէք, ստացողի սորա՝ տէր
Դաւթայ մեղաց թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, և
անդրանիկ եղբաւրն իւրոյ Աբրահամ[այ], և պատուական ծերունոյ և
ուսուցչի իւրոյ, և հոգեւոր հաւր իւրոյ և սրբասէր քահանային Սանփա-
նոսի, և ծնողաց իւրոց, զի ստացաւ զգրկումքս յարդար ընչից իւրոց։
Եւ աղաչեմ ընդ նոսին և զեղկելի գծողս ե զծնողսն իմ յիշեցեք ի
Քրիստոս՝ թողութիւն գտանել բազում յանցանաց մերոց։ Եւ որք յիշէքդ,
աւրհնեալ եղիջիք ի Հաւրէն երկնաւորէն և ի յՈրդւոյ նորա Յիսուսէ Քրիս-
տոսէ, և նմա փառք յաւիտեանս։
Արդ, ի յայսմ ամի եկաւ ազգ մի, որ կոչի Թաթար, և փախստական
արար զՊարսկաց թագաւորն և աւերեաց զՊարսկաց աշխարհն և երեկ
ընդ Միջագետաց աշխարհս ի վայր մինչեւ յԵդեսա և ի Սամուսա, և
կոտորեաց բազում թուրք ե քուրդ և քրիստոնէք և էառ բազումս |||

132

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6519

Գրիչ՝ Սարգիս
Վայր՝ Յեսուանց անապատ

ա

389բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգոյն
այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։
Ի թուականութեանս Հայոց ՈՁ (1231), ի հայրապետութեանն տեառն
Կոստանդեայ, և ի թագաւորութեանն Հայոց Հեթմոյ, և յիշխանութեան
հաւր նորին Կոստանդեայ, որոց տացէ Աստուած բազում ժամանակս և
պահեսցէ յաղթող ի վերա ամենայն թշնամեաց իւրեանց, ամէն։
Գրեցաւ սուրբ Աւետարանս ի հռչակաւոր և ի մեծանուն անապատս
Յեսուանց, մերձ ի մայրաքաղաքս Անտիոք, ընդ հովանեաւ մաւր մերոյ
Սուրբ Սիովնի և կենաակիր և յաղթող Սրբոյ Նշանիս, և ի յառաջնորդու-
թեանն տեառն Միքայելի, ձեռամբ Սարգսի մեղաւոր և անպիտան գրչի,
390ա ի խնդրոյ Յոհաննիսի կրաւնաւոր քահանայի, որ ստացաւ զսա || ի յի-
շատակ իւր և ծնաւղաց իւրոց գնացելոց առ Քրիստոս։
Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա և ընթեռնոյք, սրտի
մտաւք յիշեսջիք և թողութիւն խնդրեցէք յառաջասացեալ ստացողի սորա
Յոհաննէս և ծնողաց իւր, ամէն։ Յիշել հայցեմ ի Տէր Յովսէփ զարդիւ-
նական վարդապետն մեր և զարքեպիսկոպոսն Անտիոքու՝ զգնացեալ-

սըն առ Քրիստոս, զի և նա ողորմութիւն գտցէ, քանզի և է արժանի, և զիս զանպիտան գրիչ Սարգիս յիշատակի արժանի արարէք, և ինքն Տէր Յիսուս, որ յառատն է ողորմութիւն ամենեցուն, ողորմեսցի մեզ և ձեզ՝ յիշողացդ և յիշեցելոցս, և նմա փառք յաւիտեանս յաւիտենից, ամմէն։

Բ

3բ Տես ոչ մարմնապէս բազմանկար, այլ հոգեպէս, և վայելեա իմաստիւք ի խնամս արարչին։

Գ

Որք աւետեաց երկնից բանիս
Բանայք զմիտս և զլսելիս,
Աչաւք նայիք յերևելիս
Եւ իմաստիւք իմանալիս։
Ի յաղբիւրէ քառավտակիս
Հայցեցէք զանճառ բարիս,
Տալ կեանք անշփոթ ի ներկայիս,
Եւ թողութիւն մեղաց աստիս։
Սրբասնունդ կրաւնաւորիս,
Յովաննիսի քահանայիս,
Որ նուիրեաց զնիւթ տառիս,
Տեառն Յիսուսի որ զմարմին եռ և զոգիս,
Առ ի պատճառ յոքներանգիս,
Բազմանկար սուրբ կտակիս։
Արդ ժառանգողքդ ի կենցաղիս
Եւ վայելողք լուսազարդիս,
Աղաւթեցէք նախաստացիս
Համադասիլ լուսերամից։

Դ

109բ Զհոգիասէր սրբազանն և զմաքրափայլեալն ի վարս պարկեշտութեան զամենառաքինի Յոհաննէս զստացաւղն աստուածային փրկագործ իմաստիցս, յիշեսջիք ի Տէր, որդիք վերինն Սիովնի, ժտեմ և ես յոքնամեղ խոշորագիծս Սարգիս անմոռաց լինել ի ձենջ, զի և դուք յիշեսջիք ի Տեառնէ։

Ե

183բ Զստացաւղ կենսաբեր սուրբ Աւետարանիս զՅոհանէս յիշեսջիք ի Տէր, նազելի մանկունք Սիոնի։

Գ

Գրիչ՝ Ստեփաննոս

391ա ԶՍտեփաննոս, որ փսակաս գրեցի, յիշեսջիք ի Քրիստոս։
Եւ զԳրիգոր սարկաւագ՝ զաշակերտ Յոհաննիսի՝ ստացողի սորա յիշեսջիք ի Տէր, ամէն։

## 133

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հալեպ 130, Սյուրմեյան, Ցուցակ, էջ 222—223*

Գրիչ՝ Վասիլ

ա

*Փառք ամենասուրբ Երրորդութեան յաւիտեանս ամէն։*

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ նուաստ եւ մեղաւոր, յետին և ցած քահանայի* Վասլի, *ի թվականիս Հայոց ՈՁ (1231), յամսեան մայիսի Ա (1), որ է համբարձման աւրեր, եւ հայրապետ Հայոց տէր* Կոստանդին *եւ թագաւոր* Հեթում: *Գրեցաւ ընդ հովանեաւ Սուրբ* Թ*որոսի, որ և բուն իսկ* Կիլիկիայ *կոչի։ Արդ, աղաչեմ զամենեսեան որք աւրինակէք և կամ կարդայք եւ կ[ամ] աւկտիք ի սմանէ, մեղաց թողութիւն խնդրեցէք յԱստուծոյ մեղաւոր գրողիս, ցած եւ նուաստ քահանայիս* Վասլիս, *եւ մաւրն իմոյ* Մէլիքին *եւ հաւրն իմոյ* Խաչատուր *քահանայի, եւ երկրորդ հոգևոր մաւրն իմոյ* Մարգրաին, *որ աւգնական եղեւ տվաւք իւրով ի նիւթ սորա, Քրիստոս Աստուած յիշողացն և յիշեւլոցն իւր, և ծնողացն իւրոց ողորմեսցի սատ, և ի հանդերձեալսն ընդ արդարսն դասեսցէ, ամէն։*

*Եւ աղաչեմ խոշորութեան եւ սխալանացս չլինել մեղադիր։*

բ

*Զնուաստ հողիկս զ*Թումաս *սարկաւաքն, աղաչեմ յիշել ի Տէր։*



12—487

ՌՁԱ 1232

## 134

### ԲԱԳՆԱՅՐԻ ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 1519

Գրիչ՝ Իգնատիոս
Վայր՝ Հոռոմոս

ա

...Արդ այս աստուածաշունչ պատգամացս, եւ անճառիցն կենացն
աւետարանութեանս իբր ական պատուականի և գեղեցիկ մարգարտի ի
խնդիր ելեալ աստուածասէր եւ բարեպաշտ, քաջահաւատ եւ գովելի ի
մրցմունս արիութեան՝ հանգոյն քաջ նախնեացն իւրոց նահատակեալ ի
վերայ տանս Հայւոց, մեծապատիւ իշխանաց իշխանն պարոն Խաւռաս,
որդի Ամիր Սարգսի. որ էր եղբայր մաւր կեսառոսաց Հայւոց եւ Վրաց
եւ ամենայն Ափխազաց, բարեպաշտից եւ Աստուծով զաւրացելոցն մե-
ծին Զաքարիայի եւ Իվանէի, յորոց առաջի սնեալ եւ զարդա[րե]ալ, ի
նոցին ողորմութեամբն մեծացեալ եւ փառաւորեալ ըստ անըստերիւր
հաւատոյն որ ի Քրիստոս, հաստատուն եւ անխախտելի պահելով զմիա-
միտութիւնն առ բարեպաշտ տեարսն իւր, ծառայելով յամենայն սրտէ եւ
զամենայն կարութենէ իւրմէ։

Ապա յետ սակաւ ժամանակի փոխելոյն առ Քրիստոս մեծին Զաքարիայի, որ
եւ խաւար գործեաց աշխարհիս Հա(յ)ոց, բարենշան նորին շառաւեղն
295բ պա(յ)ազատն եւ մնացորդն ազգիս, դեռատէգն եւ նորաբողբոջն, սիրե-
ցեալն եւ մեծացեալն յԱստուծոյ մանդատորթախուցէս մեծի թագաւորու-
թեանն՝ Շահանշահ, յաջորդեալ զաթոռ թագաւորութեան հաւրն իւրոյ,
լուսաւորեալ փարատեաց զմառախղապատ խաւարն, զոր ի զրկմանէ հաւր
նորա մեծացեալ ունէր զեկեղեցիս Հայաստանեաց։ Զորոյ զկեանս եւ զժա-
մանակս անծերանալի պարագայից ժամանակաւք, հանդերձ թագածին նոր-
ընծային սքանչելատեսիլ որդւովն իւրով Զաքարիայիւ, շնորհեսցէ Տէր
Յիսուս Քրիստոս յանխռով խաղաղութեան, եւ կայծակն նոցա անշիջա-
նելի մնասցէ մինչ ի կէտ յաւիտեանից, ի պարծանս եւ ի լրութիւն Հայաս-
տանեաց։ Որ և զնոյն հաւատարմութիւն եւ առ սա պահե[ալ մե]ծապատիւ
իշխանաց իշխանն Խաւռաս, դաստիարակելով եւ սնուցանելով ամենայն
երկիւղիւ եւ աստուածպաշտութեամբ. զոր ի նախնեացն ունեալ էր, յոր-
մէ ըստ արժանի հաւատարիմ ծառայութեանն իւրոյ ընկալեալ զհաստու-
ցումն՝ մեծաւ պատուով պատուեցաւ ըստ Վրացն բարբառոյ՝ մսախուրթա-

խուցէս, որ ըստ մերումս թարգմանի գլուխ իշխեցող եւ հրամա[նա]տար ամենայն իշխեցողաց եւ գլխաւորաց տան թագաւորութեան տեառն իւրոյ։

298ա Եւ թեպէտ եւ յայսմ պատիւ ժամանեալ /// [սուգ անմխի]թար եթող ծնողաց իւրոց եւ բոլ[որ] սիրելեաց, ե[ւ եդաւ] ի հանգըստ[ա]րանի, ի հրեշտակաբնակ ուխտին Բագնայր [որ է մենաստ]ան Սուրբ Աստուածածնին։ Նա եւ մայր իւր ամէնաւրհնեալն յԱստուծոյ Խութլու Խաթունն [յա]ղգէ գո[լո]վ պարսիկ, իսկ ի կոչմանէ եւ ի շնորհացն Աստուծոյ ճշմարիտ աղախին գոլով Քրիստոսի, որ զկնի երկուց ամաց վախճանի որդւոյ իւրոյ բազմավիշտ սգով փոխ[ե]ցաւ ի Քրիստոս, որ կայ ի տապանի հանգստարանի անդրանկին իւրոյ, որոյ յիշատակն աւրհնութեամբ։

Իսկ ի հրամանէն Աստուծոյ մեծապատիւ Խատաս ընդ բարեպաշտոհւոյ կնոջ, որոյ անունն Զմրուխտ Խաթուն կոչի, որ եւ սա ազգաւ տաճիկ գոլով յազնուական եւ ի փառաւորայգւոյն յազգէ ի մեծ նախ[ա]րարացն Պարսից, որ եւ ղսա շնորհք ողորմութեանն Աստուծոյ այսմ լուսաւոր

298բ հաւատոյս արժանացուցեալ ‖ ...մեղապարտ [ծա]ռայ Քրիստոսի Խատասս ի մարդասիրութիւնն Աստուծոյ յուսալով ետու գրել զ[սո]ւրբ Աւետարանս ի յիշատակ անդրանկի իմոյ [Սասն]ային, եւ մ[աւ]ր նորին Խութլու Խաթունին, եւ ինձ բազմամեղի, եւ ամուսնոյ իմոյ Զմրուխտ Խ[ա]թունին, եւ սիրելի դստրեկի իմոյ Թայիկ թագոհո, ամուսնոյ անդրանկի իմոյ, որ է զարմ եւ շառաւեղ թագաւորացն Հայոց, եւ վասն յերկար կենդանութեան սիրելի որդւոյ իմոյ Վասակայ: Եւ աւանդեցի զսա ի սուրբ մենաստանն ի Բագնայրն կոչեցեալ վանք, ի տէրութեան տեղւոյն տեառն Գրիգորայ, որ Մագիստրոսն ասի, վերայդիտող աթոռոյս Անւոյ, եւ յառաջնորդութեան հաւր Սիմեովնի եւ այլ համակամ եղբարց սրբոց։

296գ Արդ աղաչեմ զամենեսեան, որք լուսաւորիք‖...յաղաւթս ձեր զՍասնայն ղորդի իմ, յաղագս որոյ սուրբ Աւետարանս գրեցաւ։ Ընդ նմին եւ զիս զմեղուցեալ ծառայ Քրիստոսի զԽատաս եւ ղայլս զորս վերայգոյն յիշատակեալ է ի գրութեանս, եւ Տէր Յիսուս Քրիստոս յիշողացդ եւ յիշեցելոյս առհասարակ ողորմեսցի։

Եւ արդ, գրեցաւ սա ձեռամբ Իգնատիոսի ապաշնորհ եւ մեղապարտ գրչի, ի ՈՁԱ (1232) թուականի, ի մեծահռչակ ուխտս ի Հոռոմոսի կոչեցեալ վանք, ընդ հովանեաւ Սրբոյ Կարապետիս, ի մէջ սուրբ եղբարց, որոց ողորմեսցի Քրիստոս Աստուած մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Բ

98բ Զպատրոն Խատաս, որդի Ամիր Սարգսի եւ զամուսին իւր զԽաթուն յիշեսջիք յաղաւթս, որ ստացան զԱւետարանս Բագնայրի Աստուածածնիս, վասն յիշատակ[ի] իւրեանց սիրելի եւ անդրանիկ որդւոյ Սասնային, որ տղայ հասակաւ փոխեցաւ ի Քրիստոս, եւ սուգ մեծ եթող ծնաւղաց իւրոց։ Որք կարդայք յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր, աղաչեմք։

Գ

211բ Աւրհնեալ է Աստուած յամենայն սրբոց, ամէն, որ զերծայ ի դառն կապանաց։

135

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9871

Ծաղկող՝ [Իգնատիոս]

2բ Զպատրոն Խաւտաս եւ զամուսին իւր Զմրուխտ-խաթուն, որ զոսկին ետ գրոցս, յաղաւթս յիշեա, ո՛վ Տէր*։

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9649

Գրիչ՝ Իգնատիոս

254բ ԶԻգնատիոս մեղաւոր գրիչ յիշեա ի Տէր, աղաչեմ**։

136

ԹՈՒՂԹ ՊԱՒՂՈՍԻ

Երևան 928

Գրիչ՝ Իգնատիոս

ԶԻգնատիոս եւ զՔրիստափոր յաղաւթս յիշեսջիք***։

137

ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 2743

Գրիչ՝ Տիրացու

ա

138ա Զմեղապարտ գրծիչս՝ զՏիրացու յիշեցէք ի Քրիստոս Տէր****։

---

* Ավետարանից միայն երկու մագաղաթյա թերթերն են մնացել, որոնք համաբարբառի նկարազարդ խորաններ են, և որոնցից մեկում ծաղկողը թողել է սույն հիշատակագրությունը։ Ստացող պարոն Խաւտասին և նրա ամուսին Զմրուխտ խաթունին հանդիպում ենք նախորդ հիշատակարանում, որոնք ձեռագիրը նվիրել են Բագնայրի Սուրբ Աստուածածին եկեղեցուն (որից էլ ձեռագրի «Բագնայրի Աւետարան» անունը)։ Բագնայրի Ավետարանի գրիչ և ծաղկող Իգնատիոսը, նաև այս ձեռագրի գրիչն ու ծաղկողն է։

** Մագաղաթյա երկաթագիր ձեռագիրը սկզբից և վերջից պակաս է։ Պոկված են Մաթևոսի, Մարկոսի և Ղուկասի ավետարանառաջները։ Պահպանվել է միայն Յովաննու ավետարանառաջը՝ գեղեցիկ գլխազարդով, զարդագրերով և լուսանցազարդով։ 97, 152, 153 և 267 կտրած թերթերը նկարազարդ են եղել։ Գրիչն ու ծաղկողը Իգնատիոսն է։

*** Մագաղաթյա այս թերթը ծառայում է որպես կազմի կաշի՝ Մատենադարանի 1774 թ. գրված մի ձեռագրի։ Երկաթագիր, խոշոր գրությամբ այս հատակտորը գրության նմանությամբ և գրչի նույնությամբ համընկնում է Մատենադարանի № 1519 ձեռագրին։

**** Գրված է «Յարուցեալ Յիսուսի» վերջում։ Նույն գրով է գրված նաև խորանների նամակն ու համաբարբառը։ Ձեռագիրն հայտնի է «Թարգմանչաց» անունով, բերված է Գանձակի Թարգմանչաց վանքից, Գ. Հովսեփյանի ձեռքով։

Բ

293ա Փառք փրկչին Յիսուսի, ամէն։

Գ

Ծաղկող՝ Գրիգոր

7բ Տէր Աստուած, ողորմեա պատուական քահանայի եւ երեւելի պարոնի Յովաննիսի, ամէն։

Դ

8ա ԶՅովաննէս աստուածազարդ քահանայ եւ զխաչիկ հայր իւր յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս, ի Տէր*։

Ե

9բ. 10ա Ի թւիս ՈՁԱ (1232) ծաղկազարդեցաւ սուրբ‖Աւետարանս բարեխաւսու Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր**։

Զ

12ա ԶՅովաննէս աւագերէց յիշեա Տէր Աստուած ամէն***։

Է

115ա Տէր Աստուած, ողորմեա Գրիգորի ծաղկողի ամէն, ամէն****։

Ը

311ա Թիւս ՈՁԱ (1232) ծա[ղկեցաւ]։

Թ

333բ Ողորմեա Տէր Աստուած*****։

138

ԱՒԵՏԱՐԱՆ

Հովսեփյան, Ցիշատակարանք, էջ 881—884

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Գեակա վանք

ա

347ա Միամուխ խորոցն Աստուծոյ՝ Պաւղոս առաքեալ յիւրումն աշխարհալուր տումարի գրէ այսպէս. Ոչ ոք ասէ տէր զՅիսուս Քրիստոս, եթէ ոչ

* Գրված է համապատասխան էջերի երեք սյուների վրա։
** Գրված է խորանների միջին գերանի վրա։
*** Գրված է Մատթեոսի ավետարանառաջի գերանի վրա։
**** Գրված է Մարկոսի ավետարանառաջի գերանի վրա։
***** Ը և Թ հիշատակագրությունները գրված են լուսանցազարդ շրջանակների մեջ։

*Հոգւովն Աստուծոյ. արդ այս Հոգի խաղայ յորդահեղ շնչմամբ ի գունդս
աւետարանչացն սրբոց, որք երկուցն դերա /// ութ /// սին /// զառաքելա-
կանն և զաւետարանականն, որք համաքանակ քառակի գետոցն ոռոգո-
ղացն զդրախտն ծաւալեալ յոգիս հաւատացելոց՝ արբուցին զպասքումն
քառանիւթեան միացելոյն ըստ քառադէմ պահպանութեան ի վեր և ի
վայր, յաջ և յահեակ և կամ ըստ քառագիծ անուան Երրորդութեանն և
ըստ մարդն և կամ յԱդամ /// անգեալ երկու և գիծ քառ, որ և զամենայն
իսկ յինքեանս բերեալ զգաղափար ըստ շրջանի տարւոյն և ըստ յեղանա-
կաց երկրի, հայել յարեւելս և ի մուտս, ի հիւսիւսի և ի հարաւ և ըստ
սանդխոցն, որ հասանէր և հանէր յերկինս՝ սկսեալ ումն ի մարդանալն
Աստուծոյ և ումն յաստուածութեան անդ։ Իսկ որք ի միջին, երբ մատամբ
մի առ մի հանեալ ի վեր անդր՝ տարան զհաւատացեալ ոգիս յամենասուրբ
Երրորդութիւնն ըստ Տեառն ձայնի. Ուր եսն եմ, անդ և պաշտամեայն
իմ եղիցի։*

*Արդ այսմ լուսալիր իրի և գոյութեան աստուածախաւսութեան նշա-
նաց և /// և շահից հոգեւոր տնաւրէնութեան բանին Աստուծոյ շրջելոյն,
ըստ մեղ, ըստ կարի և յաւժարութեան խնդրող եղեալ քրիստոսասէր և
բարեպաշտ ումն անուն* Վանենի՝ *դուստր բարեպաշտ իշխանին* Ջաջռոյ՝
348ա *որդւոյ* Խախբակայ||*Թոռն* Բակ *իշխանին։ Իսկ յայնմ ժամանակի, յոր-
ժամ ի պարտութիւն մատնեցաւ սուրբն* Վարդան՝ *զաւրաւք իւրովք վասն
ծովացեալ մեղաց մերոց, այս* Բակ *իշխան գնաց փախստեայ ի յամ-
րոց /// ումն, և զաւրքն Պարսից և ուրացեալն* Վասակ *զհետ մտեալ՝ պա-
տեցին շուրջ զամրոցաւն. իսկ այս* Բակ *իշխան եղեալ ի պարիսպն՝ նա-
խատեաց զուրացեալն* Վասակ *և զամենայն չարիսն, զոր անցուցեալ էր
նա ընդ աշխարհս Հայոց, յիշեցուցանէր առաջի զաւրաւրին Պարից, և
ելեալ ի գիշերի ութն հարիւր արամբ գնաց փախստեայ յերեսաց* Շապհոյ
*արքային Պարսից յամուրսն* Արցախայ, *և կեցեալք բարեպաշտութեամբ
և քրիստոսական հաւատով մինչեւ յայս բարեպաշտ իշխանս* Ջաջուռ և
348բ *ի սմին որդիացեալս||քրիստոսասէր* Վանենի: *Որ և ստացաւ զայս աս-
տուածախաւս Աւետարանս յիշատակ և փրկութիւն հոգւոյ հաւր իւրոյ՝
բարեպաշտ իշխանին* Ջաջռոյ *և ետ ի սուրբ մենաստանն, որ կոչի* Հա-
ւապաուկ, *որ է շինեալ յանուն Սրբոյ Աստուածածնին, և է բնական տուն
և շիրիմ* Ջաջռոյ *իշխանի և նախնեաց իւրոց, և է ի գաւառին* Արցախոյ,
*և է հանդէպ ամրոցին, որ կոչի* Խափանաբերդ, *ի տէրութիւն երից հա-
րազատացն՝ բարեպաշտ իշխանացն* Ջալալին, Զաքարիայի, Իւանէի:

*Իսկ վերակացեալ սպասաւորք սուրբ ուխտին սահմանեցին ի տար-
ւոջն մի աւր պատարագ մատուցանել իշխանին* Ջաջռոյ՝ *ի տաւնի գալըս-
տեան Սուրբ Հոգւոյն։ Եւ որ զայս յիշատակս կատարէ, աւրհնի յԱստու-
349ա ծոյ, և որ զայս գիրսս յայս սուրբ ուխտէս||զինչ և իցէ պատճառանաւք
հեռացուցանէ, դատի ի Տեառնէ և վարձս ղԿայենին առցէ, ամէն։*

*Արդ գրեցաւ սա ի Թուիս Հայոց ՈՁԱ (1232), ի գաւառիս* Կայենոյ,
*ի գերահռչակ սուրբ ուխտըս* Գետկայ, *ընդ հովանեաւ Սուրբ Աստուա-
ծածնիս և Սուրբ Լուսաւորչիս Գրիգորի, ձեռամբ մեղապարտ* Ստեփանո-
սի, *յիշխանութիւն իշխանաց իշխանի աթաբակ* Իւանէի *և որդւոյ նորա*

Աւագին, և վասն զի Վրաց թագաւոր ոչ գոյր, ունէր զաթոռակալութիւնն դուստր Թամարին, և ի հայրապետութեանն Հայոց տէր Կոստանդնի, և յԱղուանից հայրապետութեանն տէր Յովաննէսի: Արդ աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք կամ ընդաւրինակէք, յիշեսջիք ի Տէր Աստուած զքրիստոսասէր պատրոնն զՎանենի՝ զստացող սուրբ մատենիս: Յիշեսջիք ի Քրիստոս զհայր նորին՝ զբարեպաշտ իշխանն զՋաջուռ, և զայլ սուրբ նախնիսն նորա:

Յիշեսջիք ի Տէր զմեղապարտ գրիչս զՍտեփանոս և զծնաւղն մեր: Եւ ինքն Քրիստոս, որ առատն է ի պարգեւս, յիշողացդ և յիշեցելոցն ողորմեսցի յիւրում գալստեանն, և նմա փառք ընդ Հաւր և ընդ Հոգւոյն Սրբոյ այժմ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն:

Յայսմ ամի եկն ազգն նետողաց և զմայրաքաղաքն Գանձակ հիմն ի վեր արարեալ՝ կոտորեաց զմարդ և զանասուն և զբազումս ի քրիստոնէիցն:

Բ

Փառք Քրիստոսի Աստուծոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն:

ԶՍտեփանոս, որ զսակաւս գրեցի, յիշեսջիք ի Քրիստոս:

Եւ զԳրիգոր սարկաւագ՝ զաշակերտ Յոհաննէսի ստացողի սորա՝ յիշեսջիք ի Տէր, ամէն:

Գ

Ստացող՝ Ստեփանոս երէց

Արդ, աղաչեմ զամենեսեան, յիշման արժանի արարէք զիս՝ զըՍտեփանոս երէց, որ ստացայ ըզսայ յարդար վաստակոց իմոց յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց, զըհանգուցեալսն առ Քրիստոս, զԳէորգ քահանայ և ///

Եւ Քրիստոսի մարդասիրի փառք յաւիտեանս, ամէն*:

## 139

## ԱԻԾՏԱՐԱՆ

Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 1017—1018

Գրիչ՝ Ստեփանոս
Վայր՝ Գետիկ

Յիշեսջիք ի Քրիստոս զսուրբ վարդապետն Մխիթար և զամենայն միաբան եղբարքս սուրբ ուխտիս, որք կամակից և ձեռնտու եղեն սուրբ Աւետարանիս:

Յիշեսջիք զՍադունն՝ զբարեպաշտ իշխանն, որ զծախսն սորա ետ:

Յիշեսջիք զՍերոբ և զՅովասափ և զեղբարս նոցա և զծնաւղսն իւրեանց, որ զնիւթս պատրաստեցին և ետուն կազմել զԱւետարանս:

Յիշեսջիք զՍարգիս իմաստուն հռետոր և սրբասէր կրոնաւոր և զծող սորա և զՍտեփանոս աշակերտ նորին, որ սպասաւորեցի նմա: Եւ որք յի-

---

* Նույն դարի գրությունն է:

շէք, Քրիստոս Աստուած ամենեցուն վարձս բարեաց պարգեւեսցէ և նմա փառք յաւիտեան, ամէն*:

## 140

### ԻՐԻՑ ԱԻՐՀՆԵՑԻՑ

Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 899—900

Գրիչ՝ Գէորգ

33բ Ցամի Ո-երորդի ՁԱ թուականութեան Հայոց (1232), գրեցաւ տետրակս այս Իրից Աւրհնեցից՝ հրամանաւ և ծախիւք սրբազան և մեծազգի արքեպիսկոպոսին տէր Յոհաննիսի՝ ի վայելումն անձին իւրոյ սրբասիրի և ի յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց ննջեցելոց, եւս առաւել բարեպաշտ հաւրն իւրոյ Սիր Պաղտոյնի, որ ի տիս մանկութեան իւր հանգեաւ ի Քրիստոս, որոց աղաւթիւք ամենայն սրբոց ողորմեսցի Տէր. և զքրիստոսասէր ծնաւղն իւր՝ զտիկին Թեմանաւ՝ հանդերձ դստերքն իւրով Տամակացիւ յիշեսջիք ի Տէր: Եւ դարձեալ կրկին աղաչեմ՝ յիշեսջիք և զաստուածասէր իշխանն՝ զպարոն Վասիլ Մա[ր]զիւանցին, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի, ամէն:

Աղաչեմ և ես տառապեալ գրիչս Գեորգ յիշել և զիմ նուաստութիւնս, և նոյն ինքն Որդին Աստուծոյ աւրհնեսցէ զամենեսեան**:

---

* «Սուրբ վարդապետ Մխիթարը և Սադուն իշխանը ԺԳ դարի անձնավորություններ են: Մխիթարը Գոշ կոչվածն է, որ մեռավ 1213 թվին: Իսկ Սադուն անունով իշխանը՝ Կայենո և Մահկանաբերդի իշխան և Տփղիսի ամիրա Քուրդի որդին էր... Բայց ձեռագիրը գրված չէ Մխիթարի կենդանության ժամանակ... մոտավորապես ԺԳ դարի երկրորդ քառորդին»,—գրում է Գ. Հովսեփյանը (էջ 1018): Հավանաբար գրիչը նույնն է նախորդի հետ:

** Ձեռագիրը գտնվում է Ֆլորենցիայի Լորենձինա Մեդիչյան գրադարանում:





## 141

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԻ ԵՊԻՓԱՆԻ ԿԻՊՐԱՑԻՈՅ ԵՒ ԱՅԼՈՑ

*Երևան 1204 (1231 թ.)*

*Գրիչ՝* Ստեփանոս Կեչառեցի
*Վայր՝* [Սանահին]

ա

16ա *Քրիստոս Աստուած, ի քո սոսկալի գալստեանդ ողորմեա՛ ստացողի սորա Համազասպիս և եղբաւր իւրում Պեւեին, որ յա[յ]սմ ամի փոխեցաւ ի Քրիստոս, ամէն։*

բ

29ա *Քրիստոս Աստուած, քաղցրութեամբ նաեաց ի Համազասպն և բարի ծնաւղսն իւր ի քում գալըստեանդ, ընդ աստուածախաւսութիմ առ ի բարուց վարդապետութեան հանդերձ։*

գ

50ա *Յիսուս՝ Հաւր միածին, յիշեա ի քում արքայութիմդ զհայր Համազասպն և զծնաւղսն իւր, ամէն։*

դ

75բ *Զհայր Համազասպս յիշեա Քրիստոս ի քո յարքայութեանդ...*

ե

133ա *Ո՛վ սուրբ վարդապետ, ի յարժանաւոր յաղաւթս քո յիշեա զհայր Համազասպն, և զծնաւղսն իւր, և զեղբայ[ր]ն իւր, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս։*

զ

146ա *Զխաղաղութիւնն և զողորմութիւնն Քրիստոսի ի սուրբ ուխտէս Կեչառուաց անպակաս արասցէ։*

է

149բ *Ի թու[ին] Հայոց ՈՁԲ (1233) կատարեցաւ գիրքս /// ես անձս Ստեփանոս, ի բազում աւրինակա[ց] ժողով[եցի ղ]գիրքս զայս ի վայելումն ինձ և յ[իշատ]ակ հոգւոյ իմո, և հարազատ եղբաւրն իմոյ Սարգսին, ծնաւղաց իմոց, նաև հոգևոր ծնաւղաց իմոյ, որ են քեռիք ըստ*

մարմնոյ, որք բազմաժամանակեա աւուրբք սնուցին զիս՝ Յակոբ խաչընգուս քահանա և Առոմ կուսակրաւն աբեղա, որ մինչև ես պանդխտանաի յանլոյս երկի[րս] Սեւորդեաց, ի հռչակաւոր ուխտն Սանահին, [զ]երկոսեան ի միում աւուր կոչեաց կոչողն ամենեցուն Քրիստոս, և զՄարկոս զաստուածահաճոյն և զպատուական քահանայն, և զՍարկաւագ՝ զմիացեալն ընդ Աստուծոյ, և զՄարգարէն, որ բազում զութ եցոյց մեզ մինչ յաւտարութեան պանդխտանայաք։ Նա եւ զսիրելի ուս[ու]մնակիցն իմ Մաթէոս՝ զաղբիւրն շնորհացն, որ կիսաւրեա ել յաշխարհէս, և զնորին զհարազատն զԿարապետն, որ Ընթերցուածոց մեկնիչս ինձ աւանդեցին և բազում դութ ցուցին, և զՄխիթար միւս աշակերտակիցս, զՅուսէփ կազմող դրոցս և զՍիմէոն: Արդ, աւարտ ի վերայ ամենայն ասացելոցս՝ զամենաւրհնեալ զերեքերանեան զվարդապետն ի[մ զՎա]չատուր, որ բազում զութ և ողորմութիւն ար[ար ի] վերայ իմ։

Արդ, երեսս անկեալ աղաչեմ, որ[ք աւգ]ափք կամ ուսանիք, կամ ընդ գաղափար ան[ից]իք], յիշեսջիք ի Քրիստոս նախ զհարազատն իմ զՍարգիս, և դիս զՍաեփաննոս՝ զստացող գրոցս, և զ[ամենեցունց], զորս յիշատակեցաք ի գիրս, յիշեսջիք [ի Քրիստոս] և ինքն Քրիստոս յիշողացդ և յիշեց[ելոցս ողորմեսցի]։

## 142

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Վենետիկ 89, Բ. Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 403—404*

Գրիչ՝ Յակոբ
Վայր՝ Լամբրոն,
Յովանի ագարակ

277ա Փառք գերագոյն ամենազաւր ձեռին հզաւրին և բոլորից նախախնամողին յաւիտեանս, ամէն։

Յամի վեցհարիւրերորդի ութսներորդի երկրորդի (1233) Հայոց տոհմիս տումարի, գրեցաւ անուշահամ աստուածախաւս կենաց կտակս, որ է աւետարանութիւն Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ձեռամբ Յակոբայ սուտանուն կրաւնաւորի և անարժան գրչի, ի խնդրոյ սրբասէր քահանային Կարապետի, յաշխարհիս Կիլիկեցւոց՝ ի Տարսովնի, առ ստորոտով լերինն Տորոսի... յանմատոյց դղեակս Լամբրուն, ի փոքրիկ ագարակիս, որ Յովանի կոչի, վայրաբնակ լինելով ինձ գրչիս՝ ըստ նախնեացն ձայնի, թէ Աւտարք և պանդուխտք եմք յերկրի, ի հայրապետութեան տեառն Կոստանդեա և ի թագաւորութեան քրիստոսապսակ և բարեպաշտ թագաւորին Հայոց Հեթմոյ:

Արդ, որք աւգտիք ի սմանէ կամ գաղափար առնոյք, յիշեսջիք ի Քրիստոս զստացող գրոցս՝ զԿարապետ աստուածաբնակ քահանայ, զի ստացաւ զսա յարդար վաստակոց իւրոց՝ ի յիշատակ հոգւոյ իւրոյ և ի վայելս և ի ժառանգութիւն սրբասնոնմղ պատանւոյն Առոմայ՝ եղբօրորդւոյ իւրոյ, զի և սոքա աւտար գոլով յայսմ գաւառէ, զի էին ի Միջագե-

տաց աշխարհէն, և վասն աստուածասաստ ցասմանն, որ բարկութեամբ շարժեալ զմարդակերպ գազանսն, որ տապալեցին զամենայն աշխարհս Հայոց և զբազում ազգս մաշեցին ի սուր սուսերի, և սա թողեալ զհայրենի ժառանգութիւն իւր վասն բարբարոսացն երկիւղի, եկեալ յաշխարհս Կիլիկեցւոց իւրովք հարազատովքն։

Ընդ նմին աղաչեմ յիշել աղաւթիւք ի Տէր զյոքնամեղ և եղկելի գրիչս և զծնաւղսն իմ և զաստուածասէր և բարի ստրատեալտն՝ զպարոն Յու–շապն, զի հոգւոյ չափ աւժանդակ եղեւ ինձ ի պանդխտութեանս իմում, զի պահեսցէ զնա Տէր Աստուած խաղաղութեամբ ի կեանս իւր և զկնի ելիցն իւր՝ ընդ սրբոց զինուորացն զնա դասեսցէ։ Եւ որք յիշէքդ զմեզ ողորմութեամբ ի բարի, և Աստուած յիշեսցէ զձեզ յիւր յանհուն բարին և յանսպառ ողորմութիւնն, ամէն։ Եւ աղաչեմ զամենեսեան, որք նայիք ի սա, անմեղադիր լինել խոշորութեան և սխալանաց, որ ի սմա, զի այս իսկ էր կար մեր, այլ և աւուրքս՝ դաժան, և ես տկար գոլով և պանդուխտ։ Եւ Քրիստոսի Աստուծոյ փառք, այժմ և յանզրաւ յաւիտեանն։

## 143

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՍՆ ԱՆՔՈՒՆ ՈՐԴԱՆՑՆ

*Երուսաղեմ 1426 (1614 թ.), Ն. Պողարյան, Ցուցակ, Ե, էջ 90*

Հեղինակ՝ Վարդան [Այգեկցի]

*Եւ արդ եկայք այսաւր...։ Եւ արդ ածցուք զմտաւ թէ յԱդամայ մինչեւ ի մեզ, որ է թուականս մեր ՈՁԳ (1234), թէ քանի թագաւորք եւ առաջնորդք եւ իշխանք եւ փարթամք թողին զայս կեանս եւ գնացին ունայն եւ են ողորմ եւ չիւար...*

## 144

### *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Քոսյան, Ցուցակ Արծնյան վարժարանի, էջ 112—113*

*Գրիչ՝* **Ստեփանոս**
*Վայր՝* **Անապատիկ վանք, որ կոչի Լիմ**

*Ի թուականիս Հայոց ՈՁԴ (1235) գրեցաւ աստուածապատումն, ծայ-րածաւալ, վսեմական, տիեզերաքարոզ, գերարփի լուսով Երրորդութեանն պանծացեալ, հրաշափառագոյն գիր սուրբ Աւետարանիս յաստուածուստ կարգեալ մատենիս և բերանով Աստուծոյ խաւսեցեալ տառիս, ոչ ի Սի-նայէ տուեալ հնոյն Իսրայէլի, այլ ի յերկնից պարգեւեալ շնոր[հ]աւք Սուրբ Հոգոյն նորոյս Իսրայէլի ի Երրորդութիւնն հաւատացելոց, եւ ոչ Մովսէսիւ առատուեալ ապարասանիցն այնոցիկ, որք գտան ապերախտք առ տուողն աւրինացն նոցա, այլ Յիսուսիւ Քրիստոսիւ շնորհեալ զբան աստուածախաւս աւետաբեր քարոզութեան իւրոյ քրիստոնէից ժողովըր-դոց եւ մանկանց Վերինն Երուսաղէմի ժառանգաւորաց ոռոգանել քառա-տակ բանս այս աստուածաբանութեան, ոչ որպէս ի դրախտէն ելեալքն ի յԱդենէ եւ բաժանեալ ի քառառաչս արբուցանելով զփշաբուսիկս երկիր, հնովն Ադամաւ զանկեալս ընդ///*

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ* **Ստեփանոսի**, *մականուն Ստեֆ աբեղայի՝ յոյժ մեղաւորի եւ անարժան ծառայի. եւ ոչ ըստ ար-ժանեացս գրեցի, այլ ըստ իմում անարժանութեանս ի սէր Աստուծոյ փա-փաքեցայ գրել ի վանք* **Անապատիկ**, *որ կոչի* **Լիմ**, *ընդ հովանեաւ Սուրբ Յեհնա եւ Սուրբ Նշանիս։ Արդ, որք կարդայք կամ գծաղափարէք, յիշեցէք զիս ղանպիտանս եւ զսուտանուն քահանա, եւ զծնողսն իմ, զհայրն իմ* **զԴաւիթ** *զրեհագործն եւ զմայրն իմ* **զՎարդուց** *եւ զայլսն, զոր հանգու-ցեալ են ի Քրիստոս եւ մեղաց թողութիւն խնդրեցէք նոցա, ամէն, ամէն։ Ընդ նմին եւ զփեսայն մեր* **զՄարտիրոս** *եւ զորդիսն իւր, եւ զքոյր եւ զեղբօրորդիս յիշեցէք եւ թողութիւն հայցեցէք ի Քրիստոսէ Աստուծոյն մերոյ, ամէն։*

*Գրեցաւ սայ ի սրբաբան եւ ջընտիր աւրինակէ, իսկ որք ընթեռնոյք եւ բան աւելի կամ պակաս լինի, աղաչեմ զամենիսեան չլինել մեղադիր, զի ունեաք զտկարութիւն եւ լուսոյ պակասութիւն, եւ ոչ էաք հասու այն բանից, այլ ի սէրն Աստուծոյ գթացաք։*

Գրեցաւ ի հայրապետութեան տեառն Կոստանդիա, եւ ի թագաւորութեանն Հայոց Հեթմոյ, եւ իշխանաց իշխանին Կոստանդեայ՝ հայր թագաւորին, զորս պահեսցէ Տէր Աստուած խաղաղութեամբ պարագայ ամաւք, եւ շնորհեսցէ զնոսա ընդ երկայն աւուրս հաւատացելոց անձանց եւ եկեղեցոյ իւրոյ, ամէն, ամէն։ Եւ յիշողացդ, ամէն։

Մանկունք, որք աւրինակէք կամ ընթեռնոյք, զհոգեւոր եղբայրսն մեր զԹորոս քահանան, եւ զծնողսն իւր, եւ զեղբայրն իւր Վարդան քահանա՝ զհանգուցեալն ի Քրիստոս, յիշեցէք եւ մեղաց թողութիւն խնդրեցէք նոցա, ամէն, ամէն։ Եւ զսրբասնեալ քահանայն Սիմէոն, որ էր սպասաւոր մեր, եւ ծնողսն իւր, եւ զԻրիցայ ամուսինն իւր և զորդին զՎարդան, որէ հանգուցեալ ի Քրիստոս, խնդրեցէք մեղաց թողութիւն, զի տղա փոխեցաւ ի Քրիստոս, որում Տէր Աստուած ողորմեսցի նոցա, եւ ձեզ եւ մեզ ամէն, ամէն։ Ընդ նոսին եւ զբազմութիւն մեղաց գծողի սորա Թողցէ զյանցանս մեր, որ Թվին, զի բաղում յոյժ մեղք եմ ||| եւ որ զա[յ]սոսիք կարդա, Տէր ողորմեա ինձ եւ նմա, ամէն, ամէն։

||| ամի շմոր եղեւ* Լամբրունին տէր ընդ Թագաւորն Հայոց եւ ընդ հայրն նորա. եւ ընդ ամենայն քրիստոնեայս, զոր Տէր Աստուած տացէ յաղթո[ւթիւն] Թագաւորին մերոյ, ամէն։

Տէր Աստուած բարեխաւսութեամբ Սուրբ Աստուածածնին եւ ամենայն սրբոց ողորմեա Կեռազո եւ ծնողաց իւրոց, զի սպասաւորեաց մեզ, ամէն, աշխատեցաւ, ամէն։

## 145

## ԱԻԵՏԱՐԱՆ

Վիեննա 833, Ոսկեան, Ցուցակ, էջ 410—411

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Հռոմկլայ

207բ Ի հրամանէ աստուածապատիւ երջանիկ սրբազան կաթողիկոսին Հայոց տեառն Կոստանդեայ ստացեալ եղեւ սուրբ եւ կենսակիր Աւետարանս այս ի յիշատակ իւր, եւ աստուածասէր ծնաւղաց իւրոց, եւ եղբաւր որդւոյն իւրոյ՝ արժանաւոր եւ սուրբ եպիսկոպոսին տէր Ստեփանոսի՝ ուղղեւորելոյն յաստեացս, որոց ողորմեսցի Քրիստոս Աստուած եւ յարութիւն կենաց շնորհեսցէ ի միւսանգամ գալստեանն իւրոյ։

Եւ արդ, աղաչեմք զամենեքեան, որք ընթեռնոյք զսա եւ լուսաւորիք, յիշեսջիք յարժանաւոր և մաքրափայլ յաղաւթս ձեր զերիցս երանեալ հայրապետն Հայոց զտէր Կոստանդին՝ զստացող սորա եւ զաստուածասէր ծնաւղսն իւր, եւ Քրիստոս Աստուած ամենեցուն ողորմեսցի յիւրում արքայութեանն, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Եւ արդ, գրեցաւ սա ի թուիս մերում ի ՈՁԴ (1235), ձեռամբ Յոհաննիսի մեղաւոր եւ անպիտան գրչի, ի յանմատչելի ամրոցիս Հռոմկլայի, ընդ հովանեաւ աստուածընկալ սրբոցս, որով պահպանիմք միշտ, որ է աւրհնեալ յաւիտեանս։

Աղաչեմ զգրիչս յիշման արժանի առնել։

* Տպված է սամիշ մորեղ եւս։

**146**

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 4160*

*Գրիչ՝* Պետրոս
*Վայր՝* Հառուց թառ

ա

244բ *[Ի վեց հա]րիւր երրորդի [ութսուն]երրորդի [և հինգ]* թվա[կա]նիս (1236) [կ]ա[տ]արեցաւ սուրբ Աւետարանս [այս] Յիսուսի Քրիստոսի, ձեռամբ ախմար և մեղապարտս քահանէի, որ [կ]ոչիմ* Սիմ[էօ]ն *և ի ձեռս քահանութեան* Պետրոս, *ի վանս* Հառ[ւց Թառ, *ը]նդ հով[ան]եաւ Սուրբ Կարապետիս Յովանու։ Եւ յայսմ ժամանակ[ի] փոխեց[աւ ի] Քրիստոս բարի և հոգևոր հայր մեր* Յօհան[նէս *որ կո]չեցին զնա առ մեծ եպիսկո[պո]սն տէր* Գրիգոր, *որ ///-ի քահանայ, ընդ որում ողորմե[ս]ցի Քրիստոս նոցա և զ/// տացէ, որ ասաց առաքելոցն թէ Ուր ես եմ դուք ան /// սոցա և ծնաւղաց նոցա։*

*Եւ նստաւ յաթոռ /// ընտրեալ և պատուական սուրբ քահանայն* Գէորգ /// *[եղ]բաւրորդի և սնուցած տէր* Գրիգորի, *ընդ որում ‖ Տէր Աստուած աջողութիւն և հաստատ անի նորա /// կործանեսցէ ըշարակամ նորա որպէս զփար[աւ]ոն։ [*Պ]ետրոս *աղաչեմ զամե[նե]սե[ա]ն արտասուաւք և հառ[աչան]աւք* զՎարդան *և* զԳրիգորէս *վարդապետ հ[աւ]րեղբ[արք] իմ,* զՇառազար *և* զԱրևաիկին *[քոյր]ք իմ,* զ[Յո]վանէս *և* զՆրշիս*՝ ծնաւղք իմ յաղաւթս յիշեցէք. ընդ նմին զբարեպաշտ հայր մեր* Խոցա[դեղն, *զմայր] մեր* Արփա. *և* զՍարգիս *և* զՀզարդեն /// *[զծ]նաւղս նոցա՝ յաղաւթս յիշեցէք աղաչեմ։*

բ

74բ *Գոյժ աղաղակի յոյժ լուաք յայսմ ամի, որ է ՈՁԵ (1236) յամսեանն յարաց ժ (10) յաւուր կիւրակէի, եթէ զքաղաքաբերդն* զԼաւռէ, զՍուրբ Մարի *առին անաւրէն, այլասէռք զաւրք* *Տաթարին, և անխնամաբար որպէս է իւրն անմտութեան չարութիւնն՝ իբրև զծարաւի և զպասքեալ գազանք դիմեցին ի վերայ, և ետուն ճարակ սրոյ, և արբեցան արեամբ*

---

* *Ձեռագրի հիշատակարանը եզրերից շատ է մաշված։ Թվականը վերականգնում ենք Բ. հիշատակագրության համաձայն։*

գառանցն գայլքն յափշտակողք անողորմաբար, որպէս ասէ Եզեկիէլ մարգարէն, թէ Մի ողորմիք երիտասարդին և կուսին, ծերոյն և տղային և այնչափ մինչև ներկան ամէնայն վայրքն։

Գ

73բ Հաւատայ, զի ի ցանքս և ի համաբարբառսն Աւետարանի [սակաւ] մի աշխատեցայ։

Դ

140բ ԶՊետրոս գրիչ սուրբ Աւետարանիս յաղաւթս յիշէ, ո՛վ սուրբ հայր։

## 147

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հովսեփյան, Ցիշատակարանք, էջ 913—914*

Գրիչ՝ Իգնատիոս

ա

Ո՛վ անարատ գառինք անարատ հարսին և մանկունք նոր Սիովնի, յորժամ զմայլիք կենսատու Աւետարանաւս, զսակաւ աշխատողս յիշեցէք առաջի սուրբ և անբիծ խորհրդոյն և ասիցէք, թէ Տէր Աստուած ողորմեսցի Իգնատիոսիս ... 

Բ

ԶԻգնատիոս մեղաւոր՝ ոսկենկար սուրբ Աւետարանիս յիշեա ի սուրբ աղաւթս քո, ո՛վ Տէր իմ։

Գ

Ո՛վ մայր լուսոյ և բերկրանաց Աստուածածին միշտ կոյս, ընկալ զաւետարանութիւն որդոյ քո միածնի... ի Իգնատիոսէ՝ որպէս միածին որդին քո զայրւոյն խերե[ւ]իշն, և ողորմութիւն արա մեզ ի վերջին աւուրն։

Գ

Զստացող սուրբ Աւետարանիս... և զԻգնատիոս մեղաւոր գրիչ յիշեսջիք ի տէր՝ աղաչեմ*։

* Ձեռագիրը պատկանել է Կալիֆորնիայի բնակիչ Վ. Սիմոնյանին։ Գ. Հովսեփյանը ձեռագրի մասին գրում է. «Գրիչը Իգնատիոսն է, Հիշատակարանների համաձայն։ Ղուկասի և Յովհաննու սկզբնազարդերի կամարների տակ եղած փոքր երկաթագրով Հիշատակարանները ճիշտ նույն գիրն են, ինչ որ նույն գրչի էջմիածնի № 928 Ձեռագրի հատակոտորը։ Բայց Իգնատիոսն է անկասկած նաև նկարիչը, ի նկատի ունենալով զարդագրութեան եւ նկարների առանձնահատկությունները...»։

148

ԱԻԵՏԱՐԱՆ

Նոր Ջուղա 156, Տեր Ավետիսյան, Ցուցակ, էջ 206—207

Գրիչ՝ Իգնատիոս

ա

16ա ԶԻգնատիոս գծող սուրբ Աւետարանիս եւ զծնողս նորա յիշեայ, ո՜վ եղբայր, յորժամ կարդաս, ընդ նմին եւ զաշակերտ նորայ զՅովսէփ մի մոռանայցես ի բարի կամաց, եւ Աստուած զձեզ յիշէ ի բարի։

բ

200բ ԶԻգնատիոս մեղաւոր գրիչ եւ զստացող սորա յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր աղաչեմ։

գ

316ա Տէր Աստուած ողորմեայ Իգնատիոս մեղաւոր գրչի։

դ

503ա Փառք ամենասուրբ Երրորդութեանդ Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ, որ զաւրացոյց զտկարս Իգնատիոս աւարտել զսա, ամէն։

ե

124ա Զստացող սուրբ Աւետարանիս զպատրոն Բռնաւոր եւ զՏղայտիկին եւ զծնաւղսն իւրեանց յաղաւթս* /// յիշեայ, ո՜վ Տէր իմ։

զ

Ստացող՝ Բռնաւոր

Շնորհիւ եւ ողորմութեամբն Աստուծոյ ես Բռնաւորս, ծառայ եւ կենակից իմ Տղայտիկին, յուսալով յողորմութիւնն Աստուծոյ, ստացաք զգանձս աստուածային ի մեր արդար վաստակոց, ի զարդ եւ ի պայծառութիւն սուրբ եկեղեցւոյ եւ ի վայելումն մանկանց առաքաստի։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք լուսաւորիք ի սորին քաղցրածաւալ լուսոյ, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զիս զԲռնաւորս, եւ զսնուցաւղսն իմ՝ զբարեպաշտ իշխանաց իշխանն զպատրոն Դաւիթ Շոթոկանց, եւ զորդիսն իւր զքաչ եւ զանուանի պատրոնաց պատրոն Գրիգոր, եւ զորդիսն իւր զԾմբատ եւ զԱրշուկն եւ զԱրգուխաթունն, որոց յիշատակն աւրհնութեամբ եղիցի ի Քրիստոս։

Եւ արդ, գրեցաւ սայ ի դառն եւ ի նեղ ժամանակի, յորում ամի առաւ մայրաքաղաքն Անի, արենգուփն կորուստ անթիւ հոգւոց։ Ո՞ր բերան կամ լեզու կարէ պատմել զանողորմիցն ողորմնն ի յանաւրէն Թաթարէն, ի թուիս ՈՁԵ (1236)։

* Գրված է նախորդ հիշատակարանի ջնջած տեղում։

Է

404ա Ի ժագմանն բանին Աստուծոյ եւ լնուլ զառածս մարգարէիցն եւ լուսաւորել զա[զ]գս ամենայն ըստ այնմ, թէ Լցաւ երկիր գիտութեամբ Տեառն։ Քանզի աստուածային սուրբքն երկրաւորաւքս ասացին իմանալ զերկնայինսն, ըստ որում եւ որք ի տունս Թագաւորաց արքունական խորոցն հաւաստեաւ գիտակք եւ քննիչք յառաջակայ իրացն, սայպէս եւ որ մերձ յիմանալիսն եւ յԱստուած անմիջակ եւ անքակ պնգակացեալք նորախոց իսկապէս գիտակք ըստ առաքելոյն՝ թէ Ամենայն երեւոյթք նորա ի սկզբանէ արարածովքս իմացեալ տեսին, քանզի աղ ասաց որ եւ համեմեցին զանհամութիւն աշխարհի եւ զխաւար հոգոց փարատեցին. Թուական ՈՁԵ (1236)։

Արդ, ես Բռճաւօրս, մեղուցեալ ծառայ Աստուծոյ եւ ամուսին իմ Տղայտիկին՝ աղախին Քրիստոսի, ոչ ունելով մարմնաւոր զաւակ, ցանկացող եղաք հոգեւոր զաւակի, ըստ ասելոյն, թէ՝ Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն եւ ընտանի Երուսաղէմ, եւ այլ թէ՝ Պատուիրանք Տեառն լոյս են եւ լոյս տան աչաց իմոց, եւ այլ թէ՝ Ճրագ են բանք քո եւ լոյս տան շաւղաց իմոց։

Արդ, մեծ յուսով եւ հաւատով ստացայ զաստուածախաւս մատեանս զայս պայծառ նիւթով եւ գեղեցիկ գրով եւ ընտիր բանիւք, ցանկալի ամենայն տեսողաց ի յարդար վաստակոց իմոց, եւ աւանդեցի զսա ի հրեշտակաբնակ ուխտն Խծկաւնս, որ Տիկօրոյ վանք կոչի, ի Սուրբ Սարգիս եւ ի Սուրբ Գրիգոր եւ ի Սուրբ Յակոբ, ի ձեռըն Պաւղօս վարդապետին, որ է ամենայն բարեաց պատճառ, եւ աստուածապատիւ տէր Աբասայ եպիսկոպոսի եւ հաւր Սարգսի հեզի եւ ամէնաբարոյ եւ այլ սուրբ միաբան եղբարց, որոց ողորմեսցի Քրիստոս Աստուած, ամէն։

Ո՜վ սուրբ մանկունքս ուխտի եկեղեցւոյ Աստուծոյ, աղերս թախանձանաց առաջի արկանեմ ամենեցուն եւ հայցեմք գորովագութ պաղատանաւք, յորժամ ընթեռնուք զաստուածախաւս պատգամս զայս, յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր զիս զԲռճաւօրս, եւ զկենակից իմ զՏղաւիկինն, եւ զծնաւղսն մեր, եւ զեղբարսն, եւ զամենայն ազգայինս, ասելով Թողութիւն արա Քրիստոս ամենայն յանցանաց նոցա, ամէն։ Իսկ զաստուածասաստ բարկութիւնն, որ եկն ի վերա ամենայն աշխարհաց Հայոց եւ Վրաց եւ Տաճկաց ի մարդադէմ գազանաց զտաթարէն, պատմեսցուք զդառնութիւն եւ զչարչարանս զժամանակիս. քանզի ոչ բաւեն միտք եւ լեզու զարիւնհեղութիւն եւ զկոտորումն ամենեցուն, զի ուսեալք են ի հաւրէն իւրեանց սատանայէ, զի նա մարդասպան է ի սկզբանէ ա՜յլակերպք, գիշակերք, արիւնարբուք, ամենայն մեղաւք կատարեալք էին, ոչ ծանեան զարարիչն եւ ոչ զմտաւ ածէին զաւր ահեղ դատաստանին. ով են նոցա ղաւրաւիգն՝ դեւք եւ նատանէք։ Իսկ մարդասէրն Աստուած թոյլ ետ վասն մեղաց մերոց առնել զամենայն կամս իւրեանց։

Անթիւ էր աւերումն քաղաքաց եւ գաւառաց մինչեւ ի մեր սահմանս, որ էր թուականիս ՈՁԵ (1236)։ Այլ ես Բռճաւօրս մեծ հաւատով եւ յուսով խնդրեմք սիրաբար ի սուրբ եւ ի պատուական եղբարցդ, յորժամ Աւե-

տարանն ի կարդալոյ վճարի Հոգւոյն գալստեանն, երանի որում թողութիւն տացէք եւ զպատարագին պատեհն դուք հոգացէք։

Ը

Ստացող՝ Աբաս եպիսկոպոս

405բ Արդ, տէր Աբասս եպիսկոպոսս եւ վարդապետս Պաւղոս եւ հայր Գրիգոր եւ այլ միաբանքս հաստատեցաք յեկեղեցոյ դրանս, որ ղՑղխական երկու շաբաթ աւրն զմին պատարագն անխաբան յամենայն ամի Բռնաւորին առնեն, ով եւ լինի հայր, կատարիչք զդոյս աւրհնեալ եղիցին եւ խափանիչքն դատապարտեսցին յԱստուծոյ, զի Քրիստոսի սուրբ Աւետարանս այս պայծառ է քան զարեգակն եւ յիշատակ անջնջելի պարոն Բռնաւորին, ամէն։

## 149

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 6202(909թ.)

Գրիչ՝ Իգնատիոս

ա

2ա Եւ զԻգնատիոս յոքնամեղ գրիչ յաղաւթ յիշեա, ո՜վ տէր իմ, եւ դու յիշեալ լիցիս ի Տէր, ամէն*։

Բ

3ա Քրիստոս Աստուած, ողորմեա Իգնատիոս նկարչի, ամէն։
Տէր Աստուած, ողորմեա ստացողի սորա, ամէն։

Գ

3բ Մեղայ քեզ Աստուած, ողորմեայ ինձ Աստուած, յորժամ գայցես ի սոսկալի աւուրն։

Դ

5ա Ո՜հ Թաթար, վայ աւուրն, որ եկիր անցուցեր զաշխարհս։
Ո՜հ ներեցեր Աստուած անչափ արիւնհեղութիւնս։

Ե

6ա Աստուած ողորմեա ստացողի սորա եւ մեզ։
Տէր Աստուած ողորմեայ Ինգնատիոսի, ամէն։

Զ

6բ Սուրբ Նշան, աւգնեա մեղաւորիս Իգնատիոսի**:

---

* Ա հիշատակագրությունը գրված է Եվսեբիոսի թղթի վերջում, Բ-Ե-Ն՝ խորանների գերանների վրա։

** Գրված է խաչի նկարի տակ, որը նախորդում է Մաթեոսի Ավետարանին։

## 150

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 99, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 443

ա

242ա Փառք Համագոյ եւ միասնական Սուրբ Երրորդութեանն, Հաւր ամենակալի, Որդւոյն միածնի, և Հոգւոյն Սրբոյ նորոգողի և նախախնամողի, որ արժանի արար զԹափուրս ի գործոց բարեաց և զլրացեալս մեղաւք՝ հասանել յեաւին գիծ աստուածային տառիս և սուրբ Աւետարանիս. աւրհնեալ եղիցի յամենայն արարածոց և ի սրբոց և յիմոյ անարժան և ի մեղուցեալ բերանոյս՝ յաւիտենից յաւիտեանս, ամէն։

Ցամս Հայկազեան Թուաբերութեան տոմարին, յորում էր թիւ Համարոյ Թուականին ՈՁԵ (1236), որ եղև աստուածասաստ բարկութիւնն յաշխարհն Արևելից, և յարեաւ ազգ մի գազանաբարոյ և անողորմ, և եհեղ բազում արիւն, և կերպարանն այսպէս. լայնաթիկունք և հաստաբազուկ. և գլուխն մեծ, և հեր գլխոյն ուղղորդ և ձարբ, և աչն նեղ, և ճակատն լայն, և քիթն տափակ, և մուրուքն քոսակ, բարքն մարդոյ, և քան զգազանս անողորմք էին ի վերայ մարդոյ, և բնական անուն նորա Թաթարթաթար։ Թէ կերակուր գտանէր՝ ուտէր, և թէ չգտանէր, ոչ քննէր և ոչ խնդրէր կերակուր։ Եւ այնչափ անողորմ էր, որ թէ հրեղէն լեզու ստանամ՝ ոչ կարեմ պատմել զանցս չարչարանացն, որ ետ ըմպել զբաժակն բարկութեան Այրարատեան գաւառին և Անոյ՝ ես առաւել, յոր իմ է տեսեալ զանհնարին ողբն և զաղետս տարակուսանացն, զի զբազում քաղաքս և զբերդերս էառ և հիմն ի վեր տապալեաց. զայր և զկին գերեաց, և զտղայս նոցա՝ առաջի նոցա զքարի հարոյր, զոմանս ի գիրկս մաւրն սրախողխող սպանանէին, և զեղբայրն՝ եղբարբ սպանանել տային, զոմանս քարկոծէին, զոմանս ի հուր ընկեցեալ այրէին, ղաղաբար գառինքն յոտս երիւարացն ընկեցեալ՝ կոխան արա[րէին] ///

Բ

Քրիստոս Աստուած, քո սուրբ ծնողին բարեխաւսութեամբ և ամենայն սրբոց ողորմեա Մխիթարա և հաւր նորա և մաւրն, որ աւգնական եղև գործոյս և զնիւթս պատրաստեաց, և իմ ծնողացն և ննջեցոցն, որ սպանան սրով, և ողորմելի մահուամբ ելին յաշխարհէս։

Գ

Կազմող՝ Վարդան

Եւ զիս զեղկելիս զսակաւ գրիս* գրողն զՎարդան սուտանուն աբեղայս և զկապաւղս և զկազմաւղս յիշեցէք և մեղաց թողութիւն խնդրեցէք, և Աստուած զձեզ [յիշէ]։

* Ձեռագրի 213ա—228բ էջերի գրիչն է։

## 151

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

Երևան 1501 պահպանակ

ա

2բ Քրիստոս Աստուած, քո սուրբ աւետարանչացս բարեխաւսութեամբ ողորմեայ Աստուածատրոյ, և զաւակի նորայ Մանուփլայ, և հոգևոր մաւր իմոյ Սթլերոյն Արճիշեցի, և զաւակաց նորայ, որ նահատակեցան ի տաճարէն, և գրեա զնոսայ ի դպրութեան կենացն յաւիտենից, և շնչայ զձեռագիր յանցանաց նոցայ, և ողորմեա յաստ և ի հանդերձելումն, ամէն։

բ

/// եաց զնայ որպէս ինքն կամեցաւ։
//յ սուրբ առաքեալն և աւետարանիչն Քրիստոսի։
/// տե[մ]բերի ամսոյ և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։
.///նուաստ և անարժան քահանա, աշակերտ և [սպասաւոր սուրբ] ուխտիս Արշուառոն, որ ի դրան մայրաքաղաքիս Անոյ, որ աւանդեցի զսուրբ [Աւետարանս] ի նորին յուխտս, յիշատակ ինձ և ծնողաց մերոց և եղբարց և վարդապետաց /// ինս և ես ///*

## 152

### ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 87 (1181 թ.) Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 396

Նվիրող՝ Նացուալ

1ա Ի թուականիս Հայոց ՈՁԵ (1236), ես նուաստ ծառայ Աստուծոյ՝ Նացուալս՝ տվի զսուրբ Աւետարանս ի Սուրբ Կաթողիկէն ի յիշատակ ինձ և ննջեցելոց իմոց, ի ձեռն աստուածայպատիւ քահանայիցն՝ Դասապետին. Գերսամին, Սարգսի սերկեւազին։ Իմ յիշելով զերանութիւն մարգարէին, որ ասէր. Երանի այնոցիկ, որ ունի զաւակի Սիոն և ընդանի [յ]Երուսաղէմ. զայս երանութիւնս լվեալ իմ և յիշեալ զբազմութիւն ծովացեալ մեղաց, զի ոչ ունէի թոշակ յաւիտեանական ճանապարհին և բարեխաւս՝ ի սոսկալի դատաստանին, զի մեղք իմ բազում էին առաւել յոյժ։

Արդ ապաւինե[ալ] իմ առ ազատիչն ամենեցուն Յիսուս Քրիստոս, և զգանձնս աստուածայինս՝ զսուրբ Աւետարանս արարի ինձ աւգնական և բարեխաւս ի յաւուր դատաստանին։

Արդ, յերես անկել աղաչեմ զմանկունս սուրբ եկեղ[եցւ]ոյ, որ աւգտիք կամ աւրինակէք, սասաչիք լի բերանով և բոլորով սրտիւ. Տէր Աստուած, ի քո գալստենդ ողորմեայ Նացուալին և իւր ամենայն ննջեցելոց ի քո ահաւոր գալըստենդ, ամէն։ Եւ որք զմեզ յիշէք, յիշել լիցիք դուք ի Քրիստոսէ Աստուծոյ, ամէն։ Արդ, աղաչեմ զձեզ, որ կատարէք զյիշատակ մեր։ Արդ մի ոք իշխե[ս]ցէ զսայ հեռացուցանել ի Սուրբ Կաթողիկէն. կամ եպիսկոպոս կամ երեց կամ յիմ ազգականաց կամ յաւ[տ]արաց

* Դնում ենք նախորդին առընթեր մոտավոր ժամանակակից համարելով նրան։

ջանայ զսայ հանել ի Կաթողիկէն, եղեցի նայ մերժե[ա]լ և հեռաց[եա]լ ի յաւիտենից ուրախութենէն և մատնե[ալ] ի ձեռն սատանայի, և երկու կենաւքս նզովեսցէ ի սմանէ։

Քրիստոս Աստուած, հաստատ և շնորհաւոր առնէ զսուրբ Աւետարանս սուրբ Կաթողիկէին, և ի[ւր] սպասաւորացն՝ Պասկանն, Գերսամին, Սարգսի սերկեւագին, որդիցէ յորդիք։ Մի ոք ձեռն արկցէ, զի մի նզովեսցի...

## 153

## ՎԵՑՕՐԷԻՑ ԳԻՐՔ ԲԱՐՍՂԻ ԿԵՍԱՐԱՑՒՈՑ

Երուսաղեմ 1801 (1187 թ.), Պողարյան, Ցուցակ Զ, էջ 163

Ստացող՝ Հայրապետ
Վայր՝ Սիս

558—559 Ի թուականիս Հայոց ՈՁԵ (1236), ի դժընդակ ժամանակի, յանիծեալ յազգէն Քամա, կոչեցեալ անդադար*, ի պաշարեալ զմայրաքաղաքն Անի, եւ զամենիսեան ի սուր սուսերի մաշեալ, զորբութիւնսն անարգեալ եւ զգրեանս գերի վարեալ։ Եւ գիրքս այս կոչեցեալ Վեցաւրեա, բերաւ յաշխարհ Կիլիկեցիոց, եւ ստացա զգիրքս քահանա անուն կոչեցեալ Հայրապետ, պանդուխտ եւ յանարգ ժամանակի, յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց։ Որ կարդայք կամ աւգտիք կամ աւրինակէք, յիշեսջիք զծնաւղսն իմ կոչեալ անուն Տիրացու եւ Արքաաիկին, եւ զՀոռոմաիկին եւ զՎարդերեսն եւ զԿիրակոսն, եւ [զ]Խաչերես, եւ զ[Դաւի]դ, եւ զանարժան ք[ահա]նայս զՀայրե[պետ]ս, եւ մեղաց թող[ութիւն] խնդրեցէք. եւ որք յիշէք յիշե[ա]լ եղիցիք։ Եւ յաւտարութիւնս մեր վշտակցեալ ի քաղաքն Սիս, ծերութեամբ ծաղկեալ անուն առն Թորոս եւ կենակցին Տիկնուկ, եւ զաւակս նոցա] փոխեալ ի Քրիստոս տղական հասակաւ, եւ զՎասակ եւ զԿոստին, եւ մեղաց թողութիւն խնդրեցէք, եւ ամենայն յիշողացդ [Տէր] ողորմեսցի։

## 154

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սրվանձտյան, Թորոս Աղբար, Ա, էջ 118—119 (1175 թ.)

Ստացող՝

Զերկրորդ ստացիչ սուրբ Աւետարանիս զպարոն Կոստանդին զթագաւորահայրն զարմից նորընծայ թագաւորին Հեթմոյ, որ այն ինչ ամաց մետասանից ընկալեալ զթագաւորութիւն ի բարձրելոյն, և ի թուականութեանս մերոյս աղինս ՈՁԵ (1236) ստացաւ զսա պարոն Կոստանդին թագաւորահայրն և իշխեցողն ամենայն Հայոցս զարմից, և ընձեռեաց եկեղեցւոյ իւրոյ Սուրբ Փրկչին, զոր ինքն շինեաց բազում ծախիւք, ի յիշատակ իւր և աստուածապարգև շառաւիղացն իւրոց, զոր թէ ոչ Տեառն զաւրութեանց թողեալ էր մեզ զաւակ, իբրև զՍոդոմ լինէաք և Գոմորայ նմանէաք, զորս պահեսցէ Տէր Աստուած ընդ երկայն աւուրս և պարագայց ամաւք շնորհեսցէ եկեղեցւոյ իւրոյ և ամենայն հաւատացելոց իւրոց ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որ է աւր^հնեալ յաւիտեանս, ամէն։

* Բառախաղ է՝ ստեղծված «թաթար» և «անդադար» բառերի նմանության հիման վրա։

## 155

### *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 233—234, Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 919—928*

*Ստացողք՝* Գրիգոր *եւ* Վարդան
*Վայր՝* Գանձասար

ա

311ա *Բղխումն շահավետ շնորհի շարադրի և շարժեալ ի հայրաշարժ ժամանն...*

313ա *Եւ արդ, անսպառ կտակս եւ զգանձս անկողոպտելի, զանճառ երկինս, որ բարձեալ ունի զՏէրն բոլորից, մեք՝* Գրիգոր *և* Վարդան *հարազատք՝ տրուպ եւ նուաստ քահանայք, ըստ ձեւ տեսակի կրաւնաւորք գոլով, ստացաք զընդիրս աւաւել քան զամենայն ինչս պատուականս ձեռաց մարդկան ձգտելոց՝ զսուրբ Աւետարանս, բազում խերխեշիւք ըստ կարեաց մերում, յորս եմք տեղեակեալ ի գլուխ սահմանաց* Խաչենոյ, *ի սուրբ ուխ[տէն]* Գանձասար *մենաստանէ, որ [է հանգի՞ստ] դղեկիս* Սևադան Հ[ասան]ջալալայ, *առաջնորդութեամբ սուրբ ուխտիս տեառն* Յո[վհաննիսի *անյաղ]թ վար[դապետի և] աստուածարեալ /// ղ պսակ եկեղեցոյ Քրիստոսի։ Մաղթեմք ի յաւկտելոց ի սմանէ՝ յիշեսջիք զվերագրեալքս ի Տէր, նաեւ զանուանս զհարազատքս ուշիմս, եւ կարկառք մնամք աղաւթից ձերոց, եւ զծնողս մեր* զԳերդ Փառաշ *եւ* զՇահանդուխտ, *եւ զայլ եղբարսս եւ զքորս, եւ զազգայինս մեր, քան զի մեք* Գրիգոր *և* Վարդան, *որպէս զվտիտ և զընզար ամոլք ընգալաք զարաւրս մշակին երկնաւորի աւգնականութեա[մ]բն Քրիստոսի առ ի հերկեալ զակաւս սրտից աստուածայնոցդ եւ սերմանելոյ զընտիր ցորեանս, որ յագեցլոցդ էք ի Քրիստոսի շաեական պտղոյս։ Յիշեսջիք զմեզ և զամենայն յանձն արարե[ա]լս /// ի ձեզ, նաեւ զսրբասնեալ եղբարքս մեր /// [միաբան]ակիցքս համաւրէն՝ զծերսս եւ /// զորդիացեալսս սուրբ ուխ[տիս] /// յիշեալ լիջիք ի Տէր Յիսուսի ///անարգ նկար /// տես /// մաին եւ /// տաղեց /// Թվին ՈՁՉ (1237)**։

---

* *Ձեռագրի մասին Գ. Հովսեփյանը գրում է։*

*«Գրիգոր և Վարդան եղբայրները 1237 թվին ստացել են միայն և ոչ նոր գրել տվեալ այս ձեռագիրը, որովհետև իրենց հիշատակարանների մեջ գրչի և նկարչի մասին չեն խոսում։ Ուրեմն այս ձեռագիրը աւելի հին է քան 1237 թվականը։*

*Այս Ձեռագիրը մի ամբողջութիւն չէ. Նրա մեջ տեսնում ենք առնվազն երեք ձեռքերի եւ ժամանակների աշխատանք. Բնագիրը, որ ամենից հինն է եւ որի սկզբնազարդերն ու լուսանցքի*

բ

Ծաղկողք՝ Իգնատիոս, Հովսեփ

8բ Տէր Աստուած, ողորմեա մեղաւորիս։

գ

13ա Յիշեա, Տէր Աստուած զԻգնատիոս և զՅովսեփ:

դ

15ա Տէր Աստուած ողորմեայ բազմամեղիս, ամէն*։

ե

83բ Քրիստոս Աստուած ողորմեայ Գրիգորոյ և Վարդանայ [Փառա]շիճ որդեացն՝ ստացողաց սուրբ Աւետարանիս, ամէն։

զ

139ա Քրիստոս Աստուած ողորմեայ երկուց եղբարց պատուական քահանայից Գրիգորոյ և Վարդանայ, ստացողի սուրբ Աւետարանիս, ամէն։

է

236բ Երկուք եղբարք պատուականք և ընտրեալ քահանայք, որ ըստացան զսուրբ Աւետարանս ի հալալ ընչից իւրեանց՝ յիշատակ ինքեանց և ծնողաց իւրեանց, Վարդան և Գրիգոր՝ որդիք [Փառ]աշիճ: Քրիստոս Աստուած ողորմի նոցայ յիւրում գալստեանն։

ը

Նկարող՝ Աբաս

199բ Յիշեա զԱբաս նկարիչ տրուպ երեց**։

## 156

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7700

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Սիս

ա

294բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյ Սրբոյ այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

---

զարդերը տարբեր արվեստ և ոճ ունին քան Աբաս նկարչի պատկերները և Իգնատիոս մանրանկարչի և նրա աշակերտ Հովսեփի կողմից նկարված խորանները։ Նույնպես բնագրի գրչությունն ու մելանը տարբեր են մյուսներից...» («Յիշատակարանք», էջ 926—927)։

* Բ, Գ, Դ հիշատակագրությունները գրված են համապատասխան էջերի խորանների ներքին գերանների վրա. ծաղկողներ Իգնատիոսի և նրա աշակերտ Հովսեփի ձեռքով։

** Գրված է Ղուկասի նկարի տակ։ Նույնպիսի մակագրություն կա 4ա էջում։

Աստանաւր յանգելեալ աւարտեցաւ տառս աստուածախաւս Աւետա-
րանս կենսաբեր, յորում էր թուականս Հայոց ՈՁԶ (1237), ի հայրապե-
տութեան տեառն Կոստանդեայ և ի թագաւորութեան աշխարհիս Կիլի-
295 կեցւոց բարեպաշտ և աստուածասիրին Հեթմո, ‖ և յիշխանութեան աս-
տուածասէր պարոնին թագաւորահաւրն Կոստանդեա, եղև գրաւ սորին
ի մայրաքաղաքս Կիլիկեցւոյ Սիս, ընդ հովանեաւ Սրբոյ Աստուածածնին։

Ո՜վ սուրբ և աստուածահաճոյ քահանայք և սպասաւորք բանին Տեառն, յորժամ աւգտիք ի սմանէ ընթերցմամբ կամ գաղափարաւ կամ տեսանելով, յիշեսջիք ի սուրբ աղաւթս ձեր զբարեպաշտ թագաւորն մեր Հեթում և զաստուածասէր պարոնն մեր Կոստանդին, որ ստացաւ զսա ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ բարի իւր, և ծնաւղաց իւրոցն, [և] ամենայն ազգացն։ Յիշեսջիք ի Տէր և զբարի շառաւեղն զսրբասէր քահանայն զեղբայր թագաւորին զԲարսեղն, և զպարոն Սմբատ գունդստապլն, և զպարոն Աւշինն, և զԼեոնն, և զքերս թագաւորին՝ զսրբասէրն Հռիփսիմ, և զԹեփանաւ, և զԿալամառի, որպէսզի տացէ նոցա Տէր Աստուած բազմաժամանակեա աւուրբք յերկարեալ յայսմ աշխարհի առողջ հոգւով և մարմնով, և յետ ատի փոխադրելոյն յերկնից արքայութեանն արժանաւորեսցին, և յիշողքդ յիշեալ լիջիք յԱստուծոյ և ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Բ

140բ Գրողի սորա Գրիգորի, մեղապարտ քահանայի, նուաստ եւ ետին գրչի Տէր Յիսուս ողորմեսցի, ամմէն։

Յաւուր ուրբաթու սկսայ սուրբ Աւետարանս և յաւուր ուրբաթու կատարեցի, փառք Քրիստոսի։

Գ

294բ Իովաննէսի մեղա[պ]արտ քահանայի և սուտանուն գրչի Գրիգորի ողորմեսցի Քրիստոս Աստուած իւրում գալստեանն, ամմէն։

Դ

2ա Այս դեհիս գիրն շատ է, ապա քիչ*։

157

ԱԻԾՏԱՐԱՆ

Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 347—348

Գրիչ՝ Առաքել

ա

274բ Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Առաքելի քահանայի, տրուպ եւ անարժան ծառայի Աստուծոյ, ի թուիս ՈՁԶ (1237)։ Արդ՝ ով սուրբ

* Եւսեբիոսի նամակի երկրորդ կեսի խորանի տակ է գրված։ Այս խորանի մեջ բնագիրն շատ է, քան Նախորդում։

եղբարք, որք աւկտիք ի սմանէ, մեղաց թողութիւն շնորհեցէք ինձ եւ ծնաւղաց իմոց, եւ սխալանացս որ ի սմա է՝ թողութիւն արարէք, զի կարի անվարժ էի, եւ բազում մեղաւք եւ տրտմութեամբ լցեալ ի ծովացեալ աշխարհիս։ Եւ որով սրտիւ յիշէք եւ ձեզ ողորմեսցի բարեգութն Աստուած, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Ի ստոյգ եւ յնդիր աւրինակէ։

Բ

81ա Ո՛վ սուրբ եղբարք, յորժամ զաստուածաշունչ Աւետարանս կարդայք եւ լուսաւորիք՝ զմեղապարտ եւ զանարժան ծառայս Աստուծոյ զԱռաքել գրիչ յիշեսջիք ի սուրբ յաղաւթս ձեր, եւ Աստուած ձեզ յիշէ՝ որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Գ

130ա Տէր Աստուած, ողորմեա աշխատողի Առաքելի՝ սուրբ Աւետարանիս։

Դ

213 Զմեղապարտ եւ զանարժան ծառայս Աստուծոյ՝ զԱռաքել գրիչ սուրբ Աւետարանիս յիշեսջիք ի Քրիստոս, ո՛վ սուրբ եղբարք, աղաչեմ։ Եւ որ յիշէք՝ յիշեսցէ եւ զձեզ բարեգութն Աստուած, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Ե

292 Ո՛վ սուրբ առաքեալք, յորժամ նստջիք յերկոտասան աթոռ՝ բարեխաւսեցէք առ Տէր վասն գրողի սորա եւ ստացողի Ստեփանոսի եւ ծնողաց մերոց, ամէն։

## 158

## ԱՒԵՏԱՐԱՆ

Լալայան, Ցուցակ Վասպուրականի էջ 85—86

Վայր՝ Բոլորաձոր

Փառք ամենակարող և անքարժանելի Սուրբ Երրորդութեան, որ հասոյց զմեր տկարութիւնս ի յաւարտումն և ի վերջին գիծս սուրբ Աւետարանիս։

Արդ, գրեցաւ սա ի թվականիս Հա[յ]ոց ՁՃՁՁ (1237), ի Ձորիս Վայո, ի յանապատիս, որ կոչի Բոլորաձոր ///

## 159

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4823 (1224 թ.)*

*Գրիչ՝* Վանական վարդապետ
*Վայր՝* Տփխիս

155ա *Ես* Վանականս *գրեցի իմով ձեռամբս ի Տփխիս քաղաքի, ի դրան Սուրբ Քառասնիցս, զի գերեալ էր Աւետարանս ի* Տաւբշոյ *ի* Մողան, *ի Թաթարէն, և յետ երից ամաց ատ բերեալ անվնաս վաճառեցին ՚ի ՈՁԷ (1238) թուիս, զոր փառաւոր աւագէրէց* Սարգիս, *հասարակ պատուական քահանայիւք և աստուածասէր ժողովրդական տանուտէւք, բազում ծախաւք և աշխատութեամբ գնել ետուն ի մեզ, որոց տացէ Քրիստոս փոխադարձ զսուրբ արքայութիւնն և զդրախտն, արձակել ի կապանաց մեղաց, և հանել ի խաւարէ ի լոյս անմատոյց, ատէն պահելով ի շինութեան և ի խաղաղութեան, բարեխաւսութեամբ սուրբ Աւետարանիս և ամենայն սրբոց իւրոց, ամէն**։*

## 160

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 859—862, 929—930*

*Գրիչ՝* Գրիգոր Սսցի
*Վայր՝* Սանգող անապատ

ա

*Յիսուս Քրիստոս, աւգնեա վարդապետին* Գրիգորոյ, *ամէն։*

Բ

*Զ*Գրիգորիս Սքսցի՝ *զանպիտանս ի գրչաց և թարմատար երգեցող յիշեսջիք ի Քրիստոս, և ղստացաւղ Աւետարանիս՝ զվարդապետն* Գրիգոր, *և Տէր Յիսուս յիշողացդ և յիշելոցս ողորմեսցի, ամէն։*

*ՈՁԷ (1238) գրեցաւ ձեռամբ անիմաստ գրչի* Գրիգորիսի՝ *յանապատի* Սանղող *կոչեցեալ, ի ժամանակիս, յորում բարեպաշտ թագաւորն*

---

* *Սրանից ոչ շատ ուշ գրված է. «Գրիգոր յիշել աղաչէ, ո՜վ սուրբ եղբարք։ Աւետիսն է ազորմութիւն խնդրողն ի Քրիստոսէ»։*

*Հեթում և աստուածասէր թագուհին Զապէլ անուանեցին զսա իւրեանց հովանոց և դեռածին մանուկն իւրեանց էր ամի միոյ և ամսոյ, որոյ Տէր Աստուած տացէ ժամանակ բարի պարագայց ամաւք խաղաղանալ յայսմ կենցաղի։*

*Ո՞ պատուականդ իմ* Գրիգ[որ] *վարգա[պետ], յիշեա զեղկելիս* Գրիգ[որիս] *և սխալանացս, որ ի սմա, անմեղադիր լեր, զի այգ էր կար մեր։*

Գ

*Ցամի վեցհարիւրի*
*Եւթնից տասանց [և] եւթնեկի (1228)*,*
*Ցարքայութեանս* Հեթումի
*Քրիստոսաղաւր թագաւորի։*
*Եւ ի Հայոց հայրապետի՝*
*Սուրբ և ամբիծ հայրապետի*
*Որում* Կոստանդին *անուն կոչի,*
*Կատարեցաւ տառ մատենի,*
*Քրիստոսական պատուիրանի*
*Աւետարանս հռչակելի,*
*Ձեռամբ իմով* Գրիգորիսի
*Թարմատար գրչաւորի*
*Եւ սուտանուն երգեցողի։*
*Ի հրամանէ պատուաւորի*
*Սիրեցելոց վարդապետի*
*Եղբաւր մերոյ* Գրիգորի:
*Ի վայելումն պանծալի*
*Իւր ձեռնասուն աշակերտի,*
*Որ է շնորհաւքն Քրիստոսի*
*Առաւելեալ յամենայնի,*
Պաւղոս *անուն իւր ճանաչի։*
*Արդ, որք ի սոյն տառ պատուելի*
*Վայելէք սիրով ուրախալի,*
*Առցէ յաղագս աւրինակի,*
*Սա է ընտիր և գովելի,*
*Ի գրչէ յոյժ ճարտարի*
Ոտնայեցի Կոստանդընի
*Փոխակերպեալ յայս քարտենի։*
*Աղաչեմ յիշման բարի*
*Ապադայից մահու զկնի*
*Ջաշխատող սմին գրի*
*Եւ ղտռացաւղ սորին նիւթի՝*

---

* *Գ. Հովսեփյանը հավանական է համարում առաջին թվականը (1238), քանի որ այդ ժամանակ, իսկապես Հեթում թագավորի Լևոն որդին մեկ տարեկան էր, ուրեմն «Եւթնից»-ի փոխարեն պետք է լինի «Ութնից»։*

ԶԳրիգորիս ընդ Գրիգորի
Սրբաբան վարդապետի
Արժանի յիշատակի
Արարէք, սուրբք ի մարմնի.
Եւ բաբունին սուրբ եւ բարի՝
Ստեղծաւղն էիցս համայնի
Մեզ և ձեզ ողորմեսցի,
Որում պատիւ ընծայեսցի
Եւ փառք Հաւրն իւր անեղի
Եւ Հոգոյն համապատումի
Այժմ եւ յաւէտ որ յապաձգի
Ամեն ամենայնիւ յիրաւի։

## 161

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7739 (1001 թ.)

Ստացող՝ Ներսէս

ա

179բ Տէր Աստուած ողորմեա ստացողին։

Քրիստոս Աստուած բարէխաւսութեամբ սուրբ Աւետարանիս և բարեխաւսութեամբ սրբոց աւետարանչացն, և քո սուրբ ծննդեամբըդ եւ մարդեղութեամբըդ, և քո սուրբ չարչարանացդ, և քո սուրբ խաչելութեամբդ, և սուրբ թաղմամբդ, և քո սուրբ յարութեամբ, եւ սուրբ համբարձ[մամ]բդ ի յերկինս, եւ քո միւս անգամ սուրբ գալստեամբդ յահաւոր եւ ահեղ ատենին, գթայ եւ ողորմեայ Ներսէս էրիցու մեղապարտ քահանայի, որ եմ զառածեալ բաղու[մ] մեղաւք, և աստ պահեայ ի չարեաց, զի եմ տխուր մինչև ի մահ, վասն սգոյ։

Տէր Աստուած Յիսուս Քրիստոս բարեխաւսութեամբ Սուրբ Աստուածածնին և ամենայն սրբոց, ողորմեա Ներսէս քահանաի, և ծնաւղաց եւ եղբարց նորա։ Յով ոք անկանի, աղաչեմ զմանկունսդ եկեղեցւոյ և զընթերցող զսուրբ Աւետարանիս, լալով և աղերսիւ աղաչեմ, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, եւ ողջ լիք Տերամբ։

Թվին ՈՁէ (1238)։

## 162

### ԳԻՐՔ ԴԱՏԱՍՏԱՆՑ ՄԽԻԹԱՐԱՑ ԳՈՇԻ

Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 929—932

Գրիչ՝ Բարսեղ
Վայր՝ Հոռոմկլայ

Փառք Աստուծոյ յաւիտեանս, ամէն։ Ի թուիս ՈՁէ (1238) գրեցաւ Գիրքս Դատաստանաց առ ափն մեծ գետոյս, որ կոչի Եփրատէս, առ ստորոտ աստուածապահ դղեկիս Հոռոմկլայ կոչեցեալ, ի հայրապետու-

թեան տեառն Կոստընդնա, ի չար և ի դառն ժամանակի, յորում նշանք
երեւելիք եղեն, քան զի մեռաւ երիս սուլտանն՝ Հոռոմոցն և Շամբիս և
Մսրայն։ Եւ արդ գրեցաւ սա ձեռամբ Բարսղի մեղապարտի և փցուն գրչի,
հրամանաւ աստուածապատիւ և առաքելաշնորհ տէր Մարկոսի արհիե-
պիսկոպոսի՝ ի վայելումն անձին իւրո և զկնի ելից իւրոց յաշխարհէս՝
անջինջ յիշատակ իւր և ծնաւղաց իւրոց և եղբարց և ազգականաց իւրոց։
Եւ արդ էր սա ի գաւառէն Սուրբ Մարոյ, և ըստ խոտորելոյ մեր ի
պատուիրանացն Տեառն՝ մատնեցաւ աշխարհն Հայոց ի ձեռն խուժա-
դուժ ազգացն, որ կոչի Դադար, քան զի յաւարի եառ զաշխարհն ամե-
նայն առ հասարակ, բազում քաղաքս և աւանս, և բազում եպիսկոպոսք,
և վարդապետք, և քահանայք, և սարկաւագունք, և իշխանայք, և ազատք,
և շինականք, և բազում այլ եւս կանայք և մանկտիք, զոր ոչ կարէ ոք
ընդ գրով արկանել, զոր ըմբռնեցին ընդ ձեռամբ իւրեանց։
Եւ արդ եպիսկոպոսս այս, զոր յառաջ ասացաք զանունն, մատնեալ
եղեւ ի ձեռս անաւրինաց, նաեւ եղբարք իւր և ազգատոհմ իւր, և ոչ ուս-
տեք կայր աւգնական գերելոցն, բայց միայն այն, որ ազատեցան զմեզ
148ա արեամբն իւրով,‖զի ամենեքեան ի մեծ վտանկի կային առ հասարակ։
Եւ արդ զեպիսկոպոսս զայս իշխան ոմն ի գերելոցն, որո անունն Քուրդ
ասի, յիշատակ նորա՝ աւրհնութեամբ, ազատեալ յանաւրինացն, և սա
ցաւագին սրտիւ և բեկեալ անձամբ դիմեալ յայս աթոռս հայրապետա-
կան, ուստի և սրբասնեալ կաթողիկոսս Հայոց, զոր յառաջ յիշատակեցաք
զանունն, սիրով ընկալաւ զսա ըստ արժանոյն իւրոյ։
Եւ արդ ցանկացող այսմ տառիս, զոր է հաստատած յաշխարհս Կա-
յենոյ՝ ի մենաստանին Գետիկ, ի սուրբ վարդապետաց սահմանած, որոյ
148բ անունն Մխիթար յորջորջի։‖Եւ արդ եւ մեղապարտ ծառայս ձեր մոխրա-
թաւալ երեսաւք և արտասուագոչ սրտիւ աղաչեմ զամենեսեան, որք կար-
դայք կամ եղանակէք, զսուրբ եպիսկոպոսն զտէր Մարկոս, և զծնաւղսն
իւր, և հարազատ եզբարսն իւր, և զիս զանարժանս, և զծնաւղսն իմ յի-
շեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, և Աստուած առ հասարակ ամենե-
ցուն ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։
Ո՜վ պատըւական և բարի հոգւով և մարմնով, զմեղապարտ ծառայս
քո յիշեա և զծնաւղսն իմ ի մաքրափայլ յաղաւթս քո։

## 163

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ ՅՈՒՆԱԿԱՆ

*Հտմի Հայոց Հիւրանոց 15, Ակինյան, Ցուցակ., էջ 11*

Գրիչ՝ Ստեփանոս

ա

48բ Քրիստոս Աստուած, ողորմեա Ստեփանոսի գրչիս եւ Պետրոսի եւ
ծնողաց իւրոց։

բ

94բ Քրիստոս Աստուած, ողորմեա ստացողի գրոյս... եւ Պետրոսի եւ
ծնողաց իւրոց, եւ ինձ բազմամեղի Ստեփանոսի գծողի սորա։

գ

125բ Վերջացեալս ի գրչաց ստացող սորա զՍտեփանոս բազմամեղս, յաղաւթս յիշել... [Քրիստոս Աստուած] կեցոյ զՊետրոս եւ զծնողս իւր զՅոհանէս քահանա, որ զաւրինակն պարգեւեաց...։

դ

258բ Բարեխաւսութեամբ Թալիլա... բժշկիս զախթս եւ զցաւս մարմնոյ եւ հոգոյ Պետրոսի եւ Մարինէ եւ ծնողաց իւրոց եւ զմերս ամենեցուն*։

---

* Ակինյանը նկատի ունենալով դեկտեմբերի 5-ի հետևյալ հուշագիրը (99բ) «Եւ յայսմաւուր յիշատակ է սուրբ եւ երիցս երանեալ հաւր մերոյ վարդապետաց վարդապետին Գրիգորի, Թվ. ՈՁԷ (1238)»,— գրում է. «Նկատի ունենալով որ ձեռագրիս գրիչն Ստեփաննոս կկոչվի, կրնանք զանիկա Տէր Հուսկան համանուն որդւոյն հետ նույնացնել, և այս Գրիգոր վարդապետը նկատել Գրիգոր վարդապետ վկայասէրը, առաջնորդ Խաչգլուխ լեռան Ս. Սահակա վանից, որ ունէր բազմաթիվ աշակերտներ, որոնք խստակրոն ճգնաւորներ էին, սա կոչված է «Հրեղէն լեզու» (1239-ին)։ Ասոր աշակերտած պիտի ըլլա Ստեփանոս»։

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 7574

Գրիչ՝ Աստուածատուր
Վայր՝ Սեբաստիա

ա

148բ Փառք ամենասուրբ Երրորդութեանն և միում աստուածութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։

Յամի Ո-րդի Ձ-երորդի Ը-երորդ (1239) Արամազնեան տումարիս, ի կաթողիկոսութեան տեառն Կոստանդի Հայոց դիտապետի, և ի թագաւորութեանն Հեթումի Հայոց թագաւորի Հայկազնեան տոհմիս, իսկ ի բռնակալութեան Իսմայելեան ազանց միջերկրեայ կողմանցս Խայաթատինի սուլտանի որդւոյ Ալատինի, եւ եպիսկոպոսութեան մեծի հոյակապ մայրաքաղաքիս Սեբաստոյ տէր Գրիգորի, գրեցաւ հոգիանորոգ և աստուածաշունչ մատեանս Քրիստոսի տղայկութիւնն, ձեռամբ Աստուածատուրի մեղապարտի։

149ա Որ և յաւժարական կամաւք և արդար վաստակաւք ստացեալ զսա աստուածասէր և աղքատասէր և հիւրասէր Թէոդոս քահանայ, հանդերձ քրիստոսասէր ամուսնաւն իւրով և դեռաբոյս զաւակաւք իւրեանց՝ Ռըստագիսի քահանայի և սրբասնումդ և դեռաբողբոջ անձին՝ մանկան տիովք զարգացելովք Վարդի, այլովն հանդերձ, ի յիշատակ անձանց իւրեանց և զաւակաց, և ի Քրիստոս հանգուցելոց ծնաւղաց նոցին՝ Վարդ իրիցուն և Ծաղկին:

Եւ արդ, աղաչեմք զամենեսեան և խնդրեմք յամենեցունց, որք աւգտիք ի սմանէ ընթերցմամբ, մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ աշխատաւղացն ի սմա և ստացաւղացն Թէոդոսի քահանայի և իւրոցն ամենի, և Աստուածատուրի և իւրոցն ամէնի։ Ողորմեսցի Քրիստոս Աստուած ի գալստեանն իւրում և արժանի արասցէ զնոսա պարակից և դասակից լինել սրբոցն և արդարոցն խմբից, զոր յիշատակեցաք, ամէն։

Գրեցաւ գիր աստուածախաւս մատենիս այսորիկ ձեռամբ անարժանի Աստուածատուրի, ի հոյակապ քաղաքիս Սեբաստիա, մերձ ի լուսազարդ և աստուածաբնակ տաճարիս, որ ի ձեռն Սրբոյ Գրիգորի մե[ր]ոյն Լուսաւորչի հիմնացեալ և հաստատեալ է, որում ողորմեսցի գծողին և ստացողին, և զորս յիշատակեցաք ի Քրիստոսի տղայկութեան գիրքս, Քրիստոս Աստուած ի գալստեանն իւրում և ծնաւղաց նոցին և մասնակից

*սրբոց իւրոց արասցէ, և որք յիշէք աղաւթիւք, զի և ձեզ ողորմեսցի, և* Աւետիք *Հոյսանն, և կենակցի իւրոյ՝* Մամսքեդի, *և ծնաւղաց իւրեանց, և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։*

150ա *Բարեխաաութեամբ ամենայն սրբոց քոց, Քրիստոս Աստուած, ողորմեա աւրինակին շնորհողին* Վասիլ *քահանայի, և ծնաւղաց իւրոց* Խաչաճուն *քահանայի, և* Թորոսի *կրաւնաւոր քահանայի, և իւրոցն ամենի, ամէն։*

Բ

*Քրիստոս Աստուած, որ պսակեցեր զսուրբ թագաւորն* Թեոդոս *և զ*Կոստանդիանոս, *նոյն պսակաւն պսակեա և աւրհնեա զստացող սորա զտէր* Թեոդոս *և ծնաւղսն իւր, և զնորընծայն իւր զնոր քահանայն զ*Ստեփանոս *երէց, և զամուսինն իւր զ*Մինայ *իրիցկին, և զծնաւղսն իւրեանց, ամէն։*

Գ

181բ *Մաղթանաւք և բարեխաաութեամբ սրբոյն Յակովբայ‖*Մծբնայ *Հայրապետի և* Մարութեի *միայնակեցի, և* Մելեսի *եպիսկոպոսի, և ամենայն սրբոց քոց, Տէր Յիսուս Քրիստոս, ողորմեա ստացողի սորա* Թեոդոսի *քահանայի, և ծնաւղաց նորա, և ամենայն ազգաց նորա, և* Ռստագիսի *քահանայի որդւոյ* Թեոդոսի, *և գծողի սորա, և իւրոցն ամենի, ամէն*։*

Դ

*Բարեխաւսութեամբ երիցս երանեալ և մեծ խոստովանողի քո Սրբոյ*
251բ *Թէոդորոսի կրաւնաւոր ‖ քահանայի և որդւոյ Գոհարինէ, և Սրբոյն Գո-*
*հարինէի, և սուրբ եղբարց իւրոց, որ նահատակեցան ի* Սեբաստիայ *գա-*
*ւառի, Քրիստոս Աստուած ողորմեա* Աստուածատրի *մեղաւորի, և ծնաւ-*
*ղաց իւրոց, և* Թէոդոսի, *և քեռ իւրոյ* Գոհարի, *և զաւակաց իւրոց* Սաղ-
կին *և* Էսայէ, *և լսողացս ամ[ե]նի, ամէն**։*

Ե

870բ *Տէր Յիսուս Քրիստոս, աղաւթիւք և բարեխաւսութեամբ ամենայն սրբոց քոց ողորմեա ստացողի սորա* Թեոդոսի, *և ծնաւղաց իւրոց, և եղբարց, և քերց, և* Արստակիսի *որդւոյ* Թեոդոսի, *և դեռաբոյս զաւակաց իւրոց* Վարդերի, *և մին այլ զաւակին, ամէն։ Ու գծողի սորա* Աստուածատրի *և ծնողաց իւրոց ողորմեա Քրիստոս Աստուած, և զնչեա զձեռագիր յանցանաց նոցա և զլսողացս ամենի, ամէն։*

*Տէր Աստուած, ողորմեա աւրինակին շնորհողին**** Վրթանէս *եպիսկոպոսի և ծնաւղաց իւրոց, ամէն։ ՌՁԹ (1240)։*

---

* *Գրված է «Պատմութիւն սրբոյն Յակովբայ զոր գրեաց Մեղիքե աշակերտ Մարութեի միայնակեցի» հոդվածի վերջում։*

** *Գրված է «Վարք և վկայութիւն սրբոց Գոհարինեացն, որ կատարեցան ի փառս Աստուծոյ» հոդվածի վերջում։*

*** *Այս վերաբերում է վերջին երկու նյութերի օրինակին։*

Գ

302բ [Տ]էր Աստուած, ողորմեա Թեոդոս քահանայի և ծնաւղաց իւրոց և իւրոցն ամենի։

Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ [ա]մենայն սրբոց քոց ողորմեա [Մա]րտիրոսի, և կենակցի իւրոց [Նո]նոփարին, և ծնաւղաց իւ[ր]եանց և ամենայն ազգաց իւրեաց, [և գ]ծողի սորա և իւրոցն ամենի, ամէն*։

Է

309բ Տէր Յիսուս Քրիստոս, աղաւթիւք և բարեխաւսութեամբ ամենայն սրբոց [և ս] առաւել սուրբ առաքելոցն Պաւղոսի և աշակերտին իւրոյ Դիենեսիոսի եպիսկոպոսի ողոր[մեա] Թեոդոսի քահանայի, և Աստուածատրի [մեղաւ]որի գծողի, և ծնաւղաց իւրեանց /// որ ամէն ասէ, և նմա ողորմեա Քրիստոս։

Ը

323բ Տէր Յիսուս Քրիստոս, աղաւթիւք և բարեխաւսութեամբ ամենայն սրբոց քոց աւգնեա Ռստագիսի քահանայի, և ողորմեա տէր Թեոդոսի եւ Աստուածատրի մեղաւորի, և ծնաւղաց իւրեանց, Վարդ իւրիցու և այլոցն, և եղբարց իւրեանց և քերց, և համաւրէն ամենայն ազգականաց իւրեանց և ննջեցելոցն ամենի, ամէն։

Ընդ նմին և աւրինակի շնորհողին, և լսողացդ ամենի, և կարդացողին, ամէն, ամէն։

Թ

328բ Փառք փրկչին եւ յիշատակ ստացողին ամենամեղ դրչին և լսողին ամէն։

165

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 8906 (988 թ.)

Կազմող՝ Տիրատուր Կողբացի

175բ Ա[րդ ստացաւղ Աւ]ետարանիս այս պարոն Մխիթար որդի Գայլկոյն, կենակցաւ իւրով Հայոցիւն, ի յիշատակ իւր, եւ ծնողաց իւրոց՝ Գայլկոն եւ Աղէկաւիկնոշն, եւ կենակցին իւրոյ Հայոցին եւ ազգին, եւ զաւակի իւրեանց Աւետվորին, եւ այլ համացեղիցն, եւ ազգայնո[ց]ն առհասարակ։ Պատրոն Մխիթար եւ կենակից իւր Հայոցն, որ են բարի անուն եւ աղքատաց կերակրիչք, քաղցելոց հաց եւ ծարաւելաց բաժակ ցուրտ, մերկոց վերարկուք եւ ուտարաց յարկ եւ նաւահանգիստ։ Գնալով յաւրէնս Տեառն եւ առնելով զկամս նորա, եդին ի մտի ղասացելն ի պատմողէն, որ ասէ, Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն եւ ընդանեակ նորա՝ յԵրուսաղէմ։ Եւ սոցա ստանալով զպատգամս տէրունեան հրամա-

* Գրված է Յովհան Ոսկեբերանի «Վասն ապաշխարութեան և ողորմութեան» հոդվածի վերջում։

նին ի պահպանութիւն տանց իւրեանց և զաւակաց և փարթամութիւն հոգոց իւրեանց ի Վերինն Երուսաղէմ։

Արդ, որք ընթեռնոյք եւ որք լսէք եւ լուսաւորիք ի սմանէ, ասասջիք սրտի մտաւք Ողորմեա Աստուած ի քում գալստեանդ, Մխիթարա, եւ կենակցի իւրո Հայոցին, և ծնողաց իւրեանց, և զաւակաց, և ազգայնոցն առհասարակ, և այնոցիկ որք ի թաթառէն կոտորեցան, ամէն։

Արդ, կազմեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ Տիրատրո Կողբացոյ, ի թվի ՌՁԸ (1239)։ Ով ոք կարդայք զմեզ ի բարին յիշէ[սջիքի] Քրիստոս, ամէն։

## 166

## ՃԱՌԸՆՏԻՐ

**Երևան 2756**

Գրիչ՝ Ռստակէս

**ա**

31ա Տէր Յիսուս Քրիստոս Աստուած անպարագրելի և անհաս, ողորմեա Վարդեմաւրե, որ կայ հանգուցեալ առ դուռս Սրբոյ Վասլի, յորոյ անուն այսմ ննջեցելոյ, այս սուրբ կտակս գրեցաւ ընծայ Սուրբ Վասլիս, սակս փրկութեան հոգւոյ նորա։

Այղ և աղաչեմ զսուրբ քահանայսդ և զաստուածասէր տանուտեարքդ և զընաւին հաւատացեալսդ զմարսդ սուրբ հանդերձ երկիւղած սուրբ զաւակաւք, որ յայսմ հրաշագործ և փրկութիւնաբեր աւուրս ժողովեալ էք ի գաւիթ Սրբոյ Վասլիս, թողութիւն մեղաց հայցեցէք սրտի մտաւք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ Վարդեմաւրե հոգոյն, որ և զձերն թողու Քրիստոս ի հանդերձեալ գալստեանն իւրոյ, յորում աւուր գայ ի դատել զկենդանիս և զմեռեալս, յորում աւուր բանք սպառին ամենեցուն և գործք թագաւորէն*։

**բ**

59բ Յիսուս լոյս փառացն Հաւր, որ այսաւր համբարձար հայրենին քո փառաւք, ողորմեա Վարդեմաւրե և Սիմեովնի:

**գ**

66ա Որ բազմահրաշ իմաստութեամբ զարդարեցէր Քրիստոս Աստուած զտապանակ ուխտիս, որ բարեխորհրդաբար համեմատութեամբ զսուրբ կոյսն Աստուածածին, յորում տաղաւարեցար Աստուածդ բան, ողորմեա Վարդեմաւր Կողբացւոյ, որ և տարաշխարհիկ մեռաւ և թաղեցաւ ի դուռն Սրբոյ Վասլիս։

**դ**

74ա Քրիստոս որդի Աստուծոյ, որ այսաւր արտափայլեցեր զանճառելի զլոյս աստուածութեանդ քո ի Թաբովր լերինն, ողորմեա Կողբացի, Վարդեմաւրե հոգւոյս և հան նմա մասն ընդ սուրբս քո։

* Այս կարգի հիշատակագրություններ կան նաև 3 ա, 11 ա, 85 բ, 93 ա, 96 ա և այլ էջերում։

ե

96ա *Քրիստոս Աստուած, քո Սուրբ Նշանին բարեխաւսութեամբ... ողոր-մեա* **Վարդեմատն** *և զաւակաց նորա**։

## 167

## ՃԱՌԸՆՏԻՐ

**Երևան 2784**

Գրիչ՝ **Ոստակէս**

ա

6բ *Աղաչեմ զսուրբ տանմասերդ զՔրիստոսի պաշտամնեայսդ և զհաւատացեալ ժողովուրդսդ, մեղաց թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ Աստուծոյ ի սուրբ լուսաւորութեանս աւուր* **Վարդենէ** *հոգւոյն, որ կայ հանգուցեալ ընդ աջմէ կողմանէ առ դրան Սուրբ Վասլիս, յորոյ անուն սուրբ գիրքս սկսաւ ի յանաւգուտ որդւոյ իւրոյ և ընծայ նմին Սուրբ Վասլի։*

բ

32ա *Ծննդեամբ քո Քրիստոս, որ յայտնեցաւ անճառ միութեամբ ի փըրկութիւն հաւատացելոց քոց, ողորմեա* **Վարդեմատն** *և հանգո ընդ սուրբըս քո։*

գ

45ա *Մաղթողական աղաւթիւք սուրբ ճգնաւորին քո Քրիստոս Աստուած բարեխաւսութեամբ սուրբ Հաւրն հոգևոր Անտովնի Անապատականի ողորմեա տարաշխարհիկ ննջեցելոցն* **Վարդենէ**, *յորոյ անուն աշխատեցայ սմա։*

դ

78բ *Աղաչեմ և ես նուաստ գծաւղս* **Ոստակէս** *զաստուծապատիւ քահանայսդ և զհաւատացեալ ժողովուրդ ի Քրիստոս, զի յիշեսջիք առաջի Տեառն Յիսուսի Քրիստոսի զմայր իմ վախճանեալ, որ կայ եղեալ ի գերեզմանի առ դրան Սրբոյ Վասլի, ընդ աջմէ կողմանէ, ի ներքոյ կոփածոյ վիմի կարծ(ր) տապանի, յորոյ անուն սուրբ պատմութիւնս աւարտեցաւ ի փառս Աստուծոյ, ամէն, և Քրիստոս Աստուած իւր մեծ ողորմութեամբն զձեզ յիշէ յիւրում յահագին գալստեանն, ամէն։*

ե

94ա *Բարեխաւսութեամբ սուրբ և հրաշալի անարատ ծնողի քո Քրիստոսի, ողորմեա* **Վարդեմատ** *հոգւոյն, յորոյ անուն և այս սուրբ ճառս աւարտեցաւ ձեռամբ անպիտան և կարի նուաստ յորդւոյս։*

---

* *Հաջորդ համարի տակ բերված հիշատակարանները նույնպես այս ձեռագրին են պատկանում, որովհետև Մատենադարանի №№ 2756 և 2784 ձեռագրերը միևնույն Ճաշոցի բաղկացուցիչ մասերն են, որ վաղուց արդեն բաժանված են միմյանցից։*

Գ

155բ Բարեխաւսութեամբ սուրբ քահանայապետիս Գրիգորի և համաւրէն Հայաստանեայց Լուսաւորչի, ողորմեա Քրիստոս Աստուած անպիտան աղախնոյ քո Վարդենէ և այնոցիկ, որք հաւատով ասեն, ամէն*։

## 168

## ԱՒԵՏԱՐԱՆ

Կյուլեսերյան, Ցուցակ Անկիւրիոյ, էջ 883—880

Գրիչ՝ Սարգիս
Վայր՝ Դրազարկ

560—562 Փառք եզակի, եռահիւսակ դաւանութեանն, ապենիազին կատարեալ և անսահմանելի, Աստուծոյ Հաւր, և Աստուծոյ Որդւոյ, և Աստուծոյ Հոգւոյ յաւիտեանս, ամէն։

Շնորհիւն Աստուծոյ սկսայ և ողորմութեամբն նորին աւարտեցաւ եռահրաշ հոգիայզարդ Աւետարանս, զոր էր չաղկապեալ երանեալ աւետարանչացն ըստ բազմերանգ գունոց ի մի ոստայն անդելով հանճար, զոր արուեստակեալ անուշոցաց ծաղկանց իւղեփեցական կազմութեամբ, որ ըստ հոգւոյն յստակութեան իմանի, զանազան որակութեամբք գաղափարելով, ըստ յոքանց արփիացելոցն դասակցութեանց, առ ի յեկեղեցւոյ յարմարումն, յաւգիւ խաղաղութեամբ գլխոյն պատշաճեա[լ], զի յայտնանէ կատարելութիւնն։ Զորք աւետարանք, ի բազում պատճառէ. չորեքկերպեան կենդանիք՝ մարդ, առիւծ, ցուլ, արծիւ. չորք նիւթք աշխարհիս՝ հող, ջուր, հուր, աւդ, հակառակք անհաշտելիք, և սիրելիք անքակտելիք. չորք չորք գիր անուան երրորդութեանն՝ Հայր, Որդի, Հոգի. չորք գետք բղխեալ ի դրախտէն՝ Փիսոն, Գեհոն, Տիգրիս, Եփրատ. չորս անկիւնս և եղջիւրք սեղանոյն, չորք դէմք խաչին, և այլ բազում պատճառս, յորս գաղափարի չորեքեան աւետարանիչքս, զի թէպէտ և բազում բանք ի սոսա որ երեւին ներհակք միմեանց, այլ քաջ ճշմարտիք և յոյժ միաբանք միմեանց։

Արդ, գրեցաւ աստուածախաւս վարդապետութիւնս ի թուականութեանս Հայկազեան տումարիս ՌՁԸ (1239), ի մեծահռչակ անապատիս Դրազ[ա]րկի, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնի և Սուրբ Թորոսի և այլ համաւրէն սրբոցն, ի ստուգաբան և յընդիր աւրինակէ, ի հայրապետութեանն տեառն Կոստանդեայ աստուածահաճոյ հեղինակի, հեզի և խոնարհի, յիշատակ նորա աւրհնութեամբ, ի թագաւորութեան՝ որոյ անուն Հեթում յորջորջի, որոյ տացէ Տէր Աստուած ժամանակ բարի, և դեռաբոյս զաւակի նորա Լեւոնի, և տացէ յաղթութիւն ի վերայ թշնամ[եաց] իւրոյ, զաւրութեամբ սրբոյ խաչի իւրոյ։

* Ի հավերժացումն տարաժամ մահացած Վարդեմայր Կողբացու հիշատակի գրված այս անթվական հիշատակագրությունները գնում ենք 1239-ի թվաշարքում, Տիրատուր Կողբացու հիշատակարանին առընթեր, ուր խոսք կա մոնղոլների կողմից մեծ թվով կողբացիների կոտորված լինելու մասին։

Արդ՝ դրեցաւ ձեռամբ Սարգսի մեղապարտ և սուտանուն կրաւնաւորի, ի լուսաւորութիւն հոգւոյ իմոյ, և ի մխիթարութիւն կենաց և ի յիշատակ հոգւոյ իմոյ և ծնաւղաց իմոց և եղբարց և քեռց և ազգականց և ամենայն զարմից։ Արդ, ո՛վ սուրբ մանկունք եկեղեցոյ առագաստի և նաղէլի մաւրն Սիոնի և որդիք լուսոյ, որք աւկտիք ի լուսահրաշ կենաց բղխմանէս, յաստուածախաւս վարդապետութենէս, ի կենեղուտ և ի հոգեկեցոյց Աւետարանէս, ընթեռնելով կամ ունկնդրութեամբ, և կամ գաղափար առնլով աւկտիք ի սմանէ, և լուսաւորեալ մխիթարիք, յիշեսջիք ջերմն գթով և ցաւակցաբար սիրով, զմեղուցեալ և զփծուն գրիչս զՍարգիս և զծնաւղս իմ, զի թերեւս գտցուք ողորմութիւն ի գալստեան իւրոյ, և որ զմեզ յիշման արժանի արասցէ, և ինքն եղիցի յիշեալ առաջի Քրիստոսի։ Եւ խոշորութեան գրոյս և սխալութեան մի խստութեամբ, այլ ողորմութեամբ և ներելով /// զսաստն, և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս, ամէն։

## 169

### ՃԱՇՈՑ

Վիեննա 53, Տաշյան, Ցուցակ, էջ 251

Գրիչ՝ Կիրակոս
Վայր՝ Դրազարկ

ա

208ա Փառք քեզ...։ Գրեցաւ մատեանս աստուածային ի թուաբերութեանս որ ըստ Հայոց տումարիս ՈՁԸ (1239) եւ ի թագաւորութեանն Հեթմոյ բարեպաշտ թագաւորի, եւ ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ, ձեռամբ Կիւրակոսի ախմար եւ մեղապարտ գրչի, ի խնդրոյ երջանիկ եւ սրբասնեալ եպիսկոպոսի Տէր Գրիգորի՝ տեառն Կոստանդեա դրան սարկաւագի, եւ յաղագս բարեաց յիշատակի հոգւոյ իւրոյ եւ ծնողաց իւրոց՝ ստացաւ զսա անկողոպտելի գանձ, բարեաց ապաստան, եւ պարգեւէ զսա սուրբ ուխտիս Դրազարկու, ուր ·եւ գծեալ եղեւ սա, որպէս զի խրախասցին սովաւ մանկունք նազելի մաւր մերոյ Սիովնի՝ երգովք եւ եղանակաւք ի յարութեան յիսնաւրեա աւուրս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Արդ որք հանդիպիք սմա յինչեւիցէ պէտս՝ աղաչեմ աղերսանաւք յիշեսջիք սրտի մտաւք զտէր Գրիգոր ստացող։

բ

72ա Հնչողք երգա[րան]իս յիշեսջիք յա[ղաւ]թս զԳրիգոր զստ[աց]աւղ եղանակա[ցս]։

## 170

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 9365

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Խորին վանք

ա

3ա Զմեղապարտ գրիչս Թորոս և զամենագարշս յիշեսջիք ի Տէր աղաչեմ, աղաչեմ։

բ

3բ Յովհաննիսի Սիւնակեցի և անյաղթ ճգնաջան մենաւորի տէրունեան նշանին բարձողի ողորմեսցի Քրիստոս։

գ

6ա Զբազմամեղս և զամենայն սխալանաց ներքո անկեալս և զանգիտ կորուսեալս Թորոս և զիմսն ամենայն, վասն սիրոյն Քրիստոսի և իւր սուրբ տնաւրինական կրիցն աղաչեմ յիշել ի Քրիստոս սրտի մտաւք։

դ

6բ Ստացւողի սորա Յովհաննիսի աստուածոմակ խարազնազգեստ ճըգնաւորի ողորմեսցի Քրիստոս Աստուած և ծնաւղաց նորին, ընդ նմին և ամենասխալ մեղապարտիս Թոր[ոսի]*:

ե

Ստացող՝ Յոհանէս

2ա Յանուն Աստուծոյ, ես Յոհանէս աբեղա Ռատին որդի Բագուանցի, որ կամ յարդելական վասն բաղում մեղաց իմոց, աւդնականութեամբ Աստուծոյ դրել տուի սուրբ Աւետարանս ինձ յիշատակ և ծնողաց իմոց, և կուտամ ի վանքն, որ կոչի Խորին, և հայցեմ ի սուրբ եղբարցդ, որ առնեք ինձ ողորմութիւն վասն Աստուծոյ ու վասն ձեր հոգոյտ յամէն տարի Բ աւր պատարագ, կամ թէ յայլ վանք հանդիպի, կամ ի գեղ, թէ եպիսկոպոսի հանդիպի, կամ վարդապետի կամ զինչ և իցէ մարդոյ, որ ուզէ, որ պահէ սուրբ Աւետարանս, կու դնեմ ի վերայ պարտք Բ աւր պատարագ․ որ զայն ինձ ողորմութիւն առնէ, Քրիստոս Աստուած միոյ հարիւրապատիկ ձեզ

* Հիշատակագրությունները գրված են համաբարբառների խորանների ներքևի ազատ սյունակներում։ Մագաղաթյա ավետարանի գլխավոր հիշատակարանը չկա, բայց 1բ երեսում ռուսերեն, Պետրոս քահանա Պատկանովի ձեռքով (որը ձեռագիրը նվիրել է Կովկասյան գիմնազիային) գրված է, որ այս Աւետարանը գրված է ոմն կրոնավոր Հովհաննիսի կողմից 688 (1239) թ. Զարաիրկիչ վանքում, որը թուրքերեն վերանվանվել է «Բեշղազիրման» (այսինքն «հինգ ջրաղաց»)։ Ձեռագիրը երկրորդ անգամ կազմվել է 1150 (1701) թ. այդ նույն վանքում։ Մեզ թվում է Պ. Պատկանովը թվականը վերցրել է գրչի այն ժամանակ չկորած հիշատակարանից, իսկ մյուս տվյալները հետագա հիշատակագրություններից, գրված Ղրիմում,

պարգևեսցէ։ Որ կարդա կամ աւրինակէ, աղաչեմ վասն այս սուրբ Աւետարանիս, յիշել հաւատով ի թողութիւն մեղաց, որ ծախէ կամ քերէ զգիրս, կամ կտրէ, անէծք զՈւգաւին առցէ, և որ պահէ ու չառնէ զիմ պատարագն, ի Քրիստոսի դատաստանին վճարէ։

Աղաչեմ վասն Աստուծոյ անմեղադիր լերուք վասն պնդելոյս, զի շատ աշխատութիւն հասաւ յիս, ապա կարացի ի կապ բերել։ Աղաչեմ անմոռաց յիշել, այլ ինձ յիշատակչումն [իմ] քան զայս սուրբ Աւետարանս և ձեր սուրբ աղաւթքն, և զՔրիստոս որ մեզ և յիշողացդ ողորմեսցի ամէն։ Զմեղաւոր ծառայս Աստուծոյ Յոհան աբեղա յիշեսջիք և Աստուած զձեզ, ամէն։

## 171

## ՅԱՂԱԳՍ ԿԱԶՄՈՒԹԵԱՆ, ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՅ ԵՒ ՍՏՈՐՈԳՈՒԹԻՒՆՔ ԱՐԻՍՏՈՏԵԼԻ

*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 949 (1244 թ.)*

Գրիչ՝ [Ստեփանո՞ս]*

197ա Ով պատուական և սուրբ կրաւնաւոր Ռստակէ զսակաւ գիրս ընկալ և զփանաք գրիչս յիշեսջիր ի մաքրափայլ յաղաւթս քո, և Աստուած վայելել տացէ մաքուր անձինդ։

Գրեցաւ ի թ[ո]ւ[ին] ՈՁԸ (1239)։

## 172

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 935—938*

Գրիչ՝ Վարդան Խաչենեցի
Վայր՝ Հռոմ

Գրեցաւ սա և աւարտեցաւ ձեռամբ մեղապարտ Խաչենեցի Վարդան աբեղայիս, ի ՈՁԸ (1239) թուաբերութեան Հայկազեան տումարիս, ի տիեզերական մայրաքաղաքն Հռոմ, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի և քրիստոսեան սուրբ պատկերին, զոր Դաստառակ ասի, ի Հանգստարանիս Հայոց, ի դրան սրբոյ մաւրս լուսոյ Սանթա Մարէ, ի միոջ միեղէն եղբայրութեանս, որք վասն սիրոյն Քրիստոսի և սրբոց առաքելոց և վասն յուսոյն արքայութեան յանձին ունեն զկամաւոր աղքատու-

* Ձեռագիրը 1244 թ. տացել է Սմբատ Գունդստաբլը։ Հավանաբար այն սկսվել է ընդօրինակվել Ռստակեսի պատվերով, 1239 թ., իսկ հետո Սմբատ Գունդստաբլը շարունակել է տվել։ 325բ-ի ստորին լուսանցքում նույն գրչի ձեռքով գրված է հետևյալ հիշատակագրությունը, քաղված թերևս գաղափար օրինակից. «Գրեալ է սուրբ հայրապետն Գրիգորիոս, թէ յունվար ամիս որ եղաւ թիւ ՈԻԲ (1173), այնչափ ձին եբեկ և պաղեց, որ ընդ Եփրատ Կլայիս դիպան, և յամէն տեղի ի վերայ անցանէին, «և զարդ երկրի անցաւ՝ թռչուն և չորքոտանիք և ձուկն» («Յիշատակարանք» էջ 426)։

թիւ։ Որոյ է առաջնորդ տանս և եղբարցս Սարգիս Մարմաշինեցին, զորս յիշեսցէ Քրիստոս Աստուած զամենեսեան, որք կան յայս հանգստեանս. զմեծ և զփոքր, զառաջնորդն և զայլս ամենեսեան, և նոցունց սուրբ աղաւթիւք և այս սրբոցս առաքելոցս ողորմեսցի Քրիստոս Աստուած Վանական և իւր սրախողխող ննջեցելոյն, որ ոչ ընկալաւ զնոսա գերեզման։

## 173

## ԹՈՒՂԹ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Երևան 912 (1779 թ.)

Գրիչ՝ Գրիգորիս

Յիշատակարան սուրբ թղթոցս

33բ Ես Գրիգորիս մեղապարտ գրիչ և յետին ծառայ Քրիստոսի, գտի զսուրբ Թուղթս սուրբ տեառն Ներսիսի, գրեալ գրով սուրբ ձեռին իւրոյ, զկնի ԿԷ (67)* ամի վերափոխման իւրոյ յաստեացս, և ի հնացեալ և ի տեղւոջէ տեղ հատեալ թղթոցն, մեծաւ աշխատութեամբ և ջանիւ յերիւրեցի և նորոգապէս ի մատենիս գրեցի, զի մի այնպիսւոյ սրբոյն Աստուծոյ բան ի վայր անկեալ մոռասցի և աղաւաղեալ կորիցէ, այլ որպէս զամբար լուսափայլ պայծառացեալ ծաղկեսցի, յեկեղեցիս Հայաստանեայց անջինջ յիշատակաւ։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք կամ ընդօրինակէք, յիշեսջիք զմեզ աղօթիւք ի Քրիստոս և թողութիւն յանցանաց հայցեսջիք ի նմանէ, որ և ձեզ յիշեսցէ Քրիստոս յիւր անսպառ բարիսն և ընդ սուրբս իւր դասեսցէ, ամէն**։

---

* Շնորհալին մահացել է 1173 թ., ուստի այս ձեռագիրն ընդօրինակվել է 1239 թ. (1173+67)։

** Հիշատակարանը մեզ է հասել Թովմասի՝ 1302 թ. կատարած ընդօրինակությամբ, որն սկսվում է այսպես. «Ես նուաստ յամենայնի և յետին ծառայ ծառայից Քրիստոսի Թօմաս մն. ղապարտ և մեղսասէր և անիմաստ գրիչ, ըստ ըղձից փափագման ոգւոյ իմոյ գտի զԸնդհանրական Թուղթս տեառն Ներսիսի Հայոց կաթողիկոսի և գրեցի զսա ի լաւ և յընտիր օրինակէ, ի մեծիմաստ և հանճարեղ գրչէ Գրիգորէ, որ ի Հռոմ Կլայէն, որև նա գրեալ էր այսպես. (ինչպես վերևում)։ Հիշատակարանի վերջում նոր ընդօրինակողը դրում է. «Իսկ այժմ վերստին գաղափարեցեալ եղև Ստեփաննոս քարտուղարէ Կոստանդնուպոլսեցւոյ, ընդ հովանեաւ սուրբ Հիշտակապետաց եկեղեցւոյ, որ ի Կոստանդնուպօլիս, յամի Տեառն 1779, նամսեանն հոկտեմբերի 29»։





## 174

### *Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

*Երևան 218*

*Գրիչ՝* **Վանական**
*Վայր՝* **Հռոմ**

ա

264բ *Փառք Համագո և միասնական Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս
յաւիտենից, ամէն։*
*Ցամի վեց հարիւրորդի ութսըներորդի իններորդի (1240) թուականի
աւարտագործեալ եղև սուրբ և կենսատու Աւետարանս Քրիստոսի Ցիսուսի
Աստուծոյն մերոյ, զոր ընկալեալ յաստուածալուր վարդապետութենէ
երկնաւոր հովուապետին սրբոց աւետարանչացն Մատթէոսի, Մարկոսի,
Ղուկասու և սրբոյն Ցովհաննիսի աստուածաբանի, յառաջացեալքն յանա-*
265ա *պական և յանմահարար գետոյն չորից յորդախաղաց վտակաց յարբումն‖
և ի զովացումն ծարաւի անձանց և յաւրինեալ զսա թագ արքայական,
եգին ի գլուխ, մաւրս մերոյ կաթողիկէ սուրբ եկեղեցոյ, ի պարծանս հա-
նուրց հաւատացելոց և ի փառս փառաց թագաւորին։ Զոր իմ՝ բազմամե-
ղի և անարժան քահանայի* **Ստեփաննոս Համշինեցի**, *տկար մարմնով և
հոգւովս ես առաւել, ստացա զսա յիշատակ ինձ և գանձ անկողոպտելի, և
փրկանս մեղուցեալ հոգւոյն։ Ընդ նմին և ծնողաց իմոց՝* **Սոսթանէս** *քա-
հանայի հաւր իմոց, և մաւր իմոյ, և պապուն իմոյ* **Միքէլ** *քահանայի, և
եղբաւր իմոյ* **Գէորգա** *քահանայի, և* **Ճուան** *նաւտարին, և այլ արեան մեր-
ձակաց։*
*Արդ, ես* **Ստեփաննոս** *թափուրս ի գործոց բարեաց և լրացեալս ամե-
նայն յանցանաւք, զերեսս ի մայրն եդեալ աղերսահայց մաղթանաւք
խնդրեմ յամենեցունց, զի ո ոք և իցէ, որ ժառանգէ զսա յետ ելից մերոց
265բ յաստեացս, սրտի մտաւք կարեկցաբար իբրև եղբաւր սիր‖ելոյ աղաւթից
և յիշման արժանի արասջիք և թողութիւն մեղաց խնդրեսջէք առաջի մեղ-
սաքաւիչ սուրբ պատարագին՝* **Ստեփաննոսի** *և վերադրելոցն ի սմա։ Ցի-
շեսջիք և* **զԱւետիս** *փիլիսոփայն, որ յաւժար կամաւք ետ զաւրինակն գո-
վելի, տացէ նմա Քրիստոս մասն ի սուրբ առաքելոցն, և զերկնից արքա-
յութիւնն, և գրէ զնա ի գիր վերնագունին Սիովնի։*
*Եւ արդ, գրեցաւ սա ի յակնագիտակ և ի հռչակաւոր մայրաքաղաքս
Հռոմ, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցս Պետրոսի և Պաւղոսի, ի* **Հան-
գըստարանի տանս Հայոց**, *ի դրանս սուրբ Աստուածածնիս, ձեռամբ*

տկար և մեղապարտի միոյ Վանականն կոչեցելոյ։ Զոր այր մի աստուա-
ծասէր և բարեպաշտաւն ի Հոոմա, անուն Յակոբ, և ամուսին իւր ևս բա-
րեպաշտ և հոգևոր տաւին աւրըստաւրէ զպարէնիկն ի պէտս կերակրոյ
266ա վատշուեր մարմնոյս։ Արդ, այն որ առատն է ի տուրս‖պարգևաց, տացէ
նոցա վարձս ըստ վաստակացն, զոր յիս են արարեալ, ընդ միոյն հազա-
րապատիկ, և զերկնից արքայութիւնն պատրաստէ ի հանդերձեալ երկրին։
Ողորմեսցի Քրիստոս Աստուած այս կամաւոր աղքատացս, որ կան
աստ բազում տառապանաւք, արանց և կանանց, առաջնորդի տեղոյս
Սարգսի և այլ միեղէն եղբայրութեանս, և մասնակից արասցէ բարեվաս-
տակ մշակացն, նա և գրողի սորա Վանականին և իւր ծնողացն և նոցա,
որ սրով ելին յաշխարհէս։
Արդ, ըստ իմում կարողութեան արտասանեցի զսա, որչափ կարա-
ցի, և դու ընկալ զսա, ո՛վ մարդ Աստուծոյ և պատուական եղբայր, և
զեղկելիս յիշեա ի Տէր, և դու լիցիր յիշեալ ի հաճոյսն Աստուծոյ։

Բ

126ա Քրիստոս Աստուած, ողորմեա Ստեփաննոսի քահանաի ստացողի
սորա։ Ողորմեա Քրիստոս Աստուած և այս մաւրս հոգևորի, որ բազում
աշխատութեամբ ի ժամ դրելոյ սորա սպասաւորեաց ինձ յաւժար կա-
մաւք։

Գ

205բ Ո՛վ բան, և Հայր, եւ Հոգի Սուրբ, ողորմեա Ստեփանոսի քահանաի
ստացողի սրբոյ Աւետարանիս և իւր ծնողացն, եւ անպիտան գրողի սորա
Վանականի և իւրայնոցն։

Դ

Կազմող՝

78բ Ստեփաննոս արգելական և երջանիկ ճգնաւոր Քրիստոսի, ստացաւ
զսուրբ Աւետարանս յիւր աղքատութենէ, ի վայլումն կենաց և ի յիշա-
տակ հոգւոյ և ծնողաց իւրոց և յետ մահուան իւրոյ յով անկանի իւր պա-
տարագ առնէ Կ(60)* աւր։
Ստացողի սորա և կազմողի ողորմեսցի Տէր Յիսուս Քրիստոս։

Ե

Ծաղկող՝ Յովանիսիկ

267ա Ընդ նմին զԹափուրս ի բարեաց զանպիտանս և զախմարս զՅովա-
նիսիկս աղաչեմ յիշել ի Քրիստոս և դուք յիշեալ լիջիք ի միւսանգամ գա-
լուստն, և ծաղկիս անմեղադիր լինել, զի կար մեր այս է։

* «Կ»աւր» գրված է այլ գրով, բայց նույն թանաքով։

## 175

### ՎԱՐՔ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

*Սոփերք, ԺԴ, էջ 82—83*

**Հեղինակ՝**

*Ի թուականութեանս Հայոց վեցհարեւր ութսուն և ինն (1240) զկնի եւթանասուն եւ եւթն ամի* վերափոխման սրբոյ հայրապետին* **Ներսէսի,** *ի հրամանէ և ի յորդորմանէ սուրբ վարդապետին* **Յովհաննու,** *շարադրեցի զՊատմութիւնս սուրբ հայապետին Ներսիսի և նախնեացն՝ ճշմարտաճառ և անսուտ պատմութեամբ, ի ժամանակս քրիստոսապսակեալ բարեպաշտ թագաւորին* **Հեթումոյ** *յաշխարհիս* **Կիլիկեցւոյ,** *որ երրորդ է ի* **Լեւոնէ** *բարեպաշտ առաջնոյ արքայէ այսմ նահանգի։*

## 176

### ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐՔ ՄԽԻԹԱՐԱՅ ԳՈՇԻ

*Ջմմառ 180, Քեշիշյան, Ցուցակ, էջ 426*

**Գրիչ՝**

*Տէր Յիսուս ի վայելումն տացէ տեառն* **Վրթանիսի** *արհիեպիսկոպոսի եւ հոգեւոր վերադիտողի, եւ բազմաց բարիս շնորհողի, եւ մոլորելոց դարձուցչի եւ մեղուցելոց մխիթարչի։*

***ՈՋԹ. (1240).***

---

* *Ն. Շնորհալին մահացել է 1173 թ., ուստի 1240 թ. նրա մահվանից անցել է ոչ թե «եւթանասուն եւ եւթն», այլ «վաթսուն և եւթն» տարի։*





## 177

## ԳԱՆՁԱՐԱՆ, ՏԱՂԱՐԱՆ

*Փարիզ, 79(50) Երևան, մանրաժապավեն № 453*

Գրիչ՝ Յոհաննէս
Վայր՝ Դրազարկ

ա

402 Կատարեցաւ Երգարանս տաղաց ձեռամբ Յոհաննիսի յետին եւ յոգնամեղի, ի թուականիս Հայոց ՈՃՂ (1241), ի վանս մեծ ուխտին և հռչակաւոր անապատս Դրազարկ կոչեցեալ, ի թագաւորութեանն Հեթմոյ որդոյ Կոստանդեա, և ե* առաջնորդ ուխտիս մեծն Բասիլիոս, եղբայր թագաւորին Հեթմոյ, և դիրապետ և աթոռակալ իշխանութեան մեծ եւ հռչակաւոր դղեկին Հռոմկլային՝ տէր Կոստանդին արժանաւոր այնմ աշտիճանի։ Եւ իմ յանձին կալեալ և հետևեալ երաժշտական արհեստի, և ոչ ունելով տեղի և շնորհք, որպես արժա||ն է, այլ բազում ջանիւ և աշխատութեամբ հասեալ ի ծայր տառիս, ի կարի դժուարահամբոյր եղանակես կցրդիս, և այլ ապա տառապանաւք զգրեանս ի կապ ածի, վասն զի նախ գրեցի ուսմամբ, և զենի՝ գրելոց։

Եւ ապա ժամանեալ յերկիրն իմ ի սընդեան տեղ, և վասն զի ոչ ունելով տեղի և նախանձ վարժմանն այսորիկ, զի կարի մարդիկ յետս կացին ի յուս[ու]մնասիրութենե և յաստուածասիրութենե թոլացեալ ի վայր մեղկեցան ի սէր երկրային ինչ իրաց անցաւորաց, որ ոչ նա, ըստ Տեառն բանի, թե Ցեց ուտե և ուտիչ ապականե։

Եւ իմ տեսանելով զայն և կարի խոր վշտացեալ ընդ բազում աշխատանս իմ, զի տեղոջն յայնմիկ կարի անարգ եր և յոռի, և ոչ գտի տեղի սերման, վասն զի ապառաժուտ էր վայրն։ Եւ իմ կանխեալ վերը(ս)տին գոլով ի տեղի իմաստասիրաց և ուսումնասիրաց յերկիր Կիլիկոյ, որոյ Քրիստոս պահապան կանգնի և ինքն պատսպարե աջով իւրով, որպես յայն ժամ զԵսրաեղ, և ինքն եղիցի մարտակից ընդդեմ հակառ[ակ]աց իւրոց։ Եւ եղեալ իմ ճանապարհ և պատահեաց յազգմանե չարին և գողացան զիմ գրկունքն։ Եւ ապա եկեալ և ջանիւ ձեռնարկեալ և գրել շտապով։ Եւ ապա իբրև աւարտեցաւ, այլ հոգս ունելով վասն զի ոչ ունելով ոչ գանձարան, ոչ տաղարան, և ելեալ ի խնդիր աւրինակի հռետորական, և

* Ամենուր է-ի փոխարեն ե է գրում։

ոչ գտանելով, և ապա գտեալ զաղեկ աւրինակ՝յոյժ գեղեցիկ, զառն միոյ յերաժշտապետի Յուսէփ կոչեալ, և կարի հասու ամենայն իմաստից երաժըշտից մինչև ի բաւանդակն, որ յաւուրս ոչ գտանի հանգոյն։

Եւ արդ արարեալ սկիզբն Տաղարանիս և աւարտելով աւգնականութեամբ Աստուծոյ և Սուրբ Աստուածածնին, և այժմ աղաչեմ զամենեսեան ում և հանդիպի, անմոռաց ունելով ի մտի և թողութիւն խնդրել յանցանաց իմոց բազմաց, ինձ և ծնողաց իմոց և եղբարց իմոց կենդանեաց և ննջեց[ել]ոց, և քեռ իմոյ՝ ի Քրիստոսէ Աստուծոյ, և զԳրիգոր գրագիր, որ աւժընդակն եղև և գրեաց զՔարոզնին յիշեսջիք ի Տէր, և զՅուսէփ երաժըշտապետ, որ զաւրինակն անձանձիր շնորհեաց, յիշեսջիք ի Քրիստոս, և զՎասիլ փեսայ իմ, և զիմ հաւրաղբայ[ր]քն՝ զԲարսեղն, և զՍտեփաննոս, և զՄխիթոցն, և զնիկաւ, և զիմ հայրիկ հարազատիկ, և զմաւրփոխան իմ, և զամենեսեան յիշեսջիք ի Քրիստոս, և նա իւր քաղցր կամաւքն գթայ ի յիշեցեալքն և ի յիշողքդ, և նմա փառք յամենայն արարածոց իւրոց ի վերնոց և ի ն[եր]քնոցն, ամեն, ամեն*։

Բ

39ա Տէ՛ր, յիշեա զմեղաւք մեռեալ ոգիս քո սուրբ գալստեամբդ։ Վա՜յ կուրացեալ մտաց, վերնագիրն ի մեկ այլ դիհն պիտեր**։

Գ

65ա Ո՜վ սուրբ զինաւոր, ի յայնմ ի սոսկալի աւուրն, յորժամ բանք սպառին և գործք թագաւորեն, ես միայն մնամ ունայն ի բարի գործոց, դու լեր բարեխաւս վասն իմ առ Քրիստոս։

Դ

75բ Զիս մեղաւք մեռեալ ոգիս և զսրտէ խոցեալ անարժան ծառայ ծառայիցն Աստուծոյ յիշեցէք միով Տէր ողորմայիւ։

Ե

99ր Վա՜յ, աղմուկ ելաւ, խալտեցաւ։

Զ

94բ Վա՜յ լալ ապա եղաւ,
Նա միտք քո շփոթեցաւ։

---

* Ձեռագրի սկզբի մասը ԺԳ դարից է, բայց ուրիշ գրչի գործ, որի անունը չի պահպանվել, այլ միայն ներքոհիշյալ հիշատակագրությունները։ Ձեռագրի երկրորդ մասը եղել է Գանձարան և Տաղարան։ Գրիգորի գրած Գանձարանը («Քարոզնին») այժմ չկա, ձեռագիրն սկսվում է «ը» պրակից, որը Հովհաննեսի գրած Տաղարանն է։ Հետագայում ձեռագրին միացվել է մի այլ Գանձարան, որը թյուրիմացաբար համարվել է տաղարանին ժամանակակից։

** Վերնագիրը գրել է թերթի վերջում, գանձը՝ մյուս էջում։

## Է

136բ *Ո՜հ զիս զանարժանս և մեղաւք մեռեալ ոգիս, և զսրտէ խոցեալս, յիշեցէք միով Տէր ողորմայիւ, և Աստուած զձեզ յիշէ ի բարի։*

## Ը

164բ *Ո՜վ եղբարք, այս գանձիս աւրինակն խիստ անարհեստ էր, թէ ծուռ լինիցի մի մեղադրէք։*

## 178

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Սրվանձայան, Թորոս Աղբար, Բ, էջ 440—441*

Գրիչ՝ Թորոս
Վայր՝ Հռոմ

*Աստուածասէր եւ պատուական քահանայս* Աւետիս *ստացաւ զսա իւր քրտնածին աշխատանաց, ի վայելումն կենաց եւ յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնողացն, եւ ի բարեխաւսութիւն առ Աստուած,... ՌՂԱ (1242) ի մեծ եւ ի հռչակաւոր քաղաքս Հռոմ, ի դուռն գլխաւորաց սրբոց առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի՝ մեծ լուսաւորչաց, եւ Սուրբ Աստուածածնիս, ի* Տանս Հայոց Հանգստարանի, *ձեռամբ* Թորոս *ամենասխալ եւ բազմաբիծ դատապարտի, ի հայրապետութեան* Ստեփանոսի Ղազարուվանցւոյ, *որոյ ողորմեսցի Տէր Աստուած... եւ համաշունչ եղբարց մերոց սուրբ քահանայից՝* Յովհաննիսի, *եւ* Վարդանայ, *եւ* Խաչատրոյ, *եւ* Յովհաննիսի, *որ կամաւոր յաւժարութեամբ ընկալան զմեզ, ողորմեսցի Քրիստոս, եւ հանգուսցէ զիւրեանց հոգին,... եւ հայր* Պետուկին Մշեցուն,*... եւ* Գրիգորի Կաղսեցւոյ *ողորմեսցի Տէր Աստուած,... եւ որ յայսմ տանս հանգուցեալ են սուրբ հարք եւ եղբարք... եւ որ ի սմա բնակեալք են պանդխտութեամբ,... եւ աղաւթք սոցա ի վերա ամենայն աշխարհին եւ մեր եղիցի հանապազ...*

*Յիշեցէք զստացող սորա զ*Սիմէովն*... եւ զ*Թորոս *անպիտան եւ փցուն գրիչ...*

## 179

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 3528*

Գրիչ՝ Վարդան

ա

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն, ամէն։*

221բ *Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ ումեմն մեղաւորի* Վարդանա, *յուղորդ և ընտիր աւրինակէ, թեպետ և գծողս, և գիրս, ե նիւթս վատ է, ի թւականիս Հայոց ՌՂԱ (1242)։*

*Արդ գրեցաւ սա յանապատիս, ընդ հովանեաւ Սուրբ Կարապետիս և Սուրբ Ստեփանոսիս։ Եւ են ի սմա Բ(2) սուրբ վարդապետք՝* Քրիստոսա-

ՏՈՒՐ և ՎԱՐԴԱՆ, և առաջնոյ սուրբ ուխտիս ՅՈՒՍԻԿ, և այլ սուրբ եղբարք, որոց անուանքն ի դպրութիւն կենաց, որոց ողորմեսցի տէր Քրիստոս. ամէն։

Ողորմեսցի Տէր Աստուած գծողի սորա, և ծնաւղաց իւրոց, և եղբարց, և որդւոց, և բնաւ զարմից իւրոց, և ամենայն հաւատացելոց, ամէն*։

Բ

Այլ գրով

165բ Քրիստոս Աստուած, յորժամ գաս հայրական փառաւք ի նորոգելոյ զերկիր, ողորմայ ԹՈՓԽՐՈՅՆ** հոգոյն։ Սուրբ Աւետարանս յիշատակէ հոգոյ իւրոյ, ամէն։

---

* Ղուկասի Ավետարանի գլխազարդը հետագրբրական է. նկարված է եզ Ա սյունակի վերեվում, և մի հուշկապարիկ և արծիվ՝ ձուկը կտուցով և ոտքերով բռնած։

** 173բ էջում կրկնվում է նույն հիշատակագրությունը, միայն անվան փոխարեն գրված է «տիկնոջն», իսկ 105բ-ում՝ «Ֆրիտոնին»։

## 180

### ԴԱՒԻԹ ԱՆՅԱՂԹԻ ՍԱՀՄԱՆՔ ԻՄԱՍՏԱՍԻՐՈՒԹԵԱՆ

Երևան 1747

Ստացող՝ Պետրոս
Վայր՝ Հաղբատ

ա

121ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդոյ և Հոգւոյն Սրբոյ այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

ԶՍահմանաց զգիրս, զոր արարեալ է մեծ փիլիսոփայն Դաւիթ ընդդէմ հակառակողացն, որք կամեցան բառնալ զիմաստասիրութիւնն ակա-
121բ դիմեանցն Պիճռոնի և ճեմական‖ացն, խաղաղացոյց զնոսա ի խռովութէնէն և ասաց էթէ Գոյ իմաստասիրութիւն և է՛, և ճշմարիտ է, և զաւրինակս առ մեզ հաստատեաց Հայաստանեայս; Որոց ես ծեր ոմն Պետրոս սպասաւոր Սուրբ Նշանիս Հաղբատայ բաղձանաւք սիրոյ ետու գրել Յոհանիսի կրաւնա[ւոր] քահանաի, իմով արդե[ամբք]՝ առ ի յուսումն մակացողաց։

Արդ, որք աւգտիք ի սմանէ, յիշեցէք ի սրբամատոյց յաղաւթս ձեր զիս զմեղաւորս Պետրոս, և Աստուած զձեզ յիշեսցէ ի բարի, և ի կատարման սորա՝ ասացէք Ջերանի ում թողութիւն եղև մեղաց և զՔրիստոս որդի Աստուծոյ։

122ա Գրեցաւ գիրքս ընդ հովանեաւ Սուրբ Նշանիս Հաղբատայ, ‖ ի թուիս ՈՂԲ (1243), և աւանդեցաւ սմա։ Մի ոք իշխեսցէ հանել զսա աստի։

Բ

Կազմեցաւ և ձեռամբ իմով Պետրոսի*։

## 181

### ՎԱՍՆ ԴԺՈԽՈՑՆ ԵՎ ԱՆՔՈՒՆ ՈՐԴՈՑՆ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՅԳԵԿՑԻՈՅ

Զմմառ 430 (1323 թ.),- Ակինյան, Ոսկյան, Ցուցակ էջ 18—19

Հեղինակ Վարդան

100բ Զոր մեղաւորս Վարդան յաստուածաշունչ գրոց յարմարեալ գրեցի Աստուծով յաղաչելոյ եւ ի խնդրոյ շնորհազարդ քահանային Թադէոսի:

* Այդ կազմը պահպանվել է առ այսօր։ Բարակ տախտակ է, պարզ զարդարված կաշվով պատած։

*Ո՜վ քահանայք և ժողովուրդք Աստուծոյ, գիտացիք և ի միտս առէք զայս... Գրեցաւ սա ի թուիս ՈՂԲ (1243)**։*

---

* *Այս երկը դրվել է 1229 թ.։ Նրա 1234 թ. հեղինակային ընդօրինակության մասին վկայություն է պահպանվել Երուսաղեմի № 1426 ձեռագրում (տե՛ս սոտ, այգ թվաշարքում), իսկ 1243 թ. մասին՝ այստեղ։ Վարդան Այգեկցին իր գործերը արտագրելով բազմացնելու սովորություն ուներ։*

## 182

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7347 (1166 թ.)*

*Նվիրող՝* Գրիգոր որդի Հասանա
*Վայր՝* Խադայի վանք

342ա *Բա[րկութիւ]ն Աստուծոյ ե]հաս [մեզ եւ ծնո]ղաց [մ]երոց և քրիս-
[տոն]էից [խ]և աղգէս Նետողաց յարեւելից, [որ] Տա[տ]ար կոչին
[եւ զ]արծաթն սիրեն։ Եւ ելեալք [աս]պատակաւ յաշխարհն Պարսից
զբազում քաղաքս տապալեալ, եւ բնաշինջ արարեալ զթագաւորութիւն
Պարսից, եւ զայլ բազում գաւառս, զորս ոչ կարեմք գրով արկանեալ
զազգս տարեկուսի կործմանման հանուրց աշխարհի, որ եւ եհաս մինչեւ
յաշխարհս Հայոց եւ Աղուանից։ Եւ առեալ զանթիւ գաւառս եւ զքաղաքս
եւ զվանորայս, ի սուր սուսերի մատնեցին զազգն քրիստոնէից, զիշ-
խանսն մեծամեծս, եւ զռամիկ ժողովրդականս եւ զհրատագնաց տարս
եւ ըղսպասաւորս սրբոյ սեղանոյն Աստուծոյ զդասս քահանայական,
զմիայնակեցունսն եւ զճգնաւորս, տապալեալ եւ քանդեալ զեկեղեցիսս և
ըղսպասս սրբութեան, եւ զնշանս տէրունական յաւար առեալ անաւրի-
նացն, ի գերութեան վարել առհասարակ։ Եւ այս վասն զանազան մեղաց
մերոց։*

*Եւ ապա սակաւիկ մի թողացուցեալ նահանգս մերոյ եւ նուաճեալ
ի ծառայութեան ընքեանց զիշխանս, եւ զհեծելազաւրս ընդ ինքեանս
տանէին ուր եւ երթային, ընդ որս եւ գրաւեցայ ես՝* Գրիգոր, որդի Հասա-
նայ *եւ* Դոփին, *քուերորդի սպարապետացն Հայոց և Վրաց* Զաքարիայի
*եւ* Իւանէի: *Եւ անկեալ ընդ նոցին իշխանութիւն, որ եւ եհաս մեզ գնալ
զաշխարհս Հայոց եւ Հոռոմոց, որ էր [տի]րապետեալ ազգն Պարսից,
ասպատակեալ աւար հարկանէին զքաղաքս եւ զշինանիստ գեղորայս եւ
զվանորայս։*

*Մեք տեսանելով զանցս աղետից Պար[սից սահ]մանաց աւերման
342բ այնմ նահանգին, կէ սրոյ ճարակ տային զամենեսին‖եւ մեր կական
բարձեալ դողայ[աք տագն]ապէն զկործ[ան]մանն այնմ եւ ոչ էր ///
անին զինչ ձեռնահաս գոլոյ մեզ աւգնել քրիստոնէից, քանզի ընդ նոցին
տէրութեան էաք, այլ սակաւուց ոմանց, զոր գնելով ի նոցանէ, և զոր
ձեռաւք մերովք թաքուցանելով, այլ և ըղսպաս սրբութեան, զնշանս տէ-
րունական և զտառս աստուածային ոչ ձեռաւք մերաւք առեալ յաւարի,*

այլ գնեալ ի նոցանէ, բերաք ի սեփական տէրութիւնս մեր՝ զծաղկալից բուրաստան զԱւագ Տաւնականն եւ զմիւս այլ Տաւնական, զժողովոց Յոհանն եւ զԱւետարանն, եւ զաջն սրբոյն Ստեփաննոսի, զոր ի քաղաքէն Կաֆու բերաք եւ տուաք ի բնիկ հայրենական սուրբ ուխտս մեր Խաղայի վանիցս։

Իսկ ի միւսում ամի այլ եւս գնալով ընդ նոսա, հասաք մինչեւ ի մայրաքաղաքն Կեսարիայ՝ Կապադկացոց նահանգին, եւ անտի առեալ զԱւետարանս պարոնն իմ Աւագն եւ ետ ինձ, եւ իմ խնտալից եղեալ եւ բերկրեալ սրտիւ, զի ետ ինձ Տէր զիւր զաւետարեր քարոզն, եւ բերել ետու ի նախասացեալ սուրբ ուխտս։

Արդ, որք [առ]թիք, ընթեռնոյք եւ աւգտիք յաստուածաշունչ տառիցս եւ ի սուրբ վարդապետութենէս կենարարի մերոյ, յիշեցէք առաջի զենմանն Քրիստոսի զիս՝ զԳրիգոր, եւ զամուսին իմ զՄամխան, եւ զհարազատ որդիքս իմ զՀասան, զՍե[ադա եւ] զՅոհաննէս, եւ որք յիշէք, յիշեալ լիջիք ի Քրիստոսէ։

Եւ այս գործեցաւ ի թուականութեանն Հայոց ՈՂԳ (1244)*։

## 183

## ՅԱՂԱԳՍ ԿԱԶՄՈՒԹԵԱՆ ՄԱՐԴՈՑ ԳՐԻԳՈՐԻ ՆԻՒՍԱՑԻՈՑ ՍՏՈՐՈԳՈՒԹԻՒՆՔ ԱՐԻՍՏՈՏԵԼԻ

Հովսեփյան, «Յիշատակարանք», էջ 951—956, Ալիշան, «Հայապատում», էջ 481—482

Գրիչ՝ Ստեփաննոս
Վայր՝ Ատանա

ա

344բ Փառք երից անբաւից միոյ և միայնոյ անսկզբնականի երրեակի կատարելութեանն և տ[է]րութեան Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Գրեցաւ Գիրս Կազմութեան հանճարայեղծ բանի՝ Գրիգորի աստուածիմաստ անձին, ձեռամբ Ստեփանոսի նուաստի՝ անարուեստ գրչի և մեղապարտ անձին, ի խնդրոյ մեծ սպարապետին Հայոց Սմբատա՝ որդւոյ Կոստանդեա մեծ աթոռապահին Հայոց և եղբաւր թագաւորին Հայոց Հեթմոյ, որ և ստացաւ զսա ի յազատ արդեանց իւրոց՝ ի վայելումն իւր և իւրոցն, և ի յիշատակ հոգւոյ իւրոյ յետ ատեացս։

Գրեցաւ ի թուականութեանս ՈՂԳ (1244), ի թագաւորութեանն Հայոց Հեթմո, և յիշխանութեանն Հայոց իշխանաց իշխանին հոգելից ծերոյն Կոստանդեա, և ի հայրապետութեանն տեառն Կոստանդեա: Արդ, գրեցաւ սա ի քաղաքս, որ կոչի Ատանա, ընդ հովանեաւ սուրբ և յառաջ

* Հիշատակարանը խիստ մաշված է։ Տեղ-տեղ վրայից անցել են անորակ թանաքով, որը տարածվելով անընթեռնելի է դարձրել գիրը։ Ձեռագրի մագաղաթը վերանորոգող Լ. Ազարեկյանի ջանքերով մաքրելուց և մշակելուց հետո, գրեթե ամբողջությամբ հնարավոր եղավ վերծանել հիշատակարանը։

զաւրաւարին Թէոդոսի։ Արդ աղաչեմք զձեզ, ով սուրբ ընթերցող գրոյս, չմեղադրէք խոշորութեան գրոյս և սխալանացս, որ ի սմա եղեալ են. Թողութիւն հայցեցէք ստացողի գրոյս և գրողի սորա, ամէն։

Բ

198բ Զստացող բազմահանճար և նրբաբան իմաստիցս՝ զՍմբատ Թագաւորեղբայրս և զգումդուստապլս Հայոց՝ յիշեսջիք յիշատակ բարիս, ո՜վ մակացուք իմաստութեան, և Աստուած յիշողացդ ի բարիս տրիտուր բարեաց հարիւրապատիկ արասցէ, ամէն։

Գ

237ա Զմեղապարտս և զանպիտան գրիչս՝ զՍտեփանէ նուաստ յիշեսջիք ի Քրիստոս՝ աղաչեմ զձեզ, ո՜վ ընթերցողք իմաստասիրական բանիս, և Աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալուստն։

Դ

Ստացող՝ Սմբատ Գունդստապլ

91ա Զմեղաւոր հողս՝ ըզՍմբատ Հայոց ասպարապետս, յիշեշջիք ի Քրիստոս, և ինք[ն] յիշողացդ ողորմեսցի, ամէն։

Ե

211բ Ըզսակաւ առոգելս իմ բաւ է, անմեղադրութեամբ ընգալարուք զհանգէտէր գրաւղի և անհասկանալի է գրել*։

Զ

223բ Դաւանիմ ճշմարտապէս զորպիսութիւնք հաւգոյն ըստ ճշգրիտ եւոյ բանից սուրբ վարդապետիս և զայլսն խոտան ի բաց ընգեցի եւ տրուպս Սմբատ Գուն[դ]ուստապլ և աղաչեմ, որ լավ հասկանայք զբանս։

Է

334բ Փառքն է փառաւորին**
Եւ զաւրութիւն է հզաւրին,
Կարաւղութիւն է կարաւղին
Եւ քաջութիւնն՝ անյաղթ քաջին,
Ստեղծվածք գործ գործաւորին,
Հանճար անյաղթ վարդապետին։

---

* Ստորին լուսանցքում ուրիշի կողմից գրված է. «Ո՜վ ամենավսեմական ոգի բարոմի Վաճա[ռմ], յիշեա, զըսպարապետն, որ զկարմիր գիրն է գրել և տեղ չկայր որ սխալն գրէաք»։
** Գրված է Ա հիշատակարանից հետո։

Եւ որք ի գրոյս ունել կամին,
Նա հասկնալ ըղորդ բանին,
Եւ զարմանալ ամենեւին
Ընդ գործարան հակառակին։
Եւ փառատր առնել ի սմին,
Զնախախնամողն ամենայնին։
Զորս աղաչեմ զամենեսին՝
Խնդրել զյանցանսն Սմբատին՝
Հայոց Մեծաց Գունդ[դ]ստապլին:

Բ

349—50 Ո՜վ հանճարեղք իմաստ բանիս*,
Եւ մակացուք յայս արուեստիս,
Մտադրութեամբ միտ դիք բանիս՝
Անյաղթ գիտուն վարդապետիս,
Որ զընդհանուրն առեալ գոյիս,
Տընեալ բաշխեաց մարդկան ազգիս՝
Իբր զընթանուր զկենդանիս,
Բաժնեաց ի ձիս և ի ջորիս,
Զոր համանուամբքն առնէ տեղիս,
Իսկ բաշխելով ղանուանս գոյիս
Միաւորէ դարձեալ ի միս
Եւ յարանուամբք գոլ նըմանիս,
Որպէս յարի ազդէն արիս
Կամ ի միոյն նոյնն իսկ զարմիս։
Արդ ո՞նց պատմեմ ղոճ ղբանիս,
Երբ կարի խիստ կարճ է տեղիս,
Բայց թէ հազար կարճեալ բանիս
Հարկըն կոչէ զիս յայս տեղիս,
Յիշել ըզմայրն ամէն գոյիս,
Եւ ըզպատճառ ծնընդականիս՝
Զգոյացութիւնն, որով լինիմք
Եւ դոյանամք ի յաշխարհիս։
Եւ զըննէքին ընկերք սորին,
Որ սա գլուխ է տասնէկիս,
Զորս անուանեաց Արիստոտէլ
Ստորոգութիւնք տասն սեռիս,
Եւ զոր գըրեաց Արիստոտէլ
Նամակ և գիր զարմանալիս
Առ Աղեքսանդր իւր աշակերտ՝

* Ձեռագրի մեջ այս գրված է հետագայում, բազմաթիվ սխալներով, որից և առել է Գ. Հովսեփյանը։ Մենք օգտվել ենք «Հայապատումից» (էջ 481—482), նկատի ունեցել նաև «Յիշատակարանքը»։

Տիեզերակալ երեք կուսից,
Երբ հեռացեալ էր ի Նմանէ
Առնով զչորք կողմ աշխարհիս,
Զորս ընդհանրեաց ի քիչ տեղիս՝
Զգիտութիւնս անճառելիս։
350ա Եւ ժողովեաց ի միասին
Զիմանալիս և ըզգալիս։
Ընթերցէք և զարմացէք,
Որք ի խնդիր լինիք բանիս՝
Զմակագիր Բնութեան ազգիս
Գրիգոր Նիւսեա վարդապետիս,
Զոր ժողովեալ ի մի անդիս՝
Յարմարեցի ի պատէհիս։
Ես մեզօրս և ողբալիս՝
Տըրուպ զինուորս և եղկելիս՝
Սըմբատ անուն իմ Հայկազնիս՝
Տէր և պարոն Պապեռաւնիս՝
Եղբայր Հեթմոյ թագաւորիս
Եւ սպայապետ Հայոց գընդիս,
Նոյն և շինող ի բնէ նորոյ
Զանառ դղեակն անմարտելիս,
Որ ըստ իմոյ անուանս եդի՝
Սմբատակլայ քաշ ամրոցիս։
Զորս աղաչեմ զամենեսին,
Որք ընթերցող լինիք գըրիս,
Խնդրել պարգեւս ի Քրիստոսէ՝
Զթողութիւն մեղաւորիս,
Եւ պարգեւողն առատաձիր
Տրիտուր բարեաց տացէ բարիս,
Ի հայ ազգիս թըւականիս
Ի վեցհարիւր իննսուն երրորդիս (1244)։
Գրեցի վատթար ձեռաւս ես
Անշար ըզգիրս յիշատակիս։

Եւ Աստուծոյ մեծին, հզաւրին, անմահին, միայն կարողին, ընդհանուր գոյիցս արարողին և յետ ճշմարիտ հայրենի տէր յետմնաց մնացողին, զի սուտ և խաբեբայ է ասել այլ ումեք ապրել կամ վայելել կամ ճոխալ ի վայելչութիւնս աշխարհի, բայց միայն ի Նմանէ, այլ մահկանացուացս պարտ է ամենայնի խոկալ զմեռանելն և զմեռանիլն ըստ գրոյն և տեսակ[ան]աւն և գործականաւն զարդարել զբարս և զմշտնջենաւորին տոնակից լինել, որում պարգեւողին փառք յաւիտեանս, ամէն։

## 184

## ԹՈՒՂԹ ԳՐԻԳՈՐԻ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ ԵՒ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

*Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ, էջ 332—34, Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 961—962*

*Ծմբագիր և գրիչ՝* Գրիգորիս
*Վայր՝* Սիս

ա

*Փառք միայնոյ անծին և ծնելոյն ի նմանէ միոյն և բղխեցելոյն ի նոցունց էութենէ... Ի ժամանակս աստուածասէր և բարեպաշտ տերանց մերոց քրիստոսապսակեալ արքայիս* Կիլիկեցւոց *նահանգիս* Հեթմոյ *և քրիստոսասէր թագուհւոյն իւրոյ* Զաբէլի, *ի դառն և յանբարի ժամանակի, յորում անծանաւթ ազգն խուժադուժ, որ կոչին Թաթարք, յելիցն արեւու մինչեւ ի Դամասկոս և ի մեծն* Անտիոք *և մինչեւ յ*Իկոնիա *առին զտիեզերս յաւար և ի գերութիւն ապստակաւ, և անխնայաբար ի սուր սուսերի մաշեն զամենայն ազգս և զազինս, և զայս ոչ եթէ ի միում ամի կամ յերկուս արարին և առնեն, այլ այս ԻԵ (25) ամ է, յորմէ յետոյ եկին և յաւար առին զտիեզերս և ոչ ոք կարաց կալ ի դիմի նոցա ի գլխաւորաց. քան զի ի Տեառնէ է այս վրէժխնդրութիւն յաղագս պէսպէս չար գնացից մերոց, քան զի մեղաք Տեառն Աստուծոյ մերոյ յամենայն գործս մեր և անաւրինեցաք ըստ ամենայն գնացից մերոց և առ հասարակ ամենեքեան խոտորեցաք և ի միասին անպիտանացաք, ըստ մարգարէին, մանաւանդ որ զառաջնորդական ունին աստիճան, աւտարացն միանգամայն ի ճշմարտութենէ և ծառայք եղեալ չար տերանց, մամոնայի ասեմ և այլոցն, որ նմին հետեւին, և լռեցին լեզուք նոցա ի խրատուէ և ի յանդիմանութենէ և գրեթէ ամենայն բարեաց հետեւմունք լռեցին յամենեցունց։*

*Արդ, ի սոյն այս բազմավրդով ժամանակի, ի ձեռն վերոյ նշանակեալ թագաւորին* Հեթմոյ *խորագէտ իմաստութեամ և նախահոգակ հանճարեղութեան, մեք մնամք ի խաղաղութեան՝ որպէս կղզի ինչ ի յալեաց մնացեալ յանդորր, զորոյ զկեանս և զթագուհւոյն սրբոյ և աստուածապարգեւ զաւակաց իւրեանց տացէ բազմամեայ կենդանութեամբ եկեղեցւոյ իւրոյ սրբոյ ի հաճոյս կամաց իւրոց։*

*Իսկ ես՝ նուաստ և յետին ծառայ ծառայից Քրիստոսի՝* Գրիգորիս *մեղսասէր գրիչ հասեալ ի ծերութիւն և պակասեալ ի լուսոյ, ըստ ըղձից փափագման հոգւոյ իմոյ, աշխատասիրեալ գրեցի զմատեանս՝ բաղձալի ուսումնասիրաց անձանց, ժողովեալ զբազումսն ի մի հաւաքմամբ զսրբոյ և զտիեզերալոյս կաթողիկոսին և զերկրորդ լուսաւորչին Հայաստանեայց՝ զտէր* Ներսիսի *զթուղթսն, զորս բաւեցի փոքր ի շատէ գտնել միմեանց առընթեր, զի լիցի պատճառս հոգեւոր զբաւսանաց ինձ, որքան աստուածային կամաւք ի մարմին տաղաւարիմ, և զկնի հրաժարման յաշխարհէս առ երկնաւորսն՝ յիշատակ բարեաց մնալոյ յիման ի յայլս։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ վերծանութեամբ, լսողութեամբ կամ յաւրինակ առնելով, յիշել զմեզ և զծնողսն մեր...։*

*Գրեցաւ ի թագաւորական մայրաքաղաքն* Սիս, *ի թուականիս Հայոց*

ՌՂԳ (1244), ի կաթողիկոսութեան տեառն Կոստանդեայ, ի փառս Աստուծոյ։

Բ

Տէ՛ր Աստուած ողորմեա Գրիգորիսի գրչի և իմոցն, ամէն*։

185

ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 69, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 650—652

Գրիչ՝ Կիրակոս
Վայր՝ Հռոմկլա

ա

335ա Փառք քեզ անսահմանս անուն, անզուգական անձնաւորութիւն՝ Հայր և Որդի և Սուրբ Հոգի. յամենայն արարածոց ի բնաւից եղականաց, այժմ և յանզրաւ յաւիտեանս, ամէն։

Շնորհիւ ամենախնամ ողորմութեանն Աստուծոյ՝ յանգ ելեալ աւարտեալ աստուածախաւս մատեան կենարարին մերոյ Տեառն և Աստուծոյ, ի լաւ և յընտիր աւրինակէ, յաշխարհամուտ աթոռս Հռոմկլա, ընդ հովանեաւ Սրբոյն Գրիգորի, և Սրբոյ Նշանին Վանկոյ, և այլ բազմահաւաք սրբոցս, որ պաշտին աստ, ի թուականութեանս Հայոց ՌՂԳ (1244), ի յառաջնորդութեանս երջանիկ հովուապետին տեառն Կոստանդեա, և ի թագաւորութեանն Հայոց Հեթմոյ քրիստոսապսակ թագաւորի, ի խնդրոյ աստուածապատիւ սուրբ տեառնս իմոյ ընդհանուրց եկեղեցւոյ գլխու սուրբ կաթողիկոսիս, որ յոյժ եռափափագ սիրով հրամայեալ իմում նուաստութեանս գրել զսա, և իմ ըստ կարի շան տարեալ գրեցի և պատուական երանգաւք և յոսկւոյ սրբոյ զարդարեցի զսա՝ յուրախութիւն հարսին եկեղեցւոյ և ի վայելս սուրբ տեառնս իմոյ, և յիշատակ հոգւոյ իւրոյ, լաւ համարելով զսա քան զականս պատուականս, զի յերկրէ նիւթք ի նոյն ունին կորուստ և բան Տեառն մնա յաւիտեան։

Գրեալ ե[ղե]ւ ի դառն և ի խուճապուտ և ի կականման ժամանակի, յորժամ ել ազգն խուժադուժ, որ կոչի Տաթար, և սպառեաց զամենայն հասակ յերկրէ, և մնացեալքս՝ ի յերերս եմք ի յահէ նոցա։ Իսկ աստուածամեծար սուրբ տէրս իմ, որ թէպէտեւ ողբայ անմխիթար զբեկումն ժողովրդեան իւրոյ, սակայն ոչ կասի ի յուսոյ ակնկալութենէ Տեառն, մեծահաւատ լեալ իբրեւ զԱբրահամ յայսմ խռովայեղ ժամանակի՝ ետ գրել զսա յուրախութիւն սրտի իւրոյ։

* Ձեռագիրն այժմ գտնվում է Լենինգրադում (ИВ—А—96) որից է սույն հիշատակագրությունը։ Ձեռագրից պահպանվել է միայն երեք պրակ։ 18ր-ում ունի այսպիսի հիշատակագրություն. «Ես՝ ողորմելիս Ստեփանոս կռասամ զիմ լուսազարդ մատեանս ի դամբարան սուրբ Լուսաւորչիս, յիշատակ ինձ և Խաչատուրին և ծնաւղաց մերոց||(8 տող քերված) և խնամարկաւղքն աւրհնին յԱստուծոյ, և որք աւգտիք ի սմանէ զմ[ե]զ յիշեցէք ի մեղաց թողութիւն, զի և դուք յիշեալ լիջիք ի նոյն ողորմածն Աստուած»։

Արդ, որք վայելէք զսա կամ աւրինակէք, յիշեսջիք սրտի մտաւք զարժանաւոր հովուապետս մեր զտէր Կոստանդին և զծնաւղսն իւր զհանգուցեալսն ի Տէր, և զհարազատ եղբարսն իւր, որք և նոքա երթեալք ի ժողովս անդրանկաց, և զքուերս, զպատուելի քահանայն Աստուծոյ զԳէորգ, և զքրիստոսասէրն Գրիգոր, և զեղբաւրորդիս սուրբ տեառնս՝ զորդիսն Գէորգեա քահանայի՝ զշնորհալից քահանայն և իմաստուն և զհանճարեղն Թորոս, և աստուածաշնորհ պատանեակն իւր զՍտեփանոս, զի տացէ սոցա Տէր ժամանակս երկայնս և խաղաղականս։ Յիշեսջիք, աղաչեմ, զեղբարս Թորոսի քահանայի՝ զտարաժամ վախճանեալն ի տէր՝ զտէր Ստեփանոս, և զԳրիգոր քահանայ, և զմիւս այլ զեղբաւրորդին սուրբ տեառնս՝ զԳրիգոր, կարգեալ ի դրան թագաւորին Հեթմոյ, որ և նա փոխեալ ի Տէր։ Աղաչեմ յիշել զդժիւ զըստ հոգւոյ որդիացեալն սուրբ Տեառնս աւազանին ծնընդեամբ՝ զշքն..ղ և զամենավայելուչ պատանին զԼեւոն՝ զորդի թագաւորի Հայոց Հեթմոյ,.. զքրիստոսասէր թագուհին զԶապել, զի տացէ նոցա տէր Աստուած խա..ղութեամբ թագաւորել ի վերայ Հայոց ազգին։

Ընդ արժանաւոր յիշատակեցելոցս ի սմա յիշեսջիք ..արեան մերձաւորն՝ զառաքելաշնորհ եպիսկոպոսն զտէր Սիմէոն:

Աղաչեմ յոքնամեղ գրիչս Կիրակոս, որ և անյիշելի անուա.. յիշել զեղկելիս և խնդրել թողութիւն բազմամեղիս և ծնաւղաց իմոց, և առաւ.. ի պարգեւս առ հասարակ յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Բ

103բ Աստուածամեծար սուրբ կաթողիկոսն ամենայն Հայոց՝ զտէր Կոստանդին աղաչեմ յիշել ի Տէր, ո՛վ դասք մաքուր լուսերամիցս։

Գ

162բ Ջառ ի Քրիստոսէ կարգեալ հովիւ և գլուխ և առաջնորդ Հայոց ազգին զտէր Կոստանդին՝ զստացող սորա, յիշեսջիք ի Քրիստոս և ծնաւղըս իւր։

## 186

## ՈՏԱՆԱՒՈՐՔ ԵՒ ԹՈՒՂԹՔ ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ

Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ, էջ 385

[Գրեցաւ] թվին ՈՂԳ (1244), ի կաթողիկոսութեան տեառն Կոստանդեայ...

## 187

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երուսաղեմ 773 (1352 թ.), Ն. Պողարյան, Ցուցակ Գ, էջ 221 (1352 թ.)

149ա Թուղթ Հայոց կաթողիկոսին Կոստանդեայ, զոր գրեաց յաստուածապահ դղեկէն Հռոոմկլայէ առ թագաւորն Հեթում, ի մայրաքաղաքն Սիս. պատասխանի թղթոյն որ ի պապէն բերաւ առ թագաւորն Հայոց Հեթում ի ձեռն ծառ Վիկոթին, որ կոչէր Տիմանչ դիկաթ, ի թվին Հայոց, ՈՂԵ (1246)*. Գրեցաւ ի ձեռն արդիւնական վարդապետին Վարդանայ յարջ-րեալ։

## 188

### ՎԱՐՔ ՍՐԲՈՑ

Երուսաղեմ 97, Պողարյան, Ցուցակ Ա, էջ 305—306

323ա Ի բաղձանաց բարեպաշտ թագաւորին Հայոց Հեթմոյ և քրիստոսասէր հաւր նորա իշխանաց իշխանին Կոստանդեայ, դրուատ գովեստի պատմագրաբար ասացեալ մեծին Վարդանայ Արևելցւոյ ի սուրբ հայրապետսն Հայոց Սուրբն Գրիգոր Վկայասէրն և ի տէր Գրիգոր կաթողիկոս և եղբայր նորին ի սուրբ Ներսէս՝ ի թոռունս Սրբոյ Լուսաւորչին։

## 189

### ՆԵՐԲՈՂԵԱՆ Ի ՍՈՒՐԲ ԱՌԱՔԵԱԼՆ ԹԱԴԷՈՍ ԵՒ Ի ՅԱՐԳԱՐ ԱՐՔԱ ՀԱՅՈՑ ԵՒ ԱՍՈՐՈՑ ՍՐԲՈՑՆ ՅԱԿՈԲԱ ՍՐԶՈ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Երուսաղեմ 1365, Պողարյան, Ցուցակ Գ, էջ 644

Թարգմանիչ՝ Շմոն Ասորի

131ա Ի ՈՂԵ (1246) թւիս Հայոց թարգմանեցաւ ճառս յԱսորոց, ի ձեռն Շմոնի քահանայի Ասորւոց, հրամանաւ Վարդան Վարդապետի։

---

* Նույնը կա նաև Երուսաղեմի № 999 ձեռագրում, որտեղ միայն «եա»-ի փոխարեն «էա» է։

## 190

## ՎԱՄՆ ԱՌԱՋԻՆ ԽՈՐՀՐԴՈՅՆ ԵՒ Ի ՎԵՐԱՅ ՆԱՀԱՊԵՏԱՑՆ ԵՒ ՄԱՐԳԱՐԷԻՑՆ ՍՐԲՈՅՆ ՅԱԿՈԲԱՅ ՍՐԺՈՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

*Երուսաղեմ 1365, Պողարյան, Ցուցակ Դ, էջ 644*

157ա *Զայս ճառ ներբողենից Սրբոյն Յակոբայ և այլ յոլով բանք թարգմանեաց վարդապետն* Վարդան:

## 191

## ՏԱՒՆԱԿԱՆ

*Փարիզ 110 (1194 թ.), Երևան, մանրաժապավեն 876*

*Նվիրող՝* Թերան
*Վայր՝* Անի

180ա *Յանուն Հաւր, յանուն Որդոյ, յանուն Հոգոյն Սրբոյ, ես՝* Թերանս Հանեցիս, *որ գնեցի ի յիմ աշխատանաց գխանձլիս* Պատմայգիրքս* Վարբերին *ազնականութեամբն՝ յիշատակ ինձ և ծնաւղաց իմոց և* Վարբերին *և ծնաւղաց իւրոց, և դրի ի Սուրբ Գրիգոր, և տվի զՍուրբ Սարգսի զաւուրն զպատարագն* Վարբին, *որ իսկի չխափանի։ Ու երէց, որ ի Սուրբ Գրիգոր կենայ և զգիր անփութ արնէ, նայ ինքն ջնջեսցի ի դպրութենէ կենաց և նզովի ի հայրապետացն և ի մարտիւրոսացն, և ի առաքելոց և ի քառասնից։*

*Գրեցի թվիս Հայոց ՈՂԵ (1246), հաստ**։*

---

** Անհասկանալի է։*

*** Թերևս «յաստ», որովհետև «յԱնի» գրում է «Հանի» ձևով։ Ուրեմն՝ վայրը Անի քաղաքն է։*

## 192

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4528 (1851 թ.)*

Գրիչ՝ Ջանցլեր Լևոն Բ թագավորի
Վայր՝ Սիս

14բ *Փառք ամենասուրբ Երրորդութեան Հօր և Որդոյ, ամէն, որ եմ հաւատով քրիստոնեայ, ազգաւ հայ, կարգաւ քահանայ, արհեստիւ գրիչ, ըստ արքունական պատւոյ՝ ջանչլեր առաջի թագաւորին Հայոց Լևոնի, ի* Կիլիկացւոցն, *հանդէս ըստ տարբերութիւն կենցաղոյս բազում պատահման բարոյ և չարի դիպեալ և բազում բերկրութեանս և ընդ չարչարանս անցեալ, հասեալ ի ծերութեան, ի թուականիս ՈՂԶ (1247), ի հայրապետութեան Հայոց տեառն* Կոստանդեայ *և (ի) թագաւորութեան* Հեթ*մայ բարեպաշտի, որ յերկրորդ է ի* Լէոն *թագաւոր[է], որ ի* Ռուբենեանց, *և աստուածասէր թագահոյն իւրոյ* Զապիլի, *որ դուստր էր թագաւորին* Լեոնի, *և դեռաբոյս և զուարթածաղիկ որդւոցն իւրոց* Լևոնի *և* Թորոսի, *գրեցի աշխատասիրաբար սուրբ Աւետարանս ի* Սիս *քաղաքն, ի չար ժամանակի, յորում Թաթարք բազում զօրօք յելիցն արեգական մինչև մուտս, քանդեալ կործանեցին և գերեցին, և անթիւսն սրախողխող||| արարեալ։*

*Իսկ աստուածասէր թագաւորն* Հեթում *յառաջագոյն առաքեաց և ետ նոցայ դաշինս հաշտութեան և ընծայիւք, թերևս այնու կարասցէ ապրեցուցանել զինքն և հաւատացեալս Քրիստոսի։ Ոչ եղև հնար զի նահատակեցան երից եղբայր իւր* Սմպատ *քաջ սպարապետ Հայոց գնդին* ։*

## 193

### ԹՈՒՂԹ ՊՕՂՈՍԻ

*Երևան 6273, էջ 37բ—38ա*

Գրիչ՝ Ներսէս
Վայր՝ Ակներ անապատ

*Փառք... Աստանօր յանգ ելեալ կատարեցաւ լուսեղէն և հոգեպատում սուրբ վարդապետութիւնս Պօղոսի առաքելոյն, ի խնդրոյ երից համաշունչ*

* *Վերջին տողը տարակուսանքի տեղիք է տալիս։ Սմբատ Սպարապետը մոնղոլների կողմից չի նահատակվել, այլ մեռել է սույն հիշատակարանի գրությունից շատ հետո՝ 1276 թ.։ Պետք է ենթադրել, որ երբ Սմբատը 1247-ին մեկնեց մոնղոլների մոտ բանակցություններ վարելու նպատակով, անստույգ լուրեր են տարածվել նրա նահատակության մասին, և հիշատակարանի հեղինակը գրանցել է իր լսած լուրը, հնարավորություն չունենալով ստուգել այն (Սմբատն իր դեսպանությունից վերադարձավ 1250 թ.)։*

եղբարց մերոց՝ Բարսղի հոգեզուարթ և բարեբուն քահանայի, և երկու համարնակ և միանձն, ճգնազարդ և միասնունդ եղբարց Հանիսի և Մատթէոսի, որ է[ն] գաւառականք իմ յՕկեղեաց գաւառէ, և ստացան զսա ի վայելս ե ի զբօսանս անձանց իւրեանց, և յետ մահուան՝ յիշատակ հոգւոյ իւրեանց։ Յիշեսջիք յաղօթս ձեր զյառաջասացեալ եղբարքս մեր զԲարսեղ քահանայն և ըստ հոգւոյ աւագ եղբայր մեր, ընդ նմին և զՀանէսն և զՄատթէոս խաչակրօն միանձունք, ևս առաւել յիշման արժանի արասջիք զհոգեւոր հայրն իւրեանց և մեր ամենեցուն զՏիրացուն՝ զվեհից վեհագոյնն և զբարի օրինակն ամենայն առաջնորդաց, որ էր սպասաւոր սուրբ ուխտիս Ակներոյն, և յանցելումն տարւոջս յայսմիկ վերափոխեալ կոչեցաւ ի Տեառնէ ի խորանս լուսոյ, և եթող մեզ սուգ մեծ և անմխիթար։ Յիշեսջիք և զՎարդան քահանայն՝ զկոկող նիւթիս, և զծնողսն իւր...

Գրեցաւ ի թվիս Հայոց ՈՂՁ (1247), ձեռամբ Ներսէսի, յաշխարհիս Կելիկեցւոց, ուխտի որ կոչի Ակներ անապատ, ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ, և հօր իւրոյ պարոն Կոստանդեայ, և եղբարց իւրոց, և ի կաթողիկոսութեան երջանիկ հայրապետի Կոստանդեայ, որոց հայցեմք ի յամենողորմ Տեառնէն երկայնաձիգ և առանց ամենայն փորձութեան ժամանակս, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Տէր Աստուած, ողորմեայ ստացողաց այսմ լուսազարդ մատենիս Բարսղի հաւատարիմ և սիրելի եղբօրն մերոյ և ծնողաց իւրոց, ընդ նմին և շնորհազարդ հօրն մերոյ Տիրացուիս, որ յայսմ ամի կոչեցաւ ի քէն, և ձեռնասուն աշակերտաց նոցա Հանիսին և Մատթէոսին և մեղապարտ գրչիս։

## 194

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Մուրադյան, Ցուցակ Մշո Առաքելոց վանքի, էջ 6*

Գրիչ՝ Խաչատուր
Վայր՝ Անդրեասանց վանք

Փառք ամենասուրբ Երրորդութեան Հաւր եւ Սուրբ Հոգւոյն յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Գրեցաւ սուրբ Աւետարանս, որ է հրաման եւ օրէնք փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ եւ Տեառն մերոյ, ի թուականութեան հայոց ՈՂՁ (1247), ի գերահռչակ անապատիս որ կոչի Անդրեասանց, ընդ հովանեաւ սրբոյ մաւրն մեր եւ Սուրբ Նշանիս, եւ ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Գէորգեա, ի դիտապետութեան տեառն Կոստանդիա, եւ ի թագաւորութեան Հեթմոյ բարեպաշտի, որդւոյ Կոստանդեա, ձեռամբ անարժան եւ մեղաւոր քահանայի եւ անպիտան կրաւնաւորիս Խաչատրոյ, յոյժ տխմար եւ անարհեստ գրչի..., յաղագս կարաւտութեան եւ ի զբաւսանս անձին իմոյ, եւ ի յիշատակ ծնաւղաց իմոց ի Քրիստոս հանգուցելոցն։

Արդ աղաչեմ զամենեսեան, ո՜վ սուրբ եղբարք ///

## 195

### ԱԻԵՏԱՐԱՆ

*Հովսեփյան, Ցիշատակարանք, էջ 981—934*

Գրիչ՝ Կիրակոս
Վայր՝ Հռոմկլա

ա

*Փառք քեզ անսահման անուն և անզուգական անձնաւորութիւն, Հայր
694ա և Որդի և Սուրբ Հոգի յամենայն արարածոց, ամէն։‖Որք բաց ունին ի
յստակ հայեցուածս զոգւոց աչս, նոքա զընաւ վայելս աշխարհիս առ
ոչինչ համարին՝ ի սէր բանին դեգերեալք և առ աստուածային պատուի-
րանին պահողութիւնս, որով առաքինացեալք երանին [ի] յոքունց և բա-
րեբաստք լինին։ Ուստի և զաստուածապատիւ և զառաքինաջան երիցս
694բ երանեալ եպիսկոպոսս մեր զտէր* Ստեփանոսէ *տեսանել քաջա‖յայտ, որ
ի վերայ սրբասէր վարուց իւրոց ստացաւ և գրրասէր լինել, հայելով և
հոգւոյ մերոյ տէրն և հայրն ի սուրբ կաթողիկոսն՝ ի տէր* Կոստանդին,
*որոյ էր սա դրան սարկաւագ և սպասաւոր, զի տայր գրել և ստանայր
բազում գրեանս և յոսկւոյ սրբոյ տայր յաւրինեալ բազում Աւետարանս,
ի յիշատակ հոգւոյ իւրոյ։*

*Եւ սա, իբրեւ զհաւատարիմ ծառայ Աստուծոյ և զհարազատ որդի
նորին, եռափափագ սիրով ի խնդիր ելեալ իբր պատուական մարգարտի
և հրամաեալ իմում նուաստութեանս գրել զսուրբ և զլուսաւոր մատեանս
կենարարին մերոյ Յիսուսի Քրիստոսի բազմածախ յաւրինուածովք յոսկ-
ւոյ սրբոյ և ի պատուական երանգոց գեղազարդել զսա ներքոյ և արտա-
քոյ և ամենեւին վայելուչ առնել զսա յուրախութիւն մանկանց Նորոյ
Սիովնի։ Եւ ես ըստ կարի իմում լցի զփափագ նորին և գրեցի զսա յամ-
րակառոյց և յաշխարհամուտ դղեակս* Հռոմկլայ, *ընդ հովանեաւ բազ-
մահաւաք սրբոցս, որ պաշտին աստ, ի հայրապետութեան տեառն* Կոս-
տանդեա *կաթողիկոսի, որոյ հրամանաւ և աւժնդակութեամբ գրեցաւ
696ա սուրբ Աւետարանս, զի որպէս յառաջ ասացաք՝‖իբրեւ զհայր գթած էր
առ աւտարս և առ ընտանիս, եւս առաւել երախտաւոր առ սրբասէր եպիս-
կոպոսս տէր* Ստեփանոս՝ *ստացաւղ գրոցս, մինչ զի բազումս յորդորէր
զնա յամենայն բարեաց գործս, և յայս առաւել եւս ստանալ զայսպիսի
բարի ստացուածս, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի։*

*Արդ էր թուականս Հայոց ՈՂԷ (1248) յորժամ աւարտեցաւ սուրբ
696բ գիրս,‖և թագաւոր էր Հայոց քրիստոսապսակն* Հեթում, *որ առաւելեալ*

էր քաղցր և բարի բնութեամբ՝ հնգից որդոց եղեալ հայր. առաջնոյն
Լեւոն, որ յանուն հաւուն իւրոյ, որ է աւրհնութեան շառաւեղ և բարի
պատանի, և այլն մի ըստ միոջէ, որոց տացէ Տէր Աստուած երկայն
աւուրքք թագաւորել ի վերայ Հայոց ազգին։
Եւ արդ ստացաւ զսա աստուածահաճոյ եպիսկոպոսն տէր Ստե[փա-
697ա նոս՝]՝‖զլուսաւոր մատեանս ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգ-
ւոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց։ Այլ աղաչեմ զամենեսեան, որք վայելէք զսա
կամ յինչ և իցէ պէտս աւգտիք ի սմանէ կամ աւրինակէք, յիշեսջիք սրտի
մտաւք զտէր Ստեփանոս՝ ստացաւղ սորա և զծնաւղսն իւր զվազ երթեալ-
սըն առ Տէր, այլ և զհանգուցեալ եղբարսն իւր, որք են այսոքիկ՝ Գրիգոր,
697բ Սէմ և Դափթ և որ այժմ է կենդանի՝ Վահրամ, ‖ և զամենայն ազգայինսն
իւր, որք յիշատակ բարի թողին զսա ինքեանց։ Ընդ արժանաւորսն յի-
շատակի աղաչեմ յիշել ի Տէր զառաքինի և ծերունի քահանայն Յուսիկ,
որ էր դաստիարակ և հայր և աւեան մերձաւոր ստացողի գրոցս, որ յայսմ
ամի փոխեցաւ ի Տէր։ Աղաչեմ յիշել ի Տէր և զսրբասէր քահանայն Թորոս
և զորդեակն իւր Ստեփանոս, որ է եղբաւրորդի տեառն Կոստանդեա:
698ա Յիշեսջիք և զԳէորգ, որ է եղբաւրորդի տէր Ստեփանոսի, որդի Գրի-
գորոյ: Պաղատիմ յոգնամեղ գրիչս Կիրակոս առնել արժանի յիշատակի
և զիմ զանարժանութիւնս և խնդրել թողութիւն բազում մեղաց իմոց, և
ծնաւղաց իմոց, և ամենայն երախտաւորաց իմոց։ Եւ առատն ի պարգևս
Տէր Յիսուս յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս,
ամէն։
Սոյնպէս աղաչեմք յիշել և զՊետրոս քահանայ, որ բազում պաղա-
տանաւք յորդորէր զմեզ և մխիթարէր ի ժամանակ գրչութեան սուրբ
Աւետարանիս։
Այլ և զկնի ելից մերոց յաշխարհէս, ուր և հանդիպեսցի, կու տանք
զսուրբ Աւետարանս ի սուրբ ուխտն ի Գռներն, յիշատակ մեզ և ծնաւղաց
մերոց և ազգականաց, զի բազումք այն են, որ անդ են ամփոփած։

Բ

22 Ո՛վ յանըսկիզբն ծոցդ բան,
Որ ծաղկեցար յազգս մարդկան,
Եւ մեզ զշնորհս, քո շրթան
Հեղեր, աւրհնեալդ յաւիտեան։
Արդ առեալ զքոյս քեզ տամ,
Բարձեալ ի ձեռս առաջի կամ
Ընկալ զնուէրս բարեխնամ
Եւ յիս հայեա, Տէր, հաշտ աչամբ։
23 Տէր իմ Յիսուս փրկիչ մարդկան,
Պետ հովութեան կարգիս ամման,
Որ զայս մատեան Աւետարան,
Մեզ հնչեցեր ձայն ցնծութեան,
Դու զպճնողս քո բանի

Եւ զարդարող այսմ տառի՝
Ջտէր Ստեփանոս՝ հովիւ բարի՝
Նստո յաթոռ ընդ Պետրոսի։

Դ

209բ Ստացողի սորա՝ սրբազան եպիսկոպոսի տէր Ստեփանոսի ողորմեսցի Տէր Յիսուս։

Ե

334բ Զաստուածապատիւ եպիսկոպոսն՝ զտէր Ստեփանոս ստացող սուրբ տառիս յիշեսջիք ի Քրիստոս և զծնաւղսն իւր և զգրիչս Կիւր[ակոս] և զիմսն, և դուք յիշեսջիք ի Քրիստոսէ։

Զ

542ր Ո՛վ մանկունք. առաքաստի և որդիք լուսոյ, զտէր Ստեփանոս՝ ստացող սուրբ տառիս յիշեսջիք ի Քրիստոս։

196

ԱՒԵՏԱՐԱՆ

Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ, էջ 350—351

Գրիչ՝ Պետրոս
Վայր՝ Հոոմկլա

Ի թուին Հայոց ՈՂԷ (1248), ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ եւ ի թագաւորութեան մեծին Հեթմոյ, դրացաւ սուրբ Աւետարանս յաստուածապահ եւ անմատոյց Կլայս Հոոմի, յաթոռ Լուսաւորչին մերոյ Սուրբ Գրիգորի, ի դրունս սուրբ վկայիցն Թէոդորոսի եւ Գէորգեայ եւ Սուրբ Աստուածածնին, յորոց դուռն սպասաւոր եմք այժմ, թողեալ զհայրենի բնակութիւն մեր զբարձր դղեակն եւ զանմատոյցն զԿառենայ, եւ փախեալ յայլասեռիցն չարեաց, եւ վասն քաղցրութեան վերադիտողիս Հայոց Կոստանդեայ՝ սրբոյ եւ առաքինւոյ, եկեալ բնակեցաք աստ, հովանաւորեալ երբեւ զփախուցեալն ի տապոյ ամառանւոյ առ թաւոտ ծառոց ընդ շքով, զոր Տէր Յիսուս զսա հաստատուն պահեսցէ...

Կատարեցաւ սուրբ պատուիրանս Փրկչին... յայսմ վայրի, ձեռամբ յոգնամեղ գրչի Պետրոս երիցու որդւոյ Կոստանդնի երէցու, ազգաւ Կառնայեցի, յիշատակ ինձ եւ իմոցն, եւ ի վայելումն որդւոց իմոց Առաքելոյ եւ Կոստանդեայ... յիշման արժանի արարէք զբարետոհմիկ եւ զբարեկեցիկ զերկոսին հարսունսն իմ զԱրեւթագունին եւ զՏիրունին, յորոց ոչ միայ եհաս ի բերումն զաւակի, այլ տարաժամ եւ դեռաբոյս փոխեցան ի Քրիստոս, եւ անմխիթար սուգ թողին ինձ եւ որդւոց իմոց...*։

* Լուսանցքում. «Մեսոբ վարդապետ հիմնադիր սուրբ պաշտպանութեամբ իշխանաց Սով դղեկու շինեցին մենաստանս, թուին Հայոց ՈՁԳ (1234)։ Յիշեսջիք... Մաղաքիայս»։

## 197

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 4301*

Գրիչ՝ Ապլմսեհ
Վայր՝ Կիլիկիա

ա

*Ամենեցուն, որոց բաց են իմանալի տեսարանք մտաց, միշտ և հա-
նապազ յառ աստուածասէր և ի նոյն խոկան պատուիրան, որպէս զի զնո-
րայն ախորժակ կամս բաւանդակապէս ի լրումն ածել շանան։ Այսպէս և
պատուեալս իշխանութեամբ բարեպաշտս* Սիր Ճոֆրի *զամենայն ինչ իւր*
272բ *նուիրեալ Աստուծոյ, և առ ըղձից բաղձանաց սիրոյն առ Աստուած* ||
*զսուրբ և կենսաբեր Աւետարանս ընծաելով, զոր ի չորից աւետարանչացն
թողան մեզ մարդեղութեան փրկչին մերոյ պատմութիւն, զոր հրամա-
յեալ իմում նուաստութեան յոգնամեղ գրչի* Ապլմսեհի, *և ես ըստ կարի
իմում կատարեցի զխնդրելին։*

*Արդ, եղև գրաւ գրութեան սորա ի թուականիս Հայոց ի ՈՂԷ (1248), ի հայրապետութեան տեառն* Կոստանդեա *և ի թագաւորութեանն քրիստոսապսակ թագաւորին Հայոց* Հեթմոյ, *զոր պահեսցէ Տէր Յիսուս արդար դատողութեամբ ի կամս իւր։ Ընդ նմին և բարեպաշտ զ*Սիր Ճոֆրի *զամենիմաստն և զմտերիմն թագաւորին, զխոհեմն և զճարտարն յամենայն բանս և զգործս արքային, որ ստացաւ զսուրբ մատեանս ի վայելումն աստուածազարդ անձին իւրոյ և ի յիշատակ հոգւոյ իւրոյ, և բարեպաշտ ծնողաց իւրոց՝ փնացելոց առ Քրիստոս, և եղբարց իւրոց՝ յառաջելոց ի Տէր, և քերց և ազգականաց, որոց ողորմեսցի Տէր Յիսուս յանբեկ աւուրն։*

*Արդ, որք ընթեռնոյք զսուրբ մատեանս կամ աւրինակէք, յիշեսջիք սրտի մտաւք զբարեպաշտն զ*Սիր Ճոֆրի *և զծնողսն իւր, զի ողորմեսցի նոցա Տէր։ Ընդ նմին ժտեմ և ես մեղապարտ քահանա* Ապլմսեհ *յիշել և զիմս անարժանութիւն ի սուրբ յաղաւթս ձեր, եւ որ առատն է ի պարգևս Տէր Յիսուս, առհասարակ յիշողացդ և յիշեցելոցս ողորմեսցի, և նմա փառք յաւիտեանս։*

բ

204բ *Զբարեպաշտ իշխանն զ*Սիր Ճոֆրի *զստացող սուրբ Աւետարանիս յիշեսջիք ի Քրիստոս, ո՜վ մանկունք Նոր Սիովնի։*

## 198

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԻՔԱՅԷԼԻ ԱՍՈՐՒՈՅ

*«Միխայէլի Ասորւոյ ժամանակագրութիւն», Երուսաղեմ, 1870 թ. էջ 609—622*

*Հեղինակ՝* Վարդան Արևելցի

*Տէր* Կոստանդին, *յերրորդ մասնէ Հայոց, ի դղեկէ* Բարձրբերդոյ, *որ հայի հարաւով ընդ դաշտն* Կիլիկիա *և ի ծովն* Ադրիանու *կոչեցեալ, որ-*

զի առն արդարոյ խաղաղականի Վահրամ կոչեցելոյ, յորովայնէ ընտրեալ յառաքելական աստիճան ի Հոգւոյն՝ աւրինաւք նորին սնեալ և ըստ կարգի յամենայն գործս եկեղեցւոյ վարժեալ ի շնորհս քահանայութեան և յառաջնորդութեան վանից և յեպիսկոպոսութիւն տեսչութեան և յամենայն ընտիր գտեալ և հանդիսաւոր, վասն որոյ և ի կատարման հոգեւորական և մարմնական հասակի վկայութեամբ Աստուծոյ և մարդկան մեծի գահոյի և աթոռոյ հայրապետութեան Հայաստանեաց արժանաժառանգ լեալ ի շնորհէն և ի բնաւ լրմանէ եկեղեցւոյ բռնադատեալ. ըստ որում և փորձն ցուցաւ և արդիւնքն յայտնի արարին և միաբանեցաւ ընդ նմայ շնորհն։ Եւ է այժմ ԻԵ (25) ամ հայրապետութեան նորայ՝ ի դղեակս աստուածապահ Հռոմկլայ կոչեցեալ, խաղաղասէր բարուք և անարատ վարուք առ ամենեսեան խաղաղութիւն կալեալ, վկայութիւն բարի և դրուատնիս յարտաքնոցն, առեալ, այցելու որբոց և այրեաց՝ խնամածու և գերելոց անխնայ ծախիւք դարձուցիչ և զարդարիչ, հայրենի գթովն զամենեքումբք փարելով. և եղեալ առատաձեռն առ ամենայն կարաւտեալս ողորմածութեամբ և եկեղեցեաց բազմաց պիտոյից լցաւղ։

Ցանկ և ի յայլ բարիսն և զայս մատեանս ի գանձս եկեղեցւոյ, և ետ բաղձանաւք թարգմանել զսայ յԱսորոց ի Հայս, պիտանի և շահաւէտ բուրաստան, լայն և երկայն իմաստիւք լցեալ* և կարճառաւտ բանիւք բովանդակեալ, որ ի սուղ ժամանակս կարող է զպատահեալսն ի վերայ կացուցանել հին և նոր դիպուածոց, այլ և հիմն հաստատ և անշարժ աշտարակ իսկ է հայադաւան հաւատոյ և ուղղափառ խոստովանութեանս. վկայս բազումս ցուցանելով յազգաց ճշմարիտ ուղեգնացութեանս, բըխմամբ առաքելական աստուածագիր կայիւք ամրացեալ, այլ և յոլով տարակոյսք և հանգոյցք լուծանին ի սմա, և չէին զարմանալ ընդ նորանոր և ընդ անծանաւթ բանսն, որ գտանային ի սմա, քան զի Ասորիք բնակութեամբք գաւառացն և բառիւ լեզուաց մաւտաւորք են միշտ Հըէիցն լեալ, քան զամենայն ազգերդ և ի դէպ է նոցա մանաւանդ ծանաւթս գոլ հնոյ կտակին, քան այլոց. նաեւ որ զայս մատեանն շարայարեալ է ի Յունաց և յեգիպտացւոց և ի Քաղդեացւոց դիւանաց և ի դպրոցաց է հաւաքեալ, վասն որոյ առաւել ախրելի և պիտանի և հաւատալի է, և վարձս բազումս կալցի առաջի Աստուծոյ և երախտիս յեկեղեցիս ուղղափառաց՝ վաստակասէր այրն բարեփառ տէր Միքայէլ. զի յոլով սէր և գութ երեւի նա ունել առ ազգս մեր և ի գրոց աստի։

Արդ, յամի ութերորդի քառասներորդի երկերիւրորդի հազարերորդի թուահամարութեանս անժամանակ որդւոյ Աստուծոյ գալստեան, ի ՌՂԷ (1248) թուականութեանս Հայոց, թարգմանեցաւ գիրքս այս յասորոց ի Հայս, ի հայրապետութեան Հայոց տեառն Կոստանդեայ և ի թագաւորութեանն Հայոց Հեթմոյ քրիստոսապսակին և զգուշակենցաղ թագուհւոյն իւրոյ Զաբելի՝ դստեր Լեւոնի արքայի՝ ըստ Աստուծոյ քաղաքաւարելոց հնգից եղելոց նոցա զաւակաց ծիրանածնաց՝ երից դստերաց և երկուց

* Ընդգծված մի քանի բառերը (հատուկ անուններից բացը) առնված կամ ուղղված են Երուսաղեմյան օրինակից (Տօնացոյց, 1870 թ. էջ 609—622, «ի Վարդանայ»)։

ուստերաց, որոց անուանք Լեւոն և Թորոս՝ անուամբ հաւուն իւրեանց և հաւուն այնոյն հարազատի, որոյ հովանի լիցի ամենակալ բազուկն հայրենի, ածելով ի գահ հայրենի արքայութեանն եղբաւք Հայաստանեաց։ Յայսմ ամի կենդանի էր կրոնաւորն և աջողեալն ի բարիս արքայահայրն Հայոց՝ պարոն Կոստանդին, և բերկրեալ այլովք ուստերաւք չորիւք՝ տէր Բարսեղ՝ տէրն Դրազարկին, և պարոն Սմբատ՝ սպարապետն Հայոց, և պարոն Աւշինն՝ տէրն Կոռիկոսաւն, և պարոն Լեւոն, որոյ զաւրանալ լիցի ըստ Աստուծոյ և աճել արութեամբ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ։ Եւ էր պատրիարք Ասորոց ուղղափառաց Մառ Իգնատիէ Անտիոքու, որ զաւրինակս շնորհեաց և փոխեցաւ ի ձեռն Իշախայ սրբասնեալ քահանայի վարժ եղելոյ և ի հանճար բժշկական արհեստի, որոյ վարձատու լիցի Տէր ի շնորհս իւր։

Այլ և մեք տառապեալ ոգի Վարդան վարդապետ իսկ, որ ըստ մեռոամ կարի սատարեցաք ի գիրքս յայս, ունիմք հաւատ և յոյս ի գթութիւն Աստուծոյ և յետ Նորա յաղաւթս և ի բարեխաւսութիւն ծառայից Նորա առ մեզ դարձուցանել զերեսս ողորմութեան Քրիստոսի ի վերայ անկշռելի պարտուց իմոց, անթիւապատիկ բիւրաց տաղանդաց, քան զի այսու ակնկալութեամբ ընդոստուցուք զմեզ մոռանալ զսննդակից և զընտանացեալս մեր տկարութիւն մարմնոյ և զբազմազան տրտմութիւն և ըստ ցնորս հոգւոց և խորհրդոց վասն սնշահաւոր տարաշրջութեանս։

Այլ և յաղագս թշուառացուցիչ ժամանակիս՝ չարածին չարիքն մեր յաճախեալ, քան զի սակաւ քան զչափն մերոցն մեղացն արքայից մեզ Տէր արտասուս և նուազ քան զյորդաբուխ ախտից մերոց ջրհեղեղս խաղացին առ մեզ վտակք արեան և ըստ զգազանական գնացիցն մերոց, յագեցան գազանք ի մարմնոց մերոց։

Քան զի շնչեաց բարկութիւն Տեառն Ծանճուն արեւելեան հիւսիսայնոյ ատար և անըմտել ազգին, որպէս ասին Թորգոմաղունք զարմին Հագարու և հողմով անաւրինութեան մերոյ ած զնոսա մինչեւ առ մեզ ըստ նախատես մարգարէութեան նախնի սուրբ հաւրն մերոյ Ներսիսի արտասուապատում ողբոյն, զոր լալովն նախաձայնեաց զկորուստ հոգեւոր երկանցն իւրոց ծննդոցն, զոր ինչ կրեցաքս յազգէն Նետողաց, զորոց զանուանսն կոչէ սուր և թեթեւ, զի թերեւս Թաթարն սուր և թեթեւ ասի ըստ լծորդաց փոփոխման և կամ տուր* տար, որ է Տաթար, քան զի հարին անյագապէս և տարան աներկիւղապէս զորդիսն Սիոնի ի ստրկութիւն գերութեան։

Եւ ասէ զնոսայ սուրբն Ներսէս ի մնացորդացն և Հագարու և Ասորիք ասեն զնա Թորգոմեանս յայտ է խառնեալ ազգին Գովգայ, որ ի Թորգոմայ ընդ զարմն Հագարու որք ունին զՍկութիայ մասն աշխարհի, որ սկսանի յԱթշ գետոյ և ձգի առ Եմաւոն լերամբն, ուր բնակեալ են ազգ ԽԳ (43), որք Խուժական անուամբ կոչին յիւրեանց լեզուս, և գլխաւորն տոցայ Բուշխ անուանի և սնուն միոյ ազգին Թուղարք ասի, զոր կարծեմք այս են Թաթարքս, և որպէս լուաք յոմանց ի նոցանէ, եթէ եւլին առաջինք

* Տպագրում սրբագրված է «հար և տար»։

նոցա ի Թուրքաստան աշխարհէ և մեկնեցան ի կողմ ինչ արեւելայ, և կային աղքատութեամբ ի գործս աւազակութեան և յափշտակութեան և պաշտամ ինչ ոչ ունէին, բայց ընդ արեգակն զարմանային և ի պատճառս հմայութեան ունէին պատկերս ինչ թաղեայ, զոր տակաւին կրեն ընդ ինքնեանս։ Եւ զկնի ժամանակաց անցելոց ոմանց ի նոցանէ զգայումն արանց, նեղեալ ի թշուառական կենաց իւրեանց, կոչեցին զերկնաւորն Աստուած, որ զամենայն ինչ արար՝ յաւգնութիւն անձանց և ուխտեցին նմա ուխտ. և ելին ի վերայ քաղաքի միոյ փոքու և յափշտակեցին զնա ի տերանցն և բնակեցան անդ, և յայնմանէ ոյժ առեալ տիրացան երկրին, կոչեցին երկրէն իւրեանց Թիկունս և զաւրացն ի վերայ Պարսից և առին զիշխանութիւն նոցա։ Ուստն և ի մոգաց անտի կախարդութիւնս և տուեալ հրամանս ի դիւթաց անտի, եթէ տուեալ է նոցա յԱստուծոյ զաշխարհ ամենայն, ելցեն վստահութեամբ և ժառանգեսցեն զնա։ Եւ չէ ինչ զարմանալի, զի Նաբուգոդոնոսոր արքայ Բաբելացւոց հմայիւք եւ յԵրուսաղէմ, և մատնեաց Տէր ի ձեռս նորա, և զԿիւրոս Պարսիցն արքայ ածեալ իւր կոչէր Աստուած և հրաւիրէր ի վերայ Բաբելոնի: Նաեւ ինքեանք իսկ խոստովանին զամենայն ինչ Աստուծոյ առնել և զինքեանս նորին հրամանաւ ասեն եկեալ։

Արդ, հաւատացեալ սոցա հրամանի իւրեանց երեւմանն՝ եղեն նոքա երեք բաժին ընտրութեամբ իւրեանց թագաւորին, զոր ղանն կոչեն։ Առաջին մասն գնաց ի կողմն Հնդկաց, և մասն երկրորդ չոգաւ առ անապատաւք հիւսիսի, և երրորդ բաժինն մէջ Պարսից աշխարհին եկն մինչեւ առ մեզ։ Եւ ասեն, թէ երեք էին գլխաւորք, և մինն բարեբարոյ, քան զերկուսն, զոր Չարմաղանն* կոչէին, որք և զկնի բազում աշխարհաց աւերման և կոտորման նստեալ ի խորհուրդս, զոր ղուրուլթայ կոչեն, և ասացեալ Չարմաղանին, թէ բաւական է աւերս և կոտորուածս, յայտնհետէ զհնազանդեալսն մեզ մի ջնջեսցուք ի սպառ, զի մի բարկասցի Աստուած։ Իսկ երկու գլխաւորքն հակառակեալք ընդ նմա՝ ասացին, թէ ոչ է պարտ մեզ ապրեցուցանել և ոչ զոք, որովհետև յաջողէ մեզ Աստուած։ Եւ տրտմութեամբ ննջեցին զգիշերն այն և յայնմ գիշերի մեռան երկոքինն, որ զանողորմութիւն կամէին։ Եւ զարմացան զաւրքն, և հաստուցին զքանն առ ղանն, և առաքեաց հաստատեաց զկամս Չարմաղանին աւրինաւք խնայել ի հնազանդեալսն և թնել ի ներքոյ հարկի, և զնա միայն հաստատեալ ի գլխաւորութիւն, զի այն է, ասէ, կամք Աստուծոյ, վասն որոյ և կան ի նոյն մինչեւ ցայսօր։

Իսկ զժամանակ ելանելոյ նոցա, ասէ մեծն Ներսէս, եթէ զկնի իմոյ վախճանիս՝ յորում անցանէ Չ(700) ամ, սկսանի այս լինել։ Եւ արդ է, ըստ վճռի սրբոյն Ծ (50) ամ զաւրանալոյ նոցա յաղթութեան և յորմեհետէ մտեալ են ի յարեւելեան աշխարհն Հայոց՝ ԻԸ (28) ամ է. չար ինչ գործեցին ապականութիւն երկրին, և տապալումն քաղաքաց և դղեկաց, և աւեր եկեղեցեաց, և մահս ազգիս ազգիս, և գերութիւնս։ Եւ թէ որպէս յետ այնորիկ հաշտեցան ընդ մնացորդսն ի ձեռն իշխանաց աշխարհին

* Ձեռագրում՝ բոլոր դեպքերում «Չաղրմաննե»։

և արարին խնամութիւնս և մնացեալ եկեղեցեացն և եկեղեցականացն դիւրութիւնս և ազատ կամաւք կալ ի կրաւնս իւրեանց։ Սակայն անլրապէս պահանջումն հարկաց ճշդիւ և անխնայապէս ըստ գլխոց արանց և անասնոց, բաց ի մանկանց եկեղեցւոյ և ամենայնի, որք զձեւ աղաւթականութեան և զկարգ ունիցին։

Զայսոսիկ զամենեսեան դրեալ է լիով ի տեղիս տեղիս և մեք մի շփոթեսցուք զոճ շարագրացն կարգի, որ յատուկ խնդրէ հատածս և պարապումն ժամանակաց և հաւաստութիւն ի տեսիլ աչաց գործեցելոցն, սակայն զյոլովս տեսաք աչաւք մերովք ի նախաձայնեալ աղետից սուրբ նահատակին Ներսիսի. զեկեղեցիս մեր նսեմացեալ, զսեղանսն սուրբ կործանեալ, զմատեանս աստուածայինս այրեցեալ և առ ոտն կոխեալ, զսպասն սրբութեան և զքրիստոսական նշանս անարժանից ձեռամբ շաւշափեալ և նախատեալ, և յանարգ պէտս վարեալ, զաշխարհս մեր անապատացեալ, զքաղաքս բնակութիւն լեալ գազանաց, քան զի լցան լերինք և անապատք մեր անզերծ փախստիւք, և դաշտք դիակոյտք ոսկերաւք կոտորելոցն, և անդաստանք մեր և հովիտք ոռոգեցան արեամբ, և կերաք մնացորդքս զհասկ սնընդեան այնպիսի արտաւրայից։ Ազատք մեր ի ծառայութիւն իջին և փափուկքն մեր՝ յանըմբերելի չարչարանս, բարձունք մեր խոնարհեցան, և փառաւորքն մեր յանարգութիւնս ընկճեցան, արաւտք հովասուն լերանց խորշակահարք եղեն յարեւու, կուսանք մեր աւտարաց եղեն և երիտասարդքն մեր՝ հովիւք և կատպանք այլասեռից։

Կարաւտացաք ողբոյն Երեմիայի և կրեցաք զպատուհասս հնոյ Իսրայելի։ Տղայք մեր որբք եղեն և մայրք նոցա՝ այրիք. որդիքն վերնոյն Սիոնի զուգակշիռ ոսկւոյ ղքարի համարս իբրեւ զանաւթ անպիտան. ցրուեցաւ հաւան, ճապաղեցան գառինք արաւտի նորա, վաճառակուր եղեն յազգս հեռաւորս գնեալքն արեամ[բն] Քրիստոսի։ Բաժանեցան ծնողք ի ծնողաց, մեկնեցան հարազատք ի միմեանց սիրելեացն, բարեկամք հեռացան, դարձաւ տունն մեր ի սուգ և ուրախութիւն մեր յարտասուս, և ոչ գոյ թիւ աղաղակի մերում, զի չիք համար չարեաց մերոց։ Եւ ի վերայ այսր ամենայնի ոչ է ի մեզ զզջանս և ոչ ապաշխարութիւն. ոչ պատառեցաք զսիրտս մեր, և ոչ խարշեցան փորոտիք մեր, և ոչ դարձաք ի գնացից մերոց խոտորնակաց, այլ յաւելաք եւս վէրս յանաւրէնութիւնսն մեր յառաջինսն, և խաւարեցան անմտութեամբ խորհուրդք մեր։ Եւ ո՞վ ոչ զարմասցի ընդ լրբութիւնս մեր, զի տակաւին պիտի մեզ արեւս այս և խնդրեմք հնարիւք զսէր և զվայելս աշխարհիս և ըզփառս սորա զփախըստականս։

Բայց ես մանաւանդ զանձնէ ասեմ, զոր գիտեմս, միայն զկիրս և զկամս ստորաքարշս՝ անյագաւրէն եղեալ մոխրակէր յաւուրս իմ, և միայն ի ձեռն սակաւ սատարիս աչսմ ունիմ ակն մեծի գթութեան Աստուծոյ վասն աղաւթից ձերոց, զոր հայցեմս լռութեամբ գրոյս իբրեւ զանկեալ սպասեակս առընթեր սեղանոյ մեծի տան տերանց և յաւելում ի մաղթանս իմ զբարեխաւսութիւն սրբոց՝ եղեալ առաջի ձեր նուէրս՝ առ իս ածել զգութ ձեր, սիրով զիջանել ըստ իս և խնդրել ինձ ողորմութիւն ի սրտէ ի կամեցող և ի խնդրող խնամոց Յիսուսի. և այն, որ մեծն է ողոր-

*մութեամբ աջն աջողակ Հաւրն բարձրելոյ, որոյ բնաբար է փրկելն և ապրեցուցանելն, թէպէտ և ի մէնջ բռնադատել հարկանէ յուսով խրատու, այն որ ոչ անցաւելի կամաւք չարչարէ զանդամս իւր, նա բժշկեսցէ զվիրաւորեալ մարմինն՝ զսուրբ եկեղեցի, և ցրուեալ հաւտս իւր հաւաքեսցէ առ ինքն յաւարտս խաղաղութեան բարերար կամաւք իւրով Քրիստոս՝ ի փառս անուան իւրոյ և զերկոսին ակունս զայսոսիկ պատուական՝ զկայծ և զկանանչ, զաթոռս հայրապետական և արքունական հայադաւան ազգիս ուղղափառութեան, զոր եթող մեզ զաւակ յուսոյ տէրն զաւրութեանց, յորս դոյ աւրհնութիւն Տեառն ամենակալի. ղսոսա հաստատուն և անսասան պահեսցէ զաւրութիւն ամենակիր և ամենաստեղծ արժանաժառանգ աթոռակալք մինչեւ ցյաւիտեան։*

*Եւ զայժմու նստեալքն արժանաւոր կոչմամբ Հոգւոյն Սրբոյ զտէր* Կոստանդին *Հայոց Մեծաց և հանուրց վերատեսուչ, և զնոյնազարմ ազգիս պսակադիր* Հեթում *ամաւք և առողջակիր հոգով և անուանի փառաւք խնամեսցէ, ի գովեստ ամենասուրբ տէրութեան իւրոյ՝ զաւակաւք և զարմիւք, որք ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ, և յետ աստեացս անասելի աթոռացն և անթառամ պսակին արժանաւորեսցէ։ Եւ որք այժմ ընդ մեզ հարք և եղբարք և ժրաջան ճգնաւորք և պատարագողք և կղերիկոսք և գործաւորք մարմնական պիտոյից և խնամածու աստուածապատիւ դղեկիս և սպասաւորք սրբազան աթոռոյս, որք և ամենեքեան առ միմեանս սիրաւն Քրիստոսի և առ մեզ աննախանձ և փոխման մատենիս յաւժարամիտք և յորդորիչք, ղամենսեան, առատաձեռն պարգեւաւք լի արասցէ թագաւորն փառաց հոգեւոր և մարմնաւոր յաջողուածովք՝ ի մեծութիւն և ի փառս անուան իւրոյ, որ է աւրհնեալ և փառաւորեալ, գովեալ և գոհաբանեալ յազգս և յազինս բոլոր բանակաց յաւիտեան և յաւիտեանս և յաւիտեանից յաւիտեանս։*

## 199

### ՇԱՂԿԱՊՔ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԱԿԱՆՔ ՊՐՈԿՂԻ

*Ակինյան, Սիմէոն Պղնձահանեցի, 1951 թ. էջ 23—25*
*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 999—1002*

*Թարգմանիչ՝* Սիմէոն քահանայ
*Վայր՝* Պղնձահանք

*Թարէմանեցաւ գիրքս, որ է Շ[ա]ղկապ և գլուխ աստուածաբանութեան* Պրոկղի *Դիադոխոսի պղատոնական իմաստասիրի, ձեռամբ* Սիմէոնի *անպիտան քահանայ կրօնաւորի՝ ի վրաց լեզուէ ի հայ լեզուս, յերկիրս Հայոց՝ ի ։[անս Վրաց, որ կոչի* Պղնձահանք, *յաւիտենից թուականին ՑՉԾԶ (1248)։ Աղաչեմ զձեզ, ո՜վ եղբարք, զի յոյժ աշխատութեամբ թարքմանեցի. նախ, զի ոչ էի արժանի այսպիսի սպասաւորութեան՝ սակս շաղախեալ գոլ մեղօք. երկրորդ զի յոյժ ծերացեալ էի և տկարացեալ յաչաց և ի մտաց և ի զօրութենէ, զի զԿ(60) ամենիւք էի։ Այլ ղի ոչ էր սա թարքմանեալ ի մերս լեզու և սա է մայր աստուածաբանութեան առաջին։* Մովսէս *զայս ուսեալ զդպրութիւն և ի սորա բանիցն*

կարգեաց զիւրն աստուածաբանութիւն։ Եւ Դիոնեսիոս Արիսպագացին և Նոոքէոս զիւրեանց գրեանքն բովանդակ ի սմանէ գրեցին. նոյնպէս և Գրիգոր Աստուածաբան զիւր աստուածաբանութիւն ի սմանէ խաւսեալ է, և բոլորովիմբ նորքս զամենայն աստուածաբանութիմս իւրեանց ի սմին ոլորմանց բանիցս բխեցին։ Սա է հիմն և արմատ և մայր ամենայնի, ի սմանէ առին նոքա բովանդակ. իսկ այնք փոքր հատորք ելով, և ես յայն սակս թարքմանեցի, զի մի պակաս եղիցի սա յազգէս մերմէ։

Արդ աղաչեմք, որք կարդայք կամ օրինակ առնոյք, յիշեսչիք յաղօթս, և զիմ փոքր բանս գրեցէք զկնի, և մի ինչ թողուցուք ի սմանէ։

Զտէր Մխ[իթար] վարդապետ յիշեցէք ի Քրիստոս աղ[աչեմ]։





## 200

### ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ
### ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ

Երևան 6273, էջ 38ա

Գրիչ՝ Վասիլ
Վայր՝ Հռոմկլայ

Փառք քեզ անսահման անուն... Շնորհիւ ամենախնամող ողորմութեան Աստուծոյ յանկեալ աւարտեցաւ մատեանս աստուածային սուրբ և երանեալ վարդապետին Գրիգորին Նարեկացւոյ, ի խնդրոյ աստուածապատիւ սուրբ կաթողիկոսի և բարի բնութեան երջանիկ դիդասպետի տանս Թորգոմայ տեառն Կոստանդեայ, և հրամայեալ իմում նուաստութեանս Վասլի Ուռնայեցւոյ բազմամեղ գրչի և ծառայի նորին, զի գրեցի զսա ի վայելումն մեծաշուք անձին իւրոյ և յիշատակ բարի հոգւոյ իւրոյ։

Եւ արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնուք զսա և աղօթէք սովաւ, յիշեսջիք սրտի մտօք զսուրբ հայրապետս մեր զտէր Կոստանդին զստացող սորա, և զծնողսն նորին, և զեղբայրսն զգնացեալսն առ Քրիստոս։ Եւ զմեծաշուք զեղբօր որդին իւր զԹորոս սրբահոգի քահանայն, և զորդեակն իւր և զվայելուչ պատանին Ստեփաննոս, աղաչեմ յիշել զնոսա առաջի Աստուծոյ։

Բայց գրեցաւ յանմատչելի դղեակս Հռոմկլայ, ընդ հովանեաւ Սրբոյն Գրիգորոյ և Սրբոյ Աստուածածնին և Սուրբ Նշանին Վանգոյ, ի թուականութեանս Հայոց ՈՂԸ (1249) ի յառաջնորդութեան տեառն Կոստանդեայ ստացողի զսա, և ի թագաւորութեան քրիստոսապսակ թագաւորին Հեթմոյ և աստուածասէր թագուհւոյն իւրոյ Զապիլի, և որդոց նոցին Լևոնի և Թորոսի, որոց տացէ Տէր Աստուած երկար ժամանակս և անթիւ աւուրս թագաւորել ի վերայ Հայոց ազգին։

Ընդ որս և ես՝ մեղաւոր և նուաստ գրիչս Վասիլ, աղաչեմ երկիր պագելով առ գարշապարս ձեր, յիշել և զիմ տխմար գրչութիւնս, և ծնողսն իմ, և զուսուցիչս իմ Կիրակոս...

Յիշեսջիք զՎարդան քահանայ զկազմող սորա և զՎասիլ կրօնաւոր։

## 201

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 7690*

Գրիչ՝ Կիւրակոս
Վայր՝ Հռոմկլա

359ա *Փառք քեզ անսահման անոմ, եւ անզուգական անձնաւորութիմ Հայր եւ Որդի եւ Սուրբ Հոգի ամենայն եղանակացս, ամեն։*

*Շնորհիւ ամենախնամ ողորմութեանն Աստուծոյ, յանկ ելեալ աւարտեցաւ մատեանս աստուածային հրամանաւ եւ ծախիւք սուրբ եւ երջանիկ կաթողիկոսիս Հայոց տեառն* Կոստանդեա: *Քանզի տեսեալ զլաւ եւ զընտիր նիւթ մագաղաթիս, հրամայեալ իմում նուաստ եւ մեղաւոր գրչութեանս լնուլ զփափագ նորա. եւ որպէս զբովանդակ ինչս իւր եւ զկեանս նուիրեալ էր Տեառն, նոյնպէս եւ զայս նիւթ, թէպէտ եւ փոքրագոյն էր ի դիրս Աւետարանի, յաղագս կատարեալ սիրոյն զոր ունէր առ փրկիչն մեր Քրիստոս եւ առ սուրբ հրամանս նորա, ետ եւ զսա գրել եւ վայելչացուցանել յոսկւոյ սրբոյ եւ ի պատուելի երանգաց սիրելի առնել զսա ներքոյ եւ արտաքոյ։*

*Եւ ես ըստ իմում կարի լցի զփափագ նորա, եւ աւարտեցի զսա ի սուրբ եւ յաշխարհամուտ յաթոռս Հռոմկլա, ընդ հովանեաւ բազմահաւաք սրբոց որ պաշտին աստ։ Ի թուականութեանս Հայոց ՈՂԸ (1249), ի թագաւորութեանս Հայոց* Հեթմոյ *բարեպաշտի, եւ որդոց նորա բարի շառաւեղաց* Լեւոնի *եւ* Թորոսի, *եւ սրբահոգի թագուհոյ իւրոյ* Զապլի, *որոց տացէ նոյն ինքն բանն Աստուած կեանս երկայնս եւ յաղթողս թագաւորել ի վերայ ազգիս Հայոց։ Իսկ սուրբ դիտապետս Հայոց տէր* Կոստանդին, *որ ստացաւ զսա ի վայելումն իւր եւ ի յիշատակ հոգւոյ իւրո զանձ անապական յերկինս, գրասէր եղեալ մանաւանդ թէ աստուածասէր, իմացեալ թէ Որ յեկրէ նիւթք, ի նոյն ունին կորնչել, եւ բանն Տեառն մնայ յաւիտեան, ետ գրել յոլով Աւետարանս եւ գրեանս ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ, եւ յուրախութիւն մանկանց նորա։*

*Եւ արդ աղաչեմք զամենեսեան որք ժառանգեէք զսա եւ կամ տեսանէք եւ աւկտիք, յիշեսջիք սրտի մտաւք զսուրբ կաթողիկոսս տէր* Կոստանդին, *որ ստացաւ զսա, եւ զծնաւղսն իւր, եւ զեղբարս, եւ զքուերս՝ զվաղ երթեալսն ի Քրիստոս, եւ զեղբաւրորդիս սորա, որ եւ նոքա հանգուցեալ են ի Տէր, եւ որ այժմ կենդանի է սրբասէր քահանայն* Թորոս, *եւ որդի նորին* Ստեփանոս, *աղաչեմ զամենեսեան, զի խնդրեսջիք հանգուցելոցն հանգիստ ի Քրիստոսէ, եւ որ այժմ կենդանի է երկար եւ անխռով կեանս ունել որդւովն իւրով եւ ամենայն զարմիւք։*

*Ցերես անկեալ յոքնամեղ գրիչս* Կիւրակոս *յիշել եւ զիմ անարժանութիւնս եւ զծնաւղսն իմ, զի ողորմեսցի նոցա Տէր ի գալստեան իւրում։ Ընդ արժանաւոր յիշատակի յիշեսջիք զմաքուր կրաւնաւորն եւ ըստ հոգւոյ եղբայրն* Բարսեղ, *որ երեր զմագաղաթս եւ նուիրեց բանին Քրիստոսի, եւ զ*Կարապետ *սրբահոգի վանական եւ բեմբական քահանայ եւ զամենայն երախտաւորսն մեր, եւ զաշխատաւորսն...*

## 202

### ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7635

Գրիչ՝ Սոսթենէս

ա

Ձմեղապարտ եւ զանարժան գրիչ՝ Սոսթենէս յիշեսջիք ի Տէր*։

բ

Նվիրող՝ Ամտանց,
Վայր՝ Հոռոմոսի վանք

267ա Աւետարանս Հոռոմոսի վանից Սուրբ Յովանիսի է աւանդեալ ի մեղապարտ ձեռոյս յԱւետեացս, որդոյ Խաչեղբաւրն, աղաչէ յիշել յաղաւթս։

Ի ՈՂԸ (1249) թվին։

Ով զմեզ յիշէ բարի մտաւք, ինքն յիշեալ եղիցի յԱստուծոյ և յամենայն սրբոց, ամէն։

## 203

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 1283

Գրիչ՝ Սոսթենէս

ա

180ա Աւրհնեալ Սուրբ Երրորդութիւնն։ Փառք եմ Քրիստոս զքո բարոյդ։ Աւրհնեալ Սուրբ Նշանն եւ Սուրբ Աստուածածինն եւ Սուրբ Կարապետն։ Աստուած իմ Քրիստոս, քո եւ քոոցն է ամենայն պարգեւս։ Դու ես բան եւ գիր, եւ գրող, եւ գրիչ և ամենայն պատրաստութիւն գրոյ; Եղիցիս աւրհնեալ դու յամենայն արարածոց։ Գիտեմ Տէր յայսմհետէ զի զթաս յանարժանս։

Փառք քո տերութեանդ։

Որք ընթեռնույք կամ աւրինակէք, յիշեսջիք յաղաւթս զանարժան գծողքս զՍոսթ[ենէս] եւ զՀայր[ապետ] և զծնողսն մեր զՍտեփանոս եւ զՏիրատուր ի Քրիստոս հանգուցեալսն եւ առհասարակ զամենայն նընջեցեալսն։

Աղաչեմ յիշել եւ զերկրորդ ծնողսն զԿիրակոս փիլիսոփ[ա] և զԴաւիթ միայնակ[եացն], եւ զեղբարսն մեր զՅովաննէս եւ զՊատուականն եւ զայլսն ամենայն, եւ Աստուած յիշողացդ ողորմեսցի։

բ

46ա Տէր Աստուած ողորմեա Տիրատրոյ եւ Ստեփանոսի ի քում գալըստեանդ։

* Գրված է խորանի ստորին մասում։ Ձեռագիրն ավելի վաղ է գրված։

Գ

112բ ԶԳծողքս **Սոսքենէս**, եւ եղբարսն **զՅովաննէս** եւ **զԳաստուակեանն** յա-ղաւթս յիշեսջիք։

Դ

134ա Վայ զիս, վայ զիս, վայ զիս, վատ Նիւթ եւ գրաւղս

Ե

145բ Տէր Յիսուս, ողորմեա **Ստեփանոսի** եւ **Տիրատրոյ** ի քում գալստեանդ։ Զդաստիարակսն եւ զծնողսն **զԿիրակոս** փիլիսոփայն և **զԴաւիթ** միայ-նակեացն յիշեսջիք ի Տէր։

## 204

### ՃԱՌՔ ԳՐԻԳՈՐԻ ՍԿԵՒՌԱՑԻՈՑ

Վիեննա 166, Հ. Տաշյան, Ցուցակ, էջ 577

Գրիչ՝ Յովսէփ
Վայր՝ [Սկեռա՞]

ա

36ա Որք վայելէք ի մեծի փրկագործութեանս և մխիթարիք ի քաղցրաճաշակ բանիցս, ղյոքնամեղ գծողս Յովսէփ յիշման արժանի արարէք ի Տէր։

բ

Ապա և զանձն իմ եղկելի,
Վատթար գործով լցեալ իլ՛ի,
Սուրբ եւ մաքուր հարսն դշխոյ,
Վասն իմ առ Տէր աղերս մատոյ։
Յիշման զտրա զիս արժանի,
Եկեղեցի Տեառն առաջի,
ԶՅովսէփ անունս և անպիտան
Եւ զքահանայս Տեառն անարժան։
Զի որ բազում փափագանաց
Զճառս գրեցի աշխատանաց;
Յորմէ արբեալ զմայլիմ հոգւով,
Թագուն և խորս. խորհրդով,
Զոր ի սրբոյս իմոյ հաւրէ
Յայտնեալ է քեզ ի Գրիգորէ:
Իսկ փափագողք և իմաստունք
Առաջաստի մաքուր մանկունք,
Որք յաւրինակ առնոյք զսա,
Սիրով սրտիւ ըղձիք սմա։

. . . . . . . . .

Լիցի՛ն և այնք այսմ արժանի,
Ջեր մաղթանաց տանողք բարի,
Որք ըստ մարմնոյ զիս մարդ ծնան
Եւ ի Քրիստոս վախճանեցան։
Եւ որ հոգւով զիս դիեցոյց,

*Ուսմամբ երկաւք խրատեալ լցոյց,*
*Որոց և ձեզ հանդի[պեսցի] ||*

Գ

234բ Որք զմայլիք հոգւով ի քաղցրաճաշակ բանից մեծ հռետորին Գրի-
գորի, մանաւանդ ի տամի մեծին Գրիգորի Լուսաւորչին մերոյ, հայցեցէք
յառատապարգեւ Տեառնէն յաղագս մեծապատիւ իշխանաց իշխողիս մե-
րոյ Կոստանդեայ և բարեշաւղաց որդւոց իւրոց Հեթմոյ և Աւշնի, որ է
տէր աստուածապահ դղեկի Լամբրաւնի, զի պահեսցէ զկեանս սոցա
խաղաղութեամբ ընդ երկայն աւուրս ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր, որ է
աւրհնեալ յա[ւիտեանս]*։

205

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿԵԱՅՑ ԹՂԹՈՑ ՍԱՐԳՍԻ ՇՆՈՐՀԱԼԻՈՅ

*Հովսեփյան, Յիշատակարանք, էջ 1007—1010*

Գրիչ՝Ստեփանոս
Վայր՝ Ձորոյբերդ

Փառք ամենասուրբ Երրորդութեանն երից անձին և միոյ տէրութեանն Հաւր ե Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ այժմ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Գրեցաւ ոգեշահ գիրս ձեռամբ մեղաւոր եւ յետին գրչի Ստեփ[անո-սի]՝ յանապատիս, որ կոչի Ձորոյբերդ, ընդ հովանեաւ սուրբ մաւրս Կաթողիկէի և Սրբուհոյ Աստուածածնի և սուրբ վկային Մինայի և այլ սուրբ վկայիցս, որոց բարեխաւսութեամբ Քրիստոս փրկութիւն ոգւոյ շնորհեսցէ ստացողի սորա՝ Ստեփանոսի՝ սուրբ և ոգելից քահանայի, և ծնաւղաց նորին, և վերակացուաց անապատիս՝ Թադէոսի և Մարկոսի, և ինձ բազմամեղ գրողիս և իմոցն, և Քրիստոսի փառք։

Արդ աղաչեմ զամենեսեանսն, որք վաելէք ի մխիթարութեան սորա
359բ յիշեցէք ի սուրբ մաքրափայլ յաղ || աւթս ձեր զստացող սորա՝ զՍտեփա-
նոս քահանայ, որ ստացաւ զսա յարդար ընչից իւրոյ՝ յիշատակ իւր և
ծնողաց իւրոց և ամենայն զարմից, և եդ ի դուռն Սուրբ Մակարայ յիւր
անջինջ յիշատակ, յիշելով զի զանդ ամբարեալսն ոչ ցեց և ոչ ուտիչ
ապականեն, այլ կա մնա։ Եւ արդ, Տէր իմ Յիսուս, շնորհեա ստացողի
սորա ընդգրկեալ զսուրբ պատգամս և յապագայսն կեալ առաջի քո լուրջ
երեսաւք և լսել ի քէն զքաղցր ձայնն. Ազնիւ ծառայ, բարի և հաւատա-
րիմ, որով ի սակաւուս հաւատարիմ գտար, մուտ յուրախութիւն և շա-
հեսջիր զբազումսն, զի արկ զլումայս ի տեղւոջ քաւարանի։

Եւ արդ աղաչեմ հողացեալ բերանովս զորդիստ Նոր Սիոնի՝ յիշատակ արժանի արարէք զմեղապարտ գրողիկս և զծնողսն իմ և թողութիւն շնորհեցէք, յիշեսջիք զյառաջասացեալ վերայկացուք անապատիս և զհո-

* Ձեռագրիս գրչութեան թվականը չկայ, բայց 1250 թուից առաջ պիտի լինի որովհետև յիշուած Կոստանդին իշխանը 1250 թուին սպանվում է։ Այդ թվականից առաջ էր ապրում Դրազարկի հայտնի երաժշտապետ Հովսեփը (տե՛ս աստ, էջ 222)։ Հիշատակարանը դնում ենք 1250-ի տակ որպես հնարավոր վերջին թվական, իսկ տեղը՝ Սկեռա։

գեւոր հայրն և զբարի վարդապետ իմ՝ զՍամուէլ երաժշտապետն և մակացու յաստուածայինս, և թողութիւն շնորհեցէք ստացողի սորա և զորս յիշատակեցաք, և Քրիստոս ձեզ պարգևեսցէ զբազմապատիկ հատուցմունս։ Գրեցաւ /// ի հայրա[պետու]թեան տեառն Կոստանդեա, և ի թագաւորութեանս Հայոց քրիստոսապսակ թագաւորին Հեթմոյ և աստուածասէր թագուհոյն Զապէլի, որ է դուստր Լեւոնի թագաւորին, որոց Տէր Աստուած տացէ ժամանակս երկայն և յաղթող լինել ի վերայ ներհակացն,
354ա ամէն։ Բայց աղաչեմ անմեղադիր լինել սխալմանցս, [որ]ի սմա, և խոշ[որութեան դրոյս], և մի ոք եպերեսցէ պարսաւելով, այլ ուղղեսցէ եղբայրաբար, զի այսչափ կարաւղութիւն էր տկարութեան իմում։ [Աւրհնեալ է Աստուած, որ] զաւրացոյց զվատթարս [յա]ւարտումն ածել զսա։ Եւ արդ ընդ իմոյ անարժանիս /// ձեռին /// [աւ]րհնեսցէ զքեզ Քրիստոս Աստուած, ամէն, ամէն, Ո, Ո-իւ Խ*։

206

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10359 (1201 թ.)

Կազմող՝ Յովանէս

308բ Արդ, կազմեցաւ սուրբ Աւետարանս հրամանաւ ստացողի սորա Անտոնի սուրբ և պատուական քահանաի, ի յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց եւ զաւակաց։

Արդ, աղաչեմ զամենիսեան, որք ընթեռնույք եւ աւկտիք կա<ա>մ ընդաւրինակէք եւ լուսաւորիք ի սմանէ, յիշեսջիք ի Քրիստոս զստացողք սորա զԱնտոն քահանա, եւ զկենակից նորա զԹանկոզիզն, եւ զսեփական զաւակս նոցա զՍարգիս կրաւնաւոր, և զՊետրոս և զԿիւրեղն և զՎըրթանէսն, և զեղբարս նոցա զԿոստանդին եւ զԴաւիթ, եւ զծնողս նոցա զՄխիթար եւ զՆեռստէս** եւ զՇնձեր նաղաշն եւ զծնողսն իւր զԳոյլերն, որ աշխատեցաւ եւ ծաղկեաց իւր հալալ ինչիւք զսուրբ Աւետարանս։ Նայ եւ զԿոստանդ սարկաւագն եւ զկենակիցն իւր զոխկին Նաւրիկն յիշեսջիք, որ ընկալան զմեզ ի յարկս իւրեանց, և սպասաւորեցին մեզ զանազան կերակրաւք և պէսպէս մեծարանաւք, ընկալցի զնոսա Քրիստոս Աստուած ի յարկսն լուսեղէն ի հանկիստն յաւիտենից։ Նայ և զՍտեփաննոս, և զՔրիստոստուրն, և զԳրիկն, եւ զխս մեղապարտս զՅովանէս, և զծնողսն մեր յաղաւթս յիշեսջիք, որ կազմեցի զսուրբ Աւետարանս, ի թուականիս Հայոց ՌՂԹ (1250)։

Եւ զՍտեփաննոս ապրիշմգործն յիշեսցէք**։

---

* Գ. Հովսեփյանը ձեռագրի մասին գրում է. «Տարաբախտաբար փչացած է Յիշատակարանի թվականը պարունակող տողը։ Բայց կարելի է մոտավոր ժամանակը որոշել Ձեռագրիս գրչությամբ։ Հիշատակարանում Հեթումի թագուհին Զապել յիշւում է դեռևս կենդանի։ Զապել մեռել է 1252 թուի Հունվարի 22-ին (Ալիշան, Սիսուան, էջ 554)։ Ուրեմն այս Ձեռագիրը գրուել է 1251 թուից առաջ, հաւանօրէն 1250 թուին» (Յիշատակարանք Ա, էջ 1010)։

** Այս տողը գրված է վերին հիշատակարանից բաժանող կետ-գծային տողից ներքև, նույն

207

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 10686

Գրիչ՝

ա

318ա Փառք, պատիւ և երկրպագութիւն Հաւր և Որդւոյ և || Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զլուսաւ-փողձ և զկենսակիր կտակս, ի թուի ՈՂԹ (1250)։ Արդ, որք աւկտիք ի սմա-նէ, յիշեսջիք ի Տէր զսրբասէր կրաւնաւորն զՊապիոս, և զծնաւղսն իւր, և զեղբարս, և զամենայն զարմ, որ բազում փափականաք ստացաւ զսայ յարդար գոյից իւրոց։ Ընդ նոսին և զողորմելի և զտխմար գրիչս յիշեսջիք ի Տէր, և զոր մեզ խնդրէք, նախ ձեզ կատարեսցէ Քրիստոս, ապա՝ մեզ, և խոշորութեանց և սխալանաց, որ ի սմա, աղաչեմ չմեղադրել, զի աւրի-նակն կարի խիստ ծ|||թան էր և պակաս*, և Քրիստոսի փառք։

բ

Փրկող՝ Վարդան

318բ Տէր Աստուած, ողորմի Վարդան սրբասնեալ քահանաի, որ է սուրբ Աւետարանս իմ աղբաւրն Պապիասին, և ետ զսայ ումեմն, և գնացել էր յեզր ծովուն։ Ես՝ Վարդան գտայ և շատ տառապեցա, ինչուի թափեցի։ Որ կարդայ կամ աւրին[ն]է, յիշեցէք յԱստուծոյ թողութիւն Պապիասին և Վարդանայ, և ծնողաց մերոց գնացելոց առ Քրիստոս, ամէն։

գ

Կազմող՝ Ճաւլին

Զկազմող սորա զՃաւլին ան[արժ]ան քահանայս յիշեսցէք ի Քրիս-տոս։

208

ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 153, Բ. Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 676

Գրիչ՝ Յուսիկ
Վայր՝ Ճոխաթի վանք

169ա Ի թուիս ՈՂԹ (1250), ի կաթողիկոսութեան տեառն Կոստանդեայ և ի թագաւորութեան Հեթմոյ, որդւոյ Կոստանդեա, և ի կաթողիկոսութեան տեառն ||| հայրապետին Ասորոց՝ յոյժ ծերի և աստուածասիրի և բարի

գրչի կողմից։ Խոսքը ձեռագրի կազմի կապտաւնները փաթաթող թելերի մասին է, որոնք մե-տաքսյա են և գործել է Սահփառոզը։

* Այս և նախորդ բառը ջնջված է և դժվարընթեռնելի։

համբաւի՝ գրեցաւ սուրբ Աւետարանս Մատթէոսի աւետարանչի և այլ Մարկոսի և Ղուկասու և Յովհաննու սակաւ սակաւ, ի խնդրոյ սրբասնեալ և պատուական հայրապետին վանացն, որ կոչի Ծոխաթ, յոյժ հոչակաւոր և բազում զարդարանաւք պայծառացեալ քահանայիւք, սարկաւագաւք, դպրաւք, նմանեալ անմարմնոցն կրաւնիւք և վարուք և աղքատասիրութեամբ՝ որպէս ի Տէառնէ առեալ պատուէր։ Արդ գրեցաւ ձեռամբ մեղաւորի Յուսիկ անարժանի, վասն որոյ Աստուած ողորմի ասացէք, ամէն։

209

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅՈԲԱՅ ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ*

*Երևան 4037 (ԺԵ դ.)*

*Հեղինակ՝* Վանական վարդապետ

103բ *Ըստ բազմազան շնորհաց Հոգոյն շնչեալ ի միտս իմաստնոց, որ չուսաւորէ զմիտս լսասիրաց, մանաւանդ վարժելոց ի յարգանակի եդեւլոյ ԹԲԲ ի սեղան ամենեցուն հաւաքեալ ի մի, առ ի դիւրութիւն ընդհանուր հանդիպելոց։ Եւ այս են անուանք, զորոց զբանսն եդաք.* Եփրեմ, Եւսեբի, Ստեփաննոս, Դավիթ, Մովսէս Եերթող, Որոգինէս, Մովսէս Գանձակեցի, Բարսափիւսն, Փիլոն, Եպիփան, Եւագր, Շարունեկն, *և յաւել[ո]ւածին նշանն այլ, զորս բազում աշխատութեամբ հաւաքեալ ի մի, դի դիւրալուր լիցի բան Յոբայ Երանելոյ, ի փառս Քրիստոսի, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն**։*

210

*ՍԱՂՄՈՍԱՐԱՆ*

*Երևան 4037 (ԺԵ դ.)*

*Սրբագրող՝* Յովաննէս Գառնեցի

224բ Ստուգաբանութիւն Սաղմոսին ի Յովաննէս Գառնեցոյ՝ նոգելի վարդապետէ, որ յոմանց յերկբայս թըփ:

*ԶՍաղմոսս Դաւթի, մանաւանդ թէ զերգս Հոգւոյն Սրբոյ այլ և այլ՝ աւելի և պակաս, նըւագեն մանկունք եկեղեցւոյ, ոչ ուսեալ զճշմարիտն և ոչ իմացեալ ղճըշգըրիտն. եւ այս եղեւ յանհոգութենէ ոմանց և ի սխա-*
225ա *լագիր գրչաց։ Իրահամարձակք ոմանք || մտայօդ իմացմամբ աարագրե-*

* *Այստեղ 1251-ի թվաշարքում (այդ թվականին է մահացել Վանական վարդապետը), դնում ենք նաև անթվական երկու հիշատակագրություններ, որոնցում հիշատակված է Վանականը, որպես կենդանի գործիչ։*

*Ա. «Խնդիրք* Վահրամա *իշխանի և* Ջալալա *Հայչենոյ գաւառի և պատասխանի* Վանական *վարդապետի» (Ձեռ. № 2189. էջ 210ա)։*

*Բ. «Արդ, այս Տաւնացոյց կարգեալ բովանդակ տարոյ աշխատութեամբ տէր* Իսրայէլի Խաչենեցոյ *եպիսկոպոսի՝ հրամանաւ* Վանական *վարդապետի, ի խնդրոյ* Ջալալ Դօլին՝ *տեառն* Խաչենոյ *և տէր* Գրիգորի *եպիսկոպոսի, որք աղաչեցին զտէր* Իսրայէլ *եպիսկոպոսն, հայեցեալ ի կորովութիւն մտաց նորա և ի ժուժկալութիւն բարուցն։ Եւ նա յանձին կալաւ և շանս եդ գտանել զաւր նահատակութեան սրբոցն, որ դրեալ կայ ի լիակատար պատմութիւնն, համառօտելով նմա զսքանչելի կատարումն սրբոցն և եդ ընդ այլ կարգեալ Յայսմաւուրս, զոր կարգ ամսոցն Հայիւ և Հոռոմիւ միաշունչ եղեալ անսզալ զտարին կատարեն» (Ձեռ. № 1511, էջ 601 բ)։*

*ցին զուղիղն և զուղ[ղ]որդն։ Նայ և բազում անկամ վրճին ոմանք ի նըւազէլն զՍաղմոսս։ Եւ այլք ոմանք ծայրաքաղ առէնելով բարբանջեն անզեղջ սրտիւ և անիմաստ բայիւք, եւ ոչ յիշեն զասացեալն ի Դաւթեայ, թէ Սաղմոս ասացից և ի միտ առից։ Եւ զհրամայեալն ի Պօղոսէ, եթէ Սաղմոս ասացից մտօք և Սաղմոս ասացից հոգւով։*

*Ամենայն ազգ[ք] գրովք երգեն զՍաղմոսս և հայք ի բերան առեալ ասեն վայրապար, քահանայք և ռամիկք, մանկուք և կողեոք և հաւատ-[ա]ւոր կանայք։ Եւ երանի թէ ամենայն ոք հրճուեալ նըվագէր զհաստատուն և զստոյգն։ Այլ ես նուաստս* Յօվաննէս Գառնեցի, *ծառայակից ձեր ի Քրիստոս Յիսուս իբրեւ զայս տեսանէի, խիստ վշտանայ[ի] տարակուսանօք։ Ապա ճանապարհ արարեալ գնացի ի մայրաքաղաքն մենաստան ի* Հաղբատ, *և որոնեալ գտի ի Թարգմանչացն գրած մագաղաթ Սաղմոսարան մի, զոր առեալ սուրբ վարդապետին* Սարկաւագ *կոչեցեալ, այն, որ զՏոմարն երեւեցոյց զհին Հայումն, եւ նա սերմանեաց զայս*
225բ *ուղիղ և զուզ[ղ]որդ || Սաղմոսս։ Եւ զի ոմանց այլ և այլ երեւի սա, բայց դու, ո՛վ սիրելի, ընկալ զայս գաղափար իբր բազում երկամբք ստուգեալ։ Այլ ես զայն բանքն, որ կասկածաւոր թըւին քեզ, զայն բացէ ի բաց եմ գրել. դու մի կարծեր, թէ պակաս է բանն, այլ ամենայն ջանիւք ջանայ, որ զինչ գրած է, զայն ուսանիս և զայն դրեսցես հաստատութեամբ։ Զի թէ ի վերայ հասանես, խիստ աւգտիս, զի ճշմարտաբան է, և լուսաւորիս հոգւովն սրբով, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն*։*

## 211

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Երևան 3033*

Գրիչ՝ Սարգիս
Վայր՝ Հռոմկլա

ա

*Փառք միշտ փառաւորելոյն Աստուծոյ Հա[ւ]ր եւ Որդւոյ եւ Սուրբ Հոգւոյն միոյն զաւրութեան, տէրութեան և կամաց, ամմէն**։*

---

* *Նույնը կա մի Առենի ժամագրքում փոքր այլ խմբագրությամբ։*

*«Իսկ ես մեղաւոր տէր* Ստեփանոս՝ *ծառայս ծառայից Աստուծոյ՝ ի բազում ամս տենչմամբ տոչորեալ էի ի սէր ուղղաբան Սաղմոսարանիս առենի. ահա հանդիպեցայ ընդիր և լաւ աւրինակի, որ էր գրած յիշատակարանին, թէ գրեցաւ սա յաւրինակէ սուրբ վարդապետէն* Դառնեցոյ, *ձեռամբ նորին դրեալ և ստուգաբանեալ ճշմարտիւ, կրկին կրկին։ Որ նա նոյն բաղձմամբ ի խընդիր եղեալ էր ուղղաբան Սաղմոսարանիս, որոյ յիշատակարանն դրեալ էր։ Եւ ապա ասէ. Գնացի ի սուրբ ուխտն* Խաղբատ *և երկիրպագեցի սուրբ խաչին և սուրբ գերեզմանի մեծի և տեսանող իմաստասիրւն Հայոց սուրբ վարդապետի* Յօվանիսի. *մականուն* Սարկաւագի. *այն որ բազում ճգամբք զՍաղմոսն Թարգմանչագիր Սաղմոսարանէ դաղափարեաց։ Զոր և իմ հանդիպեալ նորան՝ սուրբ վարդապետի* Սարկաւագի *ձեռագրիւ Սաղմոսարան, և իմ առեալ զայն Սաղմոսարանն՝ համբուրեցի և ինձ ետու գրել զսա յիւրմէն ամենայն ստուգութեամբ՝ գրանն, զգիր, զհարցուկն, զտում[ն], զկէտն, զստորն, զշէշտն, զբոյթն. զպարոյկն, զսուղն, զենթամնայն, զսուկ. բայց մի ոք իշխեսցէ տգիտաբար բան թիւրել և կամ զգրեալսն զստուգել յօրինակէս, որպէս և ես* Յօվանէս Գառնեցի» *(Զեռ № 5348, էջ 272ա)։*

** *Գրված է ամբողջ սյունակում կարմիր երկաթագրով։ Այսպես են գրված նաև հիշատակագրությունները։*

409բ Որոց բաղձալի է հանդերձեալ կենացն խոստմունք և սէր արարչին,
նոքա միշտ մրցին, թէ որպէս ժառանգորդք լիցին կենացն անվախճանից
և մտայոյզ դեգերանաւք տօնորին զկամս Տեառն իւրեանց կատարել։
Ոմանք զանձինս իւրեանց ճգնութեամբ պատարագեն, և կէսք յաղքատս և
տնանկս ծախեն զգոյս իւրեանց։ Եւ այլք պէսպէս բարեգործութեամբ
հաճոյանան Աստուծոյ, և իւրաքանչիւր ըստ կարի իւրում և ըստ շնորհե-
լոյ նմա ի վերուստ, և գի թեպէտ և ընդունաւղն ընծայից հեզ է և խո-
նարհ, և հայի ի յաւժարութիւն սրտին, եւ ոչ յաղագս սակաւուց զոք
մերժէ, այլ յարգէ, գովէ և մեծամեծաց յիշատակի արժանի առնէ և պար-
410ա գեաց հատուցման, որպես զը ‖ կինն այրի, որոյ բանք բարեաց քարոզի
միշտ ի ներկայս յեկեղեցի սուրբ, զարթուցանել զմեզ ի թմրութենէ մա-
հաբեր քնոյ և յորդորել ի նախանձ հոգևոր։
Իսկ ի թուականիս Հայոց Ձ (1251) յամս աստուածապատիւ մեծի
կաթողիկոսին Հայւոց և հասարակաց հաւրս տեառն **Կոստանդեա**. զոր
Տէր Աստուած ըստ առաջին սուրբ հայրապետացն դասեցէ, ընդ որս
ես **Վարդան** նուաստ ծառայ Քրիստոսի, և աշակերտ սուրբ տեառնս և
ըստ շնորհացն Աստուծոյ սպասաւոր և փակակալ մեծափառ տաճարացս
Աստուծոյ տանս հայրապետական աստուածապահ դղեկիս որ կոչի
**Հռոմկլայ**. ցանկացաւղ եղեալ բարեաց ճանապարհի առաքինեաց և ուշ
եդեալ թէ ընթանամ յառաջ և ոչ ունելով աւժընդակ գործս ինչ անբիծ։
411 Արդ ակն չոր ‖ ից աւետարանչացս եդեալ, զձեռս առ սոսա բարձեալ
մատամբ սրտի հառաչեալ առ իշխանութեան աւուրն զսոսա բարեկամ
կոչել և ասել թէ՝ Եկ որդի և կաց առ իս անմեկնելի, վասն որոյ առեալ
մեր զսուրբ աւետարանիչս Յոհանէս և զՂուկաս և զՄարկոս և զՄատթէոս,
և զբանքս նոյն ինքն փրկչին բարեխաւս ունելով առ ինքն Աստուած, և
գրել ետու զսուրբ մատեանս զայս ծաղկերանկ և ոսկենկար յաւրինուա-
ծով ի լաւ ի յընտիր աւրինակէ բանիւ և եղանակաւ, ընդ հովանեաւ մաւրն
լուսոյ Սրբոյ Աստուածածնի և գեղեցկայարմար տաճարիս Սրբոյն Գրի-
գորի, յիշատակ հոգւոյ և բարեխաւս յատենին։
411ա Արդ, եդեալ զերեսս յերկրի աղաչեմ զդասս ‖ սրբազանից, զի յոր-
ժամ ընթեռնոյք զաստուածախաւս մատեանս զայս ի ժամ սոսկալի սուրբ
պատարագին, յիշեսջիք սրտի մտաւք զմեղուցեալս **Վարդան**՝ զկազմող և
զստացաւղ սուրբ մատենիս, աղաչեմ յիշել և զծնաւղսն իմ և զհամաւրէն
ազգայինսն իմ, և որք յիշէքդ, յիշեալ լիջիք և դուք ի Քրիստոսէ, որ է
աւրհնեալ յաւիտեանս, ամմէն։
Ընդ նոսին աղաչեմ և զիս յիշման արժանի առնել՝ զանարժանս ի
գրչաց **Սարգիս** սարկաւագ, և զծնաւղսն իմ և զամենայն արեան մերձա-
ւորսն իմ։ Դարձեալ աղաչեմ զյիշողսդ յիշման արժանի առնել զտէր
**Ստեփանոս** արհեպիսկոպոս **Մելիտենոյ** և զհարազատ եղբայրն իւր զհայր
**Մակար**, որ նիւթոյս առիթ եղեն, և Տէր Յիսուս որ առատն է ի պարգևս,
411բ յիշողացդ և յիշ ‖ ելոցս առհասարակ ողորմեսցի, և նմա փառք յաւի-
տեանս, ամմէն։

Բ

Ո՛վ յանսկիզբ ծոցոյ բան,
Որ ծաղկեցար յազգս մարդկան,
12ա Եւ մեզ զշնոր || հս քո շրթան,
Հեղեր աւրհնեալդ յաւիտեան։
Դու զպձնողս քո բանի՝
ԶՎարդան արա յիշման արժանի*։

Գ

124բ Զկուսակրաւն քահանայս մեր զՎարդան յիշեսջիք ի Տէր։

Դ

195բ Զմեղուցեալս Վարդան, ստացաւղ սուրբ տառիս, յիշեսջիք ի Տէր։

Ե

409ա Զստացաւղ սուրբ տառիս՝ զկուսակրաւն քահանայ զՎարդան յիշեսջիք ի Տէր։

212

## ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ԳՐԻԳՈՐԻ ՆԱՐԵԿԱՑԻՈՅ

Երևան 5076

Գրիչ՝

271ա Արդ աղաչեմ զձեզ, ո՛վ մանկունք Նոր Սիովնի, որք հանդիպիք այսմ անյարմար և անարհեստ գրիս, անմեղադիր լերուք. զի առ փափաք սրրտիս և վասն ծովացեալ մեղաց իմոց թերևս շմէեցէ զսիրտս իմ։ Արդ, աղաչեմ զընթերցողսդ և զլսողքդ, զի թողութիւն խնդրեցէք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, զի մի կրկնապատիկ տուժեցայց վասն մեղաց իմոց, զի յոյժ եմ մեղաւոր և անառակ գործով լի, զի թերևս աղաւթիւք ձերովք գտայց թողութիւն ի բարերար Տէառնէն մերմէ, և յիշողացս, և յիշելոցս Աստուած Հայր, և Որդի և Սուրբ Հոգին տացէ զքաւութիւնն ամէն, ամէն։ Յ։

Եւ որ ի գրելս մեզ սպասաւորեցին ոռճկաւք կամ հացով, կամ փոշիչուր եփելով կամ գինով, Գրիգորն, ի[ր] կողակիցն Մունաք խաքունն, Մղանն՝ մեծ մայրն, սպասաւորք մեր, որ ի մեր կերակուրն և ըմբելին երախտիք ունի, Քրիստոս Աստուած հատուսցէ իրենց ամէնին [հ]աւասար, փոխարէն զիւր արքայութիւ[ն] ամէն, ամէն։

Գրեցօ ի թուիս Հայոց ի Չ (1251)**։

---

* Գրված է երկու խորաններում, ոսկյա խորքի վրա, կապույտ, զարդագիր երկաթագրով։

** Ձեռագրի ստորին մասը կտրված է, միայն Չ թվականն է կարդացվում։ Ձնայած ազատ տեղին, այլ թվականի հետք չի երևում։

## 213

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7739 (1001 թ.)*

*Ստացող՝* **Ներսէս**

179բ *Ես* **Ներսէս** *մեղապարտ քահանա բազում սիրով եւ ջանիւք ստացայ եւ վերստին նորոգեցի զսուրբ Աւետարանս ւիմ հալալ արդեանց եւ աշխատանաց, յիշատակ ինձ եւ ծնողաց, եւ եղբարաց իմոց, եւ զկողն* իմ, զի կարի շոյտ քակտեցաւ յինէն ի Տէր, եւ Աստուած ողորմեսցի մեզ եւ ձեզ առհասարակ, ամմէն։*

*Ի տարիոչն, խնդրեմ, ժամ աւր Ա(1) թէ այլ կարես։*

*Թվ[ին] Ձ(1251)Ն էր։ Ինձ անչինչ պահէք վասն սուրբ գրոցս։*

---

* *Այսինքն «զկողակիցն»։*

ՉԱ. 1252

## 214

### ԺՈՂՈՎԱԾՈՒ

Երևան 2273

Գրիչ՝ Գրիգոր
Վայր՝ Խորանաշատ

ա

361ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն անբաժանելի, Հաւր անսկզբան,
և Որդւոյ միածնի, և Հոգոյն ճշմարտի յաւիտեանս, ամէն։

Գրեցաւ լուսաշաւիղ և աստուածաշունչ գիրքս այս ի թուաբեր ամա-
նակաց Հայկազնեան ի Չ և ի Ա համարին (1252), ի նեղ և ի դառն
[ժամա]նակիս այսմիկ և ի գարուս հետևման, և այս վասն մեղաց մե-
րոց, զի բազմացաւ անհնարին վիշտք և նեղութիւնք ի վերայ ամենայն
աշխարհի, ի ձեռն անաւրէն և այլակերպ ղաւրուն Նետողաց, որով բազ-
մացեալ են քան զաստեղս և քան զաւազ ծովու։ Իսկ գրեցաւ տառս աս-
տուածաշունչ ի վանս վարդապետի Վանականի, Խորանաշատ կոչեցեալ,
ընդ հովանեաւ Սրբոհոյ Աստուածածնիս, որ է յոյս և բարեխաւս աշ-
խարհի։ Արդ, ես Ստեփաննոս քահանայ, սիրող եղեալ բանին սպասաւո-
րութեան վասն պատուիրանացն Աստուծոյ մերո, սիրել յամենայն սրտէ
և ի զաւրութենէ ըստ կամաց իւրոց ի փառս, գրել ետու զհոգէշահ բանս
լուսաւորութիւն հոգւոյ և մտաց իմոց, ի յիշատակ և ի բարեխաւս ինձ և
ծնողաց իմոց։

Արդ, գրեցաւ երկակ բանբրս առաքելական և մարգարէ[ակ]ան ի
տանս Աղուանից, ի գաւառիս Երգևանք կոչեցեալ, ի վանս Խորանաշատ
Սուրբ Աստուածածնիս, ի գլուխ իշխանութեան երկրիս այսմ պարոն Աղ-
361բ պուղային, և որդոց իւր[ո]ց Վահրամ և Զաքարէ և Իւանէ, ‖ և ի հայ-
րապետ[ու]թեան տեառն Ներսիսի Աղուանից կաթողիկոսի։

Արդ, ո՛վ սուրբ մանկունք եկեղեցոյ և կոչեցեալք յորդեգրութիւն Հաւրն
երկնաւորի, որք յ'ուժար կամաւք և շնորհաւ[ք Հոգոյն] Սրբոյ ուգտիք
և կամ աւրինա[կ] [ա]ռնոյք զլուսավոր գիրքս զայս, յիշեցէք նախ և
առաջին զփառաւոր վարդապետն և զհասարակաց հայրն զտէր Վանական,
որ լուսատու և բաշխիչ եղև ամէնառատ շնորհացն Աստուծոյ, ընդ նմին
և ձեռասուն զաւակ իւր զԳրիգորէս վարդապետն, որ այժմիկ յաջորդէ
զաթոռ վարդապետին իւրոյ, լցեալ բանիւ և գիտութեամբ Հոգոյն Սրբոյ,
ընդ սմին զՍտեփանոս և զԿիրակոս քահանայք և զծնողսն իւրեանց,
հանդերձ ամենայն բարեկամաւք և ընկերակցաւք, որ են գաւառաւ Բա-

բերդեցի, ի գեղջէն, որ կոչի Խութս և սնեալ ի հռչակաւոր ուխտն, որ կոչի Տառանցիք, որ կան առ ոտս եկեղեցոյն Ամենափրկիչ կոչեցեալ և Սուրբ Աստուածածնին Մարիամու։ Եւ ի վերա այսր ամենայնի, զանարժան և ղտարապեալ գրիչս զԳրիգոր և զծնողսն իմ, և զսնուցողսն և զամենայն հոգևոր եղբա[ր]քս, [որ] կան շուրջ զմեք և խնամեն զմեզ հոգևոր սիրով իւրեանց, զի թեպէտ և խոշոր էր գիրս, բաղում աշխատեցայ և լի հաւատով գրեցի, և այս էր պատճառն, որ չէաք հմուտ այսմ արուեստի, և յիշողքդ, և յիշեալքս աւրհնին [ի] Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամէն։

Բ

148բ Զստացող գրոցս զՍտեփաննոս յիշեսջիք ի Քրիստոս, ընդ նմին և զծրողս աղաչեմ։

Գ

153բ Ի խաչ ելեալդ Քրիստոս, տուր ինձ իմաստութիւն և համբերութիւն։

Դ

173ա Ո՜վ սուրբ ընթերցողք, որք աւգտիք ի սուրբ ի յաստուածընկալ բանիցս, յիշեցէք յաղաւթս ձեր զՍտեփաննոս և ծնողս իւր, ընդ նմին և զգծող սորա զԳրիգոր անարժան քահանայ, և բարեաց տուողն Քրիստոս զձեզ յիշէ իւր գալու[ս]տն, ամէն։

Ե

Գրիչ՝ Ստեփաննոս

233բ Փառք համագո Երրորդութեանն, որ արժանի արար զիս զտարակոյսս՝ տեսանել զվերջին գիծս։ Արդ, գրեցաւ գի[ր]ս Ստեփանոսի գրոց աշակերտի՝ գաւառաւ Բաբերդեցի, գեղջաւ Խփացի, ի վանացն Տառանցի: Արդ, աղաչեմ զսուրբ ընթերցող գրոյս, սա[ս]ջիք թէ Քրիստոս քո սուրբ մարմնոյ և արեանդ, ողորմեա Ստեփանոսի և հաւրն իմ Հայրապետ քահանայի, և մաւրն իմ Թեկղ կոչեցեալ, և եղբաւրն իմ Կիրակոս քահանայի, և միւս եղբաւրն Աբրահամո: Քրիստոս իւր սուրբ մեղսքաւիչ մարմնոյ և արեանն բարեխաւսութիւն տայց նոցա խաղաղական կեանս մինչ ի խորին ծերութիւն, և փոխեալ կենցաղուս՝ սիրով ընկալցի զնոսա Քրիստոս ընդ սիրելիս անուանն իւրո, վասն զի յոյժ սիրէի զնոսա, և զփոխեցեալն ի Քրիստոս տղա հասակաւ և զքուրն Զաբիկն և Ծիծմարն: Որ զմեզ յիշէ, յիշել և աւրհնեալ ւ[ի]ցին յԱստուծոյ, ամէն*։

---

* Հիշատակարանը և նրանից առաջ եղած նյութը Ստեփանոսը գրել է անվարժ շղագրով։

215

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 8321
«Լումայ», 1902, № 1, էջ 197

Ծաղկող՝ Թորոս Ռոսլին

ա

Տեառն Կոստանդեա կաթողիկոսի
ԶԱւետարանս այս [ը]ղձալի*
Շնորհեալ սանոյն իւր Լեւոնի
Որդոյ Հեթում թագաւորի։
Առ՚ի նշան արքաութեան
Դատել ըստ հաւատոյ դաւանութեան,
Որ յուղղափառացն եղեալ սահման
Ի յիշատակ իւր յաւիտեան։

բ

Լեւոն որդի Հեթում թագաւորի**

216

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 3893

Գրիչ՝ Բարսեղ սարկաւագ
Վայր՝ Խորին անապատ

ա

Փառք համագոյ և միասնական Սուրբ Երրորդութեանն յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Յամի ևւթնհարիւրորդի և ի մին (1252) թուաբերու-
231բ թեանս Հայկազեան տումարիս աւարտագործեալ եղև սուրբ և կենսաբեր Աւետարանս Քրիստոսի Յիսուսի Աստուծոյն մերոյ, զոր ընկալեալ ստուածալուր վարդապետութենէ երկնաւոր հովուապետաց սրբոց աւետարանչացն Մաթէոսի, Մարկոսի, Ղուկասու և Սրբոյն Յովհաննու աստուածաբանի, յառաջացեալք յանապական և յանմահարար գետոյն չորից յոր-
232ա դախաղաց վտակաց, յարբումն և ի զովացումն ծարաւ || ի անձանց, և յաւրինեալ զսա թագ արքայական եդեալ ի գլուխ մաւրս մերոյ կաթողիկէ

* «Ղձալի» է գրում Թորոս Ռոսլինը նաև մյուս հիշատակարաններում։

** Գրված է Լևոնի հասակով մեկ կանգնած նկարի աջ ու ձախ կողմերում, իսկ ա-ն՝ հանդիպակաց ընծայականն է նախորդ էջի, որ այժմ բացակայում է ձեռագրից։ Այս զույգ թերթերը վաղուց ի վեր անջատված են եղել մայր ձեռագրից։ Մի թերթը կորել է, իսկ մյուսը Ա. Գևորգյանի ջանքերով գտել է իր մայր ձեռագիրը և տեղադրվել նրա մեջ։ Ձեռագրի մանրանկարչությունը վերագրվում է Թորոս Ռոսլինին։ Գրիչը այլ անձ է։ (Այդ մասին տե՛ս Ա. Գևորգյան, «Լևոն երկրորդ թագավորի Ավետարանը», Բանբեր Մատենադարանի, № 8, Երևան, 1967, էջ 141—156)։

Ժամանակն անհայտ է, հավանաբար Լևոն արքայորդու 15-ամյակը լրանալու և մոր՝ Զապել թագուհու մահվան տարում, այսինքն 1252 թվականին է գրված։

սուրբ եկեղեցոյ, ի մխիթարութիւն ուրախորդաց նորին, և ի պարծանս հա-
նուրց հաւատացելոց, և ի փառս փառաց Թագաւորին Քրիստոսի։

Զոր իմ բազմամեղի և անարժան քահանայի Յովհաննիսի, ստացա-
զօա յիշատակ ինձ, և գանձ անկողոպտելի, և փրկանս մեղուցեալ հոգւոյս,
ընդ նմին և ծնողաց իմոց և ամենայն արեան մերձակայիցն։ Եւ աղաչեմ
զամենեսեան աղերսահայց մաղթանաւք, զի ո ոք և իցէ, որ ժառանգէ զսա
յետ ելից մերոց յաստեցս, սրտի մտաւք կարեկցաբար իբրև եղբաւր սիրե-
լոյ՝ աղաւթիւք յիշեսջիք առաջի մեղսաքաւիչ սուրբ պատարագին Յովհան-
նէս զստացաւղ սորա, և զվերայգրեալսն ի սմա։ Յիշեսջիք և զԱւետիս քա-
հանայն, որ փոխեցաւ ի Քրիստոս, որ տէր գովելի աւրինակիս էր։

Եւ արդ, գրեցաւ սա ի յակնաւոր և հռչակաւոր յանապատիս Խորնի,
232բ ընդ հով || անեաւ Սուրբ Աստուածածնի, ձեռամբ անմար գրչի և մեղա-
պարտ սարկաւագի Բարսղի, կելով յանապատիս Խորնի: Ողորմեսցի Քրիս-
տոս Աստուած այս միաբան եղբայրութեանս, որ կան պանդխտութեամբ
յանապատիս, [և]առաջնորդի տեղւոյս, Բարսղի և պատուական ծերունոյ
հայր Սահակայ և այլ միեղէն եղբայրութեանս, և մասնակից արասցէ
զսոսա զամենեսեան բարեխաստակ մչակացն Քրիստոսի։ Նաև գրողի սո-
րա Բարսղի յոգնամ[ե]ղի և տառապեալ ոգոյ, ընդ նմին և ծնաւղաց իմոց
և այլ արեան մերձակայիցն։

Արդ, ես ըստ իմում կարաւղութեանս արտասանեցի զսա, որչափ կա-
րացի, և դու ընկալ, ո՜վ պատուական եղբայր Յովաննէս զսա, և զեղկելիս
յիշեա ի Տէր։ Ընդ նմին զպատուական քահանայն Բարսեղ և զհայր նո-
րին //ապիկ Ափսէկեցին, և զՅովհաննէս հոգևոր եղբայրն զպատուական
քահանայն, և զՍիմէովն զդեռաբոյս մանուկն, զորդի քեռն իմոյ, զծնաւղսն
նորին, և զձեզ Աստուած յիշէ, զի պարգևատու առատ է, և Քրիստոս ամե-
նեցուն ողորմեսցի։

## 217

## ԱՒԵՏԱՐԱՆ

**Երևան 6202 (909 թ.)**

Նվիրող՝ Հայրապետ
Վայր՝ Սուրբ Խաչ

**ա**

207 Յամի Զ երորդի առաջներորդի (1252) թւի, ի հայրապետութեան
տեառն Բարսղի Հա[յ]ոց կաթողիկոսի, ես Հայրապետ աբեղայս գնեցի
զսուրբ Աւետարանս ի յՈստան քաղաքի՝ յայլազգեաց, ի ԻԵ(25) դեկ[ան]
կարմիր, եւ ետու ի Սուրբ Խաչի վանքն, յիւր սեպհական տեղն, որ առն[են]
յամէն<յամէն> յամ ի Բ (2) պատարագ, զտեառնընդառաջին և զԿիւրր-
ղին անխափան։ Եւ որք հեռացուցել ջանայ ի Սուրբ Խաչէն զինչ եւ իցէ
պատճառաւ, ինքն հեռացեալ լիցի ի փառաց որդոյն Աստուծոյ, ամէն։

**բ**

132բ Ո՜վ դասք սրբազանից եւ սպասաւորք աստուածային խորհրդոյն, յոր-
ժամ ընթեռնուք զսուրբ Աւետարանս, զՀայրապետ նուաստ քահանա եւ

զծնողս իմ զԽաչիկ եւ զՏիկնոց յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր, եւ Աստուած յիշողացդ ողորմեսցի։

## 218

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղէմ 3459

Գրիչ՝ Խաչատուր

ա

482 Զսուտանուն գրիչ յիշեա և զդմիրակ կրանաւորն,||որ շնորհիւ Տեառն սկսայ եւ ձեռնտուութեամբն նորին կատարեցի զաստուածախաւսութիւնս սրբոց լուսաւորչացն Մատթէոսի, Մարկոսի, Ղուկասու եւ Յովհաննու, ի թուականութեան Հայոց ՉԱ (1252), ի թագաւորութիւն քրիստոսապսակին Հեթմոյ, եւ ի հայրապետութիւն տեառն Կոստանդնեայ: Գրեցաւ սա ձեռամբ իմով նուաստի Խաչատրոյ, ի խնդրոյ սրբասնեալ կրաւնաւորի Կիրակոսի, որ ստացաւ զսայ ի յարդար վաստակոց, յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց, եւ ընդանեաց ի Վերինն Երուսաղէմ։

Արդ, որք աւգտիք ի սմանէ, յիշեսջիք ի Քրիստոս զԿիրակոս, որ հետեւող աստուածային դանձոյս, եւ զհայրն իւր զԲարեմանուկ, եւ զմայրն իւր զՔոյրաւզատն, եւ զհամաւրէն ազգականսն՝ զկենդանիսն եւ զմեռեալսն, եւ զիս զմեղապարտ գրիչս եւ զծնողսն իմ, եւ դուք յիշեալ լիջիք առաջի ահեղ ատենին Քրիստոսի։ Տէր Յիսուս ողորմի Ստեփանոս քահանայի եւ որդւոյ իւրոյ Կոստանդնեայ, եւ Գորգ քահանայի։

բ

135 Քրիստոս Աստուած քո սուրբ չարչարանացդ բարեխաւսութեամբ ողորմեա գրողին, եւ ողորմեա պարոն Յուսիբայ, եւ իւր զաւակին տիկին Խոսրովանուշին, եւ իւր մաւրն Քանանայի եւ Դաւթի, ամէն։ Եւ Սիոն քահանայի ողորմի, որ զԱւետարանն աւրինակ խնդրեցաք, նա երեդ։

գ

376 Քրիստոս Աստուած քո սուրբ Աւետարանիդ բարեխաւսութեամբ, ողորմեա Յոհաննիսի քահանայի, եւ Դաւիթ դարբնի, եւ Յուսկանն փիլ[իսոփայի]։

դ

222 Ջնուասս եւ զանարհեստ գրիչ, եւ զՊետրոս, որ զայս զընծուփրս շնորհեաց, յիշեսջիք ի Քրիստոս։

## 219

### ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

*Երևան 7463 (1413 թ.)*

*Աշխատասիրող՝* Կիրակոս վարդապետ

349բ Յիշատակ Կիրակոս վարդապետի:

*Յուսով որ առ Աստուած և վասն սիրոյ վկայից Քրիստոսի և քարոզողաց բանին կենաց՝ առաջնորդաց և լուսաւորչաց եկեղեցոյ, և խաչակրօն միանձանց ճգնաւորաց Քրիստոսի, համարձակեալ ես նուաստ ծառայից Քրիստոսի* Կիրակոս *վարդապետ, ի թուականութեանս ՉԲ (1253), աշխատասիրեալ յաւելի ի նախակարգեալ Տօնապատճառս ճառս համառօտս ՃԺԲ (112), հաւաքեալ յաստուածաշունչ գրոց, ի պայծառութիւն կաթողիկէ եկեղեցւոյ և մեզ տօնողացս, ի բարեխաւսութիւն տօնողացս։*

*Եւ աղաչեմ զամենեսեան սիրովն Քրիստոսի, ոչ բառնալ զյիշատակ բանիս, այլ գրել յամենայն գիրս՝ որք գրրին ի սմանէ, զի՛ և ձերն գրեսցի յիշատակ ի գիրն կենաց, և որք բառնան, բարձցի և նորայն ի կենաց դպրութենէն։*

*Այլ և գրողի և ստացողի աւրինակի գրոցս վարդապետքն* Ստեփաննոս *և* Վահրամ, *և նոքայ գրեսցին ի դպրութիւն կենաց ամէն*։*

---

** Նոյն հիշատակարանը կա նաև Մատենադարանի № 7433 Յայսմաւուրքում, աննշան տարբերությամբ. «Յուսովն որ առ Աստուած և վասն սիրոյ Քրիստոսի և քարոզողաց բանին կենաց առաջնորդացն և լուսաւորչաց եկեղեցոյ և խաչակրաւն միանձանց ճգնաւորաց Քրիստոսի, համարձակեալ ես նուաստ ծառա Քրիստոսի* Կիրակոս *վարդապետ, ի թուականիս Հայոց ՉԲ (1253) աշխատասիրեալ յաւելի ի նախակարգեալ տաւնս՝ ճառս համառաւտս ՃԺԲ (112), ի ձեռն* Ստեփաննոսի *և* Վահրամա *վարդապետացն, հաւաքեալ յաստուածաշունչ գրոց, ի պայծառութիւն կաթողիկէ եկեղեցո և մեզ տաւնողացն ի բարեխաւսութիւն։*

*Եւ աղաչեմ զամենեսեան սիրովն Քրիստոսի, ոչ բառնալ զայս յիշատակ բանի, այլ գրեալ յամենայն գիրս, որ գրին ի սմանէ, զի և ձերն գրեսցի յիշատակ ի դպրութիւն կենաց, և որք բառնան, բարձցի նոցայն ի դպրութենէ կենաց։*

*Աւրհնեալ է ամենասուրբ Երրորդութիւն Հայր զՈրդի և Հոգին Սուրբ յաւիտեանս յաւիտեանս։ (№ 7433, էջ 428 բ)։*

## 220

## ԱՒԵՏԱՐԱՆ

Կյուլեսերյան, Ցուցակ Ղալաթիո, էջ 468—472, Ս. Տեր-Ներսեսյան, Ֆրեերի պատկերասրահի ձեռագրերը 44—17, էջ 105—107

Գրիչ՝ Յոհաննէս
Վայր՝ Հռոմկլայ

ա

285ա Փառք փառաւորեալ Սուրբ Երրորդութեանն, միաբուն զաւրութեանն, երեքանձնեա տէրութեանն եւ մի կատարեալ իսկութենանն, Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտեանից, ամէն։

Աստուածային սիրոյն հետեւումն բնաւորեալ է յաստուածասէր անձըն, զի ամենայն բարեաց սկիզբն եւ գոյութիւն ի նմանէ է։ Եւ այնչափ զաւրաւոր է, եթէ ոք ուր ինչ ճաշակէ ի նմանէ, անհատ կարաւտի, եւ առաւել ցանկայ, զի թեպէտ մեծ են հաւատ եւ յոյս, սակայն ի հանգերձեալսն ունին զկատարումն, իսկ սէր ընդ Աստուծոյ յերկարաձգի յանժամանակ յաւիտեանսն, վասն այնորիկ սուրբքն եւ արդարքն առաջինք զամենայն զկեանս իւրեանց նեղութեամբ եւ չարչարանաւք աւարտեցին՝ ի սէրն Աստուծոյ բեւեռեալք։

Ցաղագս այնորիկ եւ տէր Կոստանդին՝ աստուածակոչ վերադիտող Հայոց, զամենայն զկեանս իւր Աստուծոյ սիրոյն նուիրեալ ի մանկութենէ, յամենայն գործս բարիս յաւժարամիտ, եւ ի պայծառութիւն տան Աստուծոյ փոյթ, եւ ի ստացումն սուրբ կտակարանաց անդանդաղ, որ մեծ յուսով եւ անհատ սիրով ստացաւ եւ զայս կենսակիր եւ աւետալուր բանս բանին Աստուծոյ, ոչ ի լնուլ զթերութիւն անկարաւտ եւ փարթամ տան իւրոյ, այլ ի լրումն փափագման աստուածասէր հոգոյն։

286ա Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թուականութեանս Հայոց ՉԲ (1253), ի սուրբ եւ յաշխարհամուտ յաթոռս Հռոմկլայ, ընդ հովանեաւ Սուրբ Լուսաւորչին մերոյ եւ աստուածաներկ Սուրբ Նշանիս, եւ այլ բազմահաւաք սրբոցս, ի թագաւորութեանս Հայոց Հեթմոյ պայծառահաւատ թագաւորի եւ բարեպաշտ որդոյ նորա Լեւոնի, որոց տացէ Աստուած կեանս բարիս եւ անսասան թագաւորութիւն ի փառս իւր, հրամանաւ երջանիկ եւ աստուածազգեաց կաթողիկոսի Հայոց տեառն Կոստանդնեա, որ ստացաւ զսա յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնաւղաց իւրոց եւ եղբարց հանգուցելոց ի Քրիստոս։

286ա Արդ, աղաչեմ զամենեսեան, որք ժառանգէք զսա, եւ կամ աւգտիք ի լուսաւոր բանից սորա, եւ կամ գաղափար առնուք, յիշեսջիք ի Քրիստոս զբարեաց յիշատակաց արժանիսն՝ զտէր Կոստանդին աստուածապատիւ կաթողիկոս Հայոց, եւ զուղղադաւան հայր նորին զՎահրամ, եւ զքրիստոսասէր մայր նորին զՇուշիկն եւ զեղբարս նորին զԳրիգոր եւ զԳեւորգ, եւ զԳեւորգ՝ զվաղուց փոխեցեալս առ Քրիստոս, եւ զեղբաւրորդի նորին զհանգուցեալն ի Տէր։ Յիշեսջիք եւ զեղբաւրորդի նորին զարժանապատիւ աստուածասէր քահանայն զԹորոս, եւ զքրիստոսապահ որդի իւր զՍտեփաննոս, եւ համաւրէն զամենայն աղգայինս իւր՝ զկենդանիս

եւ զննջեցեալսն։ Յաւդ ողորմութեան ցաւղեսցի ի գերեզմանս ննջեցելոցն, եւ կեցուցիչն կենդանութիւն տացէ կենդանեացն ընդ երկայն աւուրս։

Այլ թէ ոք սրտի մտաւք եւ անկեղծ սիրով յիշեսցէ զյիշատակեալսդ, եւ նոքա եղիցին յիշեալք յողորմութիւնն Քրիստոսի եւ Աստուծոյ։

Արդ, ով բան եւ լոյս, ով կեանք եւ իմաստութիւն եւ զաւրութիւն Աստուծոյ Յիսուս Քրիստոս, ի քո յահաւոր եւ սոսկալի գալստեանդ, յահեղ դատաստանիդ եւ յանկաշառ ատենիդ՝ ի ձեռն անխաւս միջնորդիս, եւ անբարբառ բարեխաւսիս, ընկալցիս զտէր Կոստանդին, ընդ արժանաւոր եւ ընդ հաւատարիմ վաստակաւորսն քո։ Եւ ընդ ընտրեալ հովուապետսն առնուլ զբրաբիոն յաղթանակին ի քո յառատաձիր եւ յաննիաղ պարգեւացդ, եւ քեզ փառք ընդ Հաւր եւ ընդ Հոգւոյդ Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Եւ արդ, ես անարժան եւ անպիտան գծողս Յոհանէս, յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան, յիշել զմեզ եւ զմերսն ամենայն։ Եւ խոշորութեան եւ սխալանաց անմեղադիր լերուք, զի տկարանայ ամենայն մսեղի ի գործս իւր։ Սակայն եւ ես պակասեալ ի սգալի լուսոյ յաչաց տեսութենէ, եւ ի հոգւոյ և ի մտաց լուսոյ ամենեւին զրկեալ, այլ հարկեալ ի շնորհաշարժ ալեացն եւ պատկառեալ յաստուածապատիւ պատկերէն, գծագրեցի զսա ըստ իմում կարի։ Եւ դուք սիրով ուղղեցէք զթերութիւն եւ Աստուած առհասարակ ամենեցուն ողորմեսցի, եւ ինքն եղիցի աւրհնեալ յաւիտեանս, եւ յաւիտենից յաւիտեանս, ամէն։

Բ

12բ Ո՛վ յանսկիզբն ծոցոյ բան,
Նոյն եւ ծաղկեալ յազգս մարդկան,
Որ զայս մատեան Աւետարան
Մեզ հնչեցեր ձայն ցնծութեան։
Դու զպճնողս քո բանի
Զտէր Կոստանտին հովիւ բարի,
Նստո յաթոռ ընդ Պետրոսի
Երգել քեզ փառս անլռելի։
13ա Որ յամենայն շնչոց աւրհնիս,
Հանուրց գոյից տէր ճանաչիս։
Արդ զնոփրող այսմ նիւթիս,
Եւ զստացող սուրբ կտակիս
Ընկալ ի փառսդ որ յապառնիս,
Բազմիլ ընդ քեզ ի հար[ս]անիս։
Եւ ծնաւղաց նորին ողորմեսցիս,
Որ յաւիտեանս միշտ աւրհնիս։

Գ

223 Ստացող սորին՝ հոգեւոր տէր Կոստընդին յիշեսցի առաջի Քրիստոսի։

Դ

Ստացող՝ Կոստանդին կաթողիկոս

Ես Կոստանդին ծառայից Աստուծոյ ծառայ եւ ողորմութեամբն Աստուծոյ կաթողիկոս ամենայն Հայոց, որ ետու գրել զԱւետարանս զայս, յաղագս անձին իմոյ՝ յընտիր եւ ի լաւ աւրինակաց, եւ ոսկով եւ արծաթով զարզարեցի։ Եւ իմ անեալ զմենաստան անապատն զՓոսն, եւ միաբանեցի զիւրեանք ի մի պաշտամն եւ ի մի սեղան, եւ առին իւրեանց սահման ըստ կարեաց իւրեանց, եւ ես միաբանեցայ ընդ նոսայ եւ պարգեւեցի նոցա զԱւետարանս զայս՝ զոր ինձ ստացել էի՝ յիշատակ ինձ եւ եղբաւորգոյ իմո Թորոսի քահանայի, եւ ծնողաց մեոոց, եւ եղբարց, եւ քերց մերոց, զի անփոփոխ մնասցէ ի սուրբ ուխտս, եւ մի ոք իշխեսցէ հանել զսա ի սուրբ անապատէս, զի մի անիծիւք պատժեսցի*։

---

* Ս. Տեր-Ներսեսյանը ձեռագրի մանրանկարչությունը Թորոս Ռոսլինի գործն է համարում։

## 221

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Սրվանձտյան, Թորոս Աղբար, Ա, էջ 327—328*

Կազմող՝ Սիմէոն արքեպիսկոպոս
Վայր՝ Մալաթիա

*Զմեզաւք մեռեալ հոգին,*
*Զտէր Սիմէովն արքեպիսկոպոսին,*
*Մալաթիոյ վերայդիտողին,*
*Եւ իմ որդի Ուսլուբէկին՝*
*Վարժեալ ձեռամբ վարդապետին.*
*Առիստակէս րաբունապետին։*
*Վերջին կազմողս ի Մելիտենին,*
*Ի դուռն Սուրբ Գրիգորին,*
*Ի ՉԳ (1254) թուականին*
*Ի յունիս ամսեանն քսաներկուսին։*
*Ով որ կարդայ ի յառեհին,*
*Նա մեզ ասէ զՔրիստոս որդին,*
*Եւ զՀայր մեր յերկինքն ի յետ նորին,*
*Նա թողցի իւր մեղքն եւ իւր ծնաւղին*
*Եւ ժառանգէ ղերկնիցն զքարին։*
*Եւ Աստուած ողորմի իմ վարդապետին,*
*Առիստակէս րաբունապետին,*
*Եւ ինձ անարժան և անպիտան ծառային՝*
*Տէր Սիմէովն արքեպիսկոպոսին,*
*Եւ ծնաւղաց իմոց առաջին եւ վէջին,*
*Հոգեւորին եւ մարմնաւորին;*
*Եւ ամենայն արեան մերձաւորացն ամենին,*
*Ով որ ասէ լի սրտիւ զՏէր ողորմին,*
*Նա Քրիստոս թողու զիւր անցանքն եւ նախնեաց նոցին,*
*Ամէն, Հազար, Հազար ամէն։*



18—487

## 222

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ, 90, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 408—410

Գրիչ՝ Յոհաննէս
Վայր՝ Հռոմ

216բ Փառք ամենասուրբ երրորդութեանն ամենայն արարածոց, որոյ անքակ և անսահման է աստուածութիւնն, որ ոչ առեալ և ոչ սկսեալ, ոչ դադարումն քո աստուածական թագաւորութեանդ։ Որ առաքեցեր զբանդ Աստուած՝ զՈրդիդ քո սիրելի, որ է յառաջ քան զյաւիտեանս, ի խնդիր ադամեան մարմնոյն, կուսածին երկրորդ Ադամ։ Եւ զամենայն կիրս մարդկային՝ յանձին իւրում կրեալ, բայց ի մեղաց, և քաղցրուսոյց վարդապետութեամբն իւրով բարբառեալ ասէր. Եկայք առ իս աշխատեալք, և ես հանգուցից զձեզ։ Եւ յայսմ քարոզութեան հետևեալ զհետ ճշմարտութեանն Քրիստոսի առաքեալքն, յորոց ոմանք քարոզք աստուածունակ տնաւրէնութեանն, և ոմանք աւետարանիչք աստուածութեանն, որ ումի յինքեանս զչորս վտակս դետոց յեդեմայրուղխս աղբիւրացն, արբուցանելով զպասքումն հաւատացելոցս։

Մատթէոս աւետարանիչն ի կոչմանէ Փրկ[չ]ին երթեալ զհետ Քրիստոսի, ականատես եղեալ սքանչելեաց Տեառն և վարդապետութեանն, ընկալեալ զՀոգին Սուրբ ի վերնատան, յետ է(7)ամի համբառնալոյ Փրկչին մերոյ, գրէ զԱւետարանն յԱնդիոք քաղաքի՝ եբրայեցոց բարբառովն, որ բովանդակէ յինքն թիւս ՅԾԵ, (355) Աւետարանս գլխաւորս ԿԶ (66)։

Մարկոս աւետարանիչ՝ աշակերտեալ Պետրոսի առաքելոյ, հրամանաւ նորա գրեաց զԱւետարանն յԱղեկսանդր քաղաքի, յետ ԺԵ (15) ամի վերանալոյ Փրկչին մերոյ յերկինս, գրեաց եգիպտացոց բարբառովն, որ բովանդակէ յինքն թիւս ՄԼԲ (232), Աւետարան գլխաւոր ԾԲ (52)։

Ղուկաս աւետարանիչ աշակերտ եղեալ Պաւղոսի առաքելոյ ի Հռոմ քաղաքի, յետ Ի (20) ամի համբառնալոյ Տեառն յերկինս, գրեաց զԱւետարանն հռովմայեցւոց բարբառովն, որ բովանդակէ յինքն թիւս ՅԽԲ (342), Աւետարան ՀԲ (72)։

Յովհաննէս աւետարանիչ՝ ականատես եղեալ Փրկչին սքանչելեացն և վարդապետութեանն, յետ ԾԲ (52) ամի գրեաց զԱւետարանն յԵփեսոս քաղաքի, յունական բարբառովն, որ բովանդակէ յինքն թիւս ՄԼԲ (232), և Աւետարան գլխաւորս ԾԶ (56)։

Արդ այսմ աստուածային պատմութեանս ցանկացող եղեալ աստուածասէր քահանայ Յոհանէս, որ բազում աշխատութեամբ և փափաքանաւք դրեցի զսայ՝ ի վայելումն կենաց, և յիշատակ հոգւոյ իմոյ և ծնողաց իւրոց, և ի բարեխաւսութիւն առ Աստուած. յահեղ աւուրն դատաստանի ողորմեսցի Քրիստոս Աստուած՝ արարիչն ամենայնի, և արժանի արասցէ լսել գերանաւէտ ձայն՝ զԵկայքն աւրհնեալք Հաւր իմոյ։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս է թվիս Հայոց ՉԳ (1254), ի մեծ

և յանուանի և յակնադիտակ և ի հռչակաւոր քաղաքիս Հռոմ կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցն Պետրոսի և Պաւղոսի, ի խորանիս Սուրբ Պետրոսի։ Ո՜վ սուրբ եղբարք, որք հանդիպիք այսմ աստուածային քնարիս, յերեսս անկեալ աղաչեմ՝ յիշեսջիք զիս և զծնաւղսն իմ, և զեղբարս զՄատթէոս, որ աւգնական եղև ի նիւթ սորին, նա և զՅակովբ և զՄակարն և զՍտեփանոս և զՂազար յիշեսջիք սրտի մտաւք, և որք յիշէք՝ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, ամէն։

## 223

### ԱՒԵՏԱՐԱՆ

Սյուրմեյան, Ցուցակ Հալէպի Բ, էջ 6 (1248 թ.)

Վայր՝ [Հռոմկլա]

Ի թուի ՉԳ (1254) կազմեցաւ սուրբ Աւետարանս ձախաւք Ստեփանոսի դրան եպիսկոպոսի Կոստանդեն կաթողիկոսի ի յիշատակ իւրոյ*։

## 224

### ՅԱՃԱԽԱՊԱՏՈՒՄ

Փարիզ 113, Երևան, մանրաժապավեն 925

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Ռիմ

293ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդոյ և Սրբոյն Հոգւոյն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Շնորհիւն Աստուծոյ սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցաւ աստուածաշունչ սուրբ տառս Սրբոյն Գրիգորի Հայոց լուսաւորչի, ի խնդրոյ երջանիկ, առաքելաշնորհ եպիսկոպոսին Յովանիսի և սրբասնեալ քահանայից Դանիէլի և Սիմէոնի, զի բազում յուսով և փափագանաւք ցանգացող եղեն սուրբ գրոցս ի վասն յիշատակի իւրեանց, եւ <եւ> ես պատճառեցի զանկարութիւն իմ, բայց տեսի զյոյս դոցա և ի յանձն առի, առաւել վասն բազում մեղաց իմոց, յուսալով իմ ողորմութիւնն Աստուծոյ և ի բարեխաւսութիւն սուրբ հայրապետին Գրիգորի։

Արդ, գրեցաւ գիրքս այս ձեռամբ մեղաւոր և անարժան և անպիտան կիսամեռ և դանդաղ, փցուն գրչի Վարդանի, ի թուականիին Հայոց ՉԳ (1254), ի քաղաքիս, որ կոչի Ռիմ, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս, որոյ յանուն սուրբ աւետարանչացն Յոհաննու և Մատթէոսի, և է սա Հոգետուն Հայոց: Եւ ես սուտանունս Վարդան գրեցի զգիրքս զայս և եդի զայս յայսմ եկեղեցւոջ ի յիշատակ ինձ և ծնաւզաց իմոց Ստեփանոսի քահանայի և քեռն իմոյ և որդւոյն Յոհանիսի, որոց ողորմեսցի Տէր Աստուած

* Գրված է արծաթապատ կազմի կռնակին։

և հանգուցէ ընդ սուրբս իւր աղաչանաւք Սրբոյն Գրիգորի Լուսաւորչի և ամենայն սրբոց, ամէն։

Ընդ նմին ողորմեսցի Տէր Քրիստոս երջանիկ եպիսկոպոսին Յ.ւ-վանէսի և սրբասնեալ քահանայիցն Դանիէլի և Սիմէոնի, ծնաւղաց իւ-րեանց և բնաւ զարմից ազ(գա)կանաց, ամէն։

Ողորմեսցի Աստուած աշխատողաց ի գիրքս, և որ հանդիպեցան յայսմ տեղւոջ և աշխատեցան ի սպասաւորութիւն տկարութեանս մերոյ, ամէն։ Պաղոսակ և Պալալակ:

## 225

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Երևան 178

Գրիչ՝ Միքայէլ
Վայր՝ Երկայն Մաւրուի անապատ

ա

Փառք Հաւր, պատիւ Որդոյ, գոհութիւն նորոգաւղ Հոգոյն Սրբոյ։
146բ Գրեցաւ մատեանս այս ի թուականին ՉԲ (1253) ձեռամբ Միքայէլի քահանայի։ Արդ աղաչեմ զամենայն որդիս Նորո Սիոնի, որ սիրող են այսմ պատուիրանի, յիշել զմեզ և զծնաւղսն մեր ի Քրիստոս;

Եւ ինքն Տէրն բարի
Եւ ողորմած յամենայնի,
Մեզ և ձեզ ողորմեսցի,
Եւ նմա փառք յաւիտենի։

բ

177բ Մինչ ի յայս տեղս եաք նա Պապիաւսն եկն և եբեր մեզ աւձանման, չգիտեմ ուստի։

գ

178ա Զմեզաւք մեռեալս և զանարժան գրիչս Միքաէլ, աղաչեմ յիշել ի Տէր Յիսուս։ Գրեցաւ մատեանս այս ի թուականիս մերում ՉԴ (1255), յամսեանս հոգտեմբերի ԺԴ (14)-ին, ի յանապատիս Յերկայն Մաւրուի, ի փառս ամենակալին Աստուծոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս։ Եւ վասն դառն ժամանակիս խիստ շտապով գրեցաւ, ոչ գրչի պէտ է այրած, և ոչ գրի։

դ

212բ Յամի եւթնհարիւրորդի և չորրորդի (1255), եղև գրաւ մատենիս, յամսեանս հոէտեմբերի ԻԹ (29), աւրն յուրբաթի, և մինչ էաք ի ցաւն, որ է վերջին գիր, վաղվաղակի հաւ խաւսեցաւ, և մեք գոհութեամբ փառս ի վեր առաքեցաք։

Արդ, գրեցաւ սա ի դառն ժամանակիս, ի թագաւորութեանն Հեթմոյ, և նորա եղեդ ամն էր երթալոյն ի Թաթարսն, և ես մեղաւորս և անարժանս և անպիտանս կամաւ իմով մտախորհ եղէ ի գրել զգիրս զայս, և վասն առաւել սիրոյ՝ փոյթ ընդ փոյթ գրեցի, որ ոչ գրի պէտ եմ այրեալ,

ու ոչ գրչի չինելոյ զուղեղն, այլ շտապով ի գիշերի և յամենայն ժամ. գրեցի, հայնց վատ գրչով, որ զերկու տեարն և զերեքն ի մի գրչէ, նաև զայս վերջինս ի մի գրչէ։

Արդ աղաչեմ սակաւ յիշման արժանի առնել զմեզ և զմերսն, վասն սիրոյ Քրիստոսի։

Տէր Քրիստոս Յռամանսսնոցս գրեցի ես Միքայէլ քահանա, ի փառս Աստուծոյ։

ե

Ր7ա ԶՄիքաէլ զաշխատող մատենի։

## 226

## ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

Երևան 6661

Գրիչ՝ Կոստանդին
Վայր՝ Կիլիկիա

ա

Թուականին Հայոց ՉԴ (1255)*։

Փառք երից անձնաւորութեանն և միոյ աստուածութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Որք զմտացս աչս անաղատ և վճիտ ունիցին երկնանըկատ դիտմամբ առ էականն լոյս և իմանալեացն տեսարանս, նոցին ոչինչ է փոյթ բովանդակ բնաւին ինչ որ յաշխարհի և որ ըստ հոսանուտ և եղծանելի բնութեանս բերին, այլ
412բ միանգամայն զհուր սիրոյն զոր հուրն կենդանի արկ ի բանականս || բնութիւն աւըստաւրէ արծարծանեն յոգիս անշիջանելի բորբոքմամբ հոգեվորացն տուրևառութեամբ, որով և լուսաւորին ըստ բանի աստուածահայր մարգարէին, որ ասէ. Պատուիրանք Տեառն լոյս են և լոյս տանաչաց։

Արդ, ըստ նոյն ապացուցի աստուածայնոց իրաց հետևեալ յոգներջանիկ և արդիւնական վարդապետն Ստեփանոս, և իմանալի աչաց տեսութեամբ պայծառապէս և գերաբնաբար արտափայլեալ, և բովանդակ զինքն Աստուծոյ ընծաեալ, և ի մանկական տիոց ոչ աշխարհական ինչ իրաց հետևեալ, բայց եթէ աստուածային ուսմանց զանձն տուեալ, և ի նոյն միայն աշխատասիրաբար դեգերեալ, որոյ աղագաւ ոչինչ գրելով աշխատութիւն ըստ մարմնոյ, կամ զնիւթականաց գոյից զծախումն, այլ միայն ստացուած կենդանի ասացեալ, այսինքն զպատուիրանս աստուածայինս և զհոգեշունչ մատեանս Հնոց և Նորոց կտակարանաց, զաւետարանական աստուածախաւս քարոզութիւն փրկչին մերոյ և Աստուծոյ. նաև զառաքելոյն Պաւղոսի և զԳործոց առաքելոցն Քրիստոսի և զնւթանեքին Թուղթսն Կաթուղիկեայց յոյժ փափագանաւք և մեծատենչ ըղձմամբ ետ ծրագրել զաստուածաշունչ Նոր կտակարանս յաստիս ի վայելումն, և յետ ելից իւրոց յաշխարհէ, յիշատակ անջինջ ի ձեռս մանկանց Նորոյ Սիովնի։

* Գրված է հիշատակարանից առաջ և բնագրից հետո՝ այլ գրով։

Բ

4ա ԶԿոստանդին գրիչ աղաչեմ յիշել աղաւթիւք ի Տէր։

Գ

179ա Ծաստիս ի վայելս և յաւրն Քրիստոսի ի պարծանս եղիցի աստուածախաւս մատեանս շնորհալից րաբունւոյս մերոյ Ստեփանոսի ստացողի սորա և Կոստանդեայ գրչի*։

Դ

383ա ԶԿոստանդին գրիչ աղաչեմ յիշել ի Տէր։

Ե

Ստացող՝ Ստեփանոս

52ա Զմեղաւք դատապարտեալ ստացող սուրբ կտակիս և զամենայն քրիստոնեայս, որոց արդեամբք ստացեալ եղև ի ձեռն իմ Թշուառական և հեք վարդապետիս Ստեփանոսի ցաւակցաբար յիշեցէք որդիք լուսոյ և խաւարի զընակեալս, և թողութիւն մեղաց խնդրեցէք։

Զ

Զտառապեալ ստացող սորին Ստեփանոս յիշեա ի Տէր, Տէր իմ։

227

ԱՒԵՏԱՐԱՆ

Կյուլեսերյան, Ցուցակ Անկիւրիո, էջ 1274—1276

Ստացող՝ Յովհաննէս
Վայր՝ Կիլիկիա

ա

542 Փառք ամենասուրբ Երրորդութեանն, այժմ և յանզրաւ յաւիտեանս, ամէն։

Ի թուականութեանս Հայկազնեայ տոմարիս, ութն հարիւրերորդի չորրորդերորդի (1255) ամի, ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ աստուածասիրի, և ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ ծերունւոյ, ես Յովհաննէս երէց, նուաստ և անարժան ծառայ Աստուծոյ, գտի զաստուածապատում և փրկաւէտ սուրբ Աւետարանս առ առն միոյ, դրեալ ձեռամբ Գրիգորի մականուն Կոզեռն կոչեցեալ, և ստացայ զսա յիշատակ ինձ և իմոցն փոխեցելոցն առ Քրիստոս, և վասն ծովացեալ մեղաց իմոց, Թերևս գտից ներումն թողութեան։ Եւ իմ փափագաւղ եղեալ զարդարել

* Ձեռագիրը շուրջ 100 տարի հետո 1354 թ. ծաղկել է Սարգիս Պիծակը։ «Ընդ նմին և զիս զանարժանս զՍարգիս ծաղկաւղս, որ գունով զարդարեցի զնկարեալ ծաղիկն և շինեցի զաւետարանչերն, և զծնողն իմ աղաչ[եմ յիշել ի Քրիստոս]///,—գրել է նա (էջ 180ա)։

զսա խորանաւք և ծաղկաւետ վայելչութեամբ և ոսկիատիպ պայծառութեամբ։ Եւ գտի զոմն յոյժ հմուտ և յարդի յարհեստ գրչութեան Կոստանդին կոչեցեալ, և ի ձեռն սորա բազում աշխատութեամբ եղեւ զրաւ սորա։

Իսկ որ արբեալ զմայլիք ի քաղցրատեսակ հոսմանէ սորին, զոր Հոգին Սուրբ թելադրեալ ի շրթունս երանեալ աւետարանչացն, խաւսել վասն տնաւրէնութեան մարդացելոյ բանին, նաև վասն փրկաւետ վարդապետութեան նորին Որդւոյն Աստուծոյ, և նշանաց և արուեստից զոր առ մերս բնութիւն, և վասն իշման Հոգւոյն Սրբոյ առ ընտրեալ դասս առաքելոցն, և զնոսին առաքեալ քարոզս և աւետարանիչս տիեզերաց, և տալ իշխանութիւն թողուլ որոց կամիցին։ Արդ, աղաչեմ զամենեսեան ղմանկունս սուրբ եկեղեցւոյ, յորժամ ընթեռնուք զաստուածախաւս մատեանս ղայս, յիշեսջիք առաջի պենլոյն Յիսուսի զծնողսն իմ ղփոխեցեալսն առ Քրիստոս, նաեւ զիմս անարժանութիւն, թերեւս գտից ձեւք թողութիւն ի Տեառնէ։ Եւ որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ հատուսցէ յաստիս բարիս, և ի հանդերձելումն ընդ նմին թագաւորեալ, որ է աւրհնեալ յաւիտեանս։

Բ

Ուղղող՝ Վարդան

544 Զմեղապարտ Վարդան աղաչեմ յիշման արժանի արարէք, ով սուրբ դասք քահանայից, վասն զի սակաւ ինչ աշխատանս և ես իսկ ծախեցի ի սա ուղղելով ղսղալն, զոր գտի։

Գ

Ուղղող՝ Զաւրավար

Զմեղայպարտս Զաւր[ա]վար նվաստ քահանայս աղաչեմ յիշման արժանի արարէք, ո՛վ դասք քահան[այ]ից, վասն ղի աշխատեցայ զի զգիր աւէլին ու զպակասն /// եղ կու գան ի նայ /// ողորդի, և Աստուած [ձեզ] պարգեւեսցէ զերկնից արքայութիւն։

Դ

Սմբատ Գունդստապլ

443 Ողորմեա Քրիստոս Սմբատ Գունդաստապլի, ամէն։

228

ՏԵՍՈՒԹԻՒՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԲԱՆԻՑ ՆՆՋՄԱՆ ՍՐԲՈՑ ԱՒԵՏԱՐԱՆՉԻՆ ՅՈՀԱՆՆՈՒ ՆԵՐՍԻՍԻ ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՅ

Երուսաղեմ 458 (ԺԴ դ.), Պողարյան, Ցուցակ Բ, էջ 437)

Ստացող՝ Յոհաննէս Արքաեպիսկոպոս

238 Ես Յոհաննէս եպիսկոպոս դատապարտ ծառայ Աստուծոյ և նըւաստ ձեր, կրսերս իսկ պաշտաւնակից, որդի քրիստոսասէր և բարեպաշտ

*իշխանաց իշխողին* Կոստանդեա *թագապահի և սրքայահաւր Հայոց, շնորհիւն Աստուծոյ և աւրհնարեր փութով բարէհոգի և քրիստոսազգեաց հաւրն իմո եղեալ ծանաւթ մասամբ իւիք իբր ծագիւ մատին նշուլից աստուածաշունչ և քրիստոսաձիր տառից, և իմ յընթեռնուլն զաստուածաբան սուրբ աւետարանչին և սիրելի աշակերտին տեառն զիմաստա[ս]փած հանգըստեան նորին բանս աղաւթից, ոչ լինէր հասու խակախամ միտք բծկանիս ըստ արժանւոյն, որո վասն ի խոյզ իսկ եղեալ գտի զքրիստոսազգեաց երջանկին տեառն* Ներսէսի Լամբրոնեցւոյ *զհոմաղնեա իսկ մեր և արեանառուի տեսութիւն արարեալ սոցին բանից ի խնդրո հարց աստուածաղանից։ Ընդ որո գիտ յոյժ բերկրալից եղէ որպէս զայր, որ զտանէ գանձ յագարակի և կամ որ առնու աւար բաղում ցնծալից, եղեալ Էրեսաւք մտաց, ոչ և եթ անձին իմոյ, այլև յոքանցդ ապագա իմաստախոյզ եղբարց զսոյն ցնծութիւն վայելել, դրիւ ետու, զոր իմ իսկ մեղսամակարթ ձեռամբ և հողացեալ մատամբ սկսա և վասն անպարապութեան իմոյ ետու գրել* Փիլիպոսի *քահանայի, որ թէպէտ և կիրթ էր գրոյ, այլ վնասեալ էր ի լուսոյ, որո Տէր ողորմեսցի։*

*Աստուածարեալ ոգոցդ ապագայից ի սոյն վարժողաց և աւգտողաց հայցեմ հողս ձեր* Յոհան *եպիսկոպոս և րաբունի, ծնողաւք մեր և համայն ընտանեաւք, նա և ևս ուսուցչաւք և ընկերակցաւք և բնաւին իսկ սպասաւորաւք, սրտի մտաւք և բազում հառաչմամբ և արտասուաւք յիշել զմեզ սերտ սրտիւ ի բարին Քրիստոս, ողորմութիւն և քաւութիւն, և հանգիստ ի Քրիստոսէ գտանել ամենեցունցս, զի կարաւտ եմք մտածիլ ձեզ և յիշել ի բարին Քրիստոս, յոր և դուք անմոռաց յիշումն ի միշտ կենդանւոյն մատեանս մեաւք լիցիք դրեալք, ամէն։*

*Նաև զայսր տառ խնամաւղ և յարգող, և աննախանձ զաւրինակ շնորհող խնամեսցէ գթով ամենախնամն Աստուած, ամէն։ Անմահ փառաց և բարեաց արժանացին համայն քրիստոնէայք ի Քրիստոսէ Աստուծոյ, ամէն**։*

## 229

## *ՀԱՐՄՅՄՈՒՆՔ ԵՎ ՊԱՏԱՍԽԱՆԻՔ ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ*

***Երևան 6106***

*Գրիչ՝* Գրիգորիս
*Վայր՝* Խորանաշատ

ա

*219ա* *Գրեցաւ Հարց և պատասխ[անիք] սուրբ* վարդապետին Վանական Խորանաշատի, *ի թվին ՉԴ (1255), հրամանաւ բերեմիտ և ընտրեալ երկու եղբարց* Թադէի *և* Հայրապետի, *ձեռամբ մեղապարտ(ի)ս* Գրիգորիսի, *ի վանս* Խորանաշատի, *առ դրան Աստուածամաւր։*

---

** Հիշատակարանում տարեթիվ չի նշված, սակայն կարծում ենք, որ այն գրված պետք է լինի 1255 թվականին։ Այդպես կարծելու հիմք է տալիս Յովհաննու Յայտնութեան մեկնության 1179 թվականին հունարենից կատարած թարգմանության վերջում, Ներսես Լամբրոնացու հիշատակարանից հետո գրված հիշատակագրությունը, ուր ասված է. «Եւ սորա օրինակին թիւ ՉԴ (1255) էր. Աստուած ողորմի ասացէք գծողին» (էջ 546)։*

*Ով հանդիպիք, յիշեցէք* զԹադ[է] *և* զՀայրապետ, *և զգրողս մեղուցեալ, և Աստուած զձեզ յիշէ։*

Բ

*Ստացող՝* Ստեփաննոս

72բ Սաեփաննոսի*:

Գ

125բ Ստեփաննոսի է *գիրքս։*

Դ

*Գրիչ՝* Աստուածատուր

269բ *Տէր Աստուած ողորմի* Աստուածատուր *աբեղային։*

## 230

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Վենետիկ, 221, Սարգիսյան, Ցուցակ, Բ., էջ 322*

*Գրիչ՝* Գրիգոր Վզիկ
*Վայր՝* Կապոսի վանք

ա

111բ *Կատարեցաւ հրաշապատում եւ լուսազարդ վարդապետութիւն՝ աստուածազգեաց առնն սրբոյն* Աթանասի *եպիսկոպոսի* Աղեքսանդրի, *եւ գլուխ եւ հիմն ամենայն ուղղափառաց, որ եւ համբաւ հաւատոյ սորա ընդ բնաւս ամենայն, հրամանաւ հայր* Սամուելի, *եւ առաջնորդի սուրբ ուխտիս՝ որ* Կապոսին *ասի, ի նոյն վանքս, ի դրանն Ակոբայ, ձեռամբ մեղապարտ գրողի՝ որոյ անուն* Գրիգոր, *մականուն* Վզիկ, *յիշատակ իւրն, եւ ծնողացն իւրոց, եղբարց, քերց եւ ամենայն ազգայնոցն։*

*Աղաչեմ զքեզ, Քրիստոս որդի Աստուծոյ, ողորմեայ հայր* Սամուելի՝ *ստացողի գրոցս, եւ ծնողաց իւրոց, եւ ամենայն եղբարց։ Եւ ինձ* Գրիգորի, *որ բազում չարչարանաւք փակուցի ի սմա գիր՝ ի պատմել զբանս պատվիրանի քո...*

Բ

168ա *Թվին* ՉԴ *(1255)։ Քրիստոս Աստուած սուրբ հայրապետին բարեխօսութեամբ ողորմեա հայր* Սամուելի, *եւ ինձ մեղաւոր* Գրիգորի:

## 231

## ՃԱՌԸՆՏԻՐ

*Վենետիկ, 200, (1224 Թ.), Սարգիսյան, Ցուցակ Բ, էջ 35*

123բ *Ի թուին Հայոց* ՉԴ *(1255) միայբանեցաւ Սուրբ Լուսաւորչին պարոն* Քրիստոսայտուր՝ Վասլին *որդի, որ յամէն տարին և յամենայն ժամ այս*

* *Գրված է երկաթագիր, կարմիր թանաքով, կարծես մասնանիշ է։*

*աղաւթիցս մասնակիցի ի տաւնի Սուրբ Արիստագիս[ի] և Գր[իգ]որիսի, Տէր Աստուած զժամանակ նորա յերկայն արասցէ ամէն, և յամէն տարի սպ[իտակ] տայ։*

## 232

## ՇԱՐԱԿՆՈՑ

*Մարտիրոսյան, Ցուցակ Մշո, էջ 97*

**Ծաղկող՝ Սարգիս**

*Փառք եռանձնեա տէրութեան, երից յատկութեամբ եւ մի բնութեամբ համապատիւ, վեհագոյն ինքնութեամբ Հօր եւ Որդոյ եւ Հոգոյն-Սրբոյ, ամէն։*

*Արդ, եղեւ աւարտումն տառիս որ կոչի Շարակնոց ի լաւ եւ յընտիր օրինակէ, որ է նլկցի, ի թվականիս Հայկազան տումարի ՉԴ (1255), ի հայրապետութեան տեառն տէր* Մխիթարայ, *եւ թագաւորութեան* Լեւոնի *բարեպաշտի եղեւ աւարտումն սորա. աշխատողքս վարձս առնուն ի յԱստուծոյ, ամէն։*

*Ընդ նմին զիս զանարժան եւ զմեղաւոր հողս* Սարգիս *քահանայս, զծաղկաւղ եւ զոսկաւղ այսմ տառիս, աղաչեմ յիշել ի Տէր, եւ զծնաւղս իմ, եւ որ յիշէ յիշեալ լիշի ի Տէր։*

## 233

## ՍՏՈՐՈԳՈՒԹԻՒՆՔ ԱՐԻՍՏՈՏԵԼԻ

*Երևան 1647*

*252ա* *Փառք Սուրբ երրորդութեանն կատարելոյ և միոյ։*
*ՉԴ (1255) գրեցաւ ի թուականիս։*

## 234

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՅԱՅՏՆՈՒԹԵԱՆ ԱՆԴՐԷԱՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

*Երուսաղեմ 998 (1623 թ.), Պողարյան, Ցուցակ Գ, էջ 606*

*546բ* *Եւ սորա օրինակին թիւն ՉԴ (1255) էր։*
*Աստուած ողորմի ասացէք գծողին։*

## 235

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 10450*

Գրիչ՝ Թորոս Ռոսլի[ն]
Վայր՝ Հռոմկլայ

ա

402ա *Փառք քեզ, փառք քեզ անսահման անուն և անզուգական անճնաւո-*
*րութիւն, Հայր և Որդի և Սուրբ Հոգի։ Աւրհնութիւն քեզ Սուրբ Երրորդու-*
*թիւն և մի տէրութիւն, որ ետուր կարողութիւն և սատար եղեր իմոյ տկա-*
*րութեան ի գրաւ հասանել գ[ը]ղձալի* մատենիս, այժմ և միշտ. և յա-*
*ւիտեանս յաւիտենից, ամէն։*
*Շնորհիւ Տեառն սկսեալ և ողորմութեամբ նորին յանգ ելեալ աւար-*
*տեցաւ մատեանս աստուածախաւս, աստուածունակ, երկրպագելի և*
*պաշտելի սուրբ Աւետարանս, յամի Չ և Ե երորդի (1256) թուաբերու-*
*թեանս Հայոց, ընդ հովանեաւ աստուածաբնակ տաճարացս, որ յանուն*
*միածնի Որդւոյն Աստուծոյ Սուրբ Փրկիչ կոչեցելոյ, և մաւր նորին Սըր-*
*բոյ Աստուածածնին, և Լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի, և սուրբ հայ-*
*րապետին Նիկողայոսի և աստուածընգալ սուրբ և յաղթող նշանին Վան-*
*գոյ, և այլես բազմահաւաք սրբոց, որք պաշտին յաշխարհամուտ աթոռս,*
402բ *և աւգնականութեամբ սոցա, յանառիկ դղեակս* Հռոմկլայ, ‖ *ի թագա-*
*ւորութեանն քրիստոսապսակ և բարեպաշտ արքային* Հեթմոյ, *և ի ժա-*
*մանակի յորում նոյն աստուածասէր թագաւոր դարձեալ լինէր ի մեծ և*
*յաշխատամատոյց ճանապարհէն, որ առ խանն աւագ։*
*Հրամանաւ և ծախիւք աստուածապատիւ տեառն* Կոստանդեա *կա-*
*թողիկոսի Հայոց, որ զարմանահրաշ վարիւք իւրովք առհասարակ հիա-*
*ցուցանէր զընաւս, մինչ զի և յարտաքնոցն առաւել ընդունէր վկայութիւն*
*զանհամեմատ վարուցն իւրոյ մաքրութեան։ Քանզի աղբիւր էր նա բա-*
*րեաց և արբին ի նմանէ ամենեքեան, որք և կամեցան ըստ պասքոյն*
*իւրեանց։ Սոքա անդստան, նոքա բուրաստան, ոմանք յարկ ծածկու-*
*թեան, վասն զի հայր էր որբոց և հոգայր վասն աղքատաց, և առաքելա-*
*կան թղթովք կանոնական սահմանաւ աշակերտէր զամենայն եկեղեցիս*
*ըստ ուղղափառ հաւատոյ։ Եւ այնպէս սիրելի էր ամենեցուն, մինչ զի և*
*աշխարհակալ բռնաւորք ընդառաջ նորա խաղային՝ յորժամ ճանապար-*

---

* Գրված է «դձալի» ձևով։

403ա հորդութեամբ հանդիպէր առ || նոսա և պատարագաւք զերեսս նորա պաշ-
տէին, և ապա յղրկաւորք լիեալ զորհուրն խնդրէին աւրհնիլ ի նմանէ։
Քան զի արդարև առ սա կատարիւր գնալն ի վերայ իժի և քարբի, և կո-
խել զամենայն զաւրութիւն թշնամոյն։ Սա և ողորմութիւնն Աստուծոյ
գտեալ ի բարկութեան և չարալլուկ ժամանակիս։ Սա և ի վերայ ամենայն
առաքինասէր վարուց իւրոց յաւել և զայն ևս՝ լինել գրասէր և աստուա-
ծասէր, որով և ստանայր գիրս սուրբս զհին և նոր կտակարանաց, և յոլով-
անաւթս ոսկւոյ և արծաթոյ և պատուական հանդերձեղէն զարդուց, և
նուիրէր եկեղեցւոյ սրբոյ ընդ ամենայն տեղիս, ուր զիարդ և պիտոյ ինչ
լինէր։

Որ և ի կատարեալ սիրոյն զոր ունէր առ Աստուած և առ ի նմանէ
պարգևեալ կտակարանք, ոչ էր նմա փոյթ ի լաւաց գրչաց կամ ի հմուտ
արհեստագիտաց միայն ստանալ զայսոսիկ՝ վասն այնորիկ իմոյ, անար-
ժանութեան փցուն և անմար գրչի Թորոսի մականուն Ռաւլի կոչեցելոյ
402բ ըստ նախնեաց, հրամայէր զգործի || գրչութեան ի կիր արկանել յաս-
տուածային այս մատեան, որ և զարդարեալ ոսկով զտով և պատուական
նիւթաւք ներքոյ և արտաքոյ, ըստ առատապարգև կամաց իւրոց, զոր
ունէր առ սոսա, մանաւանդ թէ առ ամենայն ոք։ Վասն զի ամենեցուն,
որոց բաց են աչք իմանալի ի մտաց, յաստուածասէր և ի նոյն պշնուն
հանապազ, հաւատով և յուսով ակնկալեալ վարձուցն հատուցման և
մշտամատոյց ձերոց մաքուր աղաւթից, ո՞վ աստուածասէր հարք և եղ-
բարք, որք և ծնեալ վերստին յորդիս լուսոյ մաւր սրբոյ Սիոն և ժառան-
գէք զսա ըստ արդեանց հանդիպեցելոյ, զոր աղաչեմ յիշել ի Տէր մա-
նաւանդ առաջի զենման ամահ գառինն Աստուծոյ, զարժանաւորս ամե-
նայն աւրհնութեան յիշատակի, զտէր Կոստանդին կաթողիկոս Հայոց և
ստացող սրբոյ լուսազարդիս, և ծնաւղսն իւր Վահրամ և Շուշիկ, և զեղ-
404ա բարս իւր զԳորգ և զԳրիգոր, և զքորք իւր Շուշանիկ, և Վանենի: || Այլ և
զեղբաւրորդին իւր զսրբասէր քահանայն Թորոս, և զծնաւղք սորա՝ Գորգ
վկայեալ քահանա և մայր նորա Ազիզ, և զեզբարք նորին զաստուածա-
պատիւ եպիսկոպոսն տէր Ստեփաննոս, և զԳրիգոր նորին հայրազատ,
և զդստերսն իւր Մլքի և Շուշան, ևս և զորդին իւր Ստեփանոս, որ այժմ
զինուորեալ իշխանական պատուով ի դրունս թագաւորական, և զամու-
սին սորա Ակաց, և մայր սոցա Տալիթայ, և զմիւս եղբաւրորդի հոգևոր
տեառնն զԳրիգոր՝ զինուոր և տարաժամ վախճանեալ։ Այլ և զամենայն
ազգք սոցա և զազինս, որպէսզի ննջեցելոցն հանգիստ և ողորմութիւն
պարգևեսցէ Քրիստոս Աստուած, և որ այժմ կենդանի՝ անխռով խաղա-
ղութեամբ ընդ երկայն աւուրս պահեսցէ, ամէն։

Յերսս անգեալ ես բազմամեղ և թարմատար գրիչս, աղաչեմ յիշել ի
նոյն և զիմ նուաստութիւն, այլ և խոշորութեան սորա և թէ սխալանք ինչ
404բ դիպեսցի, հայցեմ շնորհել թողութիւն։||Յիշել դարձեալ և զերախտաւոր
ծնաւղսն իմ, և զեղբայրն իմ Անտոն ևս առաւել, և որ ըստ հոգւոյ և
մարմնոյ եղբարք և քորք, հարք և ուսուցիչք, այլ և կուսակրաւն քահա-
նայն Վարդան փակակալ աստուածընկալ տաճարացս և կազմաւղ սորա,
և զամենայն աշխատաւղս ի սա առհասարակ ըստ բանից և արդեանց,

որք աւդնական եղեն մեզ։ Եւ Քրիստոս Աստուած որ առատն է ի պարգեւ, զձեզ յիշեսցէ յերկնից արքայութիւն իւր շնորհիւ ողորմութեամբ իւրով, որ և աւրհնեալ է յաւիտեան, և յաւիտենս յաւիտենից, ամէն։

Բ

4ա Զմեղապարտ գրիչս աղաչեմ յիշել ի Քրիստոս*։

Գ

5բ Մեղապարտ գրչի սորա ողորմեա Քրիստոս Աստուած**։

Դ

.5բ Տէր իմ Քրիստոս որդի և բան,
Պետ հով(ու)ութեան կարգիս աւծման,
Որ զայս մատեան աւետարան
Մեզ հնչեցեր ձայն ցնծութեան։
Ահա զքոյս առեալ քեզ տամ
Բարձեալ ի ձեռս առաջի դամ,
Առ զայս նուէրս բարեխնամ
Եւ յիս նայ[ե]ա տէր հնշտակամ։

.6ա Ո՛վ յանսկիզբն ծոցո բան,
Նոյն և ծաղկեալ յազգս մարդկան,
Որ մեզ զշնորհս քո շրթան
Հեղեր աւրհնեալդ յաւիտեան,
Դու զտէր Կոստանդին դէտ Հայկազեան
Նսաո յաթոռ կեփա[յ]ական։
Եւ զիւր Թորոս հայրազատեան
Ընկալ ի փառսըդ հայրական***,

Ե

.122բ Ընդ մեսասանիցն ընկալ Յիսուս, զտէր Կոստանդին կաթողիկոս եւ զնորին Թորոս, ամէն։

Զ

194ա Զսուրբ եւ զերշանիկ դիտապետ Հայոց զտէր Կոստանդին ստացաւղ սորա յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս, ամէն։

---

* Գրված է Եվսեբիոսի թղթից հետո, խորանի մեջ։

** Գրված է խորանի գլխազարդի կամարակապ մուտքի մեջ։

*** Գրված է խորանների մեջ ոսկի խորքի վրա, մուգ կապույտ երկաթագրով՝ բաց կապույտով եզերված։ Տողերն առնված են կարմիր գծերի մեջ, որոնք իրարից բաժանվում են ոսկյա լայն շերտով։ Շքեղ զարդարված են խորանները։

Է

310բ Զստացաւղ սուրբ տառիս զտէր Կոստանդին կաթողիկոս Հայոց յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս*։

236

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

Մուրադյան, Ցուցակ Մշո Առաքելոց վանքի, էջ 7—8

Գրիչ՝ Յովհաննէս
Վայր՝ Մամուստիա, որ կոչի Մսիս

Յամի ութն հարիւրերորդի հինգերորդի թուաբերութեան հայկազեան տոմարի (1256), ի կաթողիկոսութեան տեառն Կոստանդեա Հայոց դիտապետի հեզի եւ ողջախոհի, եւ ի թագաւորութեան Հայոց Կիլիկեցւոց նահանգի Հեթմի բարեպաշտի եւ աստուածասիրի, ես Յովհաննէս էրէց՝ նուաստս եւ տրուպս յորդիս յեկեղեցւոյ, յերկրէ Տարաւնոյ եւ գեղջէ Հացեկաց, որդի Կարապետ քահանայի եւ մօր Աւլկան, եւ ի կենցաղս աշխարհի մեղաւոր եւ անսպառ խոստովանող Քրիստոսի, դիւրաշարժս ի մեղս, դժուարաշարժս յարդարութիւն, ապիկարս յոքունց եւ անմարս ի գրչաց, փափաքելի սրտիւ եւ ջերմեռանդ սիրով եւ յգձալի յաւժարութեամբ ցանկացող եղէ այսմ աստուածաշունչ կտակարանացս աւրինաց եւ մարգարէից ըստ ասելոյն աստուածահօրն Դաւթի, թէ Պատուիրանք Տեառն լոյս են եւ լոյս տան աչաց։ Ըստ այսմ հրամանի զաշխատ ի բաց եդի, շնորհիւն Աստուծոյ սկսայ, եւ նորին ողորմութեամբ յանկ հանեալ աւարտեցի զգիրս սուրբս ի պէտս մեղուցեալ յանձին իմոյ եւ յիշատակ հոգւոյ իմոյ եւ ծնողաց իմոց, եւ ի պէտս մանկանց Նոր Սիովնի։

Զի եթէ պատահեսցի այր խնդրող սորին եւ փափաքէ ըմպել ի կենսատու աղբիւրէս յայսմանէ, եւ կալցէ շնորհս գիտութեան եւ գտանիցէ զսա, հրճուասցի ի վերա սորայ եւ ուրախութեամբ արկցէ ընդ պարանոցս, եւ լաւ համարի զսա, զականս պատուականս զմարգարիտս զեկեղեցիս, քանզի եւ է իսկ, զի սա է գուռն երկնից, բանալի արքայութեան, ճանապարհ մոլորելոց, հաց քաղցելոց, աղբիւր ծարաւելոց, պարծանք արդարոց եւ յոյս հաւատացելոց, եւ ամենայն ինչ որ պատուական է, չարժէ զսա, զի սովաւ արդարքս հաստատեսցին ի գործս բարիս, եւ մեղաւորք զղջութեամբ զարդարութիւն ընգալցին, եւ ամենայն ոք, որ փափաքէ ըմպել ի քաղցրահամ եւ ի կենսատու բաժակէս յայսմանէ՝ կեցցէ եւ զկեանս յաւիտենականս ժառանգեսցէ։

Ըստ որում կարի գրեցի ձեռամբ իմով եւ աշխատութեամբ, որպէս եւ հրամայէ Տէր Յիսուս, թէ՝ Գանձեցէք զգանձս յերկինս, եւ աստուածային առաքեալն, թէ՝ Գանձ հոգեւորական ունիմ զքեզ աստուածային բարութիւն, եւ դարձեալ Տէրն ասէ, թէ՝ Որ արբուսցէ բաժակս ջուր ցուրտ յանուն աշակերտի ոչ կորուսցէ զվարձս իւր. յայսմ յուսալով իմ

* Վերին երեքը գրված են ոսկետառ երկաթագրով։

հաւաքեցի զամենայն դիրս աստուածաշունչ հին կտակարանաց եւ եդի ի միասին եւ զպատմութիւն Մակաբայեցւոց, որ ի նախկի ժամանակի մարտիրոսացն, զճշմարտութեան տեսակս բերելով յինքեանս եւ գրեցի զսա ոչ վասն մարմնաւոր ագահութեան, այլ յիշատակ ինձ եւ իմոցն եւ ամենայն հաւատացելոց. որպէս յայտնի է մեզ ամենեցուն որ ընդ մահու գրաւեալ եմք եւ անհնար էր ումէք ազատել ի մահուանէ այլ եւ ոչ կարողասցի ոք ի ստացուածոց իւրոց տանել ինչ զկնի ի գերեզմանն, բայց միայն զգործս եթէ բարի եւ եթէ չար։ Եւ հաստատեսցի որ ամենայն է եւ ստա մնալոց է, լաւ համարեցայ, որ զկնի փոխման իմոյ յաստեացս փոխանակ ոսկոյ եւ արծաթոյ եւ այլ գոյից ստացուածք գրեանք գտանին քան զայլ ինչ. զի գիրքն եթէ յաւազակացն գողասցի, եթէ յայլազգեաց յափշտակի, եթէ այլ ոք առնու, եթէ գնով, եւ եթէ անգին ընդ որ երթայ եւ շրջագայի, դարձեալ ի վանք, յեկեղեցի ժողովի ընդ ձեռամբ եպիսկոպոսի, քահանայի, սարկաւագի եւ կրաւնաւորի, եւ մնասցէ անջինջ յիշատակ Կիլիկեայ:

Եւ եղեւ զրաւ գրութեան յաշխարքս Կիլիկեայ, մայրաքաղաքս ի Մամուստիա, որ կոչի Մսիս, ընդ հովանեաւ սուրբ առաքելոցս Պետրոսի եւ Պաւղոսի եւ Սուրբ Նշանիս, որ եւ յայսմ ամի ըստ առաւել նախախնամութեան Աստուծոյ վերադարձեալ եղեւ բարեպաշտ թագաւորին Հայոց Հեթմոյ աշխարհէն Արեւելից յազգէն այլասեռից, որ անուամբ Թաթար կոչի, զի վասն ծովացեալ մեղաց մերոց տիրեաց գրաւեաց զամենայն աշխարհ՝ նուաճեալ ընդ իւրում իշխանութիւնն. ըստ այսմ օրինակի եւ զաշխարհս Կիլիկեցւոց։ Վասն որոյ հնազանդեալս յանձն առնելով զխառն Քրիստոսի շոգաւ վասն քրիստոնէից, եւ անդ լինէր մինչեւ յամս չորս, զոր բազում պաղատանօք խնդրեալք զբարի թագաւորն մեր եւ զմարդասիրութիւն նորա ոչ միայն այնոքիկ, որ ունի բազում պէտս օգնականութեան, այլ եւ որք ոչ էին յարմարք յայսոսիկ, եւ զի Տէր լուաւ տառապանաց նոցա եւ ետ զհայցելին մեր։ Զի եկն նա զաւրաւք բազմաւք յաշխարհն Հոռմոց եւ թողեալ անդ զաւրս խուժառուժ ազգացն, եւ ինքն փութայր գայր հասանէր աշխարհն իւր Կիլիկեայ տեսանել զտառապանս նոցա։ Եւ եկեալ բազում յուղղութիւնս արար եւ ողորմութիւն, եւ պայծառութիւն եկեղեցեաց քրիստոնէից եւ քահանայութեան Հաւրն երկնաւորի, եւ այլ առաջակայն Աստուծոյ է դիտելի։

Արդ, աղաչեմ զամենեսին վասն սիրոյն Քրիստոսի, զի որք աւգտիք ի սմանէ, եւ կամ աւրինակէք, ղաշխատող սորա զՅովճաննէս էրէց եւ զծնաւղս իւր, եւ զազգատոհմ, եւ զամուսին իւր, զՅովսէփ քահանայ որ զնիւթս շնորհեաց յիշեսջիք աղօթիւք ի Քրիստոս։ Եւ գրեցի զսայ ոչ միայն, այլ կրկնակի զբովանդակ Գիրս աստուածաշունչ Հին եւ Նոր կտակարանաց, զսոսա ստացայ գանձ անկողոպտելի, որ զմիտս զուարճացուցանէ զոգիս արդարոց ուրախալից գործէ, որ ոչ ցեց ապականէ եւ ոչ գողք ական հատանեն եւ գողանան, զի յերկրէ ելեալ նիւթք յերկիր սուզանին եւ ապականին, իսկ այս փարթամութիւն անկողոպտելի առ հասարակ ամենայն բնութեան, վասն այսորիկ զսա ստացայ ի վայելումն անձին իմոյ եւ յիշատակ հոգւոյ իմոյ, և ծնողաց եւ ազգականաց եւ

վարդապետաց. եւ խոշորութեանս եւ սխալանաց, որ ի սմա, անմեղադիր լերուք, զի անմար էի եւ պակասամիտ, այլ յաւժարութիւն իմ եւ սէր ստիպեաց զիս սկսանիլ, եւ ցաւագին անձամբ կատարեցի։

## 237

## ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 100, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 447—448

Գրիչ՝ Յոհաննէս
Վայր՝ Կիլիկիա

202բ Փառք քեզ՝ անսահման անուն և անզուգական անձնաւորութիւն՝ Հայր և Որդի և Հոգի Սուրբ, յամենայն արարածոց և ի բնաւից եզականացս, ամէն։ Աստանաւր յանկ ելեալ աւարտեցաւ լուսայեղձ և փրկագործ սուրբ Աւետարանս, ի թուականին ՉԵ (1256), ի գաւառիս Կիլիկեցւոց, ի թագաւորութիւնս Հայոց Հեթմոյ աստուածասիրի և բարեպաշտի, և ի հայրապետութեան տեառն Կոստանդեա, ձեռամբ Յոհաննեսի յոզնամեղի, ի խնդրոյ աստուածասէր և բարի պատանւոյն սիր Լեոնի, որ է որդի պարոն Լիկոսի՝ եղբաւր թագաւորին Հայոց Հեթմոյ: Արդ, աղաչեմ զամենեսեան, սուրբ հարք և եղբարք, որդիք Նոր Սիոնի՝ ոյք հանդիպիք այսմ սուրբ Աւետարանի՝ յիշել ի մաքրափայլ յաղաւթս ձեր զբարի շառաւիղն զտղա պարոնն՝ զսիր Լեոն, որ եռափափագ սիրով ստացաւ զսուրբ Աւետարանս, և զծնողս նորա՝ զհայրն իւր զսիր Լիկոս, և զմայրն իւր զբարեպաշտ տիկինն Ականցն, և զդստերս իւր զերեսեան։ Ես առաւել ղսիրեցեալ պատանին զսիր Լեոն, որպէս զի աղաւթիւք ձերովք Տէր Աստուած տացէ զնա ծնաւղաց իւրոց երկայն ժամանակս առողջութեամբ, և փրկեսցէ յամենայն փորձութեանց։

Աղաչեմ յիշել ի Տէր, և զեղկելի գրչողիկս Յոհանէս, և զծնողս իմ՝ զհայրն իմ Ներսէս և զմայրն իմ հանգուցեալ ի Քրիստոս, ևս առաւել զհարազատ եղբայրիկն իմ զԿոստանդին կրաւնաւոր քահանայ, նա որ ի տղայ հասակի փոխեցաւ յաստեացս, որոյ ողորմեսցի նմա Տէր Յիսուս Քրիստոս, և թողցէ զմեղս նորա և զգրողիս Յոհանէսի: Եւ աղաչեմ զամենեսեան ոչ մեղադրել խոշորութեան կամ սխալանաց որ ի սմա, և մանրութեան գրիս, զի կար մեր այս էր, և որ ստացաւն այսպէս ետ գրել։ Եւ Քրիստոս Աստուած իւր անճառ մարդեղութեամբն և փրկագործ անաւրէնութեամբն ողորմեսցի և թողցէ զմեղս յիշողացս և յիշեցելոցս, և նմա փառք և աւրհնութիւն յամենայն արարածոցս յաւիտեանս յաւիտենից, ամէն, ամէն, ամէն։



19—487

## 238

### ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Կյուլեսերյան, Ցուցակ Անկիւրիո, էջ 285—288*

*Գրիչ՝* Միխաէլ
*Վայր՝* [Երկայն Մաւրոփ անապատ]

ա

154ա *Զստացաւղ զաստուածեան մատենիս զՄիխաէլ քահանաս յաղաւթս յիշեսջիք, ո՜վ փրկեալք արեամբ գառինն Աստուծոյ, և Աստուած զձեզ ողորմեսցի, և անարհեստութեանս անմեղադիր լիք, զի այսչափ էր կարս մեր։*

բ

168ա *Զմեղաւք մեռեալս* Միխաէլ *ի Տէր Յիսուս յիշել միշտ աղաչեմ։*

գ

508բ *Փառք քեզ Երրորդութիւն Սուրբ, ամէն։*

*Յամի եւթն հարեւրերորդի և երկրորդի (1253) գրեցաւ մատեանս այս աշխատանաւք նուաստ գրչի* Միխաէլի *քահանայի, որոյ Տէր Աստուած ողորմեսցի նմա։*

515 *Բազում գրեանք այրեցաւ յառաջի գերութեանն**։*

դ

267բ *Փառք Քրիստոսի Աստուծոյ յուսոյն մերոյ, ամէն։*

*Ի թուին ՉԴ (1255) գրեցաւ մատեանս այս ձեռամբ* Միխաէլի *մեղասաէր քահանաի, ի խնդրոյ եղբաւր մերոյ* Կոստանդեա *կրաւնաւոր քահանաի։*

*Արդ, աղաչեմք զամենեսեան զկարդացողսդ սրտի մտաւք յիշել զմեզ յաղաւթս և խոշորութեան անմեղադիր լիք, զի այսչափ էր կար մեր։*

*Գրեցաւ ի յաւրինակէ, որ դրեալ էր ի ՆԼԶ (986) թուականին***։*

---

* Գրված է Ա Կորնթացւոց վերջում։

** Ձեռագիրը պարունակում է Աստուածաշունչ (Հին ու Նոր կտակարաններ), Աղոթամատոյց, Պատարագամատոյց, Տաւնացոյց, Շարաթացոյց և Մաշտոցից կանոններ, գրված է 1253—1257 թվականներին, Միքայել և Զախար գրիչների ձեռքով, և ուղղակի գաղափարված է 986 թվականին գրված օրինակից։

ե

301ա Եւ զեղկելիս յիշեա Տէր Աստուած ի քո յանսպառ յողորմութիւնդ, ընդ ինեւ և զպատուական եղբայրն Կոստանդին։ Աղաչեմ խոշորութեան և սխալանաց թողութիւն շնորհեցէք, և Աստուած ձեզ տացէ, եւ նմա փառք յաւիտեանս։ ՁՁ (1257) թուին։

զ

502բ Զստացաւղ աստուածային տառիս և զգրիչս՝ անպիտան զՄիքայէլ յիշեսջիք ի Տէր, աղաչեմ։

է

Գրիչ՝ Զախար

548ա Փառք քեզ Քրիստոս Աստուած, և զորս ողորմութեան քո կամեցողութեամբ, ներեցեր հիքացելոյս [ե]ւ զայսպիսի վեր առաքել գոհութիւն կեցո<ո>յ ողորմութենէ քում առաւել, զի դիտող զկարիս քան զկարեացն խնդրաւ աւհրնեալդ յաւիտեանս, ամէն։ ՉԲ (1253) գրեցաւ ի թուականութեանս։

ը

689բ Զմեղաւորս Զախար գրիչս և զծնողսն իմ և զեղբարսն և զքեռ յիշեսջիք ի մեղաց թողութիւն, և Աստուած զձերն թողու։

239

ԱՒԵՏԱՐԱՆ

Երևան 7718

Գրիչ
Վտյր [Կիլիկիա]

ա

33ա Զստացաւղ սուրբ Աւե[տարանիս] և զմեղաւք դատապարտեալս Աւ[ագ] աղաչեմ յիշել ի Տէր Աստուած*։

---

Յովանու Աւետարանի վերջում կա այսպիսի մի հիշատակագրություն. «Աւրհնեալ է Աստուած, ամենայն ժամ աւրհնեալ է Աստուած։ Զփցուն գրիչս յիշեցէք, զՎարդան երէց, ո՛վ եղբայրք, և Աստուած յիշաւղս յիշէ իւր սուրբ արքաւութեան, ամէն։ Ի յայս աւրինակէս Աւետարան մն գրեցի, վասն մանրութեան գրին սակաւ աշխատեցա. հապա կու զարմանամ, թէ այս գրողն ինչպէս գրել է անչափ գիրս» (էջ 180 բ.)։

Ամենայն հավանականությամբ Միքայելը նույնն է Մատենադարանի № 178 Աստվածաշնչի գրչի հետ, որը դարձյալ շատ մանրագիր է, տողագծերը վերջին էջերում իրարից հեռու են 3—4 միլիմետր, 20,5 սմ գրասյունակը 60 տող ունի, տողը 37 տառ, ուրեմն մի էջում տեղավորել է 4440, իսկ մի թերթում 8880 տառ։

Մատենադարանի № 178 Աստվածաշունչը Միքայելը գրել է 1253—1255 թվականներին Երկայն Մաւրուի անապատում։ Ըստ այդմ սույն ձեռագրի գրչության վայրը ևս համարում ենք Երկայն Մաւրուի անապատը։

* Հայերեն մանրագիր ձեռագրերից մեկն է։ 14,4×7,8 սմ մեծության 104 թերթերում տեղավորված է լրիվ Աւետարանը, բոլորգիր, երկսյուն գրությամբ, յուրաքանչյուրը 7×2,4 սմ գրա-

Բ

53ա Զստացաւղ սորա և զմեղաւք դատապարտեալս աղաչեմ յիշել ի Տէր Յիսուս։

Գ

105ա ՌԻԱ (1172) թվին գրեցաւ սայ*։

## 240

## ԱՒԵՏԱՐԱՆ

Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 675—677

Գրիչ՝ Յոհաննէս
Վայր՝ Ակներ

ա

58բ Յամի եւթն հարիւրերորդի եւ այժմու սկսեալ վեցերորդի (1257) թուաբերութեան Հայոց տումարի գրեցաւ ժամագրկունքս վասն ճանապարհի եւ անճարկութեան, յաշխարհիս Կիլիկեացւոց, ի գաւառիս Ցախուտ, ի հռչակաւոր եւ սուրբ մենարանիս Ակներ, ընդ հովանեաւ Սրբուհոյ Տիրամաւր Աստուածածնի եւ սուրբ առաքելոյն Տեառնեղբաւրն Յակովբայ եւ կենսակիր նշանիս Սուրբ Կոստանդեա, եւ այլ աստուածունակ սրբոցս որ հաւաքեալ կան ի սմա, ի թագաւորութեանս Հայոց Հեթմոյ քրիստոսասիրի եւ ուղղափառի, որոյ Տէր Աստուած տացէ նմա, եւ որդւոց իւրոց Լեւոնի եւ Թորոսի՝ երկար ժամանակ խաղաղութեամբ վարել զթագաւորութիւն իւրեանց, ի հայրապետութեան տեառն Կոստանդեա, եւ ի հայրութիւն սուրբ ուխտիս հոգելից ծերունոյ՝ ճգնազգեաց եւ քրիստոսասէր անձին հայր Մխիթարայ եւ նորին հայրաղատին բարեշնորհ երաժշտին Վարդանայ:

Գրեցաւ սակաւագիծ մատեանս ձեռամբ յոգնամեղ եւ եղկելի անձին Յոհաննէսի վշտալից եւ տգէտ գրչի, զոր բազում վշտաւք իմ ձեռնամուխ եղեալ ի սա. եւ կատարի առ իս ասացեալն ի սուրբ առաքելոյն Պաւղոսէ, որ ասէ՝ Վիշտս ի գետոց, վիշտս յաւազակաց, վիշ[տ]ս ի սուտ եղբարց եւ այլն, զոր բանսարկուն հանապազ յարուցանէ ինձ հեղեղս գետոց եւ ի տունէ եւ ի գիշերի չար աւազակութեամբն խոցոտեն եղկելիս, եւ ոմանք ի բնակչացս բազում վիշտս հասուցանեն ի վերայ իմ, եւ ոչ ուստեք մխիթարութիւն՝ բայց ի Հաւրէն եւ ի Նորին հարազատէն, զոր Հայրն երկնաւոր պահեսցէ զնոսա եւ սուրբ հարանցն մասնակից արասցէ, եւ թողցէ զյանցանս եղկելոյս Յոհաննէսի:

---

ղաշտով։ Մեկ քառակուսի սանտիմետրի վրա գրված է շուրջ 60 տառ։ Ա և Բ հիշատակագրությունները գրված են գրչի ձեռքով, որն, հավանաբար Միքայելն է։

* Գլխավոր հիշատակարանը չի գրված։ Ազատ տեղում, հետագայում Մարկոս գրիչը ավելացրել է «Հանգիստ երանելոյն Յովհաննու» հատվածը։ Աւետարանի վերջում նոտրգրված է սույն թվականը՝ ուրիշի ձեռքով։ Ձեռագիրը ավելի շուտ ԺԳ դարի գործ է. քան նշված թվականի։ Ունի փոքրիկ, գեղեցիկ կիսախորաններ։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սմա տեսութեամբ կամ յաւրինակ առնելով, ոչ մեղադրել մանրութիւն գրիս եւ խոշորութեան կամ սղալանաց բանի եւ բառի կամ գծի եւ կէտի, զի այս էր կար մեր։ Ով կարէ թող կարդա, եւ որ ոչ, թող զմեծն առնու կամ հաշուէ թէ իսկի չու-նի՝ զի իմ սիրտս զայս ուզեաց։ Այլ աղաչեմ յիշել ի մաքրափայլ յաղաւթս ձեր զեղկելի գրողս՝ Յոհանէս՝ եւ զծնողսն իմ՝ զհայր իմ Ներսէս քահա-նայ եւ զմայր իմ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, եւ զհարազատ եղբայ-րիկն իմ զԿոստանդին կուսան քահանայ, որ ի տղա հասակի փոխեցաւ ի Քրիստոս։ Եւ Քրիստոս Աստուած ողորմեսցի եւ թողցէ, զյանցանս յի-շողացս եւ յիշեցելոցս, եւ նմա փառք յաւիտեանս, ամէն, ամէն, ամէն։

Բ

79ա Փառք քեզ անսահման եւ անզուգական անձնաւորութիւն, Հայր եւ Որդի եւ Հոգի Սուրբ, յամենայն արարածոց եւ ի բնաւից եզականաց*, այժմ եւ յանսպառ յաւիտեանս, ամէն։

Արդ, ես եղկելիս եւ յոգնամեղս Յոհանէս գրող սորա, խնդրեմ յա-մենեցունց, ո՞վ սուրբ հարք եւ եղբարք, ոյք հանդիպիք այսմ սակաւ գծի, ոչ մեղադրել եւ պարսաւել վասն խոշորութեան եւ սղխալանաց՝ զի այս էր կար մեր, եւ վասն մանրութեան դրիս ոչ դատապարտել զմեզ։ Այլ՝ յերես անգեալ աղաչեմ որպէս շան սովեցելոյ՝ տուք զփշրանս աղաւթից ձեր, խնդրելով Տեառն զթողութիւն մեղաց եղկելոյս Յոհանէս գծողի եւ ծնողաց իմոց, եւ հարազատ եղբաւր իմոյ՝ Կոստանդին, որ ի տղա հասա-կի փոխեցաւ յաստեացս; Եւ որ առատն է ի տուրս պարգեւաց անմահ թագաւորն, որպէս մեզ խնդրէք՝ զնոյն եւ ձեզ պարգեւեսցէ, որ է աւրհ-նեալ յաւիտեանս, ամէն, ամէն։

Գ

79բ Աւրինակն ծուռ էր, ես կրկին գրեցի եւ ինն տող զայբն միաճղի՝ զի տեղս վճարեցաւ. թէ դժար թուի՝ դու շրջէ զթուղթս յետ եւ ի նշա-նածն սկսիր եւ կարդա եւ մի մեղադրեր։

Դ

Ջինչ յաւրինակն գտի՝ զայն գրեցի։

Ե

Վայ ինձ դառն վշտացելոյս։

---

* Տպված է տրնաւ ի ցեղականացս։

241

ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ

*Վենետիկ 17, Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 148—150*

*Գրիչ՝* Ներսէս

ա

58ա *Քրիստոս Աստուած բարեխօսութեամբ Սրբոյն Եսայեայ, ողորմեա բազմամեղ [գրող]իս* Ներսիսի, *և որ զամէնն ասեն։*

*Թվին ՉՁ (1257) գրեցի,* Ներսէս *ծառայ է Քրիստոսի Աստուծոյ մերոյ։*

բ

10ա *Քրիստոս Աստուած, բարեխօսութեամբ Սրբոյն Մովսէսի մարգարէին և Յովսէփ գեղեցկին ողորմեա ամենայն հաւատացելոց ի քեզ և բազմամեղ գրողիս* Ներսիսի, *և ծնողաց իմոց, և քեռեցն իմոց* Յովանիսի *և* Հանիսի *և* Տէրպապի, *և որ զամէնն ասեն, և Քրիստոսի փառք յաւիտեանս։*

գ

189բ *Քրիստոս Աստուած, բարեխաւսութեամբ Սրբոյն Մոսէսի մարգարէի ողորմեա ամենայն հաւատացելոց ի քեզ, և բազմամեղ գրողիս* Ներսէսի *և քեռոյն իմոյ* Յովանիսի *և ծնողաց իմոց* Աւտարշահի *և* Շնորհ[ֆ]որի, *և քուրն* Աւծի, *և որ զամէնն ասեն, և Քրիստոսի փառք յաւիտեանս։*

դ

*Ո՛վ եղբարք, խոշորութեանս մի մեղադրէք, զի գշատն գիշերն՚եմ գրել. և էր աւրինակին գիրն լիզած, մեղայ Աստուծոյ։*

## 242

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 234*

*Գրիչ*՝ Կիւ[ակոս]
*Վայր*՝ Կիլիկիա

ա

299բ *Փառք արդար և սեռնական էութեանն, Հաւր համալրարար, և Որդւոյ
որ ետեկեան և Հոգւոյն տառի, զի որոց կարիւ և կարակնիւ երկասիրեալ
զխաղս դարաստանից անձանց սրբազան աւետարանչացն, զբազմաբե-
ղուն հրաշս խորհրդոյ տնաւրինեցելոյ բանին, նա և զլուսայիղծ բանս
վարդապետութեան բանապետին վերնոյ արեգականն արդարութեան
300ա երևեցելոյ*||ազդեցութեամբ Հոգւոյն Սրբոյ, դրեալ թողին հաւատացե-
լոց ի Քրիստոս մատեան աւետական, ունելով զլուսայիղձ բանս կենարա-
րաին մերոյ, ի դարս և ի ժամանակս յեկեղեցիս նազելի Նորոյ Սիոնի, ի
մխիթարութիւն ոգւոց նորոգութեան որդւոց նորա։ Որոյ ցանկացող եղեալ
այսմ աստուածային տառի, գրեցի զսա վերջացեալս ի բարեաց, մեղաւք
զառածեալս, անյիշելի անուն, ի վայելս և ի մխիթարութիւն ոգւոյ իմոյ։
Արդ, որ ոք վայելէք զսա, յիշեսջիք ի Քրիստոս զգրողս և զստացողս սո-
րա, և ծնաւղսն մեր, և առատապարգև Տէրն մեզ և ձեզ ողորմեսցի ի գա-
լըստեան իւրում, ամէն։*

*Բայց եղև գրաւ գրչութեան սորա ի հայրապետութեան տեառն* Կոստանդեա *և ի թագաւորութեանն Հայոց* Հեթմոյ, *ի թուիս ՉԷ (1258) և Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն։*

Բ

91ա *Զանմեղ գրիչս* Կիւ[ակոս] *յիշեսջիք ի Քրիստոս, և որք յիշէքդ և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ։*

---

* *Այստեղից գրչությունը փոխում է։*

## 243

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Մուրադյան, Ցուցակ Մշո Առաքելոց վանքի, էջ 1*

*Գրիչ՝* Վարդան Ոտնայեցի
*Վայր՝* [Հռոմկլա]

Վարդանա *մեղապարտի* Ոտնա[յ]եցւոյ *անարուեստ գրչի աղաւթս արարէք ի Տէր, եւ Տէր Յիսուս ձեզ ողորմեսցի, ամէն։*

*Փառք ամենասուրբ Երրորդութեան Հաւր եւ Հոգոյն [Սրբոյ], այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

*Յամի հազարերորդի [հարիւրերորդի] յիսուներորդի ութերորդի (1158) Աստուծոյ մերոյ եւ Տեառն Յիսուսի Քրիստոսի գալստեանն յո- րում ամի ժամանէր, թիւ տոմարի շրջագայութեանս Հայոց ՈՁ (1157), գրեցաւ աստուածախաւս մատեանս քրիստոսաձիր կտակ սրբոյ Աւետա- րանիս, յընտիր եւ լաւ աւրինակէ, որ կոչի* Գրիգորի Մուրղանեցւոյ՝ *գրչի ճարտարի, որոյ առեալ էր ղաւրինակն ի Գանձատանէն* Գագկայ *թագա- ւորին Հայոց, եւ իրաւք ձեռաւք գրեալ զԱւետարանն մեծի կաթողիկոսին տեառն* Գրիգորիսի: *Եւ* Կոստանդին *գրիչ* Ոտնայեցին *կալով ի տան նորա, յաղագս աւրինակի գրեաց. ողորմեսցի նմա Տէր։ Եւ ի թուակա- նութեանս Հայոց ՋԸ (1259), եւ ի թագաւորութեանս բարեպաշտ արքա- յին* Հեթումայ, *եւ ի կաթողիկոսութեան* Կոստանդեա *Հայոց դիտապետի ստացաւ զաստուածախաւս Աւետարանս սրբամիտ քահանայն* Թորոս, *յիշատակ իւր եւ իւրոց փոխելոցն առ Քրիստոս...**։

## 244

### ԱՒԵՏԱՐԱՆ

*Սյուրմեյան, Ցուցակ Հալէպի, Ա, 55*

*Գրիչ՝* Կիրակոս
*Վայր՝* Մաշկեւորի վանք

ա

*Փառք երից անբաւից, անհասանելեաց Սրբոյ Երրորդութեանն, երից անձանց և մի աստուածութեանն, Հաւր և Որդոյ և Սուրբ Հոգոյն ամէն, ամէն։*

---

* *Այստեղ ունենք հիշատակարանների չորս շերտ. (ա) տեղեկություն Գրիգոր Մուրղանեցու օրինակի մասին, որը գտնվել է Գագիկ թագավորի Գանձատանը, որտեղից վերցրել և (բ) 1157*

590ա Գրեցաւ սուրբ Աւետարանս ի մեծահռչակ ուխտս Մաշկևորս, ի թուականիս ՉԸ (1259), ի հայրապետութեանն տեառն Կոստանդեայ, եւ ի թագաւորութեան Հեթմոյ՝ որդոյ Կոստանդեա, յայսմ ամի որ զՀալ[ա]-սյրն եառ և զբազում գաւառս խառնիճաղանճ ազգն Ագարայ։

Եւ գրեցաւ ձեռամբ Կիրակոսի անիմաստ գրչի, ի խնդրոյ հոգևոր եղբաւր մերոյ Յուսէփ քահանայի, վասն զի աղաչեաց զմեզ գրել իւր համար՝ յիշատակ իւր և ծնողաց իւրոյ և ամենայն ննջցելոց՝ գնացելոցն առ Քրիստոս։

Արդ, ոյք աւգտիք ի սմանէ, յիշեսջիք զմեզ, զծնաւղսն մեր, և զԹեոդոս փակակալ, զՍտեփաննոս քահանայ, և զԹորոս քահանայ, որ աւգնեցին յղորդելն, և ամենեցուն առ հասարակ ողորմեսցի Յիսուս Քրիստոս, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

Խոշորութեանն անմեղադիր լիք, զի այսչափ էր կարն, բայց յաւրինակս վստահ լիք, մանաւանդ ի համաբայքն, որ գիտէ զի ընտ[ի]ր է։

Բ

Կազմող՝ Առաքել Հնազանդենց

590 Զեղկելի կաղմաւղ սորա զԱռաքել Հնազանդենց, եւ զծնողսն իմ, եւ զհարազատն իմ զՊաւղոս սարկաւագ, եւ զուսուցիչն իմ զՍարգիս քահանայ՝ զհանգուցեալսն առ Քրիստոս, աղաչեմ յիշել ի Տէր։ Ի թու[ին] ՉԹ (1260)։

245

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 10554 (ԺԱ դ.)

Գրիչ՝ Ջորվար քահանայ

ա

71բ Տէր Աստուած, ողորմեայ Տոնկան ծնողացն հոգոցն ամեն, ամեն և իր տան տիկ[ն]ոջն հոգուն Շամամին. և իւր տղոցն Ուռկանն /// որ յիշատակ ըզսայ տնգեցին իրենց ննջեցելոցն և իրենց տղայոցն, ամէն։

72ա Ի թըվականութեանն Հայոց ՉԸ (1259), ի յամսեն ի փետրվարու Ի (20), և Քրիստոսի մար[դ]այսիրին փառք յաւիտենս...

Բ

2331 ՉՏոնիկ յաղաւթս ձեր յիշեցէք զՄիայանցին, և Ջորվար քահանայ, որ յիշատակ ըզսայ ունի ըզսուրբ Աւետարանս, որք յիշեմք և մենք՝ զՏոնիկ և զիւր տղաքն, և զիր ննջեցելսն, ամէն, և զՍտ[ե]փաննոս ռայիսն Միայտնցի, ամէն, որ վարձս բարիս պարգևեսցէ սա և ի հանդեր[ձ]եալումն։

Թվականին ընդօրինակել է Գրիգորիս Գ կաթողիկոսը։ (գ) Կոստանդին Ուռհայեցին գտնվելով Կաթողիկոսարանում (Հռոմկլա) ընդօրինակել է այն «յաղագս աւրինակի», որից (գ) 1259 թվականին արտագրել է Վարդան Ուռհայեցին Թորոս քահանայի համար։

254ա Ջորվար բաշխաս յաղագսն իշեցէք:

## 246

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Կյուլեսերյան, Ցուցակ Անթիլիասի, էջ 150*

Գրիչ՝ Թորոս

Վայր՝ Մերձ ի գիւղն Սալ

465բ *Գրեցաւ աստուածախաւս աւետարանս, աւետարանք Աւետարանս ի Թուականութեան մերում ի ՉԸ (1259)-ն, ընդ հովանեաւ սուրբ տաճարիս որ կոչի Սուրբ Յակոբ, մերձ ի գեաւղն որոյ անուն Սալ անուանի, որ է* [illegible] *լերին Տարոսի, ի գաւառին Հո[յ]ակնայ քաղաքին Տարսոնի, և ի յանառիկ ղղեակն Պապեռոնի, ձեռամբ մեղապարտ և արժան քահանայ Թորոսի, դիզեալ անկարգութեամբ բազմավրդով և կուրացեալ աչաց, մանաւանդ հոգով խաւարեալ, յառաջնորդութեան կաթողիկոսութեան տեառն Կոստանդեա, և ի թագաւորութեան Հեթմոյ որդւոյ Կոստանդեա, և իշխանութեանս այսպարապետիս Հայոց Սմբատայ եղբայր թագաւորիս, հրամանաւ սրբասնեալ և աստուածամերձ քահանայ Յոհաննէսի և պատուական ծերունի հաւր իւրոյ Գրիգորոյ, ի վայելումն մանկութեան իւրոյ, ամէն:*

## 247

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Սրվանձտյան, Թորոս Աղբար, Բ, էջ 437*

Գրիչ՝ Ամասիացի Ստեփաննոս

Վայր՝ Արքակաղնի վանք

*Գրեալ ձեռամբ* Սիմոն *փիլիսոփայի, ի Թվականիս* ՉԸ *(1259), ի հայրապետութեան* Կոստանդեայ, *ի թագաւորութեան* Հեթմոյ, *յիշխանութեան իշխանաց իշխանիս մերոյ* Ճօֆրէ, *եւ որդւոյն* Կոստանդի, Սմբատի *եւ* Աւշնի... *Յիշեցէք զտիկինն* Կեռան... *եւ զհանգուցեալ տիկինն* Ալիծ, *եւ զեղբայրն* զՀեթումն...

*Գրեցաւ* յԱրքակաղնի *վանս, ձեռամբ* Ամասիացի Ստեփաննոսի:

## 248

## ԱՌԱԿՔ ՍՈՂՈՄՈՆԻ

*Մուրադյան, Ցուցակ Մշո Առաքելոց վանքի, էջ 8*

Գրիչ՝ Յովսէփ

*Փառք ամենասուրբ Երրորդութեանն եւ միոյ աստուածութեան յաւիտեանս ամէն:*

ԶՅովսէփ եղկելի զստացող եւ ըղձող սորա յիշեսջիք ի Տէր, եւ զհոգեւոր հայր իմ եւ զուսուցիչ զՓիլ[իպպոս] երաժիշտ եւ սխալմանց թողութիւն արարէք եւ զաւրինակս տուողն զՊետր[ոս] միայնակ[եցն]...*։

## 249

## ԶԻԱԴԱՐՄԱՆՈՒԹԻՒՆ

Զարբհանալյան, Թարգմանութիւնք նախնեաց, էջ 553

Այս խրատներս այլ ի հետ պողպատ շինելուն և մուխ տալուն էր գրած ի նոյն իմաստասիրացն Պարսից, զոր թարքմանեց Հեթում թագաւորն Հայոց, յորժամ գնաց ԺԸՌ (18000) հեծելով ի վերայ թշնամւոյն սուլտանին, և կոտորեաց և սպառեաց զամենեսին, և գնաց մեծաւ պատուով ի Պաղտատ առ Նսոր խալիֆայն, և մեծ պարգևօք դարձաւ։

Եւ իմաստասէր ոմն սարկաւագ, Ստեփանոս անուն, գտեալ առ կայսըրն, որ այսչափ ազգի ազգի գիր և լեզու ուսեալ, նման առաջին փիլիսոփայիցն, և ոչ կայր գիր որ առ նմա ոչ գտանէր, և նա սիրեցեալ եղև ի Հայոց թագաւորէն վասն հզօր գիտութեանն։ Եւ խնդրեաց արքայէն, և ետ թարգմանել երեք գիրս. վասն ձիոյ պայթարնման, և վասն թրի շինելոյ, և վասն արեգական և լուսնի արուեստին, և բերեալ ի Հայոց աշխարհն**։

---

* Ցուցակում թվականը նշանակված է 1259։

** Հավանաբար այս տեղի է ունեցել 1259 թ., երբ Հեթում Ա-ն, մոնղոլների կողմից Բաղդադը գրավելուց (1258 թ.) հետո ԺԲՌ (12000) ձիավորով և 40000 հետևակով մասնակցում է մոնղոլ դաշնակիցների Մերձավոր Արևելքում կատարած նվաճումներին։ Ձիավորների թիվը ցույց տվող գրերի մեջ շփոթված են Ը և Բ միավորները։

ՉԹ 1260

250

## Գ Ր Ի Գ Ո Ր Ի Ն Ի Ս Ա Ց Ի Ո Յ
## ԳԻՐՔ ԲՆՈՒԹԵԱՆ, ԿԱԶՄՈՒԹԵԱՆ ԵՒ ԿՈՒՍՈՒԹԵԱՆ

*Երևան 469*

*Գրիչ՝* Ստեփանոս
*Վայր՝* Մեծքար անապատ

ա

261ա *Երից անձանց միակամ և եղական տէրութեանն փառք յառաջ քան զամենայն, յաւիտեանս և յապագայն, և յայժմս յաւիտեանս։ Զմեղուցեալ և զանիմաստ հոգիս և զյետնեալս յամենայն բարեգործութեանց* զՍտեփանոս՝ *փոքու հետևող այսմ աստուածային տառի, աղաչեմ յիշել ի Տէր, Ո՜ բարեմիտ պատահողք սմին, և վերջին ստացողք, նաև զծնողսն իմ ըստ մարմնոյ, և զհարազատն իւր* զԿիւր[ակոս] *քահանա՝ զուսուցիչն իմ, ընդ նոսին և զվարժապետն իմ, և զի խավարէ տգիտութեան զլուսաւորիչն զրաբունին* Յակոբ *աղաչեմ յիշման արժանի առնել և տէրն իմ Յիսուս, որ առատն է յամենայնի՝ զձեզ յիշեսցէ ողորմութեամբն իւրով, որ է աւրհ[ն]եալ յաւիտեանս։*

*Ի թուին Հայ[ոց] Չ և Թ (1260) գրեցաւ յանապատիս որ կոչի* Մեծքար, *ընդ հովանեաւ սուրբ վկայիցս Տարագոսի, Պրոբոսի, Անդրոնիկոսի։*

բ

117ա *Ընդ նոսին և գրչիս և զսուտանուն քահանա* զՍտեփանոս, *և ծնողսն իմ ըստ մարմնո և ըստ հոգո, աղաչեմ զերջանիկ սուրբ հարսդ յիշելո արժանի արարէք, և որ առատն է յամենայնի, զձեզ յիշեսցէ ողորմութեամբն իւրով, և նմա փառք և գոհութիւն յաւիտեանս, ամէն**։

գ

200բ ´ *Զամենամեղս* զՍտեփանոս, *որ ի սմա աշխատեցա ոչ սակաւ՝ աղաչեմ յիշել ի Տէր, ո՜ բարէմիտ պատահողք սմա, և Աստուած զձեզ յիշէ յողորմութիւնն իւր, որ է աւրհնեալ յաւիտեանս։*

---

* *Հիշատակարանի վերջում այլ գրով գրված է. «Որք պատահիք այսմ տառի զինչ և է տարազու, ի տեղիս-տեղիս տեսանէք բոլոր նշան ու խաղեր, զամէն քերեցէք, ես շատ քերեցի։ Անմիտ մարդոյ է դրած ու անխնամ աւրինակելոյ նշանն։*

Դ

Կազմող՝ Առաքել Հնազանդենց

259բ Ջեղկելի կազմաւղ սորա զԱռաքել Հնազանդենց և զծնաւղսն իմ, և զհարազատն իմ զՊաւղոս սարկաւագ, և զուսուցին իմ զՍարգիս քահանա, զհանգուցեալսն առ Քրիստոս աղաչեմ յիշել ի Տէր։ Ի թուին ՉԹ (1260)։

## 251

## ԱՒԵՏԱՐԱՆ

Երուսաղեմ 251, Պողարյան, Ցուցակ Բ, էջ 15—18

Գրիչ՝ Թորոս Ռաւսլին
Վայր՝ Հռոմկլայ

325ա Փառք ամենասուրբ Երրորդութեան եւ միոյ տէրութեան։

Շնորհիւ Տեառն սկսեալ և ողորմութեամբ նորին յանկ ելեալ աւարտեցաւ մատեանս աստուածային, երկրպագելի և պաշտելի սուրբ Աւետարանս, յամի եօթն հարիւր եւ իններորդի (1260) թուաբերութեանս Հայոց, յաստուածապահ դղեակս Հռոմկլայ, ընդ հովանեաւ սրբոյ Նշանին Վանգոյ, եւ սրբոյ տաճարացն որ յանուն սուրբ Փրկչին, եւ սրբոյ Աստուածածնին և սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, եւ այլ բազմահաւաք սրբոցս, որ պաշտին աստ, ի բռնակալութեան մեծի իշխանին Մանկու կոչեցելոյ եւ տիեզերակալին Հուլաւունին՝ եղբաւր նորա, ի թագաւորութեան աստուածասէր եւ բարեպաշտ արքային Հայոց Հեթմոյ, եւ ի ժամանակի յորում առաւ հուշակաւորն Հալպ, և ամենայն քաղաքք և ամուրք նորա։ Հրամանաւք եւ ծախիւք արի երջանկի եւ երիցս երանելոյ սրբազան եւ աստուածապատիւ տեառն Կոստանդեայ կաթողիկոսին ամենայն Հայոց, որ ի վերայ ամենայն բարի բնութեան իւրոյ, զոր ունէր առ հեռաւորս եւ առ մերձաւորս, առ աղքատս եւ առ կարաւտեալս, առ աւտարս եւ ընդանիս, առ կրաւնս ուղղափառս եւ առ հաւատս հաստատուն, առ Աստուած եւ առ սուրբ պատուիրանս նորա, ունէր եւ զգրասիրութեան շնորհս։ Բազում ստանայր գիրս աստուածայինս, ի Հին եւ ի Նոր կտակարանաց, և անաւթս ոսկեղէնս և արծաթեղէնս, զարդս եկեղեցոյ մեծագինս եւ երեվելիս, ի յիշատակ իւր եւ ծնաւղաց իւրոց։

Ուստի և իմոյ անարժանութեանս Թորոսի, մականուն Ռաւսլին կոչեցելոյ, հրաման տայր զըգործի գրչութեան ի գործ արկանել յաստուածապարգեւ այս մատեան սուրբ Աւետարանի առատաձեռն ծախիւք նիւթաւք, եւ երփն երփն գունաւք վայելչուցուցանել զսա։ Որ եւ ես ըստ կարի իմում լցի զփափաք նորա։

Վասն որոյ աղաչեմ զձեզ, ո՛վ աստուածասէրք լուսասնունդք և տիրահաստատք սրբազան մանգունք առագաստի նազելի մաւր մերոյ Սըրբոյ Սիոնի, որք ժառանգէք զսա զինչ եւ իցէ արդեամբք, յիշեսջիք ազա-

*թիւք ի Տէր, մանաւանդ առաջի զենման անմահ գառինն Աստուծոյ զարժանաւորսն ամենայն բարեաց յիշատակի, զբարեպաշտ թագաւորն Հայոց* **Հեթում**, *և զաստուածարեալ թագուհի նորին* **Զապիլ**, *և զաստուածապարգև որդիսս նոցա։*

*Յիշեսջիք և զսրբազան կաթողիկոսն զտէր* **Կոնստանդին**, *լուսազարդիս այսմ ստացող, եւ զբարեպաշտիկ եղեալ ծնաւղսն իւր* **Վահրամ** *եւ* **Շուշիկ**: *Եւս եւ զհայրազատ եղբարսն իւր* **Գրիգոր** *եւ* **Գորգ** *ճշմարտասէր քահանայ, և զբարի հոգի քոյրսն իւր* **Շուշանիկ** *և* **Վասենի**: *Յիշել դարձեալ եւ զսրբասնեալ եղբաւր որդիսն իւր՝ զառաքելաշնորհ եպիսկոպոսն տէր* **Ստեփաննոս** *և զ***Գրիգոր** *քահանայ։ Եւս եւ զերախտագործ տէրն իմ* **Թորոս** *մաքրակրաւն քահանայ եւ ճշմարտասէր այր, և զբարեզարդ քոյր իւր* **Շուշիկ**, *եւ զաստուածապարգև որդին իւր պարոն* **Ստեփաննոս**, *իշխանական պատուով զինուորեալ ի դուռն արքայի, եւ զսրբասէր եւ բարեզարդ մայր սորա* **Տալիթայ**, *եւ ըզտիկինն իւր* **Ակաց**՝ *ի մեծ տոհմէ, եւ զաւագուհի մայր սոցա* **Ազիզ**: *Յիշել և զմիւս* **Գրիգոր** *եղբաւրորդի հոգեւոր տիրոջն՝ իշխանական ձևով պատուեալ։ Այլ և զամենայն ազգայինս սոցա առհասարակ՝ զմեծ և զփոքր, որոց ննջեցելոցն հանգիստ և ողորմութիւն պարգեւեսցէ Աստուած՝ զկենդանիսն անխռով խաղաղութեամբ պահեսցէ, ամէն։*

*Յերես անգեալ և ես յոքնամեղ և թարմատար գրիչս, որ չեմ արժանի յիշել զանուն իմ ի կարգս անուանց, աղաչեմ յիշել ողորմութեամբ եւ զիս, եւ զծնաւղսն իմ, զեղբարս եւ զքորս եւ զորդիս, այլև զամենաբարի ուսուցիչսն իմ, եւ զամենայն աշխատաւղք սորա, բանիւ եւ արդեամ[բ]ք, զի վասն այդր յուսոյ էր ակնկալութիւն մեր։ Եւ որ առատն է ի պարգեւս և ի տուրս ողորմութեան, Քրիստոս Աստուած մեր, զձեզ յիշեսցէ յարքայութիւն եւ ի փառս իւր, որ է աւրհնեալ, գովեալ եւ առաւել փառաւորեալ ընդ Հաւր եւ Սուրբ Հոգւոյն, այժմ եւ միշտ, եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։*

Բ

*Զաստուածապատիւ Տէր* **Կոստանդին** *կաթողիկոս Հայոց, եւ զեղբօրորդին իւր* **Թորոս** *քահանայ յիշեսջիք ի Տէր մեր Յիսուս Քրիստոս, այլ եւ զմեղապարտ գրիչս, աղաչեմ։*

Գ

*Շնորհեա Քրիստոս Աստուած մասն եւ ժառանգութիւն ընդ սրբոց առաքելոյն տեառն* **Կոստանդեա** *կաթողիկոսի Հայոց, լուսազարդիս այսմ ստացողի, եւ* **Թորոսի** *քահանայի տուր զպարգեւս ողորմութեան քո, ամէն, եւ մեղապարտ գրչիս, աղաչեմ։*

Դ

*Տէր իմ Քրիստոս փրկիչ մարդկան,*
*Պետ հով(ու)ութեան կարգիս ածման,*

Որ զայս մատեան Աւետարան,
Մեզ հնչեցեր ձայն ցնծութեան,
Ահա զքոյս առեալ քեզ տամ
Բարձեալ ի ձեռս առաջի գամ,
Առ զայս նուերս բարեխնամ,
Եւ յիս նայեա Տէր հաշտակամ։
Ո՛վ յանսկիզբ ծոցոյ բան,
Որ ծագկեցար յազգս մարդկան,
Եւ զշնորհս քո շրթան
Հեղեր ուրհնեալդ յաւիտեան,
Դու զպճնողս քո բանի
Եւ զարդարաւղ այսմ տառի
Զտէր Կոստանդին հովիւ բարի
Յաթոռ նստո ընդ Պետրոսի*։

## 252

## ԱՒԵՏԱՐԱՆ

Թոփչյան, Ցուցակ Դադյանի, Բ. էջ 46—47

Գրիչ՝ Վարդան
Վայր՝ Վարագ

Կանայք Աղութ խաթունն և Ղատիշէն ետուն գրել զսա յիշատակ... հօրն Սարդսի և մօրն Ջանխաթունին, և եղբարցն՝ Նասսարդին, Ասաթին, Ամիրտարին, Կիրակոսին, և քուերցն Մարիմին, Շարխաթունին և Բաղդատ խաթունին:

Կատարեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ... Վարդանայ, ի թվ[ին] Հայոց ՉԹ(1260), ի հայրապետութեան տեառն Գրիգորի և մերոյ... ուխտիս Վարագայ... Յակոբայ [եպիսկոպոսի]...

## 253

## ԱՒԵՏԱՐԱՆ

Ճանիկյան, Հնութիւնք Ակնա, էջ 96

Վայր՝ Կոկիսոն

...Ի հայրապետութեան Կոստանդի[ն] կաթողիկոսի, ի թագաւորութեան Հեթմայ... ի ՉԹ (1260) Հայոց թուականին... ի Կիլիկիա, Կոկիսոնի և Կապանի մեջ գրած է**։

* Գրված է ոսկի խորքի վրա, կապույտ երկաթագրով։
** Պարզ երևում է, որ Հ. Ճանիկյանը ոչ թե նույնությամբ ընդօրինակել է հիշատակարանը, այլ համառոտել է այն և վերապատմել իր բառերով։

# 254

## *ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ ԱԶԳԱԹԱՆԳԵՂԵԱՑ*

*Երևան 1481*

*Գրիչ՝* Դաւիթ Բջնեցի
*Վայր՝* Ակներ

ա

366ա *Իսկ յետ բազում ժամանակաց ծագեաց լոյս աստուածգիտութեան ի խաւար մեղաւք յաշխարհն Հայաստանեայց, զոր և ինքն իսկ Տէր մեր ասաց՝ Ոչ են կամք Հաւր իմոյ, թէ կորիցէ ի փոքրկանցս յայսցանէ։ Նաև գթացեալ փոխանակ առաքելոցն առաքէ զոմն սուրբ, զ*Գրիգորիոս *ասեմ, զբազմաչարչարն, զխստամբերողն, զխարազնազգեցն, զքրիստոսասէրն, զհամբերատարն, զիշխանակիցն Պետրոսի և Պաւղոսի սուրբ առաքելոցն։*

*Զարչարեալ տասն զանազան տանշանաւք, որ և զայս նամակս շարադրեաց մեծ[ահանճար] քարտուղ[արն Ագա]թանգեղոս [ի սկզբան]է մինչև ցկատա[րումն]։*

*Յայս խակ /// թար եղեալ ի բազմաշահ մեծագին գանձուցս սուրբ եղբարց մեծ և հռչակաւոր անապատիս* Ակներ *կոչեցեալ, զի ունելով այլ գիրս գժուարընթեռնելի, զի ոչ ախորժէին ընթեռնուլ ի ժամատեղ կամ ի սեղան համարձակապէս։*

*Իսկ կամակից եղեալ առաջնորդք ուխտիս փոխեալ զսայ յայլ գիր, որով և իմ յանձն առեալ գհրամաեալս ի պատուական հարց և եղբարցս գրել զսա։*

366բ *[Շնորհ]աւք ամենա /// կատարե /// կարողութեան /// ոչ եթէ գիտէի զարուեստս գրչութեան յանգգնեցաք ի գործս, այլ ըստ յուսոյ մեր, որ ի սուրբ յուխտս, և ըստ հրամանի պատուական եղբարցս, որպէս և գրեալ է, թէ Կեանք է լսողութիւն։*

*Եւ արդ աղաչեմ և մախթեմ զձեզ, ո՜վ ամենամաքուր և հոգիապայծառ սուրբ դասք քահանից և միայնակեցաց, որք հանդիպիք այսմ տառի կամ ընթերցմամբ կամ գաղափար առնլով, յիշել առ Քրիստոս զպատուական հայրն՝ զ*Գրիգոր *մաքրակրօն քահանայ և զտէր* Բարսեղ *և զ*Վարդան *վարդապետ, սքանչելի վարուք փայլեալ ի մէջ եկեղեցոյ, և զփակակալ* Սիմեոն *և զ*Հայրապետ *[յ]ամենայնի սրբասէր և աստուածահաճոյք. Նաև զհոգևոր եղբայրս իմ՝ զ*Ներսէս *և* Յոհանէս *յոյժ պիտանի և աւգտակար ի գործս բարիս, և զայլ ամենայն եղբայրութիւնս, որ ոչ էր կար մի ըստ միոջէ անուանել։ Աղաչեմ յիշել և զ*Թորոս *միակեաց և*

զԳրիգոր, որ աշխատեցան ի կոկ թղթիս, նաեւ զտնտես և զմարմպան և զհացպան և զփոմպան և զամենայն աշխատողս։ Առ Քրիստոս յիշեք զսուրբ ծերունիք՝ զՍարգիս և զԿարապետն աղաչեմ։

267ա Ցուցից և ձեզ, սիրելիք, փոքր ի շատէ զթշուառութիւն իմոյ տկարութեանս, որ տրուպ և անարգ և անպիտան յամենայն գործս, զի չեմ ստացեալ գործ բարի, այլ զամենայն խոտոր և չար և անշահ։

Է և ինձ պատմել, զի գոլով իմ ի նահանգէն յարեւելից, յԱյրարատեան գաւառէն, ի դղեակէն Բջնոյ, և իմ խոցեալ չար վիրաւք հոգովս զանազան մեղաւք. ապա այնուհետև որպէս զչար վիրաւք հարեալ մարդ՝ ի խնդիր եղեալ բժշկի և ոչ ուրեք գտեալ, այլ միայն դէմ եդեալ գնալ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ և ի Հռոմ՝ ի պատկերն անձեռագործ [և Սուրբ Պետրոս] և Պաւղոս, նաեւ յԱստուածածին, որ ի ծագս տիեզերաց և ի սուրբ առաքեալն Յակոբ։

Քան զի ոչ եթէ վասն պանծանաց գրեմ զայս, այլ վասն մեծ մեղաց իմոց, որ անհուն է և անչափ է։

Իսկ դարձեալ զհամբաւ բարեաց և սուրբ կրաւնք և կանոնք այսմ մենաստանիս, յոյժ ցանկացայ և եկեալ իմ յուսով մեծաւ և աշխատութեամբ յոյժ և տուայ[տանաւք]։

Տեսեալ զիս ատար և պանդուխտ ոգեսէր եղբարցս՝ և գթացին յիս իբրեւ զծնաւղ և ցուցին ինձ սէր իբրեւ զտէր Յիսուս, զոր հաստուցէ Քրիս-
367բ տոս սոցա ըստ իմ /// եանս||տացէ հանգիստն յաւիտենից ընդ սուրբս իւր, և ոչ միայն զայս, այլ եւս առաւել ցուցին յիս գթութիւն։

Եւ ես ոչ ունելով զձեւ սոցա և զկարգ, զի ամենեքեան իբրեւ զհրեշտակս Աստուծոյ՝ արթուն և զուարթուն, և յաւրհնաբանութիւնս Աստուծոյ ի տուէ և ի գիշերի անզբաղ և անհանգիստ, և զայս տեսանելով իմ, վայ և եղուկ ասելով անձին իմոյ, զի թափուր գոլով ի կրանից սոցա և յառաքինութենէ։

Բամեալ զիս այնուհետւ զմտաւ ածի զգործս զայս, թերեւս լինիմ կցորդ բարեաց սոցա։ Ուրեմն և [յ]որդորելով զիս և խրախուսելով սուրբ հարցդ, որ ի վերոյ գրեցաք, քան զի և մեր Տէրն անարգամեծար է, ընդունի զաշխատութիւնս իմ որպէս զխերեւէշ այրոյն և զմաղ այծեաց ի սպաս տաճարին։ Եւ դարձեալ մոխրամած դիմաւք և սրտառուչ հառաչմամբ աղաչեմ զսրբութիւնդ ձեր՝ անմեղադիր լինել սխալանացս և սիրով ուղղել, զի այս էր կարողութիւն իմ, այլ ի ստոյգ աւրինակէ դրեցի և ըստ չափու /// դարձ ///*.

Բ

15բ Ո՞վ եղբարք, թվի թէ պակաս է յայս դէմս և ի յաւրինակէս է, որ չդնես մեզ վասն Աստուծոյ։

---

* Հիշատակարանը թերի է սկզբից և վերջից. պահպանված մասի պարբերությունների սկզբնատառերը կազմում են «իչ յիշեցէք ի տէր»։ Ինչպես երևում է, պակասում է գրչի անունը։ Սկզբնապես եղել է [Զ՞Իւաիր գր]իչ յիշեցէք ի տէր։

Գ

47ա Տէր Յիսուս, ողորմեսցի Վարճամ միայնակեցի, որ զիմ չուխայն կոխել երետ։

Դ

48ա Ո՜վ համագումար դասք սրբազանից, յորժամ ընթեռնոյք կամ լսէք, յիշեցէք ի Քրիստոս զ[յ]որդորիչ գործոյս զՀայրապետն, և զՍիմեոն փակակալ, և զանմաքուր գծողս. թէ արժանի առնէք յիշատակի վասն սիրոյն Քրիստոսի, զի և դուք յիշեսջիք յԱստուծոյ մերմէ։

Ե

83բ Վա՜յ մարմին ի վերա քո, որ ոչ մահ և ոչ տանջան զքեզ չեն ի խրատել։

Զ

87բ Յանուազ բաբէն և յանաղօտ լուսոյն, յանծայրածաւալ մխիթարութեանցն և յանխնայ ողորմութեանցն, անվայրափակ գթութեանցն և անփմանալի քաղցրութեանցն, ի Հաւրէն մեծէ և յՈրդւոյն միածնէ և ի Սուրբ Հոգոյն հայցեցէք, ո՜վ հոգելից և հաւատարիմ եղբարք, աղքատիս հոգով՝ բարի, խաւարելոյս մեղաւք՝ լոյս, տարակուսելոյս չարեաւք՝ մխիթարութիւն, քաղցեալ գազանիս՝ ողորմութիւն յողորմածէն Յիսուսէ, որ և աւրհնեալ յաւիտեանս։

Է

108բ Ո՜վ մեծի տառապանացս, թէ ես յիսնէ ո՞ւր փախչիմ, զտեղն կու փոխեմ ու զիս ոչ։

Ը

174բ Շնորհալի և խոհեմ սուրբ եղբարք, անմեղադիր լերուք գործոյս;

Թ

247ա Զամենամեղս և զբազմաչարս, զանարժանս յոքունց՝ զգրիչս Դաւիթ յիշել աղաչեմ առաջի սուրբ տառիս աստուածապատում, և զծնողսն մեր, և զամենայն եղբայրութիմս, նաև զՆերսէս՝ զհոգեւոր եղբայր. և որք յիշէք, յիշել լիջիք ի Քրիստոսէ, ամէն։

Ժ

261ա Սուրբ Լուսաւորիչ, բարեխաւսեայ առ Քրիստոս վասն մեղուցեալ զաւակացս քո, զոր ծնար սուրբ աւազանաւն յանուն Սուրբ Երրորդութեանն։

ԺԱ

275բ Քրիստոս Աստուած, յիշեայ և ողորմեայ անմաքուր հոգոյ մեղուցեալ գծողիս սորա և ամենայն եղբայրութեանս, զի դու ես վշտացելոյս՝ մխիթար և տարակուսելոյս՝ ապաւէն, խաւարելոյս՝ լոյս, մոլորելոյս՝

դարձ, գլորելոյս՝ կանգնիչ, յուսահատելոյս՝ յոյս կենաց, և ամենայն անհնարից՝ հնար, և քեզ փառք։

ժբ

325ա Ողորմութեամբն Աստուծոյ սկսայ ի յամսեանն դեկտեմբեր ԺԵ(15) և շնորհաւք Սուրբ Հոգոյն կատարեցի ի մարտ Լ(30)։ Որ հասուցեր զմեզ ի գիծ վերջի այսմ նամակի, Սուրբ Երրորդութիւն, քեզ փառք յերկնաւորաց և յերկրաւորացս և ի համայն եղելոցս։

ժգ

325բ Արդ գրեցաւ գիրս ի թվին Հայոց ԺԶ (1261)*։

## 255

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑԻՈՅ

Երևան 2510 (1393 թ.)

Հեղինակ՝ Վարդան Արևելցի·
Վայր՝ Սանահին

Ի խնդրոյ տեառն Համազասպայ և վարդապետին Գրիգորի հաւաքումն մեկնութեան սրբո[ց հա]րանց Եղիշէի, Յովանու և զոր տեսանէք· յանցն իւրսն, ի տառապեալ ոգւոյ Վարդանայ:

316ա Ամենողորմած**, անոխակալ, անյիշաչար, քաղցր և երկայնամիտ,
անսկիզբն և անվախճան, աներբ և անուրեք՝ աշխարհակիր և ամենամերձ
Տէր, ամենասուրբ Երրորդութիւն ի միում բնութեան և ի զաւրութեան
փառաւորել անարժանս զործոյ իրի և անուան յանդամս սուրբ եկեղեցւոյ
քո, ի մեղսաներկ և ի ցաւալից ձեռս առեալ հաւատով զնշխարս ոսկերաց
սրբոց քոց, որք մատուցին զինքեանս հաճոյական պատարագ քեզ ի հոտ
անուշից; զխաւարչուտ և զնսեմացեալ գոյութեամբս իմով արկեալ՝ զլը-
րումն Կաթուղիկէ եկեղեցւոյ քո, երկիր պագանեմ քեզ ամենեքումբք,
զսուրբ շրթունս նոցա դնելով ի պատւանդան ոտից քոց և զկենսունակ
սուրբ նշան սիրոյ ի սրտի եդեալ գոհանամ զքէն քո[յ]ով հաճոյիւքն յեր-
կին ի վեր և յերկիր ի խոնարհ, այլ և տալով բոլորից մասանց արարա-
ծոց կոտորելով զամէնիսեան ի չափ հաւատոյ մանանխոյ, զգեցուցանե-
316բ լով նոցա կեանս և լեզու, և այնպէս գով||եմ և աւրհնեմ, գոհանամ և
փառաւորեմ զզօրացեալ և զառատ ողորմութիւն քոյ անարժանս երկնի և
երկրի։ Որ և յաւելէր յայլսն քաղցրութեան և զայս, զի արժանի եղէ տե-
սանել զկատարումն խնդրոյ սուրբ եկեղեցւոյ քո ի ձեռն աւագին իւրոյ
Տեառն և որդւոյն հարազատի, թէ համարձակելի է մեզ և զձեզ մեծարել

* Գրված է այլ գրությամբ։

** Հիշատակարանի սկզբի մասը պահպանվել է № 2604 ձեռագրում, գրված 1295 թ., որի գաղափար օրինակը Վարդանի ինքնագիրն է եղել, և սրա հետ ունի որոշ տարբերություններ,. ուստի բերում ենք նաև այն։

*ի նաւակատիս մեր գլուխտ՝ եկեղեցւոյ, վսամարտ մեր արհիական ե*
*անդրանիկտ մեր եղբայր բաբոմի, և ասեմ զասացեալն իմաստնոյն* Պի-
սիդեայ. *Ո մշակտ մորենեաց և վիմաց, և կամ աղտաղտ և խոխոմ գետ-*
*նոյ և ցամաքեալ երկրի ցաւաւք և ժամանակաւք. որ բռնադատեալ արա-*
*րիք խիւս ի խորշակահար հասկաց, սակայն ղի արեգակնակոխ էր և յու-*
*սով կենդանի։*

*Եւ ար[դ] ընկալարուք զսերմանեացն ձերուց յոլովից յանկանչս դի-*
*մաւք և գրով ի տեսիլ աչաց զբերս պտղոցտ, և տուք զերախայրիս կալոյ*
*և ղհնձանի Տեառն Յիսուսի և Հաւր իւրոյ գթածի և բարեխօսին զկողովն*
*ուղկուղից մտաւոր գոհութիւն, ղի նորա է ողորմն և ձեր քաջութիւն յա-*
*ղօթս և ի հաւատս, սակայն յորդառատ և անպակաս արտասուօք ոռոգել*
*աղաչեմ ղապալերկ և զանբանից կոխան անդաստանս։ Ուստի ընկա-*
*լարուք զսակաւ սատարդ փոքր մի դադարեցուցանել զախորժակս կարօ-*
*տութեան ձերոյ, ղի և ձերովքտ բարէգթութեամբ և աղերսօք մաղթանաց*
*գտցէ և աստ ի Յիսուս քաղցեալն պտուղ ի* Բեթանիէ *յ*Երուսաղէմ *եկեալ*
*աշակերտացն դասուք, յորմէ աւրհնեսցուք և պտղալիցք եղեալ ձեօք հան-*
*դերձ, փառաւորեսցուք զնա Հարբ և Հոգւով յաւիտեանս յաւիտենից,*
*ամէն։*

317ա *Ի թվիս Չժ (1261), եղեւ սկիզբն և կատարումն համառօտ վերլու-*
*ծութեան արարչապատում մովսիսական մատենիս ի խնդրոյ արհիա-*
*կան տեառն* Համազասպայ *և վարդապետին* Գրիգորի՝ *փակակալին սուրբ*
*ուխտին* Սանահնին, *սատարութեամբ անարժան ծառաիս քրիստոնէից*
Վարդանայ, *ի սիրոյ և ի մեծարոյ երեսաց բռնադատեալ, քան ղի ի զգա-*
*ւութեանէ էաք մերում անբաւականութեանս ի նսեմութենէ մտաց և ի*
*ժամանակէ և ի հիւանդոտ կենաց. ապա ի շատ ժամանակաց հարամղեալ*
*ի վարդապետէն* Գրիգորի *ընդ[դ]իմանա[յ]աք իրաւամբք, անվստահ*
*եղեալ չիշխէաք ձեռնարկել յիրս, որ վեր էր քան զկարն մեր։ Ապա ղի*
*պատկառելի երեսօքն հարկեց զմեզ տեառն* Համազասպաւ՝ *երեսաւք և*
*գրով անդադար՝ յաղթեցաք և հնազանդել սկսաք՝ յԱստուած և յաղօթս*
*նոցա վստահացեալ՝ ի գարնանաին յեղանակն, առաշնորդ ունելով զա-*
*մոլսն հաւատոյ* զԵզիչէ *և* զԵփրեմ *և զմեծն* Ոսկիաբան *և զայլսն, որ*
*վաստակեալ էին ի գիրքս յայս ի տեղիս տեղիս, և յորոց հաւաքեալ էր*
*լուսաւոր վարդապետ* Տիմոթէոս:

*Սակայն դիմեցաք յոլով փորձանաց և տւայտանաց ներքոյ և արտա-*
*քոյ ի շմոր և յամպոխել աւուրքս մեղսաբեր, վասն որոյ կասկածեմ այլ և*
*գիտեմ իսկ եթէ սակաւ պակասութիւն և պատճառ է եպերանաց գտանէք*
*պատահեալքտ այսմ գործոյ մեծի, ընդ որս վարկպարազի անցաք, է ղի*
*զհարկաւորն և զառաւել պիտանին թողեալ լինինք ի սրբոցն բանից,*
*և է ղի յանդէպ տեղ եդեալ, և դարձեալ զոր ի մէնչ համարձակեցաք զմիտս*
*յաւելուլ, զթւեցեալն պակաս լլինի ի դէպ, և մնացեալ իցէ դարձեալ*
317բ *հարկաւոր բանէար անլուծանելի, այլ և հրամանայ||տուքն ստիրէին*
*զմեզ ի շոյտն, և մեք ի կաս[կ]ածոտ և ի մուխատրա կենացս մերոց*
*երկուցեալք, ել ի դուրս եդաք և համառաւ գնացաք՝ փութացեալք յա-*
*ւարտն, զոր տեսաք ի շնորհսն Աստուծոյ և յողորմն նորա յեղանակս ձմե-*

րայնի ի հնգէտասանն մարգաց ամսոյ և ի քսան ու հինկն նոյենբերի, ի տանի սուրբ հայրապետին Պետրոսի Աղէքսանդ[ր]ոյ պատրիարգին, և երկիր պագաք Աստուծոյ առաջի ձեր, ի շրթունս եկեղեցոյ և հաւատոյ, և նովաւ աղաչեմ զամէնիսեան ներել մեզ ղ[յ]անցանս՝ աստուածաբար դթալով ի մեզ և ուղղելով զթիւրութիւն մեր, և թէ զշնորհն Յիսուսի Աստուծոյ մերոյ զանարգամեծարն տեսանէք բախեալ ի մեզ և պիտանի ինչ ծնեալ յամուլ և յաղտեղեալ մտացս մերոց, մի անարգէք, այլ մեծութիւն, պատիւ և փառք Աստուծոյ, գոհութիւն և աւրհնութիւն յաղգս և յազինս առաջի յԱստուծոյ յաւիտեանս յաւիտենից յաւիտեան, ամէն։

Շնորհս ունելով և աղօթս տալով հայցողացն բանիցս, ընդ որս և մեք զաղաչեմ մասնաւորել զառատ ողորմութիւն Աստուծոյ ի թողութիւն մեղաց մերոց և անբիծ և անդատապարտ կալոյ մեզ առաջի ահեղ ատենին Աստուծոյ ձեւք հանդերձ և ամենայն լրութեամբք քրիստոնէից, և շնորհաւոր ձեզ և բարէմո[յ]ն և բարէշուք և բարեաց բազմաց կարապետ և նախընթաց գրկուքս այս վաստակ և աշխատութիւն փոքրիկ՝ փցում և հեղք մատանց մերոց և ձեռաց, երկրորդելոյ ի դիւրընթերց մատեան որդայ իմոյ սիրեցելոյ Մարգարէի, որում և վարձ բարի տացէ նմայ Յիսուս Քրիստոս Տէրն մեր յառատաձիր գանձուց իւրոց և եղիցի ինքն աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## 256

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՀՆԳԱՄԱՏԵՆԻ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՐԵՒԵԼՑՒՈՅ

Երևան 2604 (1295 թ.)

1ա Ի խնդրոյ Տեառն Համազասպայ և վարդապետին Գրիգորի հաւաքումն մեկնութեան սրբո[ց հա]րանց Եղիշէի, Յովհաննու և զոր տեսանէք յանցն իւրսն, ի տառապեալ ոգւոյ Վարդանա։

Հեղինակ՝ Վարդան վարդապետ
Վայր՝ Սանահին

Վարդանայ յիշատակարան

Ամենաողորմ Աստուած անոխակալ, անյիշաչար, քաղցր և երկայնամիտ, անսկիզբն և անվախճան, աներբ և անուրեք, աշխարհակիր և
ամենամերձ Տէր, ամենասուրբ Երրորդութիւն՝ ի միում բնութեան և ի
զաւրութեան փառաւորեալ։ Անարժան գործոյ իրի և անուան, յանգամս
սուրբ եկեղեցւոյ քոյ ի մեղսաներկ և ի ցաւալից ձեռքս առեալ հաւատով
135ա զնշխարս ոսկերաց սրբոց քոց, որք մատուցին զինքեանս հաճոյական||
պատարդ քեզ ի հոտ անուշից, զխաւարչուտ և զնսեմացեալ գոյութեամբս
իմով արկեալ զլրումն Կաթուղիկէ եկեղեցւոյ քոյ, երկրպագանեմ քեզ
ամենեցումբք, զսուրբ շրջունս նոցա դնելով ի պատւանդան ոտից քոց.
և զկենսունակ սուրբ նշան սիրոյ ի սրտի եդեալ գոհանամ զքէն՝ քոյովք
հաճոյիւքն յերկին ի վեր և երկիր ի խոնարհ՝ այլև բան տալով բոլորից

մասանց արարածոց, կոտորելով զամենէսեան ի չափ հատոյ մանանխոյ զգեցուցանելով նոցա կեանս և լեզու, և այնպէս գովեմք և ուրհնեմք, գոհանամք և փառաւորեմք, ղզաւրացեալ եւ զառատ ողորմութիւն քո անարժանս երկնի և երկրի, որ և յաւելեալ յայլսն քաղցրութիւն և ղայս; Զի արժանի եղէ տեսանել զկատարումն խնդրոյ սուրբ եկեղեցոյ քոյ ի ձեռն աւագին իւրոյ, տեառն և որդւոյն հարազատի: Թէ համարձակելի է մեզ և զձեզ մեծարել և ի նաւակատիս մեր, զլուխ եկեղեցոյ վսամ տէրդ մեր արհիական և անդրանիկ մեր եղբայր րաբունի, և ասեմք զասացեալն իմաստնոյն Պիսիդեայ: Ո մշակքդ մորենեաց և վիմաց, և կամ աղտաղտ և խոխոմ դետնոյ և ցամաքեալ երկրի ցաւաք և ժամանակաւք, որ բռնադատեալ արարիք խիւս ի խորշակահար հասկաց, սակայն զի արեգակնակոխ էր և յուսով կենդանի։

Եւ արդ, ընկալարուք զսերմանեաց ձերոց յոլովից՝ յականշս, և գրեքով գիմաւք ի տեսիլ աչաց, զքեղս պտղոցդ և տուք զերախայրիս կալո և հնծանի Տեառն Յիսուսի և Հաւր գթածի քւրոյ և բարեխաւսին, և զկողովն ուղկուզից մտաւոր գոհութեամբ, զի նորա է ողորմ, և ձեր քաջութիւն յաղաւթս և ի հաւատս։ Սակայն յորդառատ և անպակաս արտասուաք ոռոգել աղաչեմ զապալերկ եւ զանբանից կոխան անդաստանս, ուստի ընկալարուք զսակաւ սատարդ, փոքր մի դադարեցուցանել զախորժակս կարաւտութեան ձերոյ, զի և ձերովքդ բարեգթութեամբ եւ աղեբսիւ մաղթանաց, դտցէ և աստի Յիսուս քաղցեալն պտուղ ի Բեթանիայէ եկեալ յԵրուսաղէմ աշակերտացն դասուք, յորմէ աւրհնեսցուք և պտղալիցք եղեալ ձեաւք հանդերձ փառաւորեսցուք զնա հարբ և հոգւով յաւիտեանս։

Բ

Գրիչ՝ Մարգարէ՞

Աղաչեմ ընդ նախայիշատակեալս Վարդան վարդապետ հոգացող այսր մատենի, զոր ի ն[ախ]կնագունիցն Մեկնչաց և զո[ր ի շ]նորհաւքն Աստուծոյ յիւրմէ յաւե[լ], յիշման բարւոյ արժանաւորէք, և զմեծապատիւ արհիեհիսկոպոսն մեծահռչակ սուրբ ուխտին Հաղբատայ զտէր Յոհանէս, որ զաւրինակս էր սրբագրեալ և զնորա [ձե]ռասուն զեղբաւրորդին հարազատ Սարգիս քահանայ որ ի վաղժս կր[թութեան] բանի է պարապեալ, որ և շնորհեաց իսկ զաւրինակս, որոյ լիցի մա[ս]ն ողորմութեան գտանել ի Քրիստոսէ յաւուրն վերջնում։

257

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 5661

Գրիչ՝ Ստեփանոս

ա

117ա Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հաւր և Որդոյ և Հոգոյ Սրբոյ այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Գրեցաւ լուսափայլ սուրբ պատուիրանս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի թուիս Հայոց Զժ (1261), հրամանաւ և արդեամբք բարերշանիկ սուրբ և ընդրեալ միայնակեցին Յոհաննիսի, ի վայլես անձին իւրոյ և ի յիշատակ հոգոյ իւրոյ և ծնողաց իւրոց, և եղբարց և քեոց, կենդանեաց և մեռելոց։

Արդ, որք կարդայք կամ աւրինակէք, զյառաջասացեալ հայր և ընտրեալ միայնակեացս՝ յաղաւթս յիշեցէք։ Ընդ նմին և զիս զանարժան գծողըս զսուտանուն կրաւնաւորս, որ ըստ անուանս ոչ ունիմ զաւրինակս՝ Ստեփաննոս և ծնողսն իմ և ղեղբայրսն, և որ յիշէ՝ յիշեալ լիցի առաջի ղենլոյն Յիսուսի, և Քրիստոսի Աստուծոյ մերոյ փառք յաւիտեանս։

Ո՜վ սուրբ հայր, յիշեայ զեղկելիս զՍտեփաննոս, և խոշորութեանս մի մեղադրեր, զի կարի ցուրտ էր աւուրքս և սառոյց եւ, և դրոց աշակերտութիւնս ի վերա*։

Բ

71բ Ձեղկելի գծողս յիշեա, ո՛վ սուրբ ընթերցող։ Գրեց[աւ] թըւականիս ԶԸ (1259), ընդ ձեզ եմ զամենայն աւուրս մինչև ի կատարած աշխարհի։

258

ԱԻԵՏԱՐԱՆ

Երևան 378 (1212 թ.)

ա

8բ Ե[ս Հասան Ջալալ Դաւլոյ...]** չոգա յարեւելս առ արքայն Նետողաց, եւ ի կողմն հիւսիւսոյ՝ տոհմիւ աղխաւրն իմով անձամբս վասն խաղաղութեան եկեղեցոյ։ Ես եւ ամուսին իմ Մամքան***, և տեառնատուր մանուկս իմ Աթաբակ չոգաք ընդ արևելս հիւսիւսոյ, եւ ես ընդ եզր աշխարհի գնացի առ թագաւորն որ Մանգու խանն։ Եւ յամեալ զամս հինդ, դարձա ի տուն, նոյն[պէս Մամքան]ն և Աթաբակն դարձան, և նոքա ժամանեալ ի տեղի իւրեանց, և ես ի Թաւրէժ յամեալ, յորում և աւրհասական մահ ի վերա հասեալ՝ փոխի [Մամքան]ն ի Քրիստոս։ Եւ ես եկեալ գտի զպայծառ տուն իմ լի սգով եւ արտասուաւք անմխիթարելի, զի նա էր ամենայն զաւրաց և հեծելոց, նաեւ եկեղեցոյ և քահանայից սփոփիչ և մխիթարութիւն։

9ա Արդ, ի թւին‖Հայոց Զժ (1261) տուի զսուրբ Աւետարանս ծաղկազարդ, յիշատակ աստուածասէր տիկնոջն [Մամքանա]ի մեր Լուսաւորիչ սուրբ աթոռն Աղուանից, ի հոգևոր տէրն Ներսէս, որ ա[յ]ժմ բարեհամբաւ**** լրիւ ունի զաթոռն սուրբն, և առաւել քան զսուրբս։

* Ստեփանոսը Մաթէոսի և Մարկոսի Աւետարանների գրիչն է, մյուս երկուսի գրչի անունը չի պահպանվել։ Ձեռագիրը միասյուն է։

** Սկզբից չորս տող քերված է և մնացել է միայն գլխագիր «Ե» տառը։ Այս երեք բառերը նույնպես քերված են և հետագայում վրայից սև թանաքով թարմացված։

*** Անունը քերված է ամենուրեք։

**** Հ. Օրբելին կարդացել է «բարեհամբուրիւ» և ավելացրել «քոյց», ճիշտ չէ (И. А. Орбели. Избранные труды. Ереван, 1863, էջ 155)։

Արդ աղաչեմք զձեզ սուրբ Հայրք եւ ընթերցողք, որք յիշատակս կարդայք, լի բերանով ասասջիք. Քրիստոս Աստուած յորժամ գաս ի նորոգել և ի փոխադրել զտիեզերս, նորոգէ և միաւորէ զաստուածասէրն [Մամքան]ն և դասէ ի դասս ընտրելոց քոց, բարեխաւսութեամբ արարչագործ կամաց քոց և աղաչանաւք Սրբոյ Աստուածածնիդ և ամենայն սրբոց դասէ և պայծառացոյ ընդ սուրբս քո։ Ընդ նմին եւ ինձ [զՋալալ Դալի] պարգևէ զխաղաղութիւն Հոգւոյ և մարմնոյ, և միոյ մանկանս իմոյ Իվանի Աքաբակին պարգևէ զքո զառատ ողորմութիւնդ և զամենայն թշնամի սոր[ա] ընկրկեալ սատակէ և յամաւթ արա, ամէն, ամէն։

Բ

163բ Քրիստոս Աստուած, ողորմէ Մամքանին և գրէ զնա ի դպրութեան կենաց ընդ սուրբս քո՝ յարքայութեան քում, ամէն։

ՉԺԱ 1262

## 259

## ՆՈՐ ԿՏԱԿԱՐԱՆ

*Ն. Ջուղա 30, Տէր-Ավետիսյան, Ցուցակ, էջ 45—46*

Գրիչ՝ Թորոս Արևելցի
Վայր՝ Հռոմ

ա

190ա *Փառք ամենասուրբ Երրորդութեան։*

*Ես նուաստ և անարժան ծառայ Աստուծոյ* Թորոս *պիտակաբար սպասաւոր բանի յ*Արևելից *գաւառաւ, և քաղաքաւ ի* Գանձակայ, *սնեալ և վարժեալ ի մեծ մենաստանն* Գետիկ, *տարբերեալ այսր անդր, հասի սահասասան ճանապարհաւ, կասկածակոծ, մահահուպ, հիւծեալ, հիւանդամաշ մարմնով, մանաւանդ թեև հոգւով ևս, ի մեծս Հռովմ, ուր են ի դամբանի ամոլքն հաւատոյ Պետրոս և Պաւղոս, զի թերևս ի ձեռն նոցին բարեխաւսութեան ապրեսցուք ի յահագնասարսափ և ի սարսռաշատ աւուրն, և ազատեսցուք ի քըրմնելի ամաւթոյն բարեխաւսութեամբ նոցին։ Եւ զի յոյժ հեռի եաք յազգէ և եղբարց մարմնաղէտ արեան մերձաւորաց, որով վախճանեալքն յիշատակին, ստացայ զայս դրունքս դոյզն ինչ նշխար յիշատակի գծագրեալ իմով իսկ ձեռաւք խոշոր գծիւ, ի յաղքատ նիւթի։*

*Ի ՉԺԱ (1262) թուին եղեւ սկիզբն և աւարտ սմին ի տիեզերաց հըռչակելալ յականաւորս* Հռովմ, *առ դրան վիմին հաւատոյ* Պետրոսի *առաքելոյն չորք աւետարանչացն գրեալ Աւետարանքն և Ջորքտասան թուխտքըն Պաւղոսի, Գործ առաքելոցն և Եւթն թուղթք կաթուղիկեայցն ի մի տուփ վասն որոյ աղաչեմ զպատահեալսդ և ժառանգողսդ զսա խնամով պահել և սրտի մտաւք յիշել ի մաքուր ձեր յաղաւթսդ զ*Թորոս *վարդապետ, և զծնողսն իմ զ*Մանուիէլ *և զ*Տատոն, *և զեղբարսն զ*Ըռոբէն *և զ*Յակովբ *և զ*Յոհաննէս, *և զքոյր իմ զ*Ազիզն, *և զսնուցողսն, և զամենայն երախտաւորսն մեր, և զայլ ազգականս և զընտանիս։ Եւ որք զմեզ յիշեն աղաւթիւք, յիշեալ լիցին ի Քրիստոսէ յահեղ աւուրն ի կարեաց ժամուն։*

189բ *Յիշեսջիք ի Քրիստոս և զհոգևոր եղբարս իմ, որ ի միասին պանդըխտանայաք ի Հռոմս՝ զ*Մակար *սրբասնունդ քահանայ, որ բազում խոնարհութեամբ հանգոյց զմեզ յոլով աւուրս, հանգուսցէ զնա Քրիստոս ի տան հօր իւրոյ՝ ընդ սուրբս իւր։ Յիշեսջիք և զայլ եղբարս՝ զ*Վարդան, *և զ*Ստեփանոս, *և զ*Յակոբ, *և զ*Յակովբոս, *և զ*Առաքեալն, *որ էլ ի զկենցա-*

դո՝ աւանդեալ զհոգին, ի դեկտեմբերի Ի—ԻԸ (28), որում ողորմեա ի Քրիստոս...*

Յիշեսջիք և զՎասիլ Կոզեռն, որ սպուրն եփէր և զամենայն համաբնակ եղբարքս՝ զքահանայս և զկրաւնաւորս, որ կան ի Տանէն Հայոց ի Հռոմս:

Յիշեսջիք և զմիւս Թորոս վարդապետ՝ մականուն Խալիզոնիկ, և որք զմեզ յիշեն, յիշեալ լիցին ի Քրիստոսէ Աստուծոյ, որում փառք յավիտեանս ամէն։

Բ

82ա Յիսուս յոյս քո[յ]ոց արարածոց ողորմեա Թորոսի ստացողի և ծրողի, և ծնողաց իւրոց և եղբարց, և քեզ փառք յամենայն (Ժ)ա[մ]։

Գ

47բ Զստացուղ սուրբ Աւետարանիս և գծող Թորոս Արնելցի ի Գետկա, յիշեջիք ի Տէր Քրիստոս։

Գ

83ա ԶԹորոս սպասաւոր բանի և զծնողսն, և զեղբարսն հանդերձ ամենայն երախտաւորաւքն իւրեանց յիշեսջիք ի Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ իւր արքայութեանն։

Ե

143բ Ողորմի Թորոսի վարպետի, և իւր ծնողացն Մանուիէլի և Տաւուսին, եղբարցն Ռոբինի և Յակոբայ և Յոհանիսի, և քեռն Ազըզին:

## 260

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Սանջյան, Ցուցակ Ամերիկայի, էջ 281—284*

Գրիչ՝ Թորոս Ռոսլին
Վայր՝ Հռոմկլայ

ա

Փառք քեզ անսահման անուն և անզուգական անձնաւորութիւն, Հայր
407ա եւ Որդի եւ Սուրբ Հոգի||որ ետուր կարողութիւն և սատար եղեր տկարութեան իմոյ ի զրաւ հասանել [ը]ղձալի մատենիս։ Աւրհնութիւն քեզ Սուրբ Երրորդութիւն եւ միասնական աստուածութիւն, այժմ և միշտ։

Շնորհիւ Տեառն սկսեալ եւ ողորմութեամբ նորին յանգ ելեալ աւարտեցաւ մատեանս աստուածախաւս, աստուածունակ, երկրպագելի եւ պաշտելի սուրբ Աւետարանս յեւթնհարիւր եւ մետասաներորդի ամի թուաբերութեանս Հայոց (1262), յաշխարհամուտ յաթոռս Հռոմկլա, ընդ հովանեաւ աստուածաբնակ տաճարացս, որ յանուն Սուրբ Փրկչին

* Մի քանի անուններ չեն կարդացվում։

եւ Սրբոյ Աստուածածնին եւ Սուրբ Լուսաւորչին մերոյ, եւ այլ եւս բազ-
մահաւաք սրբոց, ի ժամանակս աստուածասէր եւ բարեպաշտ արքային
Հեթմոյ, եւ ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ կաթողիկոսի, որ
407բ սրբազան վարիւք իւրովք առհասարակ զարմացուցանէր զբազումս,
մինչ զի եւ յարտաքնոցն առաւել ընդունէր վկայութիւն զանհամեմատ
վարուցն իւրոց մաքրութեան։ Հեզ էր եւ ողորմած եւ բազում բարութեանց
լինէր աւրինակ, ուստի եւ եղբաւրորդին իւր Թորոս քահանա ի նմանէ
ուսեալ՝ լինէր գրասէր եւ աստուածասէր, զմտաւ ածեալ, թէ ամենայն
որ ինչ յերկրէ ընծայեալ նիւթք ընդ սոյն կորնչել ունին, եւ որ յաւիտեան
մնայ՝ բան Տեառն է։ Վասն այսորիկ եռափափաք սիրով ստանայր մա-
տեանս աստուածաշունչս ի հին եւ ի նոր կտակարանաց, եւ զամենայն
գոյս եւ զարարս գոգշիր եթէ շանայր դնել ի վերա եւ այլ եւս զարդուց
սրբոյ եկեղեցւոյ, վասն զի յոյժ տամասէր էր այրն այն, եւ պայծառա-
ցուցիչ եկեղեցական կարգաց, նմին իրի ստանայր կրկին անգամ՝ զմա-
տեան սրբոյ Աւետարանիս յիմմէ անարժանութենէ Թորոսէ մականուն
Ռոսլին կոչեցելոյ, որ եւ ըստ կարի իմոյ յանգ հանի Աստուծով զհրա-
մանն նորա, նոյնպես զարդարեալ ոսկւով սրբով եւ երանգ երանգ դու-
նովք, ներքոյ եւ արտաքոյ ընդելուզեալ քարամբք պատուականաւք, առ ի
պիրելի առնել զսա մանգանց եկեղեցւոյ։

Վասն որոյ աղաչեմ զձեզ, ո՜վ աստուածասէրք, որք հանգիպիք սմա
եւ որք ժառանգէք զսա, յիշել աղաւթիւք ի Տէր զարժանաւորսն ամենայն
բարեաց յիշատակի զբարեպաշտ արքայն Հեթում, եւ զսրբահոգի թագու-
հին իւր Զապէլ՝ դուստր Լեւոնի արքայի, եւ Աստուծով զորդիս սոցա
զպարոն Լեւոն եւ զպարոն Թորոս, եւ զամենայն նախնիս իւրեանց, որք
408բ եւ անուանին Ռոբինեանք: Յիշել աղաչեմ եւ||զԹագաւորհայրն պարոն
Կոստանդին, ուստերաւք եւ դստերաւք եւ ամենայն զարմիւք։ Յիշեսջիք
եւ զերջանիկ հայրապետն Հայոց տէր Կոստանդին, եւ զհայր իւր Վահ-
րամ, եւ զմայր իւր Շուշիկ, եւ զեղբարսն իւր զԳորգ եւ զԳրիգոր, եւ
զպարկեշտուհի քորսն իւր Շուշանիկ եւ Վանենի:

Աղաչեմ յիշել եւ զքաջակրաւն քահանայն Թորոս՝ զստացող սուրբ
մատենիս, եւ զհայրն իւր Գորգ քահանա, եւ զմայրն իւր զԱզիզ, եւ զեղ-
բարսն իւր զաստուածապատիւ տէր Ստեփանոս եւ զԳրիգոր նորին հա-
րազատ, եւ զքոյր իւր Շուշանիկ, եւ դստերն իւր Մլքի եւ Շուշան, եւ զմայր
սոցա Տալիթա՝ կանուխ վախճանեցելոյ զկենցաղս, եւ զհաւրեղբաւրոր-
409ա դին իւր զԳրիգոր եւ||զՍտեփանոս եւ զԹորոս եւ զամենայն ազգայինս
իւր։ Յիշել աղաչեմ եւ զբարի շառաւիղ որդին իւր պարոն Ստեփանոս իշ-
խանական պատուով զինուորեալ ի դրան արքայի, եւ զամուսին նորա
զտիկին Ակաց, ի մեծ տոհմէ, եւ զուստերս սոցա եւ զդստերս։ Որոց ամե-
նայն յիշելեացս առ հասարակ Քրիստոս Աստուած ննջեցելոցն հանգիստ
եւ ողորմութիւն պարգեւեսցէ եւ զկենդանիսն անխռով խաղաղութեամբ
պահեսցէ, ամէն։ Յերես անկեալ բազմամեղ թարմատար գրիչս, աղաչեմ
յիշել եւ զիմ անարժանութիւն, եւ ծնաւղսն իմ, եւ զամենայն բարի ուսու-
ցիչն իմ, եւ Աստուած զձեզ յիշեսցէ յիւրում արքայութիւնն եւ ի փառս,
ամէն։

Բ

11բ Ո՜վ յանսկիզբն ծոցո բան,
Որ ծաղկեցար յաղգս մարդկան
Եւ զայս մատեան Աւետարան
Մեզ հնչեցէր ձայն ցնծութեան.
Դու զորս ետուր մեզ քեզ փոխան
Կաթողիկոս՛ ի Հայաստան՝
Զտէր Կոստանդին պետ հովվութեան,
Ի գունդն ընգալ ի Պետրոսեան։

Գ

12ա Եւ զստացող այսմն տառի
Եւ զարդարող սուրբ կտակի,
ԶԹորոս նորին եղբաւրորդի
Եւ քահանայ սուրբ եւ արի,
Եւ զՏալիթա բարի հոգի
Իւրեանց ծննդաւք եւ այլ զարմի,
Ընգալ ի քում յառագաստի
Որ ես աւրհնեալ յամենայնի։

Դ

129բ Ընդ մետասանիցն գնդի համադասեա Քրիստոս զտէր Կոստանդին կաթողիկոս եւ զեղբաւրորդին իւր Թորոս քահանայ՝ ստացող աստուածախաւս այս մատենի և ամէն։

Ե

200 Ստացաւղի սորա Թորոս քահանայի ողորմեա Քրիստոս։

Զ

317 Զաստուածապատիւ տէր Կոստանդին կաթողիկոս Հայոց եւ զեղբաւրորդին իւր Թորոս քահանայ, որ եւ ստացող լուսազարդիս յիշեսջիք ի Քրիստոս Յիսուս։

Է

Կազմող՝ Առաքել Հնազանդենց

Զմեղաւք դատապարտեալ կազմաւղ սորա զԱռաքել Հնազանդենց եւ զծնաւղսն իմ, եւ զհարազատն իմ՝ զՊաւղոս սարկաւագ, եւ զուսուցիչն իմ՝ զՍարգիս քահանայ, զհանգուցեալսն ի Քրիստոս աղաչեմ յիշել ի Տէր։ Ի թվին ՉԺԱ (1262)։

## 261

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երուսաղէմ 2660*

Գրիչ՝ Թորոս Ռոսլին
Վայր՝ Հռոմկլա

288բ *Փառք ամենասուրբ երրորդութեանն Հաւր և Որդւոյ և Հոգւոյն Սըր-*
*բոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։*
*Շնորհիւ Տեառն սկսեալ և ողորմութեամբ նորին յանգ ելեալ աւար-*
*տեցաւ մատեանս աստուածային, երկրպագելի և պաշտելի սուրբ Աւե-*
*տարանս, յամի ւթն հարիւրերորդի տասն և մի երորդի (1262) թուաբե-*
*րութեանս Հայոց, ընդ հովանեաւ սուրբ աստուածաբնակ տաճարացս որ*
*յանուն Սուրբ Փրկչին, և Սրբոյ Աստուածածնիս, և Սրբոյն Գրիգորի Լու-*
*սաւորչին մերոյ, և այլ բազմահաւաք սրբոցս, որք պաշտին յաշխարհա-*
*մուտ աթոռս Հռոմկլա, ի հայրապետութեանն տեառն* Կոստանդեայ *սըր-*
*բազան կաթողիկոսի Հայոց, և ի բռնակալութեան ազգին Նետողաց որք*
*կոչին դադար։ Հրամանաւ մեծի և բարէպաշտի և իշխանաց իշխանին*
*պարոն* Լեւոնի *Աստուծով որդւոյ քրիստոսապսակ սուրբ արքային* Հեթ-
մոյ *թագաւորի ամենայն Հայոց։ Որ և աստուածապարգև իմաստութեամբն*
*իւրով ըստ մեծ և ուղիղ հաւատոյն իւրոյ զոր ունէր առ Աստուած, հանա-*
285ա *պազ զանձն իւր դնէր քաջապէս ի վերայ հաւտին Քրիստոսի։‖Որ և ի*
*դառնաբեր և չարալլուկ ժամանակիս մինչ զի աշխարհք աշխարհաւք, և*
*ժողովք ժողովրդաւք ի սով, ի սուր և ի գերութիւն վարեցաւ, սա շնոր-*
*հաւք և ողորմութեամբն Աստուծոյ պահէր ի խաղաղութեան զաշխարհ*
*իւր և զգաւառ։ Այլև բարեպաշտութեամբն իւրով յԱստուած զօրացեալ*
*հէրքէր զհոյս հաքարածին ծննդոցն և անաւրինաց սեռիցն, բազում ան-*
*գամ յաղթեալ սուլտանին Հռոմոց, և առեալ զամուրս նորա՝ զանմատ-*
*չելին* Մունտաս, *և զ*Մանիաւնն, *զը*Միկի *և զայլս բազում զոր ոչ է այժմ*
*ասել մի ըստ միոջէ։ Որ և յայսմ ամի առ նա և զամուր դղեակն զհոյա-*
*կապ և զյագանաւորն* Պեռեսնի, *որ աւր Ի և Ե (25) էր ամսէանն հոգտեմ-*
*բերի։ Եւ ոչ այս չափ միայն, այլ և զլոլով տեսակս առաքինութեան յինքն*
*հաւաքեալ բերէր ողորմածութեան, զարդար դատողութեան, զեկեղեցւոյ*
*շինութեան, ևս առաւել և զհաստատեալն ի վերայ ուղիղ հաւատոյ և առա-*
*քելական վիմի։*
*Ուստի և բարի շառաւեղ և ավ[ագ] որդին իւր ծիրանածինն պարոն*
Լևոն, *հաւրն նմանեալ վարուց, ի նմանէ ուսեալ լինէր բարեպաշտաւն,*
*աստուածասէր և երկիւղած յԱստուծոյ, սիրող ճշմարտութեան, և ատե-*
*ցող անիրաւութեան, որ և ըստ յոքունց բարեաց ի նմանէ գործելոց, յա-*
*ւել ի վերայ և ստացաւ զգիրս սուրբ՝ զմատեանս այս սրբոյ Աւետարա-*
*նիս, զարդարեալ ոսկւով սրբով և երանգ երանգ դունովք, հրաման տուեալ*
*իմոյ անարժանութեանս* Թորոսի *մականուն* Ռոսլին *կոչեցելոյ՝ առնել*
*զայն, որ և ըստ կարի իմոյ յանգ հանի Աստուծով զհրաման նորա, և*
*աղաչեմ զամենեսին, որք հանդիպիք սմա, և որք ժառանգէք զսա, և որք*

աւգտիք ի սմանէ զինչ և իցէ արդեամբք, յիշել աղաւթիք ի Տէր զարժա-
նաւորսն ամենայն բարեաց յիշատակի, զաստուածասէր և բարէպաշտ
արքայն Հեթում, զաստուածապարգև որդիսն իւր՝ զծիրանածինն պարոն
Լևոն՝ ստացող լուսազարդիս, և զհայրազատ եղբայրն իւր զրարիհամբաւ
286ա պարոնն Թորոս, և զբարէսէր քորսն իւրեանց։ Աղաչեմ յիշել զսրբահոգի
և զառաքինաշան և ողջախոհ մայրն իւրեանց Զապիլ թագուհի, դուստր
մեծին Լևոնի արքայի, և զամենայն նախնի նահապետութիւնս իւրեանց,
որք են առթաւղք և գրաւաւղք նահանգիս Կիլիկեցոց և երախտագործք
Հայաստանեացս սեռից և անուանեալք կոչին Ռոբինեանք:

Յիշել աղաչեմ և զթագաւորահայրն պարոն Կոստանդին աբրահա-
մեան հաւատաւքն ծաղկեալ ուստերաւք և դստերաւք, և ամենայն զար-
միւք, որոց ննջեցելոցն հանգիստ և ողորմութիւն պարգևեսցէ Քրիստոս
Աստուած և զանճառ երկնից արքայութիւնն, և որք այժմ՝ կենդանի եր-
կար կենաւք, պարագայց ամաւք, անխռով խաղաղութեամբ և մեծաւ յաղ-
թութեամբ պահեսցէ յաւերժ ցնծութեամբ և ուրախութեամբ ի կամս ողոր-
մութեան իւրոյ, ամէն։

Յերեսս անգեալ յոքնամեղ ծառայս Ռաւլին աղաչեմ յիշել զիս, և
ծնաւղսն իմ, և զուսուցիչսն իմ, և Աստուած զձեզ յիշեսցէ յիւր յարքա-
յութիւնն և ի փառս, ամէն։

Բ

287բ Յոյս իմ Քրիստոս էնդ ի յէից
Որ ես իշխան Տէր բոլորից,
Դու զստացող քոին բանից
Եւ նուիրող քեզ ի քոյից՝
ԶԼևոն ժառանգ թագազարմից,
Զտիկին Կեռանն իւր զուգակից,
Ընգալ ի կեանսդ անվախճանից,
Դարձեալ լինել քեզ փառակից, ամէն։

Գ

Գրիչ՝ Աւետիս

139ա Զաւետիս գրիչ և քահանա, որ անուամբս միայն եմ և գործաւք ոչ
վասն բազում յանցանաց իմոց, զգրաւղս սրբոյ Աւետարանիս աղաչեմ յի-
շել ի մաքրափայլ յաղաւթս ձեր, որք կարդայք կամ ընդաւրինակէք, և
սղալանացս մի մեղադրէք, զի կարն մեր այս էր, և Աստուած զձեզ և մեզ
առ հասարակ ողորմեսցի իւրում գալստեանն, և նմա փառք յաւիտեանս,
ամէն։

Դ

224ա Զաւետիս գրիչ որ բազում աշխատութեամբ գրեցի զսուրբ Աւետա-
րանս, յիշեսջիք ի Տէր Յիսուս, եւ Աստուած որ առատն է ողորմութեամբ
ձեզ և մեզ ողորմեսցի յիւրում գալստեանն, և նմա փառք յաւիտեանս,
ամէն։

Ե

Կազմող Առաքել Հնազանդենց

286բ Զմեղաւք դատապարտեալ կազմաւղ սորա զԱռաքել Հնազանդենց, և զծնաւղսն իմ, և զհարազատն իմ զՊաւղոս սարկաւագ, և զուսուցիչն իմ զՍարգիս քահանայ՝ զհանգուցեալսն ի Քրիստոս, աղաչեմ յիշել ի տէր։ Ի թուին ՉԺԱ (1262)։

## 262

## ԱԻԵՏԱՐԱՆ

*«Արարատ», 1905, էջ 720—721*

Գրիչ՝ Տրդատ

*Ի թուականիս Հայոց ՉԺԱ (1262) գրեալ եղև սուրբ Աւետարանս... Քրիստոս որդի Աստուծոյ երկիւղածաց կամաց կատարիչ և պարգևատու ողորմութեան յուսացելոց ի քեզ զօրացուցիչ, ողորմեա Յովսէփ քահանայի /// և Դաւթի որդւոյ յաւուրն մեծի գալստեան քո, ողորմեա ամէնողորմ և բարերար Աստուած /// յահաւոր ատենին և դասաւորեա յաջակողմեանսն։ Ըստ այսմ հաւատոյ և հայցման ողորմեա Տէր Աստուած Տրդատայ գրողի սուրբ կտակիս, որ արժանի արարէր աւարտել, եւ Բարսղի հաւր և Բաղդաւորի մաւր /// բազում ողորմութեամբ քո։ Եւ ընթերցողի սուրբ գրոցս և յիշելոշ դրեալքս ի յիշատակս ողորմեա... զի փառաւոր լիցի անուն քո... ամէն...*

*Յայնմ ժամանակի զաւրացեալ էին ազգն Նետողաց և աղեղնաւորաց, որք աւերեցին յաշխարհս արևելից մինչև ի ծովն Եգիպտոսի և զկողմն հարաւո, որ էր նեղութիւն մեծ ամենայն ազգաց /// սոյնպէս և տեսիլ սրբոյն Ներսիսի թէ բազում պատուարք անկանին ի փառաց։ Եւ ո՞ կարէ ասել զկորստումն անթիւ մարդկան զԼ (30) ամ ոչ դադարեցին հեղլոյ զարիւն մարդկան և էր տիրեալ երկրի։ Յամս(՞) Հոլաուն ղանն եւ իւր Բ (2) եղբարք ունէին զիշխանութիւնն յարևելից մինչև յԵրուսաղէմ, և մնացեալն որպէս զԻսրայելացիսն ակն ունէին քաղցրութեան ի Տեառնէ Աստուծոյ, և ազատութեան ի գերութենէն անաւրինաց և ի բռնութենէ անբարշտացն և դեռ էին ի նեղութեան և ի հարկապահանջութեան, և երանի զմեռեալսն, և ցանգային մեռանել և ոչ ապրել։ Ի սաստկութենէ հարկին ծախէին զորդի և տային հարկ և ոչ կտրէին ազատել։ Ազատարարն Աստուած և խաղաղացուցիչն ազատեսցէ յանաւրինաց զծառայսն իւր և խաղաղութիւն տացէ աշխարհի, և ինքն աւրհնեալ յաւիտեանս յաւիտենից*։*

## 263

## ԱԻԵՏԱՐԱՆ

*Լենինգրադ, Սալտիկով Շչեդրինի գրադարան, 51*

Նորոգող՝ Բարսեղ

*ՉԺԱ (1262) թուիս նորոգեցաւ Աւետարանս ձեռամբ Բարսեղ աբեղայի։ Աստուած ողորմի կազմողին և աշխատողաց սմայ։*

---

* Բերված է նաև մի հիշատակագրություն. «Յիշատակ է սուրբ Աւետարանս Սարգիս կուսակրաւն քահանայի» ծնողներն են Ավետիսն ու Արղուն, եղբայրները՝ Ամիրը և Բչնեն։

## 264

## ԱՒԵՏԱՐԱՆ

*Երևան 7690 (1249 թ.)*

Գրիչ՝ Լևոն կամ Թորոս
արքայորդի

-362ա *Ի թուիս Հայոց ՋԺԲ (1263), ի ժամանակս քրիստոսասէր և բարէ-
պաշտ թագաւորին Հայոց Հեթմոյ, որ գերազանց գտաւ բարէպաշտու-
թեամբ ամենայն թագաւորացն առաջնոցն, միջնոցն և վերջնոցս, եւ ի
հայրապետութեանն Հայոց Կոստանդեայ, և ի պարոնութեանս Հայոց
Լևոնի, անդրանիկ որդոյ աստուածասէր թագաւորին Հեթմոյ, եւ հարա-
զատ եղբաւր նորին պարոն Թորոսի, որ ողչախոհութեամբ զարդարեալ
է, յորում ժամանակի աստուածասէր և բարէփառ կայսերածին և ծիրա-
նասնունդ տիկինն աստուածապահ քաղաքին Սսիտոյ տամ Ցիմի, դուստր
բարէպաշտ թագաւորին Հեթմոյ, յաղագս սատանայական պատերազմաց
եկն յաշխարհս Կիլիկեցւոյ առ հայրն իւր և առ աստուածասէր եղբարքն
.362բ պարոն Լևոն և պարոն Թորոս‖ուստերովք իւրովք և դստերովք, որոց
անուանք առաջնոյն Մարկրաւն, որ վերակոչի Մառինէ, որ թարքմանի ի
մեր լեզուս լուսաւորիմ, և որդոյ նորին Պալիաւն, որ թարգմանի Բեթղէ-
հեմ, և անուն կրսէր որդոյն, որ սնաւ առանց կաթին մաւր իւրոյ Ճուան,
որ թարգմանի Յոհաննէս: Եւ զի տրտմեալ էր տամ Ցիմէ վասն վշտացն,
որ ժամանեցին նմա աստուածասէր եղբայր նորին պարոն Լևոն, ետ
զաստուածախաւս Աւետարանս նմա ի մխիթարութիւն և ի փրկութիւն
հոգւոյ յետ աստի ելիցս տալ ի Սիոն զսա զաւակ մանկանց գրելով յոգոց
տախտակ։*

*Արդ, որք աւգտիք ի սմանէ և կամ ընդաւրինակէք, յիշեցէք զաստու-
ածասէր տիկինն զտամ Ցիմէ որդովք իւրովք և բնաւին զարմիւք։ Յիշե-
*-364 *ցէք ի Տէր‖*զբարեպաշտ թագաւորն Հեթում, որդովք իւրովք։ Եւս առա-
ւել յիշեցէք ի Քրիստոս զարժանին յիշատակի զբարեպաշտ և զաստուա-
ծասէր թագուհին Զապէլ և նախնիս նորին Ռուբինանք՝ զհանգուցեալսն ի
գոգն Աբրահամու Նա և զծիրանածին դստերս նորին՝ զբարեպաշտու-
թեամբ զարդարեալն և զսիրող աւբինացն Աստուծոյ, որ և զնմանութիւն
ծնողին բերելով յինքեան զաստուածասէր բրընձեսն զՍպիլ՝ որդւովք իւ-*

---

** Այստեղից ձեռագիրը փոխվում է, շարունակության գրիչը տամ Ցիմիի եղբայրներից, ուստի Լևոն կամ Թորոս արքայաղմններից մեկն է։*

րովք, եւ զկնի սորա և զմիւս այլ քոյր իմ զՏիկնաց տիկին և զՌուբայն, և զկնի սորա զհոմանուն ծնողին իմո զքոյր իմ՝ զՋապլուն, որ ոչ միայն անուամբն նման գոլ ծնողին, այլ և բարեպաշտութեամբն և աստուածասիրութեամբն, և զկրսեր քոյրն իմ զՄարիուն: Յիշեցէք ի Տէր և զստացող աստուածախաւս մատենիս զտամ Ֆիմի, որ ամենայն բարե-
361բ պաշտութեամբ զարդարեալ է. աստուածասէր, ողորմած, աղաւթասէր, հեզ, քաղցր և հանդարտ առ ամենեսեան, և կարեկից ամենեցուն, մանաւանդ որ հիւանդութեան ախտից նեղեալ են, որոյ Տէր Աստուած տացէ նմա ընդ միոյն հարիւրապատիկ աստ և յերկնիցն արքայութիւնն, և զըսա մարմնոյ եկեալ փորձութիւնն և զտրտմութիւնն ի բարի և յուրախութիւն աւարտեսցէ, և զորդիս նորա ի խորին ծերութիւն հասուսցէ, և նմա փառք յաւիտեանս, ամէն։

## 265

### ԱՒԵՏԱՐԱՆ

Տէր-Ներսեսյան, Դուբլինի ձեռագրերը, էջ 558

Գրիչ՝

ա

339բ Ի թվին Հայոց ՅԻԵ (876)*։

բ

14ա Ով յանսկիզբն ծոցո բան
Նոյն ի ծաղկեալ յազգս մարդկան
Որ մեզ զշնորհս քո շրթան
Հեղէր աւրհնեալդ յաւիտեան.
Դու զպճնողս քո բանի
Եւ զարդարող այսմ տառի
Ջտէր Կոստանդին հովիվ բարի
Յաթոռ նստոյ ընդ Պետրոսի**։

## 266

### ԱՒԵՏԱՐԱՆ

Սանջյան, Յուցակ Ամերիկայի, էջ 737—739

Ստացող՝ Յոհաննէս Արքաեղբայր
Վայր՝ Գոներ

ա

Յամիս եօթն հարիւրորդի տասներորդի երկրորդի (1263) թուաբերութեան Հայոց. ես Յոհանն եպիսկոպոս նուաստ ծառայ Աստուծոյ,

* Գրված է Աւետարանի վերջում։ Ինչպես ճիշտ նկատում է Սիրարփի Տեր-Ներսեսյանը, այն գաղափար օրինակի գրության թվականն է։

** Ղուկասի ՄՁԳ (283) հատվածի դիմաց լուսանցքում խոշոր բոլորգրով գրված է. «Կայ այս բան ի Փըռա[ն]գաց Աւետարանին եւ յԱսորոցն, եւ ի Հոռոմոցն, բայց յԱղեքսանդրացոցս

որդի մեծին Կոստանդիա թագապահի եւ արքայահաւր Հայոց եւ եղբայր սուրբ արքային ամենայն Հայոց Հեթմոյ, մեծափոյթ ջանիւ եւ ջերմ սիրով գրել ետու զաստուածապատում սուրբ Աւետարանս ի Վայելումն կենաց ինձ եւ իմոցն, եւ յիշատակ բարի ապառնեացն, ի հայրապետութեան տեառն Կոստանդիա, եւ ի թագաւորութեան բարեպաշտին Հեթմոյ իմո արքայի, եւ յիշողութեան բարեսէր եւ աստուածապահ որդոց նորին Լեւոնի եւ Թորոսի, ձեռամբ քահանայի Թորոս գրչի։

Եւ նկարագրեցաւ սա յայլ եւ յայլ գրչաց, որոց Տէր ողորմեսցի, ի գաւառիս Կիլիկիոյ, ի սուրբ անապատն Գոնէր կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ եւ աստուածակիր նշանին Կայտէնի կոչեցեալ եւ Սրբոյն Սիոնի մաւր մեր, որ է մերձ յաստուածապահ դղեակն Բերդ Բարձր կոչեցեալ։

Եւ արդ, աղաչեմ զամենեսեան, որք ընթեռնոյք զսա եւ կամ աւգտիք ինչ ի սմանէ, յիշեսջիք ի Քրիստոս զերջանիկն արքայից Հեթում, որդովք իւրով եւ եղբարբք եւ քերբք, որպէս զի զննջեցեալսն հանգուսցէ ի սիրելեացն իւր խորանս, եւ զարքայս իւրային կենդանեաւքն անփորձ պահեսցէ յամենայն ներհակաց, երկար կենդանութեամբն եւ անտրտում խնդութեամբ, եւ յետ աստեացս թագակից սրբոցն արասցէ։ Զի այս գլուխ յետ առաջնոյն հնարեցաւ եւ հնարի զփրկութիւն բազմաց քրիստոնէից, ոչ զԿիլիկոյս եւեթ ասեմ գաւառ անվնաս պահել ի լիղաջինչ հինից նետողացն, այլ գրեթէ եւ զամենայն քրիստոնեայսն, որք ունկն դնեն կենսատու խրատու սորա։ Զոր թէ ոչ Տէր գթութեանց թողեալ էր նշոյլ կենաց լուսոյ եկեղեցւոյ, իբր եւ զարաբիալեալ էաք, եւ Բաբելոնի Դամասկեաւ նման էաք։ Զոր ամենաթագաւորին աջ պահեսցէ զսա որդւովք իւրովք միշտ ի չարէ, լինելով սոցա պարիսպ հրեղէն շուրջանակի։

Դարձեալ աղաչեմ յիշել զարժանին յիշատակի զմեծ նահապետն Հայոց ղըհայր արքային եւ մեր զԿոստանդին ի Քրիստոս Յիսուս, որ ի սոյն ամի, յամսեանն փետրուարի ի ԻԶ (26), յաւուր երկշաբաթւոջ փոխեցաւ ի Քրիստոս, բարի խոստովանութեամբ հասարակեալ զկեանս իւր, եւ յիշատակ բարի եթող յաշխարհի, որոյ Տէր Աստուած ողորմեսցի, ամէն։

Նաեւ ես տառապեալս Յոհաննէս ստացող սորա, երկրամերձ դիմաւք աղաչեմ զձեզ հայցել ի Քրիստոսէ թողութիւն մեղուցեալ ոգւոյ իմոյ, եւ ծնողացն իմոց, որք ըստ հոգւոյ եւ մարմնոյ վարձս բարեաց գտանել ի Քրիստոսէ, զի յոյժ ջանիւ աշխատեցան յիս՝ յաւէտ երջանիկ կրաւնաւորուհի Հռիփսիմէ, եւ մայրիկն իմ Պիադրիս: Եւ որք զմեզ արժանի առնէք յիշատակի, Քրիստոս Աստուած զձեզ իւր ողորմութեան արժանի արասցէ, որ է աւրհնեալ յաւիտեան։

Բ

Փառք ամենասուրբ երրորդութեանն, Հաւր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ, այժմ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

---

չկայ։ Եւ թւի թէ Հայոցս ի նոցանէ է թարգմանումն, վասն այն, որ չկայր ի Հայոց Աւետարանիս այս բանս» (էջ 253 բ)։

*Յստացող սորա* զՅոհաննէս *եպիսկոպոս եւ զաստուածապատիւ արհեպիսկոպոս արքեղբայրն Հայոց, զտէրն ոգւոյ եւ զերախտաւորն մարմնոյ իմոյ* զԲասիլիոս, *որոյ երախտիք գերազանց է քան զբան եւ ըզմիտս ի կրսերս իւր։ Նաեւ զերջանիկ քոյրսն մեր* զԹեֆանա՝ *արքայուհի* Կիպրոսայ, *եւ զքարեսէրն* Կալամառի *գունդէս* Ճաֆուն *որ զմագաղաթ տառիս շնորհեաց կրսերիս իւր, եւ զմեծափառ մարաշախտըն Հայոց՝ զբարետիպ եղբայրըն մեր* Լեւոն, *եւ զմեծ նահապետն Հայոց զհայր արքային եւ մեր* զԿոստանդին՝ *ամենայն ծննդովք իւր եւ զարմեաւք, մաղթեմ ի ձէնջ հարք մեր եւ եղբարք, յիշել առաջի գըթածին Քրիստոսի, զի զննջեցեալսն ընկալցի ի սիրելեացն իւր խորանս, եւ զարդէն մնացեալսն ի մարմնի յերկար կենդանութեամբ եւ անտրտում խնդութեամբ պահեսցէ հոգւով եւ մարմնով եւ յետ աստեացս թագակից և մասնակից սրբոցն արասցէ, եւ ամենեցուն առհասարակ, մեզ եւ ձեզ ողորմեսցի Քրիստոս Աստուած, որ է աւրհնեալ յաւիտեանս, ամմէն։*

Գ

*Նկարիչ՝* Կոստանդին

*Զմեղապարտ նկարիչս* զԿոստանդին *եւ ծնողս իմ աղաչեմ յիշել ի Տէր։*

Դ

*Զմեղապարտ եւ զանարժան նկարագրիչս* զԿոստանդին *եւ զծնողս իմ աղաչեմ յիշել ի Տէր։*

## 267

## *ԱՒԵՏԱՐԱՆ*

*Երևան 8590*

*Գրիչ՝* Ստեփանոս
*Վայր՝* Սկեռայ

ա

*Փառք էական իսկութեան, ինքնագոյ, արարչական, միազաւր, միաբուն տէրութեանն, Հաւր և Որդւոյ և Հոգւոյ Սրբոյ, ի բնաւից ամենայն գոյացելոց հոգեղինաց և բազմահոյլ հոգեղէն զւարթնոց, անկէտ, անժամանակ անձնաւորութեանն, որ յափտեանս յաւիտենից։*

241բ *Աւարտեցաւ աստուածատունկս այս հոգիաբողբոջ լուսափղծ, քա-*
*ռավտակ սուրբ Աւետարանս, որ յեդովմական դրախտէն ուռճացեալ ծա-*
*ղիկս բազմազան և պտուղս քաղցրաճաշակս, ուզէշս բարձրաբեղունս և*
*սաղարթս գեղեցկատեսիլ սփռեալ տարածեցաւ ընդ ամենայն տիեզերս*
*առ ի յարբումն ամենայն ծարաւելոց, և ի ճաշակ ամենայն կարաւտելոց,*
*ձեռամբ յոքնամեղ քահանայի* Ստեփանոսի, *ի թուականիս Հայոց ՉԺԲ*
*(1263), ի մեծ ժողովարանս* Սկեռայի՝ *ընդ հովանեաւ Սուրբ Փրկչի, և*
*և մաւր իւրոյ Աստուածածնի, և կենսունակ Սուրբ Նշանի, մերձ յանմա-*
242ա *տոյց||դղեակս* Լամբրոնի, *որ է ի գլուխ* Տարսոնի, *և ի ստորոտ մեծի*

լերին Տաւրոսի, ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ Հայոց Հեղինակի, և յառաջնորդութեան սուրբ ուխտիս տեառն Մխիթարայ եպիսկոպոսի, և ի թագաւորութեանս Հեթմոյ բարեպաշտի, ի խնդրոյ սրբասէր քահանայի Հայրապետի սպասաւոր սուրբ խորհրդոյն, որ բաղձալի սիրով ետ գրել զԱւետարանս, ի վայելումն անձին իւրոյ և յիշատակ հոգւոյ։

Արդ, աղաչեմ զամենեսեան, որք վայելէք յաստուածային բղխմանէ սորա ընթերցմամբ և լսողութեամբ և կամ գաղափար առնելով, յիշեսջիք աղաւթիւք զվերոյ յիշատակեալդ զՀայրապետ քահանայ և զծնաւղսն իւր ըստ մարմնոյ և զեղբարս և զքորսս, և զամենայն ազգատոհմս, զի ողորմութեան ի Քրիստոսէ արժանաւորեսցին, և յերկնից արքայութեանն ժառանգորդ լիցին ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր։

242բ Եւս առաւել աղաչեմ զանպիտան և զախմար և զփց||ուն գրիչս Ստեփանոս բարւոյ յիշատակի արժանի առնել և հայցուածոց թողութեան <ո>ութեան մեղաց և ծնաւղսն իմ, և զծերացեալ հաւրեղբաւրս իմ զԹորոս՝ զսնուցիչ մեր, գտանել ողորմութիւն ի Տեառնէ։ Եւ որ ընդունողն է մաղթանաց և տուողն պարգևաց, ընկալցի զհայցուածս ձեր և յիշողացդ և յիշելոցս առհասարակ ամենեցուն ողորմեսցի, և ծագմանն իւրում մեծի, հանդերձ փառաւքն հայրենի, և զերանաւետն արժանաւորեսցէ լսել ձայն, եթէ Եկայք աւրհնեալք ի Հաւրէ, ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ զարքայութիւնն ի սկզբանէ աշխարհի, որում արժանաւորք լիցուք շնորհաւք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ է աւրհնեալ ընդ Հաւր և ընդ Հոգւոյն Սրբոյ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Բ

Ոսկոզ՝ Աւգսէնդ

244ա Զոսկող սուրբ Աւետարանիս զԱւգսենդ ստացանուն աբեղայս աղաչեմ յիշել ի Տէր։

## 268

### ԱՒԵՏԱՐԱՆ

Վենետիկ 151 (1244 Թ.) Սարգիսյան, Ցուցակ Ա, էջ 652

Ստացող՝ Կոստանդին կաթողիկոս

ա

337բ Այս մեր գիր հրամանի է Կոստանդեա ծառայի Աստուծոյ և նուաստ կաթողիկոսի ամենայն Հայոց, որ զԱւետարանս մեր, զոր գրել ենք ծախիւք և ծաղկերանգ զարդարել ոսկով և երփներփն դունիւք, և կազմեալ ոսկւով և արծաթով՝ տուաք ի սուրբ ուխտն Անդրիասեանց և յառաքելաշնորհ եպիսկոպոսն տէր Պաւղոս, կամաւ եղբաւրորդւոյն մերոյ Թորոսի քահանայի, յիշատակ մեզ և ծնողաց մերոց. որ յամենայն ամի ի սուրբ խաչին ուԹաւրէքն առնեն Ե (5). պատարագ, մին հաւր իմոյ Վահրըմա, և միւսն մաւր իմոյ Շուշկանն, երրորդն՝ եղբաւր իմոյ Գէորդեա քահ[անայի] հաւրն՝ Թորոսի, չորրորդն միւս եղբաւր իմոյ Գրիգորի, հինգերորդըն Գրիգորի նորին որդւոյն։ Եւ մի ոք իշխեսցէ հանել զԱւետարանս յայն սուրբ ուխտին ժառանգուԹենէն, և որ հակառակի և հանէ զսա, ընդ բանադրանաւք մնասցէ։ Եւ այս եղև ի Թվ. ՉԺԳ (1264)։

## 269

### ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ԺՂԼԱՆՔ ԿՈՉԵՑԵԱԼ ՎԱՐԴԱՆԱՑ ԱՐԵՒԵԼՑՒՈՑ

Երևան 341 (1365 Թ.)*

Հեղինակ՝ Վարդան Արևելցի
Վայր՝ Անդուլ անապատ

103ա Այսպէս արա և դու սակաւ մի աշխատեա, քո սակաւ աշխատիլն զայլոց շատն արժէ։ Զի որպէս լուաք ի Քրիստոսէ, ամէն մարդու հրեշտակ կա պահապան։ Եւ ձեզ, որ ազգի գլուխ և Թագաւոր էք**, ինքն գլուխն Քրիստոս է պահապան և անմեկնելի։ Մի պաշտէր զնա որպէս հեռաւոր,

* Այս հիշատակարանը ոչ լրիվ կա նաև Մատենադարանի № 2544 ձեռագրում, որը մասնակի տարբերուԹյուն ունի վերոբերյալի հետ։

** Դիմում է պատվիրատու Հեթում Թագավորին։

այլ որպէս առ քեզ ի սրտիդ եւ յոգւոյդ։ Որ կամիս զգլուխս և զերեսս
դնել ի պատիւ նմա, ի գիրկն դնես և յԱստուած միանաս, և զոդի իմ տա-
ռապեալ և տկար յիշեսցէս, որ քեզ սիրէ առաւել քան զասել։
Վասն որոյ զայս աշխատութիւն տկար մարմնով կատարեցի սիրով
103բ ձեր զարացեալ, և աւժանդակեալ, և յիշեա զոր||ի ձեռն Թորոսի հրա-
մաեցիք Վասն եղաբերից կանանցս գրել ձեզ, և Ի խորհուրդ պատարա-
գին, և ապա երեսաւք յԱնդոյն հրամաեցիք, որ գրեաք ձեզ ժղլանք ի
Մեկնութենէն Քերականին։ Եւ ես այլ յաւելի սիրով գրել ձեզ ձեռամբ
Լուծմունս յԱւետարանէն և, յԱստուծոցն, ուստի տեսէք թէ շատ էիք
հարցանել, և սիրէք սրտիւ, է՛ որ հանգուցանէ զձեր միտքդ, է որ պատ-
ճառ լինի ձեզ բանաւորութեան, զայս հարցանելոց և զստոյգն գտանել։
Բայց աղաչեմ զպարզամիտ մարդ և զառաքինի մի հարցանել, որ
չամաչեն, զի ես նախահոգութեամբ գրեցի։ Եւ թէ առ ժամն դիս հարցա-
նեն և ես գտանիմ տկարացեալ, վասն որոյ, մի մեղադրէք ժամուն չդտա-
նաւղաց զտեսութիւն բանին՝ Եւ ես գիտեմ, որ այս չէ թագաւորական իրք,
այլ ոսկեգիր պիտէր, և ճարտար գրչի, և ես շատ պատճառ ունէի, որ [խա-
104ա փ]անէր զիս զայս ձեռնարկութենէս։ Տկար||ութիւն և մութն խրճիթս, և
հողմ Պարխարու փոշեխառն փչելով ընդ պատուհանս, և պաղ աւդոյս։
Բայց սիրովն հրաշագործիւ յաղթահարեալ եղեն պատճառքն, և որպէս
տեսանէք, եղեւ։ Թէ կամիս՝ դիւրին է տալ փոխել ի լաւն, որ հեշտ կար-
դայք, և թող Գրի[գոր]էսն փոխէ, որ բան չկորնչի։ Բայց իմ [գ]իրս,
որ իմ մատանցս սատարն՝ մնա առ ձեզ, ո՞ գիտէ, թէ աւելի շնախաւոր
լինի ձեզ վասն յուսոյն իմոյ՝ որ առ Տէր, և սիրոյն՝ որ առ ձեզ, զի այն
Ճառ և Պատմութիւն չէ, որ շատ աշխատանք տանին՝ և ապա բան գտա-
նեն։ Թէ թուղթ մի կարդաս ժամուն, կամ երկու, գտանես յոլով խոր-
հուրդս, և Աստուծով տղահասակ, և մտաւք, և աչաւք զաւրաւոր եք, և
ի մի անգամ կարդալն սակաւ ինչ աշխատիք, ե յայլն անհոգ լինիք։
Եւ զի արքա և արքաուհի ի միում մարմնի տեսանի, և հասարակ է
հոգևորն և մարմնաւորն, և թէ Աստուծով իրք մի աւգուտ լինի ի գրե-
104բ լոցդ կամ մխիթարութիւն երկ||ուցդ լիցի, և զակնտ բազմագոյն և պայ-
ծառ, որ պսակէ զձեզ յաւիտեան։ Թող թագուհին պահէ և ի պիտոյ ժամն
առնոյք ի նմանէ, և նմա հրամաէ Պաւղոս հարցանել ձեզ, և զպատշաճն
ծանուցանել, և պարտական են, ասէ։ Ապրեցուցանելոյ զիրեարս առն
և կնոջ, և ղերկուսինդ ապրեցուսցէ Տէր Յիսուս կենադանութիւնն ձեր, ի
խնամս Հաւր, և ի գութ Հոգւոյն Սրբոյ, յոռոգումն սնդեան դալարար-
ձակ, տնկաբողբոջ շառաւեղեալ ոստոցդ, ծիրանածին տղայոցդ, ի գիրկս
իրն սրբոյ, ի կատարումն պսակման հայակոյտ ազնւական ազգաց և
ազանց, տոհմից ազատաց, աղատեցուցիչք արեանառու զարմից, լծա-
դիրք և բեռնաբարձաւղք, կորացուցիչք աւտարաց ազգաց, ի փառս փա-
ռաւոր և պաշտեցեալ աստուածութեանն, որև է աւրհնեալ յաւիտեանս,
ամէն։

ՉԺԴ 1265

# 270

## ԱՆՍԻԶ ԱՆՏԻՈՔԱՅ

*Փիրղալեմյան, Նշխարք,*
*Երևան 6273, էջ 38ա, 39բ*

*Թարգմանիչ՝* Սմբատ Գունդստապլ

ա

*Աստանօր սկիզբն առնեմք ողորմութեամբ և օգնականութեամբ մեծին Աստուծոյ ի գիր արկանել զսովորութիւնք և զԱնսիզն ղպարոնութեան մայրաքաղաքին* Անտիոքայ, *զիր լիճ ճորտերուն և զպարոնացն սովորութիւնն և զիրաւներն՝ զոր ունէին առ իրար. և են գլուխք տասն և եօթն ի ցանկք ածած։ Զորս խնդրեցի ես* Սմբատ *ծառայ Աստուծոյ և գունդստապլ Հայոց, և որդի* Կոստանդեայ, *և եղբայր բարեպաշտ թագաւորին Հայոց* Հեթմոյ *և տէր* Պապառօնին, *ի մեծազարմ իշխանաց իշխանէն և յարեան մերձաւորէն մերոյ ի սիր* Սիմուն *յ*Անտաքոյ *գունդուստապլէն։ Եւ ինքն ունէր զոր ի բրինձ* Պրմլնդին *ժամանակ սիր* Փեռ Տ'րաւնդիլին *և սիր* Թումաս *մարաջախտն և այլ իմաստուն և գիտուն իշխանայք* Անտաքոյ *էին գրով հաստատել։ Եւ հանգուցեալն ի Քրիստոս սիր* Մանել *գունդուստապլն իր հայրն էր առել ի նացմէ և իր որդոյն սիր* Սիմունին *պարգևել։ Եւ ինքն վասն իմ սիրոյս և հաւասիս ինձ պարգևեաց, և ես աշխատեցայ և փոխեցի ի Հայ լեզու։*

*Եւ արդ վասն զի սովորութեամբ այն Անսիզովն կու փնայր ազգս մեր և Դարպասս Հայոց, և սխալումն ինչ կու գայր մեզ վասն տգիտութեան և վտանգութիւնք ոգոց, և պղերգանք ինչ վասն հարցանելոյ անդ զմեծամեծ դատաստանսն։ Եւ ես ուժգին տենչմամբ և բազում աշխատութեամբ գոհ զայս և հալծեցայ ի փոխելն. և երբ փոխեցի, ես՝ յուղարկեցի դարձեալ ի յ*Անտաքոյ *դարպասն, որ գիմընդդիմեցին և հաստատեցին իրենց ձեռնգրերովն և վկայութեամբն՝ և ստոյգ և ըղորդ բան բանի։*

*Եւ արդ, որ կամի ճշմարտութեամբ ուղղել զԱնսիզս և զիրաւունքս նայ այս է ըղորդ Անսիզն Անտաքայ։ Եւ արդ, որք օգտիք կամ շահիք սովաւ, ինձ* Սմբատայ *մեղաց թողութիւն հայցեցէք, և որ վզենկիք՝ դուք չէք յիսնէ վզենկել, այլ ի յիրաւանցն, ես անդատապարտ եմ. և եթէ ոք վատ ասէ ի վզնկելոցն՝ նա Աստուծոյ իրաւանցն ասէ և ոչ ինձ։*

---

*Ա. մասը տե՛ս Անսիզ Անտիոքայ, Վենետիկ, 1876, Յառաջաբան, էջ 2։*

Բ

Եւ այլ շատ ի վերայ իրաւանցս կու պնդէ մարգարէն. Առ որս ես Սմբատս անարժան և մեղաւոր ծառայս Աստուծոյ, որդի Կոստանդեայ թագաւորահօրն Հայոց Հեթմոյ բազումս աշխատեցայ ի սա ծերացեալ մտօք ի հին և յանհասկանալի բառից։ Եւ ես բազում աշխատութեամբ փոխեցի զսա ի մեր հեշտալուր բառս, ի թուականութեանս Հայոց ՉԺԴ (1265), ի հայրապետութեան տեառն Կոստանդեա, և ի թագաւորութեան Հեթմոյ և որդւոյ սորա Լեւոնի:

Առ որս աղաչեմ զամենեսեան վասն սիրոյն Քրիստոսի, յիշել զմեղ և մեղաց թողութիւն խնդրել ի Քրիստոսէ, զի և դուք յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի։

Եւ արդ, գրեցի զսա վասն հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ և վասն աշխարհի դատաւորաց և թագաւորաց, և սիրտ բանիցն առեալ եւտ համառօտաբար։ Եւ աղաչեմ անմեղադիր լինել, զի աւելի քան զկարն մեր էր ձեռնարկութիւնս, և պարտ ու արժան համարեցաք վասն թագաւորացն գրել զիրաւունս, զի նոքա զԱստուծոյ են կարգած և յԱստուծոյ տեղն ի յերկրի են*։

271

ԴԱՏԱՍՏԱՆԱԳԻՐ ԱԻՐԷՆՔ ԵՎ ԿԱՆՈՆՔ ԸՆԹՀԱՆՐԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԱԿԱՆԱՑ ԵՎ ԱՇԽԱՐՀԱՅՆՈՑ

Երևան 487

Հեղինակ՝ Սմբատ Գունդստապլ

Ճա Հրամայէ աստուածահայրն Դաւիթ. Երանեալ են անբիծք ի ճանապարհի, եւ ոյք գնան յաւրէնս Տեառն։ Երանի ոյք քննեն զվկայութիւնս նորա, բոլորով սրտիւ իւրեանց խնդրեսցեն զնա, զի ոչ թէ որ գործեն զանաւրէնութիւն ի ճանապարհս նորա գնասցեն։ Դու պատուիրեցեր զպատուիրանս քո ի պահել ինձ յոյժ։ Երանի թէ յաջողեալ էին ինձ ճանապարհք իմ ի պահել ինձ զպատուիրանս քո։ Յայնժամ ես ոչ ամաչէի ի զգուշանալ ինձ ի պատուիրանս քո։ Խոստովան եղեց քեզ, Տէր, յուղղութիւն սրտի իմոյ, որպէս ուսայց զիրաւունս արդարութեան քո։ Զիրաւունս քո պահեսցի, մի թողուր զիս մինչև ի սպառ։ Եւ այլ շատ ի վերայ իրաւանցս կու պնդէ մարգարէն։

Առ որս ես Սմբատս որ չեմ արժան, և մեղաւոր ծառայս Աստուծոյ, որդի Կոստանդեայ թագաւորահաւր եւ եղբայր բարեպաշտին Հեթմոյ, բազում աշխատանաւք աշխատեցայ ի Դատաստանագիրքս ծերացեալ մտաւք և ձեռաւք ի հին և ի դժւարաբառ և յանհասկընալի գրոց, վասն զի այլակերպած էր և հեռացած ի հին Հայ բառէն ի նորոյս հայնց, որ իսկի չէին հասկնալ, և ոչ յօկտել գայր։ Եւ բազում աշխատութեամբ փոխեցի զսա ի մեր հեչտալուր և ի սովորական բառս, ի թըւականութեանս Հայոց ՉԺԴ (1265) ամին՝ ի հայրապետութիւն Կոստանդեա և ի թագա-

* «Ի նոյն մատենէ յայլում տեղէ հանի զյետագայ հատուածնիս» գրում է Ղ. Փիրղալեմյանը։